

# ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԱԶԳԱՑ

# ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ


ՇԱՐԱԳՐԵԱՑ

Հ. ԱՄԲՐՈՍԻՈՍ ԳԱԼՖԱՅԵԱՆ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ

1850



### ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ



Իտալիա՝ Եւրոպայի ու բոլոր աշխարհիս հըռչակաւոր երկիրներէն մէկը՝ երկայնաձև Թերակղզի մըն է, որուն սահմանը արևելքէն, հարաւէն ու արևմուտքէն Միջերկրական ծովն է, և հիւսիսէն Ալպեան լեռները *:

Իտալիոյ այլ և այլ կողմերը հետզհետէ բնա-

* Յոյնք Իտալիոյ Եսպերիա կ'ըսէին (որ Երեկորնէայ կամ արևմտեան ըսել է), որովհետև իրենց երկրին արևմտեան կողմը կ'իյնայ: Կ'ըսուի նաև Սատուռնիա՝ Սատուռնոսի, այսինքն Կռոնոսի անունովը, և Աւսոնիա՝ Բնակչացը անունովը: Իսկ Իտալիա ըսուած կը կարծուի իր Իտալոս Թագաւորին անուամբը, և կամ Յունաց Իթալօս բառէն որ հորթ կը նշանակէ, իբր թէ լաւ հորթեր կամ եզներ բերող երկիր:

կող ազգերուն գլխաւորներն էին Սաբինացիք , Վոլսկեանք , Հռուտուլեանք , Ետրուրացիք , և ուրիշ քանի մը Փոքր Ասիայէն եկած ժողովուրդներ ։

Հռոմ քաղաքին շինութեան ատենը , այսինքն Քրիստոսէ 753 տարի առաջ , Իտալիոյ մէջ չորս գլխաւոր ցեղ կար . այսինքն Կեղտք՝ հիւսիսային դին , Ետրուրացիք և Ոսկեանք մէջ տեղը , և Յոյնք հարաւային կողմը ։ Հիւսիսային Իտալիոյ գլխաւոր քաղաքներն էին Մեդիոլան կամ Միլան , և Պատաւիոն կամ Փատուա . իսկ միջին Իտալիոյ գլխաւոր քաղաքներն էին Վոլատերրա , Տարկուինիա , Փալերիա , Կլուսիոն , Վուլսինիա , Պերուսիա ։ — Ոսկեանց գլխաւոր քաղաքները՝ որոնց մէջ կը բնակէին նաև Սաբինացիք և Լատինք՝ էին Կուրէս (Քորրէզէ) , Ռէատէ (Ռիէթի) , Կորփինիոն , Արդէա , Տիբուր (Թիվոլի) , Պրենեստէ (Փալեստրինա) , Ոստիա ։

Հռոմ , որ Տիբեր գետին վրայ շինուած է , կամաց կամաց Իտալիոյ ազգերէն շատին վրայ տիրելով՝ սկսաւ նաև ցամաքակղզիէն դուրս յաղթութիւններ ընելու . այնպէս որ երկրորդ պունիկեան պատերազմին ատենը տիրեր էր Սիկիլիոյ , Սարդինիայի ու Քորսիքայի . վրան շատ չանցաւ , Սպանիոյ ու Կարքեդոնի ալ տիրեց ։

Ան ատենը Իտալիա իրեք գլխաւոր մաս կը բաժնուէր . Գաղղիա յայսկոյս Ալպեանց , բուն Իտալիա , ու Մեծ Յունաստան ։

Գաղղիա յայսկոյս Ալպեանց ըսուած մասին երևելի քաղաքներն էին Գենուա (Ճենովա) , Մեդիոլան (Միլան) , Մանտուա , Պլակենտիա (Փիա-

չենցա) , Պարմա (փարմա) , Պատաւիոն (փատուա) , Վերոնա և Վիկենտիա (Վիչէնցա) ։

Բուն Իտալիա ըսուածին մէջ Լուկա (Լուքքա) , Պիսա (Փիզա) , Արիմինիոն (Րիմինի) , Անկոնա (Անքոնա) , Փիդենէ , ՀՌՈՄ , Անտիոն (Անցիոյ) , Տերրակենա , Արպինոն (Արփինոյ) , Մինտուռնէ , Կումա , Պարթենոպէ կամ Նէապօլիս (Նափոլի) , Հերկուլանոն , Պոմպէա , Կաւդիոն (Արիոլա) , Ակուիլոնիա ։

Մեծ Յունաստանի մէջ Կաննէ , Տարենտոն , Բրունդիսիոն (Պրինտիզի) , Հռեգիոն (Ռէճճիոյ)։ Իսկ Սիկիլիոյ մէջ էին Ակրագանդ (Ճիրճէնթի) , Սելինոս , Լիլիբէոն (Մարսալա) , Դրեպանոն (Թրափանի) , Երիքս , Պանորմոս (Փալէրմոյ) , Հիմերա , Միլէ , Մեսսանա (Մեսինա) ։

Պունիկեան պատերազմներէն վերջը ինչուան Օգոստոս կայսեր ատենները գաւըռը խիստ շատ երկիրներու տիրեցին Հռովմայեցիք , և Օգոստոսի մահուան ատենը ( Քրիստոսէ 14 տարի վերջը) Հռովմայեցւոց տէրութեան սահմանն էր հիւսիսէն Սեւ Ծովը , և Դանուբ ու Հռենոս գետերը . արեւելքէն Արաբիոյ անապատը և Եփրատ գետը . հարաւէն Ատլաս լեռն ու Լիբիոյ անապատները . արեւմուտքէն Ատլանդեան Ովկիանոսը ։ Այս լայնածաւալ երկիրը քսանըհինգ նահանգ բաժնուած էր , և անոնց կառավարութեան հոգը Օգոստոս կէս մը իր վրայ առեր՝ կէս մըն ալ՝ ծերակուտին վրայ բաժներ էր . և իրեն ան գաւառները ընտրեր էր՝ որոնց գրեթէ պատճառաւ հարկ էր որ միշտ մէջերնին պատրաստ զօրք կենար ։

Կայսերական նահանգները տասուերկու հատ էին . այսինքն Լուսիտանիա , Կելտիբերիա կամ Տարրագոն , Ակուիտանեան Գաղղիա , Կեղտեան Գաղղիա , Բելգեան Գաղղիա և Գերմանիա , Հռետիա և Վինտելիկիա ու Նորիկոն , Պաննոնիա , Դալմատիա , Միսիա , Գաղատիա , Կիլիկիա , Ասորիք և Եգիպտոս :

Ծերակուտին նահանգներն ալ տասուերեք հատ էին . Սիկիլիա , Սարդինիա և Քորսիքա , Նարբոնեան Գաղղիա , Բեթիկէ , Եպիրոս , Մակեդոնիա , Աքայիա , Կրետէ կղզին , Կիւրենական , Ասիա փոխանակաց բդեշխի , Բիւթանիա , Նումիդիա , Ափրիկէ : Իսկ Իտալիան իբրև կեդրոն հռովմէական պետութեան՝ սա բաժանման մէջը չէր , ու տասնըմէկ գաւառ բաժնուած էր՝ մէյմէկ պրետորի կառավարութեանը տակ :

Կոստանդիանոսի մահուընէն վերջն ալ (337) Հռովմայեցւոց տէրութեան սահմանը ճիշդ վերինին նման էր . միայն Աւրեղիանոսի , Ագրիկողայի ու Սեպտիմոս Սեւերոսի յաղթութիւններովը աւելցեր էին Պալմիրական նահանգը և Բրիտանիոյ մեծ մասը :

Կոստանդիանոս չորս կուսակալութեան բաժնեց տէրութիւնը , որոնց իւրաքանչիւրը զանազան վիճակ՝ վիճակներն ալ այլ և այլ գաւառներ կը բաժնուէին : Կոստանդնուպոլիսը Հռովմայ պէս տէրութեան մայրաքաղաքն եղաւ : Իսկ չորս կուսակալութիւններն էին Ասիա կամ Արեւելք , Լիւրիկէ , Իտալիա և Գաղղիա :

Արեւելքի կուսակալութիւնը հինգ վիճակ բաժնուած էր . Թրակիա , որուն մէջը վեց գաւառ

կար․ Ասիա փոխանակաց բդեշխի, որ իրեք գաւառ էր․ Արեւելքի կոմսութիւնը՝ որուն մէջը տասնըինը գաւառ կար․ Ասիոյ վիճակը՝ եօթը գաւառով․ Պոնտոսի վիճակը վեց՝ գաւառով։

Լիւրիկէի կուսակալութիւնը երկու վիճակ բաժնուած էր․ Լիւրիկէ՝ տասը գաւառով, ու Մակեդոնիա՝ եօթը գաւառով։

Իտալիոյ կուսակալութիւնը երկու վիճակ բաժնուած էր․ Իտալիա, որուն մէջ տասնըհինգ գաւառ կար, ու Ափրիկէ՝ որ հինգ գաւառ բաժնուած էր։

Գաղղիոյ կուսակալութիւնը իրեք վիճակ բաժնուած էր․ Սպանիա, որուն մէջ վեց գաւառ կար․ Գաղղիա, ուր տասնըչորս գաւառ կար․ Բրիտանիա, ուր երկու գաւառ կար։





# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀՌՈՎՄԷԱՑԻՈՑ



## ԳԼՈՒԽ Ա.

Իտալիոյ առջի բնակիչները. — Հռովմուլոս և Հռեմոս. — Հռովմուլոս առաջին թագաւոր. — Սաբինացւոց յափշտակութիւնը. — Տատիոս. — Հռովմուլոսի մահը. — Ծերակոյտ, պատրիկ, ժողովրդական, ասպետ. — Հմայութիւններ. — Հռովմուլոսի դրած օրէնքները. — Հին Հռովմայեցւոց քանի մը առաքինութիւնները. — Նումա Պոմպիլիոս. — Ըրած կարգաւորութիւնները. — Տուլլոս Ոստիլիոս. — Որատեանց ու Կուրիատեանց պատերազմը. — Ալբա քաղաքին կործանումը. — Անկոս Մարկիոս: (753-614 Քրիստոսէ առաջ):

1 Հռոմ քաղաքին չհիմնուելէն առաջ Իտալիոյ մէջ այլ և այլ մանր ժողովուրդներ կը բնակէին, որ իրեք գլխաւոր ցեղ կրնան բաժնուիլ. մէյմը անոնք որ արուեստի հետ կ'ըլլային, ինչպէս Ե-

---

1 Իտալիոյ հին բնակիչները որո՞նք էին :

որուրայք, և սոոնց ձեռքն էր Տիբեր գետին բերնէն մինչեւ Բոնոնիա կամ Պոլոնեա եղած երկիրը. երկրորդ՝ երկրագործ ժողովուրդներ, որ միջին Իտալիոյ մէջ կը բնակէին, ու Պեղասգեանք կամ Աբորիգինացիք՝ այսինքն Բնիկք, կ'ըսուէին. երրորդ՝ պատերազմական ժողովուրդներ՝ որ Հռոմին չորս դին կը բնակէին, ինչպէս Սամնիացիք, Սաբինացիք կամ Սաբինեանք և Եկուացիք: Իտալիոյ հարաւային մասն ալ կ'ըսուէր Մեծ Յունաստան, որովհետև հոն շատ գաղթականներ Յունաստանէն եկեր բնակեր էին:

1 Իտալիոյ ցամաքակղզին աս միճակիս մէջ եղած ատենը՝ Լատինի Պրոկաս Թագաւորը մեռնելով՝ աթոռը անդրանիկ որդւոյն Թողուց որ Նումիտոր կ'ըսուէր: Բայց պզտիկ որդին Ամուլիոս ոչ միայն Թագաւորութիւնը առաւ մեծ եղբօրը Նումիտորի ձեռքէն, այլ նաև անոր Եգեստոս որդին սպաննեց, ու Հռեա Սիլուիա անունով աղջիկն ալ Վեստեան կուսանաց մէջ դրաւ, որպէս զի ամենևին եղբօրը ժառանգ չմնայ: Եւ սակայն Հռեան երկու երկուորեակ մանչ տղաք ունեցաւ որ Հռոմուլոս ու Հռեմոս ըսուեցան, և կարծիք եղաւ թէ անոնց հայր Արէս աստուածը եղած ըլլայ:

2 Աս բանիս վրայ Ամուլիոս սաստիկ բարկացաւ ու շղթայակապ բանտ դրաւ Հռեան, տղաքն ալ կողովի մը մէջ դրած՝ Տիբերիս գետը նետել տուաւ:

---

1 Հռովմայեցւոց պատմութեան սկիզբը ինչպէ՞ս է:
2 Հռոմուլոս և Հռեմոս ինչպէս ազատեցան մահուընէ:

*Ան միջոցին գետը սաստիկ լեցուած պատահելով՝ քովի դաշտերը կոխած է եղեր, ուստի կ'առնէ տղաքը հոն կը տանի, և երբոր ջուրը կը սկսի քաշուիլ՝ տղաքը ծառի մը տակ կը մնան ։ Էգ գայլ մը քովի լեռներէն ջուր խմելու համար գետը իջնալով՝ տղոց ձայնը կը լսէ, կը մօտենայ անոնց ու կաթ կը կերցնէ ։ Ամուլիոս Թագաւորին Փաստուլոս անունով հովիւը տեսնելով աս գայլը որ միշտ դէպ 'ի ան կողմը կ'երթայ, օր մը հետաքրքրութեամբ ետևէն կ'իյնայ, կը տեսնէ որ թզենիի մը տակ երկու տղաք կան, ու գայլը կ'երթայ զանոնք կաթով կը կերակրէ. կ'առնէ Փաստուլոս տղաքն ու կը բերէ իր Լաւրենտիա կնկանը կուտայ որ մեծցընէ զանոնք* ։*

*1 Հռոմուլոս ու Հռեմոս իրենց մանկութեան ատենը ոչխար կ'արածեցընէին. բայց երբոր մեծցան՝ սկսան քովի անտառները երթալ որսորդութիւն ընել. երբեմն ալ աւազակներու վրայ յարձակելով՝ անոնց գողցած բաները ձեռքերնէն կ'առնէին, ու կը բերէին իրենց ընկերակից հովիւներուն կը բաժնէին. ասանկով այնչափ շատցան իրենց ընկերներն որ ինչուան սկսան մէկտեղ ժողովքներ ու հանդէսներ ընել ։*

---

*1 Ի՞նչ վիճակի մէջ մեծցան ։*

* Ոմանք կ'ըսեն թէ Լաւրենտիան չար կին մը ըլլալուն համար՝ հովիւները իրեն Լուփա կը կանչէին եղեր, որ էգ գայլ ըսել է. և աս պատմութիւնը անկէց ելած է կ'ըսեն ։

1 Օր մը երբոր մէկտեղ ժողվուած հանդէս մը կը կատարէին, յանկարծակի վրանին յարձակեցան ան աւազակները որ սաստիկ ոխ ունէին աս երկու եղբարց վրայ. Հռոմուլոս քաջութեամբ ինքզինքը պաշտպանելով ազատեցաւ փախաւ, բայց Հռեմոսը բռնեցին ու Ամուլիոս թագաւորին առջևը տարին՝ ըսելով թէ "Ասիկայ Նումիտորին անասունները կը գողնայ,,: Ամուլիոս հրամայեց որ Նումիտորին տանին որպէս զի ուզածին պէս պատժէ զինքը: Հռեմոս իր մօրը շատ կը նմանէր. երբոր Նումիտոր աս նմանութիւնը տեսնելով՝ տարակուսեր էր թէ իմ թոռս ինչպէս դատապարտեմ, անդին Հռոմուլոս ամէն բան Փաւստուլոսէն լսելով՝ ընկերները հետը առած վազեց որ իր պապուն վրէժը առնէ. ժողովուրդը ոտք ելաւ, Ամուլիոսը սպաննեց, ու Նումիտորը թագաւոր պսակեց:

2 Հռոմուլոս ու Հռեմոս որոշեցին որ իրենց գետը ձգուած ու մեծցած տեղերնին քաղաք մը շինեն. բայց մէջերնին կռիւ ելաւ թէ ան քաղաքին տէրը ո՛վ ըլլայ. վասն զի երկուորեակ եղբարք ըլլալով՝ անդրանկութեան իրաւունք չունէին: Նումիտոր պապերնին իրաւ տուաւ որ թռչնոց թռչելէն իմանան աստուածներուն կամքը: Ուստի երկուքն ալ մէյմէկ լեռներու վրայ ելան. Հռոմուլոս Պաղատին ըսուած լեռը ընտրեց, Հռեմոս ալ Աւենտին լեռը: Հռեմոս առաջ վեց անգղ տեսաւ. բայց ետքը Հռոմուլոս ալ տասուերկու

---

1 Ի՞նչ կերպով իմացուեցաւ իրենց ո՛վ ըլլալը:
2 Հռոմ քաղաքը ի՞նչպէս շինուեցաւ:

հաս անցնելով՝ ժողովուրդը զինքը Թագաւոր դրաւ :

1 ՀՌՈՄՈՒԼՈՍ (753-715) : — Նոր շինուած քաղաքին անունն էր Հռոմ. Հռոմուլոս անոր չորս դին խրամ բանալ տուաւ ու սաստիկ արգիլեց որ վրայէն մարդ չանցնի : Հռեմոս աս արգելքը բանի տեղ չդնելով ու արհամարհելով թէ աս ի՞նչ նեղ խրամ է, ցատքեց անցաւ վրայէն : Բարկացաւ Հռոմուլոս, ու զարկաւ սպաննեց զինքը՝ ըսելով. “ Քեզի պէս մեռնի ով որ պարիսպներուս վրայէն յանդգնի անցնելու ” :

2 Ոմանք ուրիշ կերպով կը պատմեն Հռեմոսի մահը : Ժողովուրդը երկու բաժնուեցաւ կ'ըսեն. կէսը կ'ուզէր որ Հռեմոս Թագաւորէ, որովհետեւ ինքը առաջ տեսաւ անգղները, կէսն ալ Հռոմուլոսը կ'ուզէր, որ թէպէտ ետքը՝ բայց անոր տեսածին կրկինը տեսաւ. վերջապէս անանկ տաքցաւ կռիւը որ երկու կողմէն ալ հաւանեցան որ պատերազմով որոշեն. Հռեմոս պատերազմին մէջ ընկաւ մեռաւ, ու Հռոմուլոս Թագաւորեց :

3 Հռոմ քաղաքին շէնքը թէպէտ լմընցեր էր, բայց մէջը բնակիչ չկար : Մեր Արշակ Բ Թագաւորին պէս հրաման հանեց Հռոմուլոս թէ ով որ կ'ուզէ՝ գայ ազատութեամբ Հռոմ քաղաքը բնակի. ուստի մէկէն ամէն տեղէն գողեր, մարդասպաններ, պարտատէրներ, փախստական գերի-

---

1 Հռեմոս ի՞նչպէս մեռաւ :
2 Ուրիշ ի՞նչ կերպով կը պատմուի Հռեմոսի մահը :
3 Հռոմ ի՞նչ կերպով շէնցաւ :

ներ վազեցին եկան, ու քիչ ատենի մէջ քաղաքը լեցուեցաւ։

[1] Եւ որովհետեւ ան եկողները կին չունէին, մարդ խրկեց Հռոմուլոս քովի ազգերուն որ խնամութիւն ընեն իր քաղաքացւոցը հետ. բայց խըրկած դեսպանները ամէն տեղ անարգուեցան ու ծաղր եղան։ Աս բանիս համար վրէժխնդրութիւն ուզեց ընել Հռոմուլոս. և որովհետեւ բռնութեամբ բան չէր կրնար ընել՝ խորամանկութիւն բանեցուց։ Հրաման հանեց որ մեծ հանդիսով Կոնսոս կուռքին տօնը կատարուի. քովի ազգերն ալ լսեցին՝ բոլոր իրենց ընտանեօքը վազեցին եկան որ ան հռչակաւոր հանդէսը տեսնեն։ Խաղերուն սկսած ատենը երբոր հանդիսատեսները աչքերնին անկած զմայլած կը նայէին, նշան մը տրուելուն պէս՝ ամէն կողմէն յարձակեցան Հռովմայեցիք, ու եօթը հարիւր չափ աղջիկ առին գնացին (749)։

[2] Աս նախատանաց վրայ օտարականները սաստիկ բարկացած՝ սկսան վրէժխնդրութիւն ընելու պատրաստուիլ։ Ամենէն առաջ Կենինացիք պատերազմի ելան Հռովմայեցւոց վրայ, ու սկսան անոնց երկիրներուն աւրել. դիմացնին ելաւ Հռոմուլոս իր զօրքովը, զարկաւ, ցրուեց, ու իր ձեռքովը անոնց Ակրոն թագաւորը սպաննեց, զէնքերը առաւ ու Փերետրեան Արամազդայ

---

1 Հռոմուլոս ի՞նչ հնարքով իր քաղաքացւոցը կին առնել տուաւ։

2 Հռոմուլոս ի՞նչպէս յաղթեց շրջակայ ազգերուն։

նուիրեց ։ Նոյնպէս յաղթուեցան նաև Կրուստու-մացիք ու Անտեմնացիք, որոնց աւանները ու գեղերը կործանեց Հռոմուլոս, ու բնակիչները Հռոմ տարաւ ։

1 Բայց աւելի վախը Կուրէս քաղաքը բնակող Սաբինեանցմէ էր, որոնք երկայն պատերազմնե-րու վարժեր էին ։ Ասոնք իրենց Տատիոս Թագա-ւորին առաջնորդութեամբը ինչուան Կապիտո-լիոնին քով հասան՝ որ Հռոմ քաղաքին բերդն էր ։ Օր մը Տարպէոս բերդապահին աղջիկը Տար-պէա ջուր բերելու գնացած ատենը՝ Սաբինեանք զինքը բռնեցին ու խոստացան որ եթէ բերդին ճամբան իրենց ցուցընէ՝ Թևերնին ունեցած ոսկի ապարանջաններէն շատ մը իրեն տան ։ Խաբուե-ցաւ Տարպէա, ու բերդը տարաւ զիրենք, բայց ըրած մատնութեանը արժանի պատիժն ալ գտաւ. վասն զի փոխանակ իրեն ոսկի ապարանջաններ տալու՝ ապարանջաններու ու վահաններու տակ զինքը մեռուցին ։

2 Հռոմուլոս իր զօրքովը եկաւ տեսաւ որ Սա-բինեանք բերդը առեր են. հոն սաստիկ պատե-րազմ եղաւ. երբոր Հռովմայեցիք սկսան յաղ-թուիլ, Հռոմուլոս զէնքերը դէպ 'ի երկինք վեր-ցընելով ուխտ ըրաւ որ եթէ յաղթելու ըլլայ՝ Արամազդայ մեհեան մը կանգնէ ։ Հռոմուլոսի խօսքերովը սիրտ առին Հռովմայեցիք, ու աւե-լի քաջութեամբ սկսան պատերազմիլ ։

---

1 Սաբինացիք ի՞նչպէս տիրեցին Կապիտօլիոնի ։
2 Հռոմուլոս կրցա՞ւ յաղթել Սաբինեանց ։

1 Երբոր երկու կողմէն սաստիկ կատղած կ'ըլլար, ու յաղթութիւնը որո՛ւն ըլլալը չէր գիտցուեր, Սաբինեանցմէ յափշտակուած կանայք մազերնին արձըկած ու տղաքնին գրկերնին առած՝ վազեցին մոտան բիւրաւոր նետերու ու թրերու մէջ. և պատերազմողներուն ոտքը ընկած՝ մէկը իր հօրն ու եղբօրը կ'աղաչէր, մէկալը երկանը՝ որ դադրեցընեն ան իրենց համար եղած անողորմ պատերազմը. վերջապէս շատ աղաչանքով պատերազմողներուն կատաղութիւնը իջեցուցին: Հաշտութիւն ըրին Հռոմուլոս ու Տատիոս, և դաշինք դրին որ երկուքը մէկտեղ Հռոմայ մէջ թագաւորեն, բայց անանկ որ քաղաքը Հռոմուլոսին անունովը նոյնպէս Հռոմ ըսուի, և ժողովուրդը Սաբինեանց Կուրէս մայրաքաղաքին անունովը ըսուին Կուիրացիք (744):

2 Վեց տարի անցնելէն վերջը երբոր Տատիոս մեռաւ, Հռոմուլոս մինակ թագաւորեց: Վասն զի Տատիոսի բարեկամները Լաւինիոն քաղաքը գնացեր շատ անասուն գողցեր ու շատ մարդսպաններ էին. Լաւինիացիք աս բանիս վրայ գանգատելով քանի մը հոգի դեսպան խրկեցին Հռոմ, բայց Տատիոս միտիկ չըրաւ անոնց: Դեսպանները ետ դառնալու ատենին մութը վրայ հասնելով, կը հարկադրին ան գիշերը ճամբուն վրայ անցընելու. Սաբինեանցմէ ոմանք ասոնց վրայ վազե-

---

1 Ի՞նչ կերպով դադրեցաւ Հռովմայեցւոց ու Սաբինեանց պատերազմը:

2 Տատիոս և Հռոմուլոս քանի՞ տարի մէկտեղ թագաւորեցին: — Տատիոս ի՞նչպէս մեռաւ:

լով՝ քունի մէջ մէկ քանին կը մեռցնեն ու ստակ-նին կ'առնեն կը փախչին ։ Ողջ մնացողները Լաւինիոն կ'երթան, բոլոր ժողովուրդը ոտք կը հանեն, այնպէս որ Հռոմուլոս Տատիոսի կամացը դէմ կը ընէ յանցաւորները Լաւինիացւոց ձեռքը կուտայ ու գէրենք կը հանդարտեցընէ։ Վրան քիչ մը ժամանակ կ'անցնի, երկու Թագաւորները մէկտեղ Լաւինիոն կ'երթան որ ուխտութեան պահպանութեանը համար զոհ ընեն աստուածոց. ան ատենը աս սպաննուած դեսպաններուն ազգականները կը վազեն; ու զոհ ըրած Թրոմը կը զարնեն Տատիոսը ու սեղանին առջևը կը սպաննեն։

[1] Հռոմուլոս Փիդենացւոց ու Վէյացւոց ալ յաղթեց՝ որ եկեր Հռովմայեցւոց երկիրները աւարկոխ կ'ընէին ։ Օր մը Կապրա Ճահիճին քով զօրացը հանդէս ընելու ատեն՝ սոսկալի որոտմունքներով փոթորիկ մը ելաւ, և Թագաւորը Թանձր գոլորշիքով մը պատած՝ աներևոյթ եղաւ ամենուն աչքէն ։ Ցարակոյս չկայ որ ծերակոյտը, որուն այնչափ ատելի եղեր էր, զինքը ան միջոցին մեռուց. բայց ժողովրդեան մէջ ձայն հանեց Թէ Թագաւորը երկինք վերացաւ. Պրոկղոս անունով մէկն ալ, որ բարեպաշտ մարդ մը սեպուած էր, հրատարակեց ամենուն Թէ " Գիշերը տեսիլքով տեսնուեցաւ ինծի Հռոմուլոս և ըսեց որ զինքը Կուիրինոս աստուած անուանելով պաշտեն Հռովմայեցիք, և իմ պաշտպանութեամբս բոլոր աշխարհիս պիտի տիրեն ըսաւ " ։ Ժողովուրդն ալ սկսան Հռոմուլոսը իբրև աստուած պաշտել, և

---

[1] Հռոմուլոսի վերջը ինչպէս եղաւ ։

ան ծերակոյտը որ չկրցաւ Հռոմուլոսին Թագաւորական փառացը դիմանալ՝ աստուածական պատիւ տալու անոր. Մեհեան մըն ալ շինեց՝ որ ըսուեցաւ Կուիրինեան տաճար։ Երեսունուեօթը տարի Թագաւորեց Հռոմուլոս. Թագաւորած ատենը քանի մը հազար հոգի հազիւ կար Հռոմայ մէջ. Մեռնելու ատենը՝ միայն պատերազմի յարմար մարդիկը քառասունուվեց հազար էին։

1 Հռոմուլոս հարիւր հոգի խելացի ծերեր ընտրեց, անոնցմով հաստատեց ծերակոյտը, ու հայր (փաթէր) պատուանունը տուաւ անոնց. ասոր համար ծերակուտին ցեղերէն եկողներուն ալ պատրիկ ըսուեցան որ գրեթէ ազնուական ըսել էր, և ասոնց պարտքն էր կրօնքի ու տէրութեան բաներուն վրայ հոգ ունենալ։ Մնացածները որ ծողովրդական * կ'ըսուէին, արտերը կը մշակէին, անասուն կը դարմանէին ու արուեստները կը ծաղկեցընէին։ Ասպետաց ընկերութիւն մըն ալ հաստատեց՝ որ երեքհարիւր կտրիճ ազնուական երիտասարդներ էին, ու պատերազմի մէջ ձիով ու հետի պատերազմելով շատ քաջութիւններ կ'ընէին։

2 Հռովմայեցիք առանց աստուածոց կամքը

---

1 Ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ Հռոմուլոս։
2 Հռովմայեցիք Հռոմուլոսի ատենները ի՞նչ արարողութիւններ ունէին։

* Այն ծողովրդական կրնար Պատրիկներէն մէկը իրեն պաշտպան ընտրել ու իր Թևարկուն կ'ըլլար. այսինքն ամէն բանի մէջ իրեն կ'օգնէր, պաշտպանութիւն կ'ընէր. ան ալ փոխարէն՝ յետեւէն եկած ծառայութիւնը կ'ընէր անոր։

իմանալու բան մը չէին ըներ . և սա բանն ներկա-կերպով կարծէին թէ կ'իմանան . Մէյմը թռչնոց թռչելէն , երգելէն ու կերակուր ուտելէն . զոր օրինակ ագռաւին դէպ 'ի աջ՝ ու ասկռւին դէպ 'ի ձախ թռչիլը աղէկ նշան էր . նոյնպէս ալ թէ ոչ յստակ ձայնով երգելու ըլլային : Հաւդարմանո-ղը՝ որ վանաչկաճոյծ կ'ըսուէր , հաւնոցէն դուրս կը հանէր հաւերն ու դիմացնին կեր կը նետէր . թէ որ շուտ մը ուրախութեամբ ժողվէին ու կերքը նորէն գետնին ձգէին՝ աղէկ նշան կը սեպուէր . ընդ հա-կառակն թէ որ քովը չմօտենային՝ գէշ նշան էր :

1 Երկրորդ տեսակ հմայութիւնը երկնքի վրայ այլ և այլ երևոյթներ դիտելով կ'ընէին : Աստուա-ծոց կամքը կը ջանային իմանալ նաև զոհերուն փո-րոտիքը դիտելով . և սա տեսակ գուշակութիւնը կ'ըսուէր ներքնահմայութիւն կամ ընդերահմայութիւն :

2 Հռոմուլոս գիտնալով թէ ինչուան որ մարդս ուրիշի հնազանդիլ չսորվի՝ ոչ իշխանութեան ար-ժանի կարգ կանոն կրնայ պահել , և ոչ պատերազմի մէջ թշնամեաց վրայ յաղթութիւն ընել , ինքնակա-տար իշխանութիւն տուաւ հօրը իրենց որդւոցը վրայ ինչուան անոնց մահը՝ ինչ մեծ պաշտօնի ալ հասած ըլլան որդիքը :

Ամուսնութեան կապը անլուծանելի էր . կինը էրկանը դէմ յանցանք մը որ ընէր , էրիկը կ'ըլլար անոր դատաւորը , ու ինչ պատիժ որ ուզէր՝ ան

1 Ուրիշ ինչ կերպով աստուածոց կամքը իմանալ կը կարծէին :

2 Քաղաքական կենաց վրայ ինչ օրէնքներ դրաւ Հռոմուլոս :

կը տրուէր կնոջը ։ Սաստիկ արգիլեր էր կանանց որ գինի չխմեն ։

1 Հռովմայեցիք ալ Յունաց պէս վաճառակա-նութիւնն ու ամէն տեսակ արհեստները գերեաց ու օտարականաց ձեռքը թողած էին, իբր թէ վախնալով որ քաղաքացիք նստողական կեանք անցընելով չթուլնան, ու ազատութեան սէրը սրտերնէն չպակսի ։ Ուստի իրենք երկրագործու-թիւնն ու պատերազմը միայն կը պատուէին ու միայն անոնց կը զբաղէին ։

2 Առջի բերան Հռովմայեցւոց տօները հո-վուական հանդէսներ էին ։ Քուրմերը կ՚որոշէին թէ ե՞րբ վարուցան պիտի ընեն, ե՞րբ պիտի հնձեն, ե՞րբ այգեկութ պիտի ընեն և այլն ։ Ամէն տարի գարունին կուսակալը գովեստ կը խօսէր աշխա-տասէր ու հնարագէտ երկրագործներուն վրայ, ծոյլերուն ու անգործներուն ալ կը պարսաւէր ։ Տօներ կային որ ան օրերը այր և այր տուն մէկտեղ եկած՝ բարեկամաբար կը խօսէին ունեցած վէճերնուն վրայ ու իրաւունքը որուն ըլլալը կ՚որոշէին ։ Պա-լատին ըսուած լեռան վրայ պզտիկ մեհեան մը կար որ հարս ու փեսայ հաշտեցընող դիցուհւոյն ընծայուած էր ։

3 Հռոմուլոսի մահուընէն վերջը (716) տարի մը պարապ մնաց աթոռը, ու երկիրը կառավա-րողը ծերակոյտն էր ։ Շատ անկարգութիւններ

---

1 Հռովմայեցւոց գլխաւոր զբաղմունքն ի՞նչ էր ։
2 Ի՞նչ տօներ ունէին հին ատենը ։
3 Հռոմուլոսի մահուընէն ետքը Հռովմայեցիք ի՞նչպէս կառավարուեցան ։

եղան ան միջոցին, ու ժողովուրդը Թագաւոր մը կ'ուզէր, ինչուան որ ծերակոյտը սորվեցաւ ժողովրդեան կամքը կատարելու, և Թագաւոր ընտրեց Տատիոսի փեսան Նումա Պոմպիլիոսը ։

1 ՆՈՒՄԱ ՊՈՄՊԻԼԻՈՍ (714-671)։—Նումային արդարութեան, ժուժկալութեան, բարեպաշտութեան ու իմաստութեան անունը ամէն տեղ հռչակուած էր, և ամենուն բարի օրինակ էր. առիկայ իր Կուրէս հայրենիքը նստած ատենը՝ եկան ծերակուտին դեսպանները և իրեն իմացուցին Թագաւոր ընտրուիլը ։ Շատ դժուարութեամբ յանձն առաւ Նումա, որովհետև վարժեր էր համեստ ու խաղաղ կեանք անցընելու. բայց իրեն պէս յարմար մարդ չէր կրնար գտնուիլ որ ան այլ և այլ մանր ժողովուրդներէ ձևացած անմիաբան ազգը խաղաղութեան ու միաբանութեան կապովը միացընէ, օրէնքները անոնց պատկառելի ընէ, վայրենութիւնին կակղցընէ, մէջերնին կրօնքի սէր մտցընէ, մէկ խօսքով ընկերութեան մը հարկաւոր եղած առաքինութիւնները սորվեցընէ ։

2 Հռոմ հանելուն պէս սկսաւ աս բաները 'ի գործ դնել։ Եւ որպէս զի ժողովուրդը դէմ չկենայ ըրած կարգադրութեանցը, ձայն հանեց թէ իր ամէն ըրածը Եգերիա աստուածուհւոյն խորհրդովն է. և Հռովմայեցւոց միտքը աս Ճշմարիտ վախը ձգեց թէ Գերագոյն էակը այսինքն Աս-

---

1 Ո՞վ էր Նումա Պոմպիլիոս ։
2 Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ Նումա ։

*տուած՝ կը տեսնէ մեզքը ու կը պատժէ։ Վեստա * աստուածուհւոյն մեհեան մը շինեց (որ կրակի պաշտպան էր), ու Վեստեան ըսուած կուսանաց պարաք դրաւ որ Վեստայի սեղանին վրայ կրակը միշտ վառ պահեն. անոր վրայ հաստատուած կը կարծէին հռոմայեցիք իրենց տէրութեան ապահովութիւնը։*

[1] *Հռոմուլոս տարին տասը ամիս բաժնած էր, այսինքն Մարտ, Ապրիլ, Մայիս, Յունիս, Կուինտիլիս՝ այսինքն հինգերորդ, Սեքստիլիս՝ այսինքն*

---

[1] *Տոմարին վրայ ինչ փոփոխութիւն ըրաւ։*

* Վեստայի պաշտօնը Ենէաս Ասիայէն բերաւ Իտալիա։ Նումայի դրած Վեստեանքը չորս էին. վերջը Տարկուինիոս Երէց աւելցուց՝ վեց ըրաւ։ Ասոնք վեց տարեկանէ պզտիկ ու տասը տարեկանէ մեծ չէին ընդունուէր։ Երեսուն տարի կը պահէր իրենց պաշտօնը. տասն տարի կը սորվէին, տասը տարի ալ սորվածերնին կը սորվեցնէին։ Աս երեսուն տարուան մէջ ամէնքն ալ պարտական էին ողջախոհութիւն պահելու, իսկ երեսուն տարին լմննալէն ետքը ազատ էին։ Թէ որ յանկարծ կրակը մարելու ըլլային՝ քրմապետը սաստիկ կը ծեծէր զիրենք խարազանով. ասանկ կարգաւ բոլոր գիշերը մէյմէկ հոգի կրակին պահպանութիւն կ'ընէին. և թէ որ ողջախոհութեան դէմ բան մը ընէին՝ պատիժնին ողջ ողջ թաղուիլ էր։ Բայց աս խստութեանց փոխարէն շատ ալ մխիթարութիւններ ունէին. զոր օրինակ դատաստանի մէջ առանց երդմնանքի անոնց խօսքին կը հաւատացուէր. ճամբան թէ որ մահապարտի մը հանդիպէին՝ զինքը մահուընէ կ'ազատէին. հրապարակական խաղերու մէջ պատուաւոր տեղեր ունէին, և իրենց ապրուստը պետութենէն էր։

վեցերորդ, Սեպտեմբեր (եօթներորդ), Հոկտեմ-բեր (ութերորդ), Նոյեմբեր (իններորդ), Դեկ-տեմբեր (տասներորդ)․ և աս ամիսներէն ոմանք 35 օր կը համրուէին, և ոմանք 25։ Նումա տա-սուերկու լուսնական ամիս բաժնեց տարին, և անոր սկիզբը երկու ամիս ալ աւելցուց՝ որ ըսուե-ցան Յունուար և Փետրուար, և բոլոր տարին ե-ղաւ 355 օր (գրեթէ տաճկաց տարւոյն պէս)*։ Որոշեց նաև աւուրք գործոյ ըսուած օրերը, այս-ինքն թէ որ օրերը դատաւորները կրնային դա-տաստան կարել ու ժողովուրդը ժողովք ընել․ Նմանապէս աւուրք պարապոյ ըսուածները, որոնց մէջ թէ հասարակաց և թէ առանձնական գործ-քերը կը դադրէին։

։ Ազդարար ըսուած քուրմեր դրաւ, որոնց պաշտօնն էր թշնամեաց հետ հաշտութիւն ընել տալու համար ամէն ճար ընելէն վերջը՝ հանդի-սաւոր կերպով անոնց դէմ պատերազմ հրատա-րակել**։

---

։ Ազդարար քուրմերուն պաշտօնն ինչ էր։

* Յուլիոս Կեսար տարին նորէն արևուն ընթացքին հետ յարմարցուց, և Կուինտիլիս (հինգերորդ) ամիսը իր անունովը Յուլիս անուանեց․ Օգոստոս կայսեր ա-նունովն ալ Սեքստիլիս (վեցերորդ) ամիսը Օգոստոս ըսուեցաւ։ Բայց աս հաշուոյն մէջ ալ 11 վայրկեանի սխալ կար, որ 1582ին Գրիգոր ԺԳ պապը շտկեց։

** Ազդարարը պատերազմ որոշելէն ետքը արիւնով թաթխուած նետ մը կ'առնէր՝ տեղ 'ի թշնամեաց սահմանը կը նետէր սանկ ըսելով․ « Ես ու Հռովմայեցիք պա-տերազմ կը հրատարակենք աս ազգին ու անոր մարդիկնե-րուն դէմ »։

1 Ասոնցմէ զատ տասուերկու քուրմ ալ որոշեց որ Կայթականք կ'ըսուէին, ու անոնց յանձնեց տասուերկու պղնձէ վահաններուն պահպանութիւնը. ան վահաններուն մէկն ալ կ'ըսէին թէ Արեսին երկինքէն ձգած վահանն է, և կը համարէին թէ անով ամէն փորձանքէ ազատ պիտի մնար Հռոմ* ։

2 Նումա մեհեան մը շինել տուաւ Հաւատարմութեան, ուրիշ մըն ալ Սահմանաց աստուածոյն, որպէս զի մէկովը ամէն մարդ ըրած երդմունքն ու խոստմունքը սրբազան բան ճանչնալով խօսքին վրայ հաստատ ու հաւատարիմ մնայ, մէկալովն ալ իր երկրին ու սահմանին գոհ ըլլալով ուրիշինը չգողնայ ։ Ամենէն ետքը մեհեան մը կանգնեց Յանոս կուռքին. ան մեհենին դռները պատերազմի ատեն բաց պիտի ըլլային ու խաղաղութեան ատեն գոց. ուստի բոլոր իր թագաւորութեան ատենը գոց կեցան ։

3 Երկրագործութիւնը ծաղկեցընելու համար՝ որչափ որ նոր երկիրներու տէրեր էին Հռովմայե-

---

1 Կայթական քուրմերուն պարտքն ի՞նչ էր ։
2 Ի՞նչ մեհեաններ շինել տուաւ Նումա ։
3 Երկրագործութիւնը ի՞նչպէս ծաղկեցուց ։

* Որպէս զի Արէսին վահանը չճանչցուի ու չգողցուի՝ Նումա տասնըմէկ հատ վահան շինել տալու անոր այնչափ նման՝ որ ոչ ինքը թագաւորը կրցաւ երկինքէն ինկածը որոշել, ու ամէն ալ Արէսի տաճարը կախեցին ։ Բայց տարեկան հանդէսին մէջ (որ Մարտ ամսոյն կ'ըլլար) Կայթական քուրմերը ան վահանները ձախ թևերնին կ'անցընէին, վրան թրով մը կը զարնէին ու ցատքըռտելով կայթելով, 'ի պատիւ փօնին շինուած երգեր կ'երգէին ։

ցիք՝ ամենուն հաւասար բաժնեց. Հռոմին չորս կողմը արուարձաններ շինել տուաւ, ուր երկրագործները օգտակար աշխատանքներու գլուխն, ու վրանին այլ և այլ վերակացուներ դրաւ որ աշխատասէրներուն վարձք և ծոյլերուն պատիժ տան. ասանկով գիւղական աշխատութիւնները սիրելի եղան Հռոմայեցւոց:

1 Քառասունուերեք տարուան Թագաւորութեանը ատեն Հռոմայ ներքին ու արտաքին խաղաղութիւնը անվրդով մնաց. և ինքը մեռաւ ութսունուերեք տարեկան՝ թողլով իր պզտիկ Թոռը Անկոս Մարտիոս անունով, որ Տուղղոս Ոստիլիոսէն ետքը Հռոմայեցւոց վրայ Թագաւորեց:

2 Նումային ըրած օրէնսդրութեանը նայելով ոմանք կարծեցին թէ Պիւթագորաս փիլիսոփային աշակերտ եղած ըլլայ. բայց Նումա Պիւթագորասէն հարիւր յիսուն տարի առաջ է: Կ'ըսեն թէ եօթը գիրք գրեր է եղեր Նումա լատին լեզուով քրմապետին իրաւանցը վրայ, եօթը հաալ յունարէն՝ փիլիսոփայութեան վրայ: Տիտոս Լիւիոս կ'ըսէ թէ մահուընէն վերջը ան գրքերը քարէ տապանի մը մէջ դրին, ու երբոր Քրիստոսէ 180 տարի առաջ գետինը փորելու ատեններն ան տապանը գտնուեցաւ, Պետիլիոս պրետորը կարդալով ըսաւ ծերակուտին թէ "Վնասակար բան է ան գրքերը հրատարակելը". ուստի ծերակուտին հրամանովը հրապարակին մէջ այրեցին:

---

1 Քանի՞ տարի Թագաւորեց:
2 Ի՞նչ գրքեր շարադրած կը կարծուի:

1 ՏՈՒՂՂՈՍ ՈՍՏԻԼԻՈՍ (671–639)։ — *Խաղաղասէր Նումայէն յաջորդեց աս Հռոմուլոսէն ալ աւելի պատերազմասէր թագաւորը ։ Տուղղոս Ոստիլիոս աթոռը նստելուն պէս՝ տէրութեան կալուածները երկիր չունեցող աղքատաց ու արուեստաւորաց բաժնեց, որպէս զի անոնց սիրտը վաստըկի և կարենայ միտքը դրած բաները դիւրաւ կատարել ։*

2 *Բնութեամբ պատերազմասէր ըլլալով առթի կը սպասէր որ պատերազմ բանայ. և Ալբայեցւոց Կլուիլիոս իշխանին ըրած ծածուկ թշնամութիւնները պատճառ բռնեց ։ Կլուիլիոս մեռաւ պատերազմին մէջ, ու տեղը անցաւ Մետիոս Սուփփետիոս. անոր խորհրդովը որոշեցին որ երկու կողմէն ալ երեք կորիճ զինուորներ ելլեն մենամարտին, և որ կողմիններն որ յաղթող ելլեն՝ ան կողմը մէկալին վրայ տիրէ ։ Հռովմայեցւոց կողմանէ որոշեցին Որատիոս * անուանով երեք եղբայրը, Ալբայեցւոց կողմանէ ալ Կուրատիոս անուանով երեք եղբարք. վեցն ալ իրենց քաջութեամբը, ուժովը ու ճարտարութեամբը նոյնպէս անուանի ։*

*Երբոր երկու բանակէն ան կորիճները սկսան*

---

1 *Նումայէն ո՞վ յաջորդեց ։*
2 *Տուղղոս Ոստիլիոս ի՞նչ պատերազմ ըրաւ Ալբայեցւոց դէմ ։ — Ի՞նչ կերպով եղաւ Որատեանց և Կուրատեանց մենամարտութիւնը ։*

* Դիոնեսիոս Ալիկառնացին կ'ըսէ թէ Որատիոսք ու Կուրատիոսք երկու քրոջ որդիք էին ։

առաջ գալ, ամենուն վրայ լռութիւնը տիրած էր, և ամենուն սիրտը վախի և յուսոյ մէջ կը տագնապէր ։ Նշանը տրուելուն պէս մենամարտութիւնը կը սկսի ։ Առջի զարնուածքին երկու Որատեանք կ՚իյնան կը մեռնին ․ Կուրատեանք իրեքն ալ կը վիրաւորուին, բայց Որատեանց երրորդը չորս դիէն կը պաշարեն ։ Աս որ կը տեսնեն Ալբայեցիք, կը սկսին ուրախութեամբ պոռալ կանչել, և Հռովմայեցիք սարսափած կը մնան ։ Որատիոս թէպէտ մինակ՝ բայց մէկալ վիրաւորուած իրեքէն ալ զօրաւոր ըլլալով, ամէն հնարք կը բանեցնէ որ մէյմը զանոնք իրարմէ հեռացնէ, ու վերջապէս մէջերնէն ելլելով կը սկսի փախչիլ ․ անոնք ալ անոր ետևէն կ՚իյնան ։ Երբոր կը տեսնէ Որատիոս որ բաւական հեռացան իրարմէ, ու չեն կրնար շուտով իրարու օգնութեան հասնիլ, բոլոր ուժովը առջինին վրայ կը յարձակի, ու անիկայ գետինը կը փռէ ․ մէկալը անոր օգնութեան հասնիմ ըսելուն չմնար՝ զինքն ալ նոյնպէս կը սպաննէ ։ Երբոր երկու կողմէն ալ հաւասար մէյմէկ հոգի կը մնան, Հռովմայեցին դեռ անխոց, երկու յաղթութեամբ ալ սիրտ առած կը կռուըտի ․ իսկ Ալբայեցին վիրաւոր, արիւնլուայ ու երկու եղբարցը մահուամբը թուլցած ըլլալով ուժաթափ կ՚իյնայ իր յաղթականին ոտքը ․ Որատիոս ըրած յաղթութեանը վրայ ուրախացած՝ “ Երկու եղբարքդ իմ երկու եղբարցս հոգւոյն նուիրեցի ․ զքեզ ալ հայրենեացս ազատութեանը կը նուիրեմ „ կ՚ըսէ, ու թուրը անոր վիզը խոթելն ու հանելը մէկ կ՚ընէ ։ Ասանկով Ալբայեցւոց բանակը մէկէն հնազանդեցաւ Հռովմայեցւոց ։

1 Որատիոս չկրցաւ վաստըկած փառքը անարատ պահել, ու ան ձեռքով որով հայրենիքը ազատեր էր՝ իր քրոջը արիւնը մտաւ ։ Վասն զի երբոր թշնամւոյն կողոպուտները վրան առած՝ Հռոմ կը դառնար յաղթանակով, դիմացը կ'ելլէ իր քոյրը Կամիլլէ, որ Կուրիատեանց մէկուն հետ նշանուած էր, ու երբոր եղբօրը՝ ուսը կը տեսնէ ան վերարկուն որ ինքը ձեռքովը հիւսեր ընծայեր էր իր փեսայացուին, կը սկսի լալ ողբալ, մէկ դիէն ալ իր եղբայրը նախատել ու անիծել։ Աս որ կը լսէ Որատիոս՝ չկրնար բարկութիւնը զսպել, կը քաշէ թուրը՝ անոր փորը կը խոթէ ըսելով. "Ասանկ մեռնին ամէն Հռովմայեցիք որ Հռովմայ թշնամեացը վրայ կ'ողբան"։ Աս անգթութեան վրայ բոլոր քաղաքը ոտք ելաւ. դատաւորները Որատիոսը մահապարտ վճռեցին, և ժողովրդեան մնաց վերջին որոշմունքը. բայց ծեր հօրը ճարտասանութեամբը ու թափած արցունքներովը Որատիոս տուգանք տալով ազատեցաւ մեռնելէն ։

2 Տուղղոս իր թագաւորութեան վերջերը փառաւոր յաղթութիւն մըն ալ ըրաւ Վէյացւոց դէմ։ Վասն զի Մետտիոս Սուֆֆետիոս անունով Ալբայեցին Հռովմայեցւոց յաղթութեանը վրայ նախանձելով Փիդենացիքն ու Վէյացիքը պատերազմի գրգռեց, խոստանալով որ պատերազմի

---

1 Որատիոս ինչ բանով իր յաղթութեան փառքը մթընցուց ։

2 Տուղղոս ինչ կերպով յաղթեց Վէյացւոց ։ — Սուֆֆետիոսի մատնութիւնը ինչ էր ։

տանէն անոնց կողմը անցնի․ անոնք ալ խոստմանը վրայ վստահացած՝ սկսան Հռովմայ վրայ գալ։ Պատերազմը սկսաւ, ու Սուփփետիոս ոչ մէկ կողմին և ոչ մէկալին օգնելով, երկուքին ալ մտանիչ, իր զօրքովը մէկդի կեցաւ ու պատերազմը կը դիտէր։ Երբոր բոլորովին յաղթեցին Հռովմայեցիք, Սուփփետիոս իր մատնութիւնը ծածկելու համար մէկ քանի փախստական Թշնամեաց վրայ յարձակեցաւ։ Տուլլոս Թէպէտ ամէն բան կ՚իմանար գերիներէն, բայց չիմանալու զարնելով ան օրը զինքը սիրով ընդունեցաւ, ու երկրորդ օրը զօրացը հանդէս ընելու ատեն բռնել տուաւ Սուփփետիոսը, ոտուըներն ու ձեռուըները երկու քառաձի սայլերու կապել տալով իրարու հակառակ վազցուց ու կտոր կտոր ըրաւ անոր մարմինը․ ետքը հրամայեց որ Ալբա քաղաքն ալ կործանեն, ու բնակիչքը Հռոմ անցուց։ Աս կերպով մէկ մատնիչ մարդու մը պատճառաւ կործանեցաւ Լատինացւոց մայրաքաղաքը, որուն մէջ Թագաւորեր էին ատենով Հռոմուլոսի նախորդներն ու պապերը։

¹ Տուլլոս Ոստիլիոսի համար հեթանոս պատմիչներէն ոմանք կ՚ըսեն Թէ օր մը Նումայինին պէս ծածուկ տեղ մը քաշուած զոհ ընելու ատենը՝ անհոգութեամբ օրինադրուած ծէսերը չպահելուն համար՝ Արամազդ վրան բարկացեր ու կայծակնահար մեռուցեր է զինքը․ ոմանք ալ Թէ Թրով ըսպաննեց զինքը Անկոս Մարտիոս իր կուսակիցներովը, որ յանցանքնին գոցելու համար անոր պա-

---

¹ Ինչպէս մեռաւ Տուլլոս։

լանն ալ այրեցին ։ Տուլլոսի Թագաւորութիւնը երեսունըերեք տարի քշեց (639) ։

[1] ԱՆԿՈՍ ՄԱՐՏԻՈՍ (639-614) ։ — Ասիկայ իր պապուն Նումայի հետեւելով կրօնական բաները ջանաց ծաղկեցընել, ու առաջ տանիլ երկրագործութիւնը՝ որ իր նախորդին ատենը շատ ընկած էր ։ Նումային օրէնքները կաղնիէ տախտակներու վրայ գրել տուաւ ու հրապարակը դրաւ, որ ժողովուրդը աչքին առջեւն ունենայ ։

[2] Թէպէտ և բնութեամբ խաղաղասէր էր Անկոս, բայց գրեթէ բոլոր Թագաւորութեան ժամանակը պատերազմով անցուց ։ Լատինք տեսնելով որ ասիկայ կրօնասէր Թագաւոր մըն է, ու բոլոր կեանքը մեհեաններու մէջ անցուցեր է, սկըսան Հռովմայեցւոց երկիրները ոտնակոխ ընել ։ Անկոս չուզեց մէկէն վրանին պատերազմի ելլել. մարդ խրկեց որ հանդարտ կենան. երբոր անոնք արհամարհեցին՝ ազդարար քուրմը Թշնամեաց սահմանը գնաց, ու գլուխը քող մը ձգած սկսաւ կանչել. "Արամազդ և Հերայ, երկնից ու երկրի և սանդարամետաց աստուածներ, զձեզ վկայ կը կանչեմ աս ժողովրդեան անիրաւութեանը". ու վրանին նետը նետելով՝ պատերազմը հրատարակեց ։

Անկոս գնաց Լատիններուն Պոլիտորիոն քաղա-

---

1 Անկոս Մարտիոս ի՞նչ կերպով սկսաւ Թագաւորութիւնը ։

2 Լատիններուն դէմ ի՞նչ պատճառաւ պատերազմի ելաւ ։

*քին վրայ, նեղը ձգելով առաւ կործանեց ու բնակիչքը Հռոմ փոխադրեց. Փիդենէ քաղաքն ալ պաշարեց ու բանակէն ինչուան քաղաքին պարիսպը ական փորել տալով առաւ: Նոյնպէս ուրիշ շատ քաղաքներուն ալ տիրեց ու բնակիչքը Հռոմ տարաւ. և որովհետև Հռոմ պզտիկ կուգար, Աւենտին լեռը ներս առնելով Հռովմայ հետ միացուց, ու նոր գաղթականները հոն բնակեցուց: Ցանիկուլոն լեռն ալ Եդրուրացւոց ձեռքէն առաւ, որ Տիբերիս գետին մէկալ կողմն էր, փայտէ կամրջով մը քաղաքին հետ միացուց, և քրմապետներուն* յանձնեց որ վրան հոգ ունենան ու ատեն ատեն նորոգեն: Տիբերիս գետին բերանը Միջերկրական ծովուն վրայ Ոստիա քաղաքին նաւահանգիստը փորել տուաւ, որ Հռովմայեցւոց ծովային վաճառականութեան դուռ եղաւ: Անկոս շինել տուաւ նաև առաջին բանտը, ջրմուղ ու լուալիք մըն ալ բանալ տուաւ, և բոլոր Հռոմ քաղաքը պարսպով պատեց: Մեռաւ Անկոս 614ին՝ քսաներչորս տարի թագաւորելէն ետքը:*

---

* Կ'ըսեն ոմանք թէ լատիներէն փօնթիֆէքս անունը որ կամրջագործ ըսել է, աս պաշտօնէն առնուած է, և հիմա կը նշանակէ քրմապետ, քահանայապետ:

## ԳԼՈՒԽ Բ.

Տարկուինեանց Հռոմ երթալը. — Տարկուինիոս Երէց — Լատինացւոց ու Սաբինեանց դէմ ըրած պատերազմը. — Տարկուինիոսի մահը. — Սերվիոս Տուլլիոս. — Ետրուրացւոց դէմ պատերազմը. — Արտեմեայ մեհեանը. — Սերվիոսի մահը. — Տարկուինիոս Գոռոզ. — Անոր բռնակալութիւնը. — Տուռնոս. — Գաբիեսի պաշարումը. — Կապիտոլիոնի հիմնարկութիւնը. — Սիբիլլա. — Բրուտոս. — Լուկրետիա. — Թագաւորութեան վերջանալը: (614–509):

[1] ՏԱՐԿՈՒԻՆԻՈՍ ԵՐԷՑ (614-578): — *Անկոս Մարտիոսի թագաւորութեան ատենը Դեմարատ անունով հարուստ յոյն իշխան մը Կորնթոսի խռովութիւններէն ձանձրացած՝ հետը անբաւ հարստութիւն առեր Իտալիա անցեր էր, ու Ետրուրիայի Տարկուինիա քաղաքը կը բնակէր: Հոն քիչ ատենէն մեռնելով շատ հարստութիւն թողուց իր Լուկումոն որդւոյն: Լուկումոն Ետրուրացւոցմէ արհամարհուելով իբրև օտար ու փախստական, և իր կնոջը Տանակուիլայի յորդորանքովը Տարկուինիայէն կ'ելլէ ու բոլոր հարստութիւնը առած Հռոմ կ'երթայ: Ճամբան արծիւ մը գլխուն վրայ քիչ մը թռչրտելով գլխէն գլխարկը առեր ու կառքին վրայ քիչ մը ատեն կանչելով թռչրտելէն վերջը նորէն գլուխը դրեր է կ'ըսեն. Տանակուիլա կինը աս որ կը տեսնէ, որովհետև հմայ-*

---

[1] *Ո՞վ էր Տարկուինիոս Երէց:*

ուլթենէ կը հասկընայ եղեր՝ աւետիս կուտայ էրկանը ուրախութեամբ որ քիչ ատենէն Թագաւոր պիտի ընտրուիս ։

1 Հռոմ հասնելնուն պէս Լուկումոն իր անունը Տարկուինիոս դրաւ, ու քիչ ատենի մէջ անուշ բնաւորութեամբն ու բարեգործութիւններովը ամենուն սիրելի եղաւ ։ Անկոս Թագաւորն ալ քովը առաւ զինքը, ու մեռնելու ատենը իր որդւոցը խնամակալ դրաւ ։ Տարկուինիոս վախնալով որ Անկոսի որդիքը արգելք չըլլան իր գլխաւորութեանը, զանոնք Հռոմէն հեռացուց, ու ժողովրդեան իր արդիւնքը և Հռոմայ վրայ ունեցած սէրը ցուցընելով առաջարկեց որ զինքը Թագաւոր ընտրեն. հաւանեցաւ ժողովուրդը, ու մէկ բերան զինքը ընտրեցին Թագաւոր (614). Տարկուինիոս ալ իր Թագաւորելուն պատճառ եղողները վարձատրելու և ժողովրդեան սիրտը վաստըկելու համար՝ ժողովրդէն հարիւր հոգի ընտրեց, ու ծերակուտին Թիւը իրեք հարիւր ըրաւ ։

2 Լատինք յուսալով որ կարենան նորէն ձեռք ձգել Պոլիտորիոն ու Մեդուլլիա քաղաքները՝ սկսան Հռոմայ երկիրները արշաւանք ընել ։ Պատերազմի ելաւ վրանին Տարկուինիոս, յաղթեց, ու նոր քաղաքներ ալ առաւ ։ Սաբինացիք ալ նորէն սկսան գլուխ վերցընել. երկու անգամ յաղթեց անոնց Տարկուինիոս ու հաշտութիւն ուզելու ստիպեց. վասն զի երբոր Տիբերիս ու Անիենոս գետերուն երկու եզերքը բանակնին դրած

---

1 Ի՞նչ կերպով Թագաւոր եղաւ ։
2 Ի՞նչ յաղթութիւններ ըրաւ ։

ու գետերուն վրայ նաւակներով փայտէ կամուրջ շինած պատրաստ կեցեր էին, Տարկուինիոս անոնց բազմութեանը ճարտարութեամբ յաղթել ուզելով շատ մը նաւակներ իջեցուց գետը, և անոնց մէջ խուխ, ծծումբ և ուրիշ դիւրավառ նիւթեր լեցուցած՝ կէս գիշերուն բռնկցուց ու կամուրջներուն վրայ խրկեց. երբոր Սաբինեանք յանկարծակիի գալով կրակը մարելու կ'աշխատէին, անդիէն Տարկուինիոս առաւօտուան դէմ զօրքը առած վրանին վազեց, ու գետին մէկ կողմը մնացածներուն մեծ ջարդ տուաւ, որը ցրուեց, որն ալ գետին մէջ խեղդեց:

1 Քանի մը տարի ետև նորէն ոտք ելան Սաբինեանք, ու հինգ տարիի չափ քաջութեամբ Հռովմայեցւոց դէմ դնելէն վերջը՝ նորէն հնազանդեցան: Ետրուրիոյ տասներկու ազգերն ալ ինը տարի (597-588) միակերպ պատերազմելէն ետև վերջապէս հնազանդեցան Հռովմայեցւոց. և անոր համար Տարկուինիոս մեծ յաղթանակ * ըրաւ: Ինքը քառաձի կառք մը նստեր էր և գլուխը պսակ դրած, ձեռքը թագաւորական գաւազանը բռնած, վրան փառաւոր ծիրանի մը ձգած,

1 Սաբինեանց ինչպէս յաղթեց երկրորդ անգամ:

* Պզտիկ յաղթանակը Հռոմուլոս Կենինացւոց յաղթելէն ետքը հաստատեր էր, և ան յաղթանակին ատենը ոչխար մը զոհ կ'ընէին. յաղթանակ ընողը ոտքով կը մտնէր Հռոմ՝ ձեռքը դափնիի ճիւղ մը բռնած ու գլուխը մրտենիով պսակուած: Իսկ մեծ յաղթանակը որ Տարկուինիոս հաստատեց՝ կառքով կ'ըլլար, ու հանդիսին ատենը երկու ճերմակ ցուլ կը զոհէին. յաղթանակողը ոսկեթել պատմու-

այնպէս հանդիսով քաղաքին մէջ պտըտեցաւ։ Ան ատենէն սկսաւ Հռոմ բոլորովին փոխուիլ, բարակնալ, ու Ետրուրիոյ նմանիլ։ Թագաւորները սկըսան Թագաւորական աթոռի վրայ նստիլ, ծերակոյտը փղոսկրէ աթոռներու վրայ, ասպետները սկսան մատներնին մատանի գնել, պատրիկները ոսկի գունտ մը կը բռնէին ձեռքերնին, ազնուականնաց տղաքը ոսկեթել ծիրանի կը հագնէին, մեհեանները գեղեցիկ արձաններով զարդարուեցան ու ճարտարութիւնը սկսաւ Հռոմայ մէջ օրէ օր ծաղկիլ։

1 Երբոր Տարկուինիոս ամէն կողմէն հանգստացաւ, սկսաւ քաղաքը գեղեցիկ ու օգտակար շէնքերով զարդարել։ Հրապարակին չորս կողմը կըրպակներ բանալ տուաւ, դատարաններ ու տղոց համար դպրոցներ շինեց։ Քաղաքին շրջապարիսպը՝ որ արդէն սկսած էր շինուիլ, մեծամեծ քարերով շինեց լմնցուց ու Տարպեան ժայռին վրայ Արամազդայ տաճարին՝ այսինքն Կապիտոլիոնի հիմը ձգեց։ Հռոմ ջուր բերելու համար ջրմուղներ փորել տուաւ, քաղաքին աղտոտութիւններն ալ Տիբեր գետը վազցնելու համար լուալիքներ։ Միայն ատոր համար մեծադրուած է Տարկուինիոս հեթանոս պատմիչներէն որ Նումայէն դրած պարզ

---

1 Ի՞նչ շէնքեր շինեց Տարկուինիոս։

Ճան մը հագած, փառաւոր կառքով Կապիտոլիոն կը տարուէր։ Մեծ յաղթանակ մը ընել կարենալու համար պէտք էր որ զօրավար մը նոյն պատերազմին մէջ հինգ հազար մարդ սպաննած ըլլար։

պաշտօնը այլայլեց, ու թող տուաւ որ օտար աստուածները ալ տարուէին Հռոմ։

1 Անկոսին երկու որդիքը մեծնալով, և ոխ ունենալով Տարկուինիոսի դէմ որ նենգութեամբ իրենց հօրը թագաւորութենէն զրկեց զիրենք, առթի կը սպասէին որ զանիկայ սպաննեն։ Երկու յանդուգն գեղացի գտան ու անոնց յանձնեցին որ աս խորհուրդը կատարեն. անոնք կռնակնին մէյմէկ կացին զարկած՝ Տարկուինիոսի պալատին առջև պտտալով կանչելով իրարու հետ կռուիլ սկսան ու թագաւորէն իրաւունք կ'ուզէին. թագաւորը ձայներնին լսեց, ուզեց դատաստաննին կտրել. բայց անոնք պալատը մտած չմտած՝ սկսան երկուքը մէկտեղ կանչուըռտել ու իրարու խօսքը կտրել։ Հազիւ թէ մէկը լռեցուցին, ու թագաւորը մէկալին խօսքը մտիկ կ'ընէր, լռած կեցողը կացինը վերցընելն ու թագաւորին գլուխը զարնելն ու մեռցընելը մէկ ըրաւ (578)։ Մէկէն երկուքն ալ բռնեցին բանտ դրին և Անկոսի որդիքը իրենց վախճանին չհասան։ Երեսունըութը տարի փառաւոր թագաւորութիւն ըրաւ Տարկուինիոս։

2 Տարկուինիոսի թագաւորութեան ատենը Կեղտք Պելլովեզի առաջնորդութեամբը Գաղղիայէն ելան, Ալպեան լեռներէն անցան, Ետրուրացիքը հալածեցին ու Պադոս կամ Փոյ գետին քովի երկիրներուն մեծ մասին տիրեցին։

---

1 Անկոսի որդիքը ինչ հնարքով սպաննել տուին Տարկուինիոսը։

2 Տարկուինիոսի թագաւորութեան ատենը ինչ արշաւանք ըրին Գաղղիացիք Իտալիա։

[1] ՍԵՐՈՒԻՈՍ ՏՈՒՂՂԻՈՍ ( 578-534 )։ Տարկուինիոսի մահուան դոյժը լսուելուն պէս՝ ժողովուրդը ամէն կողմէն պալատը թափեցաւ։ Թագաւորին կինը Տանաքուիլա դուները գոցելով պատուհանէն անանկ խմացուց քաղաքացւոց որ թագաւորին վէրքերը մահացու չէին, և քանի մը օրէն վերայ գնելով անձամբ հետերնին կը տեսնուի ու ձեր. իրեն ցուցըցած սիրոյն համար շնորհակալ կ'ըլլայ, միայն կը պատուիրէ որ մէկ քանի օրուան համար ամէն բանի մէջ իմ փեսայիս, այսինքն Սերուիոս Տուղղիոսին հնազանդիք։ Աս չինծու հրամանին զօրութեամբը Սերուիոս քանի մը օր տէրութիւնը կառավարեց, ու միանգամայն ջանաց իրեն կուսակիցներ շահըցնել՝ աղքատաց պարտքերը վճարելով. երբոր տեսաւ որ ծերակոյտն ալ վրան գոհ է՝ աներոջը մահը հրատարակեց. առջի բերան զինքը Տարկուինիոսի երկու թոռանցը խնամակալ դրին, բայց ետքը թագաւոր ալ անուանեցին։

Սերուիոս քաջ զօրավար ու իմաստուն օրէնսդիր ըլլալով պարապ չհանեց ժողովրդեան յոյսը, և Նախանձորդաց բերանը գոցեց։ Քանի տարի Ետրուրացւոց հետ պատերազմելով իշխանութեանը մէջ հաստատուեցաւ։ Ետրուրացիք երկար ատեն դիմանալէն ետքը՝ վերջապէս խոնարհեցան, հաշտութիւն ուզեցին Հռովմայեցւոցմէ։

[2] Ան ատենները շատ համբաւաւոր էր Եփե-

---

1 Սերուիոս Տուղղիոս ինչպէս թագաւորեց։
2 Ի՞նչ մեհեաններ շինեց։

սոսի մէջ եղած Արտեմեայ տաճարը, որ Ասիոյ քաղաքներուն հասարակաց ծախքովը շինուած էր. Սերուխոս ալ դիտնալով թէ ինչուան որ Լատինները սիրոյ ու կրօնքի կապերովը Հռովմայեցւոց հետ չկապէ՝ Հռոմ խաղաղութիւն պիտի չգտնէ, ուզեց որ անոնց հետ մէկտեղ հասարակաց ծախքովը Աւենտին լերան վրայ Եփեսոսի տաճարին նման մեհեան մը շինէ: Հաւանեցան Լատինք, ու մեհենին շէնքը լմննալուն պէս՝ մէջը աստուածուհւոյն զոհեր մատուցանելով՝ իրարու հետ դաշնադրութիւն մը ըրին, ու ան դաշնադրութեան պայմանները մեհենին մէջ պղնձէ սիւնի մը վրայ փորեցին: Ուրիշ մեհեան մըն ալ շինեց Սերուխոս ու Բախտին նուիրեց, անունը դնելով Նախածին բախտ, իբր թէ անիկայ էր որ ծննդենէն 'ի վեր իրեն օգներ էր:

[1] Սերուխոս Ետրուրացւոց հետ ալ նոր հաշտութիւն ընելով երբոր ամէն կողմէն հանգստացաւ, սկսաւ օգտակար փոփոխութիւններով տէրութիւնը բարեկարգել: Նախ Վիմինալ ու Եսկուիլիա ըսուած բլուրները ներս առաւ, Հռոմին հետ միացուց, որոնց իւրաքանչիւրին վրայ մէյմէկ ընդարձակ քաղաք կրնար շինուիլ, ու գետինը տուն չունեցողներուն տուաւ որ տուն շինեն, ինքն ալ Եսկուիլիային վրայ իրեն պալատներ շինել տուաւ: Սերուխոս վերջին Թագաւորն եղաւ որ Հռոմը մեծցուց, և առաջ որ հինգ բլրի վրայ էր քաղաքը, երկուք ալ ինքը աւելցրնելովը՝ եօթը ե-

---

[1] Հռոմ քաղաքը ինչպէս մեծցուց:

պաւ, ու ան ատենէն սկսաւ Հռոմ Եօթնաբլուր քաղաք ըսուիլ:

[1] Սեւերոս Հռովմայեցւոց Թագաւորներուն մէջ առաջին եղաւ որ գրոշմաւոր ստակ կոխել տուաւ. վասն զի իրմէ առաջ եղածները պարզ պղնձի կամ կապարի կտորներ էին, և որովհետև ամենէն առաջ կոխուած ստակները ոչխարի կերպարանքով էին, անոր համար Հռովմայեցւոց մէջ ստակին անունը Փէքունիա ըսուեցաւ, որ ոչխարենի կամ ոչխարատիպ կը նշանակէ:

[2] Քաղաքը չորս Թաղ բաժնեց Սեւերոս, ու հրաման հանեց որ ամէն նոր ծնած տղու համար մէկ դրամ մը տրուի Լուկինեայ մեհեանը՝ որ տղաբերքի աստուածուհին էր, ամէն մեռելի համար ալ Լիբիտինեայ մեհենին՝ որ Թաղման աստուածուհին էր. երիտասարդութեան հասնելուն ալ Յուենտասին՝ որ երիտասարդաց աստուածուհին էր: Աս հնարքներով թէ ստակ կը ժողվէր, և թէ բնակչաց ճիշդ թիւը կ'իմանար, անով աս ալ կը գիտնար թէ որչափ մարդ ունի պատերազմի յարմար:

[3] Ժողովրդեան թիւը և հարստութիւնը իմանալու համար օրէնք դրաւ որ հինգ տարի մէյմը ամէնքն ալ զէնքերնին առնեն, Արեսի հրապարակը շարուին ու ըսեն թէ քանի հոգի ունին տուներնին. առջի աշխարհագրին (576) ատենը իմացուեցաւ

---

1 Ի՞նչ տեսակ ստակ հանեց:
2 Ի՞նչ տուրքեր դրաւ:
3 Ժողովրդեան թիւը իմանալու համար ի՞նչ օրէնք դրաւ:

որ Հռոմ ութսուն հազար հոգի միայն կարող պատերազմող կայ եղեր : Գիտնալով որ տգէտ ու փոփոխամիտ ռամկին խօսք հասկցըները դժուար է , ու քանի որ ռամկին ձեռքը բացարձակ իշխանութիւն կայ՝ քաղաքին մէջ խռովութիւնները չեն դադրիր , բոլոր ժողովուրդը խումբ խումբ հարիւրական հոգի բաժնեց ու պատուիրեց որ առանձին իրենց մէջը վիճակ ձգեն , մէյմէկ երեսփոխան ընտրեն , ու ընդհանուր ժողովքի մէջ անոնց գըլխաւորը միայն երեւնայ : Ասով ազնուականներուն ձեռքը միայն մնաց իշխանութիւնը :

1 Սերուիոս Թէպէտ և Թագաւորական պատիւ ու աթոռ ունեցաւ , բայց իրեն ատենով ծառայական վիճակի մարդ ու գերիի մը զաւակ ըլլալը չմոռցաւ . ուստի շատ աշխատութեամբ ծերակոյտը համոզեց որ գերիները ազատ ըլլան ու քաղաքացւոց կարգը կարենան անցնիլ . ասանկ ազատուողները ազատագրեալ կամ ազատագիր կ'ըսուէին :

2 Սերուիոս կը մտածէր որ միապետական կառավարութիւնն ալ վերցընէ ու Հռոմ հասարակապետութիւն հաստատէ . բայց մահը վրայ հասնելով չկրցաւ , և քառասունըչորս տարի այսպիսի բարեշէն Թագաւորութիւն ընելէն ետքը՝ դաւաճանութեամբ մը սպաննուեցաւ :

Սերուիոս իր երկու աղջիկը Տարկուինիոսին երկու Թոռներուն հետ կարգեր էր : Եւ որովհետև աղջիկներն ու փեսաները իրարու ներհակ բնութիւն ունէին , հեզը կռուասէր այրուն տուաւ ,

---

1 Գերիներու համար ի՞նչ աղէկութիւն ըրաւ :
2 Ի՞նչ կերպով մեռաւ Սերուիոս :

կռուասէրն ալ հեզին, յուսալով որ մէկզմէկ կրթեն ։ Բայց Ղուկիոս Տարկուինիոս դաժան փեսան և իր կռուասէր ու փառասէր աղջիկը Տուղղիա խօսքը մէկ ըրած՝ իրենց ընկերները սպաննեցին ու մէկզմէկ առին ։ Ղուկիոս փառամոլ Տուղղիային խօսքերուն ալ նայելով, որ գիշեր ցորեկ՝ Երբ պիտի Թագաւորես ըսելով գլուխը կը տաքցընէր, սկսաւ ծերակոյտը իր կողմը որսալ ։ Օր մըն ալ հետը Թիկնապահներ առած՝ յանկարծակի իր կուսակիցներուն հետ մէկտեղ հրապարակը մտաւ, ու երբոր ամէնքը սարսափած՝ դիմացը դէմ ելլող մը չկար՝ շիտակ վեր ժողովարանը ելաւ, Թագաւորական աթոռը նստաւ ու հրամայեց որ շուտ ծերակոյտը գայ ժողվուի Տարկուինիոս Թագաւորին քովը ։ Մէկէն ամէնքը վազեցին եկան՝ որը կաշառուած ըլլալով, որն ալ վախէն որ ետքը յանցաւոր չգտնուի ։ Ան միջոցին Սերուիոս բանը իմանալով կը վազէ կուգայ . “ Աս ինչ յանդգնութիւն է որ ինչուան աթոռս ելեր նստեր ես, վար իջիր ” ըսելուն չմնար՝ Տարկուինիոսը խեղճ ծերուն մէջքէն բռնած “ Դուն վար իջիր, որ այսչափ ատեն անիրաւութեամբ պապուս աթոռը նստար ” ըսելով դուրս կը քաշէ ժողովարանէն ու աստիճաններէն վար հրելով ինչուան հրապարակը կը գլորէ ։ Սերուիոս չորս դին կոտրրտած ու արիւնլուայ՝ քանի մը հաւատարիմ Թիկնապահներովը պալատը երթալու ատեն, անօրէն Տարկուինիոսը ետևէն մարդ կը խրկէ որ ճամբուն վրայ կը զարնեն Սերուիոսը կը սպաննեն ։ Աս որ կը լսէ անգութ ու հայրատեաց աղջիկը Տուղղիա, մէկէն կառք կը մտնէ ու հրապարակը կ'երթայ որ իր

էրկանը Թագաւորութիւնը շնորհաւորէ. 'ի դարձին երբոր Սերուիոսի մեռելին ձգուած տեղը կը հասնին, կառավարը զարհուրած ձամբան փոխելով անոր կը ցուցընէ մեռելը. Տուղղիան կատղած՝ հրաման կուտայ որ կառքը հօրը մեռելին վրայէն կոխկրտելով անցընէ: Այս մեծ անօրէնութեան յիշատակը մնալու համար ձամբուն անունը Եղեռնական գրին:

1 ՏԱՐԿՈՒԻՆԻՈՍ ԳՈՌՈԶ (534-509): — Տարկուինիոս առանց ծերակուտին ու ժողովրդեան ընտրութեանը Թագաւորական աթոռը յափշտակելուն ու այնչափ անգթութեանցը համար Գոռոզ ըսուեցաւ, որ անգութ ալ կը նշանակէ: Աթոռը նստելուն պէս սուտ պատճառներով ծերակուտին ու ժողովրդեան գլխաւորներէն ոմը աքսորել, ոմը մեռցընել տուաւ, ստացուածքնին գրաւեց, ու օրէնքները ոտքի տակ առած՝ առանց ծերակուտին ու ժողովրդեան խորհուրդ հարցընելու տէրութեան կառավարութիւնը ձեռք առաւ:

2 Ասանկով Տարկուինիոս բոլոր ժողովրդեան ատելի եղած՝ նայեցաւ որ զօրքը իրեն կողմը ձգէ, և կէս մը անուշութեամբ ու կէս մը ստակով անոնց սիրտը որսաց: Մէկ կողմանէ Թիկնապահները շատցուց, ու շատ մը օտար զօրքեր իրեն պահպանութիւն կ'ընէին. մէկալ կողմանէ լրտեսներով ու տանջանքներով զամէնքը կը սարսափե-

---

1 Տարկուինիոս ինչո՞ւ Գոռոզ ըսուեցաւ, ու ի՞նչպէս սկսաւ Թագաւորութիւնը:

2 Ի՞նչ կերպով սկսաւ տիրապետել:

ցրնէր . ծերակուտին ու ժողովրդեան ժողովքներն ալ բոլորովին դադրեցուց , որպէս զի իր բռնութիւններուն վրայ խօսք չբացուի , ու իրենց գլխուն ճարը տեսնելու չմտածեն . իսկ ռամիկ ժողովուրդը հասարակաց շէնքերու զբաղեցուց :

[1] Տարկուինիոսի անգթութիւնը հասկըցնելու համար՝ ըրածներէն մէկ հատը յիշենք : Սերուիոսի մեռնելէն ետքը երբոր Սաբինեանք ապստամբեցան , Տարկուինիոս Լատինաց քաղաքներէն պատգամաւորներ կանչեց որ խորհուրդ ընեն , ու ան օրը ինքը ուշացաւ գալու : Պատգամաւորները նեղացան . բայց ամենէն աւելի Տուռնոս Երդոնիոս անունով մէկը , որ և մէկալնոնց առջև Տարկուինիոսի վրայ շատ մեղադրութիւն ըրաւ : Իրիկուան դէմ հասաւ Տարկուինիոս , և ուշանալուն պատճառ բերաւ թէ անհնազանդ տղու մը դատաստանը տեսնելու հետ էի : Տուռնոս պատասխան տուաւ թէ “ Անհնազանդ տղան պատժելու է . անոր ժամանակ անցընել ի՞նչ պէտք է ,, : Այս համարձակ պատասխանին վրայ Տարկուինիոս նեղացած , վրէժը հանելու համար՝ Տուռնոսի ծառաներէն մէկ քանին կաշառեց ու ապսպրեց որ անոր տանը մէջ զէնքեր տանին պահեն : Առաւօտանց կանուխ կանչեց պատգամաւորներն ու ըսաւ թէ “ Տուռնոս երէկ ամէնքնիս ալ պիտի մեռցըներ՝ թէ որ ես ժողովարանը կանուխ հասած ըլլայի . աս խօսքիս ճշմարտութեանը նշան երթանք զէնքերը տեսնենք որ տանը մէջ դիզեր է ,, ըսաւ : Առջի բերան չհա_

---

1 Ի՞նչ անգթութիւններ ըրաւ :

ւստացին. բայց երբոր գնացին զէնքերը առնելու, զարմացած շնորհակալ եղան որ զիրենք մահուանէ ազատեց : Ուստի Տարկուինիոս հրամայեց որ Տուռնոսը ողջ ողջ թաղեն մեծ փոսի մը մէջ :

¹ Այսպիսի անկարգ բռնակալութիւնը դրսէն ալ հաստատելու համար՝ Լատինաց հետ դաշնադրութիւն ըրաւ. Լատինացւոց քաղաքներէն քառասունութը հատը, և անոնցմէ զատ Եռնիկեանք ու Վոլսկեանք ան դաշնադրութեանը մէջ մտան ու տօն մը հաստատեցին՝ որ տարին անգամ մը ան օրը կը ժողվէին, ու զոհեր մատուցանելէն վերջը առուտուր կ'ընէին ու իրենց քաղաքական պիտոյքը կը հոգային :

² Քանի մը քաղաքներ ան դաշնակցութիւնը յանձն չառին. Տարկուինիոս բարկացած պատերազմի ելաւ, Սուեսսա Պոմետիա քաղաքը առաւ կողոպտեց, ու բոլոր բնակիչները թրէ անցուց : Պաշարեց նաև Գաբիէս քաղաքը որ եօթը տարի քաջութեամբ դէմ դրաւ. իր Սեքստոս որդին ան պաշարման երկայն քշելուն վրայ բարկացած՝ հօրը բռնութիւններէն փախածի պէս գնաց Գաբիացւոց առջևն այնչափ խեղճ թափեց որ խաբուեցան, խղճացին վրան ու զինքը իրենց զօրապետ ըրին : Մէկ քանի պատերազմներու մէջ Տարկուինիոսի զօրացը յաղթել ձևացուց Սեքստոս. երբոր տեսաւ որ Գաբիացիք իր վրայ վստահ են՝ մարդ խրկեց հօրը հարցընելու թէ ի՞նչ ընէ : Տարկուի-

---

¹ Դրսի ազգաց հետ ի՞նչպէս վարուեցաւ :

² Սուեսսա Պոմետիա ու Գաբիէս քաղաքներուն ի՞նչպէս տիրեց :

նիոս առանց պատասխան տալու՝ պարտէզին իջաւ ու գաւազանին հետ քալելու ատեն խաշխաշներուն մէջէն երկայններուն գլուխները կտրտեց։ Սեքստոս երբոր աս բանս լսեց՝ հօրը միտքը հասկըցաւ, ու Գաբիացւոց մեծամեծները մէյմէկ պատճառաւ մեռուց. քիչ ատենէն Գաբիէս անձնատուր եղաւ Տարկուինիոսի։

[1] Անկէց վերջը ուզեց Տարկուինիոս Հռոմը զարդարել. նախ լմնցընել տուաւ Տարկուինիոս Երիցուն սկսել տուած ջրանցքները ու լուայիքները, և Տարպէեան բլրին վրայ Արամազդայ փառաւոր կռատուն մը շինել տուաւ՝ Հռոմէական անունին արժանի։ Անոր հիմը փորելու ատեն մարդու կառափ մը գտան, և ան կառափը անանկ թարմ էր որ կարծես թէ նոր կտրուեր էր կ'ըսեն. հաւահմանները աս մեկնութիւնը տալով ըսին թէ Հռոմ Իտալիոյ գլուխը պիտի ըլլայ. անկէց կռատունին ալ Կապիտոլիոն ըսուեցաւ, որովհետև [illegible] գլուխ ըսել է։ Աս առասպելն ալ կը պատմեն թէ ան բլրին վրայ շատ աստուածներու սեղաններ կան եղեր, որոնք հարկ էր ուրիշ տեղ փոխադրել. փոխադրութիւնէն առաջ հաւահմանները կը հարցնեն աստուածոց թէ ո՞ւր կ'ուզէք փոխադրուիլ. ամէնքն ալ իրենց ուզած տեղերնին կը ցուցնեն. բայց Սահմանաց աստուածը ու Մանկութեան աստուածուհին տեղերնէն չեն ուզեր փոխուիլ, և երկուքն ալ կռատան շրջափակին մէջ կը մնան։ Անոր ալ ասանկ մեկնութիւն մը տուին հաւահմանները թէ Հռոմայ ինքնակալութեան

---

[1] Ի՞նչ շէնքեր շինեց Տարկուինիոս Գոռոզ։

սահմանը անփոփոխ պիտի ըլլայ, և Հռոմ միշտ ծաղկած իր մանկութեան ուժին մէջ պիտի մնայ ։ Այսպիսի հրաշալի գուշակութիւններն ալ շատ սիրտ տուին Հռովմայեցւոց այնչափ քաջութիւններ ընելու. վասն զի մտքերնին դրած էին թէ աստուածոց կամքը ան է որ իրենք բոլոր աշխարհիս տիրեն ։

¹ Ան ատեններն Սիբիլլա անունով անծանօթ կին մը ինը կտոր գիրք բերաւ Տարկուինիոսին ծախելու ։ Երբոր Թագաւորը անոր ուզած գինը չտուաւ, կինը գնաց գրքերուն իրեքն այրեց, ու նորէն եկաւ մնացած վեցին համար բոլորին գինն ուզեց. Տարկուինիոս վռնտեց զինքը ։ Գնաց կինը իրեք մըն ալ այրեց ու նորէն եկաւ իրեք մնացածին համար բոլորին գինն ուզեց՝ ըսելով թէ “Ասոնք ալ պիտի այրեմ„ ։ Զարմացաւ Թագաւորը կնկան աս կերպին վրայ. հաւահարցները կանչեց, հարցուց. անոնք ալ այրածներուն վրայ ցաւելով՝ մնացածը գնել տուին ։ Կինը ստակը առածին պէս գնաց, մէյմըն ալ չերեւցաւ ։ Ետքը հրամայեց Տարկուինիոս որ ան գրքերը իր բարեկամներէն երկու հոգի զգուշութեամբ պահեն Կապիտոլիոնի կռատանը մէջ ։ Հարիւր տարիէն ետքը Սիղղայի ատենը տասնըհինգ հոգի եղան ան գրքերուն պահապանները, որ եղած ու ըլլալու դիպուածները ան գըրքերուն մէջէն կը ստուգէին ։ Կ'ըսեն թէ աս բանս Տարկուինիոսի հնարքն էր՝ որ ան գրքերով ժողովուրդը խաբէ և իր ուզածը առաջ տանի ։

---

¹ Սիբիլլային պատմութիւնը ի՞նչ է ։

1 Երբոր Տարկուինիոս աս բաներուս զբաղած էր, օր մը իր պալատին փայտէ սիւներէն մէկուն մէջէն օձ մը ցատքեց ու զամէնքը վախցուց։ Տարկուինիոս ալ աս բանիս վրայ սարսափած՝ թէ արդեօք ինչ չարիք պիտի հանդիպի իր տանը, երկու որդիքը Տիտոս ու Արունս՝ Դեղփիս խրկեց որ երթան պատգամ հարցընեն. անոնք ալ ընկերութեան համար Բրուտոս* անունով մէկը հետերնին առին։ Երբոր հասան Դեղփիս, ու տարած ընծանին Ապողոնի նուիրեցին, Բրուտոս գաւազան մը միայն նուիրեց. աս գաւազանը եղեգէ էր կ'ըսեն, բայց Բրուտոս մէջը ոսկի գաւազան մը անցուցեր էր իր բնաւորութեանն ու խելքին նշան՝ որ դրսէն չէր երևնար։ Տարկուինիոսի որդիքը ուզելով իմանալ թէ արդեօք իրենց հօրը մեռնելէն ետև թագաւորութիւնը որո՞ն պիտի իյնայ, պատգամ կը հարցընեն, ու պատասխան կ'ելլէ թէ "Անոր՝ որ ամենէն առաջ իր մայրը պիտի համբուրէ"։ Տղաքը խօսք կը դնեն մէջերնին որ իրենց Սեքստոս եղբօրը (որ Հռոմ էր) ամենևին աս բանս

---

1 Տարկուինիոս ի՞նչ պատճառաւ իր որդիքը Դեղփիս խրկեց։ — Բրուտոսի խելքը ի՞նչ տաթով յայտնուեցաւ։

* Աս Բրուտոսը Տարկուինիոս Երէցուն Թոռն էր, ու փեսանելով որ Տարկուինիոս մեծամեծները կը մեռցընէ որ անոնց հարստութիւնը յափշտակէ, ինչպէս իր հայրն ու մեծ եղբայրն ալ մեռցուց, կը ձևանայ որ խենթ յիմարնալով իր կեանքը ազատէ, ու Տարկուինիոսի տղոցը միմոսը կ'ըլլայ. անոր համար անունը Բրուտոս դրեր էն եղեր՝ որ անասուն ըսել է։

չիմացընեն, ու իրենք վիճակ ձգեն, և որուն որ ելլէ՝ Հռոմ հասնելուն պէս անիկայ նախ համբուրէ մայրերնին կ՚ըսեն: Բայց Բրուտոս պատգամախօսին միտքը ուրիշ կերպ հասկընալով՝ հոն մէկէն իյնալ կը ձեւացընէ ու գետինը կը պագնէ՝ ըսելով թէ « Ամենուն մայրը երկիրն է »: Երբոր ասոնք Հռոմ դարձան՝ Հռուտուլեանց դէմ պատերազմ բացուեր էր:

[1] Տարկուինիոս պատճառ բերելով թէ Հռուտուլեանք իրեն աքսորած մարդիկը իրենց երկիրը ընդուներ են՝ վրանին պատերազմ բացաւ. թէպէտև բուն պատճառն էր՝ ըրած շէնքերուն ծախքը հանելու համար ստակ քաղել. ուստի գնաց Արդէա քաղաքը պաշարեց, որ Լատինոց ամենէն հարուստ քաղաքն էր: Ան միջոցին իր Սեքստոս որդին, Կոլլատինոս իշխանը և ուրիշ զօրապետներ մէկտեղ իրենց վրանին մէջ կերուխումի հետ եղած ատեննին՝ կանանց վրայ խօսք եղաւ, ու գինին գլուխնին զարկած ամէն մարդ իրենը կը գովէր: Կոլլատինոսին խորհրդովը մէկէն հեծան ձիերնին ու գնացին տեսան որ ուրիշ կանայք խաղի և զբօսանաց հետ են, իսկ Կոլլատինոսինը Լուկրետիա իր տնականներուն կ՚աշխատի, ամէնքը անոր հաւնեցան: Սեքստոս Լուկրետիային վրայ աչք ձգեց, ու քանի մը օրէն նորէն գնաց գէշ մտքով, անոր պատուոյն նախատինք ըրաւ ու դար-

---

1 Հռուտուլեանց պատերազմին ատենը ինչ երևելի դիպուած եղաւ: — Լուկրետիայի պատմութիւնը ո՞րն է: — Հռոմայ թագաւորութիւնը քանի՞ տարի քշեր էր:

ձաւ ։ Լուկրետիա մարդ խրկեց իր հօրն ու էրկանը՝ որ շուտ հետերնին երկու բարեկամ առած տուն գան ։ Երբոր անոնք եկան՝ Լուկրետիա հակրցուց եղածը, աղաչեց որ վրէժխնդրութիւն ընեն, ու նախատինքը վրայէն վերցնելու համար յանկարծ Թուր մը հանեց՝ իր սիրտը խոթեց մեռաւ ։ Հոն երբոր մէկաշնոնք սարսափած սկսան լալ, Բրուտոս Լուկրետիային սրտէն արիւնոտ Թուրը քաշելով դէպ 'ի երկինք վերուց ու ըսաւ. "Ո՛վ դիք, դուք վկայ եղէք ինծի որ ինչուան արեանս վերջին կաթիլը պիտի Թափեմ որ Տարկուինիոսէն Լուկրետիայի մահուան վրէժը առնեմ": Ամէն հոն եղողներն ալ նոյն երդմունքը ըրին ան Թրին վրայ, ու ոմը Հռոմ գնաց՝ ոմը բանակը՝ որ ան վրէժխնդրութեան ոգին ամենուն սիրտը վառեն ։ Լուկրետիային մարմինը արիւնլուայ հրապարակը տարին. ան որ տեսաւ ժողովուրդը, քաղաքին դռները գոցեց, ու մէկէն Տարկուինիոսին և անոր բոլոր ընտանեացը աքսորանաց վճիռը հանեց ։ Բոլոր քաղաքացիք ժողվուեցան, Թագաւորութիւնը վերուցին, հասարակապետութիւն հրատարակեցին ու երկու հիւպատոս ընտրեցին՝ Բրուտոսն ու Կոլլատինոսը ։ Անանկով վերջացաւ Հռովմայեցւոց Թագաւորութիւնը՝ 244 տարի քշելէն ետև ։

[1] Թագաւորը աս լսելուն պէս՝ մէկէն բանակը Թողուց, Հռոմ դարձաւ որ խռովութիւնը իջեցը-

---

[1] Տարկուինիոս երբոր լսեց Հռովմայեցւոց հասարակապետութիւն հրատարակելը՝ ինչ ըրաւ ։

նէ · բայց քաղաքին դուները գոց ու պարիսպը զինեալ գտնելով յուսահատած իր աքսորանացը վերին առաւ ու գնաց Ետրուրիա քաշուեցաւ · իսկ Սեքստոս Գաբիէս գնաց, ու Լուկրետիայի ազգականները հոն զինքը սպաննեցին ։

## ԳԼՈՒԽ Գ ·

ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆ · — Հիւպատոսք · — Տարկուինիոսի դաւակցութիւնը · — Վէյացւոց դէմ պատերազմը · — Վալերիոս · — Պորսէնայի արշաւանքը · — Որատիոս Կոկլէս, Մուկիոս Սկէւոլա, Կլէլիա · — Լատինացւոց դէմ պատերազմը · — Իշխանապետի ընտրութիւն · — Հռեգիլլոսի պատերազմը · — Կաստոր և Պողիդեւկէս · — Տարկուինիոսի մահը ։ (509–495) ։

¹ Տարկուինիոսի աքսորմանը վերջը եղելուն պէս՝ աշխարհախումբ ժողով* ըրին, ու երկու հոգի մէկ տարուան համար դատաւոր ընտրեցին հիւպատոս կամ բդեաշխ անունով, ինչպէս որ ըսինք ։ Աս հիւպատոսները գրեթէ կատարեալ թագաւորական իշխանութիւն ունէին՝ առանց թագաւոր ըսուելու և գլուխնին թագ դնելու ։ Ծերակուտին ու ժողովրդեան գլուխ իրենք էին, ծիրանի կը

---

¹ Հիւպատոսաց իշխանութիւնն ինչ էր ։ — Թագաւոր զոհից ըսուողը ինչ պաշտօն ունէր ։

* Աշխարհախումբ ժողով կ'ըսուէին ընդհանրական ժողովները, որ թէ՛ ազնուականք կը մտնէին և թէ հասարակ ժողովուրդը ։

հագնէին, ժողովներու մէջ փղոսկրէ աթոռի վրայ կը նստէին՝ ձեռուընին փղոսկրէ արծուեգլուխ գաւազան բռնած. գուրձն ալ տասուերկու տապարաւոր դահիճներ առջևնէն կ'երթային՝ ձեռուընին խուրձ մը գաւազան բռնած՝ իրաւանց ու արդարութեան նշան: Իրենք միայն կրնային ծերակոյտը ժողովքի կանչել, ժողովուրդը ժողվել, բանակ կազմել, զօրավարներ որոշել և օտար ազգաց հետ դաշնագրութիւն ընել: Եւ որովհետև անկէց առաջ Հռովմայ թագաւորները կերպով մը քրմապետութիւն ալ կ'ընէին, ու անանկ արարողութիւններ ալ կային որ թագաւորը միայն կրնար ընել, դատաւոր մը որոշեցին Ռեգս-ու զոհից անունով, որ կռատան մէջ առջի թագաւորաց պաշտօնները կը կատարէր: Գլուխը ոսկի թագ կը դնէր ու ձեռքը ոսկի գաւազան կը բռնէր, բայց ամենևին քաղաքական իշխանութիւն մը չունէր, ու քրմապետին իշխանութեան տակն էր: Հիւպատոսները պատրիկներուն մէջէն միայն կ'ընտրուէին. ասով բոլոր իշխանութիւնը պատրիկներուն ձեռքը անցեր էր, և ծերակոյտը առանց հիւպատոսներուն հաւանութեանը բան չէր կրնար որոշել. ասանկով աս հասարակապետութիւնը աւելի ազնուապետութիւն դարձաւ քան թէ ռամկապետութիւն:

1 Հասարակապետութեան թշնամիները քիչ առենի մէջ սկսան շատնալ: Հռոմ շատ մը ազնուականի տղաք կային որ թագաւորութեան ատենը ամէն ուզածնին կ'ընէին. վարժեր էին արքունեաց

1 Հասարակապետութեան դէմ ինչ թշնամիներ ելան առջի բերանը:

մէջ կենալու, և Տարկուինիոսի որդւոցը ընկերութիւն ընելով՝ տեսակ տեսակ ազատութիւններ ունէին. Հասարակապետութեան հրատարակուելէն վերջը ասոնք ան ամէն բաներէն զրկուելով՝ առթի կը սպասէին որ խռովութիւն մը հանեն ու նորէն Թագաւորութիւնը հաստատեն :

1 Ան միջոցին մարդ խրկեց Տարկուինիոս Հռոմ ու իր ստացուածները կ՚ուզէր. Ծերակոյտը շատ մտածելէն ետև որոշեց որ տրուին : Բայց Տարկուինիոսի դեսպանները ան միջոցին պարապ չկեցան, սկսան յորդորանքով, սակով, խոստմունքներով Թագաւորին կողմը եղողները շատցընել, ու դաւակցութիւն մը ըրին՝ որուն մէջ մտան նաև Բրուտոսի երկու որդիքն ու Կոլլատինոսի քեռորդին : Ան գիշերը որ երկրորդ օրը դեսպանները Ճամբայ պիտի ելլէին՝ բոլոր դաւակիցները ժողվուեցան Վիտելիոսի տունը, որպէս զի մտածեն թէ ինչպէս առաջ պիտի տանին իրենց խորհուրդը : Վինդիկիոս անունով գերին կասկած առնելով դուռը սրահին մէջ պահուըտած ամէն բան լսեց ու մէկէն գնաց հիւպատոսներուն իմացուց, անոնք ալ շուտ մը հասան բոլոր յանցաւորները բռնեցին :

2 Աս բանիս վրայ Ծերակոյտը սաստիկ բարկացած՝ հրաման տուաւ ժողովրդեան որ Տարկուինիոսի ամէն ստացուածքը կողոպտեն. պալատները քանդեցին, ամէն տեղէն յիշատակը ջնջեցին, ու-

---

1 Տարկուինիոսի կուսակիցները ի՞նչ դաւակցութիւն ըրին :

2 Ծերակոյտը ի՞նչ վճիռ հանեց Տարկուինիոսի և անոր կուսակիցներուն դէմ :

նեցած կալուածները Արէս աստուածոյն նուիրեցին, որ վերջը Արէսեան դաշտը եղաւ, ուր Հռովմայեցւոց տղաքը զինուորական կրթութիւն կ՚ընէին: Իսկ մանուկները ամէնքն ալ 'ի մահ դատապարտուեցան, և Բրուտոս իր պաշտօնէն բանադատուած՝ եկաւ ներկայ գտնուեցաւ իր որդւոց գլխատմանը: Երբոր դաւակիցները կապուած բերուեցան, հիւպատոսները իրենց փղոսկրէ աթոռներուն վրայ նստած հրաման տուին դահճաց որ դաւակիցները կտտարեն. անոնք ալ մէկէն սկսան յանցաւորները մերկացընել, գաւազաններով ծեծել ու գլուխնին կտրել: Այն միջոցին ամենուն աչքը Բրուտոսին վրան էր, ու անոր երեսին այլայլութիւնը կը դիտէին. Իրաւցընէ այլայլեցաւ Բրուտոս, հայրական սիրտը կտրտեցաւ՝ երբոր երկու տղոցը գլուխները գետին ընկան, բայց հարկ էր որ արդարութիւնը կատարուէր ու հայրենեաց մատնիչները պատժուէին: Կոլլատինոս հիւպատոսը ան յանցաւոր երիտասարդաց վրայ քիչ մը սուտ ցուցընելուն համար աքսորուեցաւ, ու անոր տեղը դրուեցաւ Ղուկիոս Վալերիոս: Իսկ Վենդիկիոս գերին ազատեցին, Հռովմայեցի գրեցին, ու շատ ալ ստակ իրեն պարգև տուին:

¹ Մէկ հնարք մը միայն մնացեր էր Տարկուինիոսի Հռոմ մտնելու, որ էր բռնութիւնը. ան ալ փորձեց: Եղաւ բոլոր Ետրուրիոյ քաղաքները պատրաստեցաւ, զամէնքն ալ աղաչելով և մանաւանդ

---

¹ Տարկուինիոս ուրիշ ի՛նչ հնարք բանեցուց թագաւորութիւնը նորէն ձեռք ձգելու համար: — Բրուտոս ի՛նչպէս մեռաւ:

Վէյացիքն ու Տարկուինիացիքը, որ չթողուն որ իրեն պէս մարդը աքսորուած ու այնպիսի զօրաւոր թագաւորութենէ մը զրկուած փճանայ. անոնք ալ խղճացին վրան ու Հռովմայեցւոց դէմ պատերազմի ելան: Երբոր երկու բանակները դիմացէ դիմաց ճակատեցան, Արունտ՝ Տարկուինիոսի պզտիկ որդին Բրուտոսը ճանչնալով վազեց վրան յարձակեցաւ, ու երկուքն ալ մէկտեղ կատաղաբար կռուելով մէկզմէկ սաստիկ վիրաւորեցին ու մէկէն ձիերէն ինկան մեռան. անոր վրայ պատերազմը սկսաւ, և յաղթութիւնը երկար ատեն անորոշ մնաց: Սակայն թշնամիք Արսիայի անտառէն ելած ահռելի ձայներէն վախնալով՝ բանակնին փախան, Հռովմայեցիք յաղթանակաւ Հռոմ դարձան, ու յաղթանակին գլուխը եղաւ Վաղերիոս հիւպատոսը քառաձի կառքի մէջ նստած: Բրուտոսի մարմինն ալ Հռոմ բերին ու փառաւոր թաղում ըրին, և Վաղերիոս իր իշխանակցին վրայ դամբանական ճառ մը խօսեցաւ: Հռովմայեցի տիկնայք տարի մը ամբողջ սուգ բռնեցին Բրուտոսի համար (509):

[1] Վաղերիոս հազիւ թէ իր յաղթանակին հանդէսը լմնցուցեր էր՝ վրան ամբաստանութիւն ըրին թէ թագաւորել կ'ուզէ, և պատճառը աս էր որ Բրուտոսին տեղը մէկէն իրեն պաշտօնակից մը չընտրեց, բարձր բլրի մը վրայ ալ պալատ մը շինել սկսաւ որ բոլոր քաղաքին վրայ նայելովը միջնաբերդի կը նմանէր: Վաղերիոս աս ամբաստա-

---

[1] Վաղերիոսի դէմ ի՛նչ ամբաստանութիւն եղաւ, ու ի՛նչպէս ինքզինքը արդարացուց:

նութեան վրայ սրդողած՝ ժողովուրդը ժողովքէն կանչեց, ու բեմը ելաւ՝ Ճարտասանութեանը ինքզինքը արդարացընելէն ետքը, շատ մը գործաւորներ ժողվեց ու նոյն գիշերը գնաց բոլոր պալատը հիմնայատակ քանդել տուաւ: Ատաւասա որ տեսաւ ժողովուրդը՝ սաստիկ ամըչցաւ, Ընկեց վերջը ժողովրդեան աչքը մտնելու համար Վալերիոս սկսաւ օգտակար ու ժողովրդեան ազատութեանը նպաստաւոր օրէնքներ դնել, որով և ըսուեցաւ Պոպլիկոլա կամ Փոպլիքոլա այսինքն ժողովրդասէր:

1 Տարկուինիոս անդին ամենևին յոյսը չէր կըտրեր: Գնաց Կլուսիոնի Պորսենա թագաւորին ապաւինեցաւ. անիկայ ալ մտածելով թէ Տուսկիացւոց (Թոսքանացւոց) աղէկ է որ Հռոմ իրենց ետրուրացի ցեղէն թագաւոր մը ըլլայ, անթիւ զօրքով Հռոմին վրայ գնաց: Ինչուան ան ատենները դեռ այնպիսի վախ չէին ունեցած Հռովմայեցիք. վասն զի ամենուն համար ահաւոր էր ան ատենը Կլուսիոնի զօրութիւնը, Պորսենային անունն ալ շատ մեծ էր:

2 Թշնամին մօտենալուն պէս՝ բոլոր գեղացիք քաղաքը թափեցան և Հռոմին չորս կողմը աղէկ ամրացուցին. հասաւ Պորսենա, առաջին յար-

---

1 Տարկուինիոս ուրիշ ինչ թշնամիներ հանեց Հռովմայեցւոց դէմ:

2 Պորսենային արշաւանացը դէմ ինչ պատրաստութիւն ըրին Հռովմայեցիք: — Ան պատերազմին մէջ ինչ մասնաւոր քաջութիւն ըրաւ Կոկլէս:

ձախմամբ Ցանիկուլոն լեռը առաւ, ու Հռոմին վրայ քալեց։ Տիբերիս գետին քովը որ եկաւ՝ տեսաւ որ Հռովմայեցիք ճակատեր կեցեր են, պատերազմը սկսաւ. երկու կողմէն ալ մեծ կոտորած եղաւ, բայց զօրավարներին վիրաւորուելուն պէս՝ Հռովմայեցիք յաղթուած սկսան փախչիլ։ Ետրուրացիք անոնց ետեւէն ընկած՝ ինչուան գետին վրայի կամրջին քովը հասան։ Հոն Որատիոս Կոկլէս* պատրիկը իր երկու ընկերներովը կամրջին գլուխը կեցաւ ու դիւցազնական արիութեամբ արգիլեց թշնամիները, ինչուան որ Հռովմայեցիք կամրջին ծայրը քակեցին ու կամուրջը փլուցին. ինքն ալ զէնքերովը գետը նետուելով անթիւ նետերուն մէջէն դիմացը անցաւ ազատեցաւ։ Մեծ յաղթանակով զինքը ներս առին Հռովմայեցիք, ու այնպիսի հայրենասէր քաջութեանը փոխարէն՝ հրապարակին փառաւոր տեղը իրեն պղնձէ սպառազէն արձան մը կանգնեցին, հասարակաց կալուածներէն մէկ մեծ կալուած մըն ալ վարձ տուին։ Առանձին մարդիկ ալ արք և կանայք ուզելով իրենց կողմանէ մասնաւոր երախտագիտութիւն ցուցընել՝ ան օրին ատենը իրենց բերնէն կտրելով շատ մը ցորեն Կոկլեսի տուին որ նեղութիւն չքաշէ։

1 Պորսենա տեսնելով որ յարձակմամբ պիտի չկարենայ առնել քաղաքը, Ցանիկուլոն լեռը պահապան թողուց ու Հռոմը պաշարեց որ սովի

---

1 Մուկիոս Սկեւոլա ինչ քաջութիւն ըրաւ։

¤

* Որատիոս [illegible] պատերազմի մէջ աչքին մէկը կորուսցընելուն համար Կոկլէս ըսուեր էր, որ միականի նշանակէ։

բռնելով առնէ ։ Քիչ ատենէն սկսաւ ներքը սովը
սաստկանալ, ու երբոր Հռովմայեցիք անձնատուր
ըլլալ կը մտածէին՝ Մուկիոս երիտասարդ պա_
տրիկը ուզեց Կոկղեսի պէս ուրիշ տեսակ կտրճու_
թեամբ մը իր հայրենիքը ազատել ։ Հրաման առաւ
ծերակուտէն, մտաւ թշնամւոյն բանակը, ին_
չուան Պորսենային վրանը գնաց, ու անոր պաշ_
տօնատարացը մէջ խառնուեցաւ ։ Հոն ատենա_
դպիր մը թագաւորին քովը նստած, ու գրեթէ
անոր նման հագուած՝ զօրաց ռոճիկ կը բաժնէր .
Մուկիոս կարծելով որ թագաւորը անիկայ է՝
թուրը փորը խոթեց ու մէկէն հոն սպաննեց ատե_
նադպիրը ։ Շուտ մը բռնեցին զինքը թագաւորին
առջեւը տարին ։ Կը հարցընէ իրեն թագաւորը .
“ Դուն ով ես ” ։ Մուկիոս կտրճութեամբ պա_
տասխան կուտայ . “ Ես Մուկիոս Հռովմայեցին
եմ, եկայ որ զքեզ սպաննեմ ” ։ Այս անվախ պա_
տասխանին վրայ թագաւորը բարկացած՝ կը հրա_
մայէ որ տանջեն զինքը ինչուան որ շիտակը զրու_
ցէ ։ “ Տես, կ'ըսէ Մուկիոս, անոնք որ փառքի
կը ցանկան ինչպէս իրենց մարմինը բանի տեղ չեն
դներ ” . ու մէկէն ձեռքը քովի կրակարանին մէջ
կը խոթէ ու կ'այրէ ըսելով . “ Ես ինքնիրմես կը
տանջեմ այն ձեռքն որ սխալեցաւ . բայց գիտցիր որ
ինծի պէս իրեքհարիւր կտրիճ ալ կայ Հռոմ որ եր_
դուընցեր են զքեզ մեռցընելու ” ։ Թագաւորը աս
կարգէ դուրս քաջութեան վրայ զարմացած՝ կը
ցատքէ աթոռէն, մէկէն կը հրամայէ որ Մուկիո_
սը կրակարանէն հեռացընեն ու ազատ թողուն ։
Մուկիոս աջ ձեռքը կորսնցնելուն համար Սկէւո_
լա ըսուեցաւ, որ ձախձեռնեայ կամ ձախլիկ ըսել է ։

[1] Պորսեննա ուզեց որ Հռովմայեցւոց պէս կտրիճ ազգին հետ հաշտութիւն ընէ. անոնք ալ յանձն առին, Վէյացւոցմէ առած երկիրնին ետ դարձուցին ու տասը կտրիճ տղայ, տասն ալ աղջիկ պատանդ տուին։ Անոնց մէջէն Կլելիա անուանով ազնուատոհմ աղջիկը պահապանները խաբեց, մէկալ ընկերները մէկտեղ առած փախաւ, Տիբերիս գետէն անվնաս անցընելով զանոնք Հռոմ բերաւ ու իւրաքանչիւրը իրենց ծնողացը տուաւ։ Վաղերիոս վախնալով որ չըլլայ թէ Պորսեննա աս բանիս վրայ նեղանայ ու նորէն թշնամութեան սկսի, առաւ զանոնք ետ խաւրեց. բայց թագաւորը Կլելիային քաջութիւնը գովելով փառաւոր զարդարած ձի մը պարգեւեց անոր, եւ հրաման տուաւ որ հայրենիքը դառնայ, պատանդներէն ալ ուզածները հետը տանի։ Կլելիա խելք բանեցուց, ու անոնց մէջէն պզտիկներն ընտրեց, ըսելով որ ասոնք գերութեան չեն դիմանար։ Աս բանիս վրայ զարմացած Պորսեննա՝ երանի տուաւ Հռովմայեցւոց, որոնց ոչ միայն էրիկ մարդիկը, այլ նաեւ աղջիկ տղաքը ասանկ քաջութիւններ կ'ընեն. բոլոր գերիները ազատեց ու վեհանձնութեամբ իր բանակին հարստութիւնը անոնց թողուց՝ բաց 'ի զէնքերէն։ Հռովմայեցիք ալ իրենց շնորհակալութեանը նշան անոր խրկեցին փղոսկրէ աթոռ մը, ոսկի գաւազան ու պսակ եւ ոսկեթել յաղթական ծիրանի մը՝ որ իրենց թագաւորները յաղթանակի ատեն կը

---

1 Կլելիա ի՞նչ քաջութիւն ըրաւ։ — Ի՞նչպէս վերջացաւ Վէյացւոց ու Հռովմայեցւոց պատերազմը։

հադնէին ։ Այսանկով աս իրեք կարիճները հասարակապետութիւնը ազատեցին այնպիսի վտանգէ մը՝ որով քիչ մնաց որ կործանէր ։

1 Սկեւոլային արիութեանը փոխարէն Տիբերիոսէն անդին ընդարձակ կալուած մը տուին իրեն, Կլելիային ալ քաջութեանը յիշատակ՝ ձիաւոր արձան մը կանգնեցին ։ Ահա այսպէս Հռովմայեցիք իրենց քաղաքացւոց առաքինութիւնները վարձատրելով՝ ամենուն սրտին մէջ քաջութեան սէրը կը վառէին ։

2 Տարկուինիոս Գոռոզ Եդրուրիայէն օգուտ մը չունենալով Լատինին կողմը դարձաւ ։ Իր փեսան Օկտաւիանոս Մամիլիոս սիրով ընդունեցաւ զինքն ու խօսք տուաւ որ օգնէ իրեն, և անոր մէկ խօսքովը Լատիններէն երեսուն իշխան ժողվուեցան ու երդում ըրին որ Տարկուինիոսը նորէն իր աթոռը դարձընեն ։

3 Աս որ լսեց ծերակոյտը շատ վախցաւ․ բայց աւելի գէշն ան էր որ ժողովուրդն ալ պարտքերու ու խեղճութեանց մէջ ընկղմած՝ չէր ուզեր պատերազմի երթալ․ ինչ բանի կուգայ կ՚ըսէին մեր դրսի թշնամեացը յաղթելնիս՝ երբոր ետքը տուն որ դառնանք՝ մեր անգութ պարտատէրներուն ձեռքը մատնուինք, որ Եդրուրացւոցմէ ու Սաբինեանցմէ ալ աւելի անգութ են ։ Վալերիոս

---

1 Սկեւոլային ու Կլելիային ինչ փոխարէն ըրին Հռովմայեցիք ։

2 Տարկուինիոս կրցա՞ւ Լատինները Հռովմայեցւոց դէմ հանել ։

3 Ան միջոցին Հռոմ ինչ վիճակի մէջ էր ։

Պոպլիկոլային եղբայրը առաջարկեց որ աղքատաց պարտքը թողուի · բայց Ապպիոս Կղոդիոս խստաբարոյ Սաբինացին դէմ կեցաւ ։ Ժողովուրդը ոտք կոխած՝ չէր ուզեր զինուորիլ, անդիէն ալ թշնամին առաջ կը քալէր ։ Ծերակուտին ճարը հատած՝ անանկ դատաւոր մը ուզեց գտնել որ վեց ամսուան համար միապետական իշխանութիւն ունենայ անսահման, ուզածը կարենայ ընել ու ժողովուրդը զսպել, և ան դատաւորը ըսուեցաւ Դիկտատոր կամ իշխանապետ. Ժողովուրդն ալ չմտածելով թէ ասով բոլոր իր իշխանութիւնը պիտի վերցուի՝ ստորագրեց ան որոշմանը ։

1 Դիկտատոր պիտի ընտրուէր երկու հիւպատոսներէն մէկը, ընտրողն ալ դարձեալ ան երկուքը պիտի ըլլային, ու ժողովուրդը պիտի հաստատէր ։ Ասոր համար երկու հիւպատոսները Կլելիոս ու Լարտիոս բոլոր օրը անցուցին վիճելով ու մէկզմէկ ընտրելով, ինչուան որ նոյն իրիկունը երկու հիւպատոսներուն ազգականները, բարեկամները ու շատ մը պատկառելի ծեր մարդիկ գնացին Լարտիոսին տունն ու աղաչեցին որ հասարակաց բարւոյն համար յանձն առնու դիկտատոր ընտրուիլը ։ Լարտիոս ալ յանձն առաւ, ու մէկէն քսանուչորս դահիճներ բաց կացիններով առջևը ձգած սկսաւ ամէն տեղ պտըտիլ՝ ցուցընելով ամենուն որ կենաց ու մահու իշխանութիւնը իր ձեռքն է · Ժողովուրդն ալ սարսափած՝ հնազանդեցաւ անոր ։

---

1 Դիկտատորը ի՞նչպէս ընտրուեցաւ, և ո՞վ եղաւ առաջին դիկտատոր կամ իշխանապետ ։

1 Տասնըվեց տարեկանէ 'ի վեր որչափ մարդ որ կար համրել տուաւ Լարտիոս, ու հարիւր յիսուն հազար եօթը հարիւր հոգի եղաւ (498)։ Անոնց մէջէն անկարողները դուրս հանեց, մնացածը չորս գունդ բաժնեց. մէկը քաղաքին պահապան թողուց, ու երեքը հետն առած պատերազմի ելաւ, զարնուեցաւ Լատինացւոց մէկ մասին հետ ու յաղթեց։ Լատինացւոց բոլոր դաշնակիցները դեռ չէին ժողվուած, ուստի տարի մը զինադադարութիւն խնդրեցին իրմէ. Լարտիոս ալ տուաւ ու Հռոմ դարձաւ, իշխանապետութենէն հրաժարեցաւ։

2 Դաշնակից Լատինները ամէն պատրաստութիւնը տեսնելէն վերջը թշնամութիւնները սկսան։ Իրենք քառասուն հազար հետեւակ զօրք ունէին և երեք հազար հեծեալ. իսկ Հռովմայեցիք հեծեալ հետեւակ հազիւ քսանըեօթը հազար հոգի կրցան ճարել, որոնց զօրավար եղաւ նոր ընտրուած դիկտատորը Աւլոս Պոստումիոս։

3 Երկու բանակները ճակատեցան Հռեգիլլոն լճակին քով Տուսկուլոնի մօտ, կատաղաբար իրարու վրայ յարձակեցան, և զօրապետները անձամբ պատերազմեցան, բայց յաղթութիւնը անորոշ մնաց։ Դեռ Հռովմայեցիք ասանկ արիւնահեղ պատերազմ չէին ունեցած։ Բոլոր զօրավարները բաց 'ի դիկտատորէն սպաննուեցան։ Տարկուինիո-

---

1 Լա՞րտիոս իշխանապետը ի՞նչպէս յաղթեց Լատիններուն։

2 Ի՞նչ պատրաստութիւն ըրին Լատինք և Հռովմայեցիք նորէն պատերազմելու համար։

3 Հռեգիլլոնի պատերազմը ի՞նչպէս եղաւ։

սի որդին Տիտոս ու փեսան՝ Ոկտաւիոս Մամիլիոս ընկան մեռան ։

Այն միջոցին իշխանապետը աստուածոց կը դիմէ և ուխտ կ'ընէ որ Կաստորին մեհեան մը շինէ ։ Մէկէն 'ի մէկ ճերմակ ձիու վրայ հեծած երկու պատուազէն կորիճ երիտասարդներ կ'երևնան (հեթանոս պատմագրին խօսքին նայելով) որ Հռովմայեցւոց զօրաց առջևը կեցած կը սկսին անոնց օգնել, սիրտ տալ ու Թշնամեաց բանակը սարսափ ձգել ։ Ասոնք են եղեր երկու եղբարք՝ Կաստոր և Պողիտեւկիս ։ Վերջապէս Հռովմայեցւոց սպարապետները հետևակ պատերազմելով յաղթութիւնը կատարեալ ըրին, ու ետքը նորէն ձիերը հեծած սկսան ցրուել հալածել Թշնամին ։ Իշխանապետը ու հեծելազնդին զօրապետը յաղթանակաւ մտան Հռոմ, և սպարապետները որ քաջութեամբ պատերազմելով մեծ պատճառ եղեր էին յաղթութեան՝ գլուխնին դափնիով պսակած Կապիտոլիոն գնացին ձիով ու ան տօնը ամէն տարի սկսան կատարել ։

[1] Լատինացիք չարաչար յաղթուած մէկէն հաշտութիւն ուզեցին ընել, և Հռովմայեցւոց հետ առջի ըրած դաշինքնին նորոգեցին ։ Տարկուինիոս իննսուն տարեկան՝ Լատիոնէն վռնտուած, Ետրուրիայէն ալ հալածուած, գնաց Կամպանիոյ Կումա քաղաքը Արիստոդեմ բռնաւորին ապաւինեցաւ, և հոն իր աքսորանացը չորեքտասաներորդ տարին մեռաւ (495) ։

---

[1] Այն պատերազմէն ետքը ինչ ըրին Լատինացիք ։ — Տարկուինիոս Գոռոզ ինչպէս մեռաւ ։

## ԳԼՈՒԽ Դ.

Պարտապանաց ու պարտատէրաց խնդիրը. — Ժողովրդեան Նուիրական լեռն երթալը. — Աղրիպպասին առակը. — Տրիբունք. — Շինուածապետք. — Հացին սովը. — Մարկիոս Կորիոլանոս. — Իր աքսորանքը. — Հռոմի վրայ պատերազմ գալը. — Կորիոլանոսի ետ դառնալը։ (495–488)։

1 Խռովութեան վտանգը անցած կ'երևնար. Տարկուինիոսի տնէն մարդ չէր մնացած. Ետրուրացիք ու Լատինները նոր զարնուած ու խռովուած՝ տեղերնէն չէին շարժեր, և սակայն Հռովմայեցիք այնպիսի դժնդակ պատերազմներէն վերջն ալ երկար ատեն հանգստութիւն չգտան։

2 Վերջին պատերազմները մեծատանց ու պատրիկներուն միայն օգտակար եղեր էին, իսկ հասարակ ժողովրդեան շատ վնասակար, վասն զի պատերազմին ծախքը ժողովուրդը վճարելէն զատ՝ իրեն զէնք պիտի գնէր, պիտի ապրէր ու միանգամայն դուրսն եղած ատենը իր ապրուստը պիտի հոգար. շատ անգամ ալ՝ ի դարձին տնակը այրած, արօրներն ու եզները թշնամիներէն յափշտակուած կը գտնէր. ան ատենը թէ որ պատերազմի ձախորդ գնացեր էր ու ձեռքը բաւական աւար չէր անցած, կ'երթար պատրիկի մը դուռը կը զար-

---

1 Տարկուինիոսի մեռնելէն ետքը Հռոմ ի՞նչ վիճակի մէջ էր։

2 Ժողովուրդը ի՞նչ նեղութեան մէջ էր։

նէր · քիչ մը բան փոխ կ՚ուզէր՝ խօսք տալով որ նոր պատերազմ մը բացուի նէ Թշնամիներէն բան մը ձեռք ձգէ ու պարտքը վճարէ ։ Բայց աս խոստմունքը բաւական չէր · պէտք էր որ ունեցած կալուածն ալ ան պարտքին վրայ տար, առած ստակին ալ հարիւրին տասուերկու տոկոսիք վճարէր ։ Թէ որ պարտքը կամ տոկոսիքը տալու ատենը հասնէր ու ժողովուրդը չկարենար վճարել՝ ստկալի էր օրէնքը ։ Անգութ պարտատէրը իրաւունք ունէր ծախելու ոչ միայն անոր խրճիթը, կալուածն ու բոլոր ունեցածը, հապա նաև անոր կինն ու որդիքը · ինչուան զինքն ալ կրնար ծախել Տիբեր գետէն անդին բնակած օտարազգիի մը ։ Հռոմին մէջ ամէն պարտապանները պարտատէրներուն ձեռքէն աս անտանելի պատիժները կը քաշէին, և ժողովուրդը արդէն չարաչար գանգատիլ սկսեր էր ։

1 Օր մըն ալ յանկարծ խեղճ ծերուն մէկը բանտէն փախած՝ հրապարակը երևցաւ, վրան գլուխը աղտոտ, պատռտած, մազերը կուրնձմըտած, երեսին գոյնը պատ դարձած ։ Եւ Թէպէտ բոլորովին կերպարանքը աւրուած էր, բայց գիտցողները ճանչցան որ ատենով հարիւրապետ էր ու ըրած քաջութեանցը համար շատ զինուորական վարձատրութիւններ ալ ունեցեր էր · ինքն ալ կուրծքը բացած կը ցուցընէր ամենուն՝ պատերազմներուն մէջ հայրենեաց համար առած վէրքերուն նշանները ։ Ժողովուրդը չորս կողմը

---

1 Ի՞նչ առթով իմացուեցան ժողովրդեան դանդատները ։

խռկած հարցուցին իրեն. « Ի՞նչ է պատճառը որ ասանկ խեղճութեան մէջ ինկեր ես »: Ան ատենը բերանը բացաւ մարդն ու սկսաւ պատմել իրենց. « Սաբինացւոց դէմ պատերազմի գնացած ատենս, ըսաւ, Թշնամիները եկեր բոլոր արտերս աւրըշտըկեր ու տնակս ալ այրեր էին, վրաս դըրուած տուրքը վճարելու համար ստիպուեցայ ստակ փոխ առնելու. պարտքերս քանի գնացին՝ տոկոսիքը վրան զարնելով շատցան. Նախ հօրմէս մնացած կալուածս պարտատէրներս առին, ետքը բոլոր ունեցածս չունեցածս գրաւեցին. պարտատէրս զիս բռնեց ու դահճի պէս վարուեցաւ հետս ». աս կ՚ըսէր ու կռնակը բացած կը ցուցընէր, որ կասկապուտ գաւազաններուն տեղերը կեցեր էին, ու արիւնն ալ կը վազէր: Աս ողորմելի տեսարանը ու պատմութիւնն որ կը լսէ ժողովուրդը, մէկ բերան վրէժխնդրութիւն կը պոռայ, և քիչ կը մնայ որ հոն հրապարակը գտնուող պատրիկները բզիկ բզիկ ընէին: Մէկէն ծերակոյտը խռոված կը ժողվուի որ դարման մը ընէ:

[1] Ան նեղութեան ատենը դեսպան կուգայ Լատիններէն՝ իմացընելով որ Վոլսկեանք կը պատրաստուին գալու Հռոմը պաշարելու. բայց ժողովրդեան հոգը չըլլար. « Ինչպէս որ պատերազմի պտուղը պատրիկները կը քաղեն, պատերազմի ալ թող իրենք երթան, իրենք զինուոր ըլլան » կ՚ըսեն: Ծերակոյտը շփոթած՝ Սերուիլիոս հիւպատոսին կը դիմէ որ շատ սիրելի էր ժողովրդեան.

---

1 Ժողովուրդը առաջ Ի՞նչ կերպով հանդարտեցաւ:

Սերուիլիոս քաղցրութեամբ ու այլ և այլ խոստմունքներով ժողովուրդը հանդարտեցուց, հրաման հանեց որ ոչ ոք կարող ըլլայ Հռովմայեցի մը շղթայի զարնել կամ բանտ դնել, զինուորի մը ստացուածքը գրաւել կամ ծախել՝ քանի որ անիկայ պատերազմի մէջ է, նոյնպէս անոր զաւկըները կամ թոռները բռնել: Ասանկով մէկէն բոլոր պարտապանները սրտերնին հանգստացած՝ բազմութեամբ եկան զինուոր գրուեցան. Սերուիլիոս ասոնք գլուխը առած՝ գնաց յաղթեց Վոլսկեանց, անոնց բանակին տիրեց, ու Սուեսսա Պոմետիա քաղաքնին առնելով հրաման տուաւ իր զօրացը որ մէջի հարստութիւնները կողոպտեն:

։ Պատերազմներէն ետքը սկսաւ ժողովուրդը պահանջել որ Սերուիլիոսի ըրած խոստմունքները կատարուին: Սերուիլիոսն ալ շատ ջանաց, բայց իր նախանձորդ իշխանակիցը Ապպիոս բոլորովին դէմ կեցաւ: Աս անիրաւութեան վրայ ժողովուրդը բարկացած՝ սկսաւ տակն ու վրայ ընել քաղաքը: Անդիէն Վոլսկեանք, Եկուեանք ու Սաբինեանք ալ սկսան Հռոմի վրայ գալու պատրաստութիւն տեսնել, և ժողովուրդը դարձեալ չէր ուզեր զինուորիլ: Մանլիոս Վալերիոս՝ Պոպլիկոլային եղբայրը իշխանապետ ընտրուեցաւ. խոստմունքներով առաւ ժողովուրդը պատերազմի գնաց, յաղթեց ամենուն, ու յաղթանակաւ Հռոմ մտաւ. Վալերիոս ուզեց ըրած խոստմունքը կատարել, Սերուիլիոսին պէս անոր ալ ստասիկ

---

։ Սերուիլիոս ժողովրդեան ըրած խոստմունքը կատարե՞ց:

դէմ կեցաւ ծերակոյտը, ինքն ալ իշխանապետութենէն հրաժարեցաւ։

¹ Ծերակոյտը ուզելով որ քաղաքին մէջ շատ հասարակ ժողովուրդ չգտնուի որ իրարու գլուխ նորէն չտաքցընեն, պատերազմէն դարձած զօրքը երդմունքէն * չարձըկած՝ պատճառ բերելով թէ Սաբինեանք նորէն պատերազմի կուգան՝ քաղաքէն դուրս հեռացուց։ Անոնք ալ բոլոր դրօշակները հետերնին առած՝ Սիկինիոս երիտասարդին առաջնորդութեամբը Հռոմէն իրեք մղոն հեռու Անիենոս գետէն անդին Նուիրական ըսուած լեռը քաշուեցան որ հոն իրենց նոր Հռոմ մը շինեն։

² Աս լուրը հանելուն պէս բոլոր քաղաքը շփոթեցաւ։ Ծերակոյտը մարդ խրկեց ժողովրդեան որ դառնան գան, ամէն ուզածնին կ'ընէ. անոնք պատասխան տուին թէ աս անգամ չենք ուզեր խաբուիլ։ Ծերակոյտը ինչ ընելիքը չէր գիտեր։ Անդիէն քաղաքին մէջ մնացած հասարակ ժողովուրդն ալ կ'ուզէր փախչիլ ու երթալ զօրաց հետ միանալ. Թէպէտ պատրիկները կը ջանային արգիլել, դռները գոցել տուին, բայց ճար չէր ըլլար. անոնք բազմութեամբ բռնի բացին դռնե-

---

¹ Ի՞նչ պատճառաւ ժողովուրդը Նուիրական լեռը քաշուեցաւ։

² Նորէն ի՞նչ կերպով ու ի՞նչ պայմաններով Հռոմ դարձաւ ժողովուրդը։

* Հռովմայեցւոց մէջ մէկը որ զինուոր գրուէր՝ երդում կ'ընէր որ առանց յայտնի հրամանի զինուորութենէն ու իրենց դրօշը չթողու։

լը , գնացին զօրաց հետ միացան , և քաղաքը եր-
թալով պարպուելու վրայ էր :

Ծերակոյտը նորէն տասը դեսպան խրկեց , հե-
տերնին ալ Մենենիոս Ագրիպպաս ճարտասան ,
խոհեմ ու ժողովրդեան սիրելի մարդը . իշխանու-
թիւն տալով որ ամէն ուզածնին կատարեն : Ժողո-
վուրդը զանոնք սիրով ընդունեցաւ . Ագրիպպաս
ալ յորդորանքը տալու ատեն առակ մը բերաւ
թէ “ Անգամ մը անդամները ստամոքսէն ապըս-
տամբեր են՝ ըսելով թէ ինչու համար մենք աշ-
խատինք ու ստամոքսը վայելէ . ձեռքը չուզեր
կերակուրը բերան տանիլ , բերանը չուզեր ներս
առնել ծամել , և մարմինը անօթի մնալով կը սկսի
տկարանալ , ու բոլոր անդամներն ալ կը թուլ-
նան : Ան ատենը կ'իմանան որ ստամոքսը դատարկ
չկենար եղեր , զինքն որ կերակրեն՝ ինքն ալ զիրենք
կը կերակրէ մարսողութեամբ՝ մարմնոյն ամէն
անդամոցը արիւնը հաղորդելով , որով կ'ապրինք
և ուժի մէջ կը մնանք . ահա նոյնպէս է ծերակոյտն
ալ ձեզի հետ ո՛վ Հռովմայեցիք , ըսաւ . ինչ բան որ
կը մտածէ ու կ'ընէ , ձեր օգտին համար է ” :
Ուրիշ ասոր նման համոզիչ խօսքերով ու անուշու-
թեամբ Մենենիոս ամենուն միտքը հանդարտե-
ցուց : Հաւանեցաւ ժողովուրդը որ Հռոմ դառ-
նայ , բայց քանի մը պայմաններ դրաւ : Ուզեց որ
տարուէ տարի հինգ հոգի ժողովրդապետ որո-
շուին որ իրենց իրաւունքները պաշտպանեն ու
ազատութեան վրայ արթուն կենան . անոնց ամե-
նուն մարդ չկարենայ դպչիլ , ու աս իշխանու-
թեան հանողները պատրիկներէն չընտրուին ,
հապա միայն իրենց մէջէն , և նոյն ատենը իրենց

Սիկինիոս առաջնորդին հետ ուրիշ չորս հոգի իրենց ժողովրդապետ ընտրեցին որ Տրիբուն ըսուեցան :

¹ Տրիբունները բոլոր տարուան մէջ մէկ օր մը ամբողջ չէին կրնար Հռոմէն պակսիլ : Ամենևին արտաքին իշխանութիւն կամ պաշտօն մը չունէին . ծերակուտին դրան առջևը կեցած՝ անոնց ըրած խորհուրդները մտիկ կ՚ընէին առանց խօսքի մէջ մտնելու : Բոլոր իրենց իշխանութիւնը Վէթօ , այսինքն արգիլեմ բառին վրայ էր , որով կրնային ծերակուտին ամէն որոշմունքները ու վճիռները փճացընել : Ասանկով սկսաւ ան տրիբունութիւնը որ ետքը ինչուան հիւպատոսներ , դիկտատորներ բանտ պիտի դնէր ու հասարակապետութեան գլուխ պիտի ըլլար : Տրիբուններէն զատ երկու հատ ալ դատաւոր դրին , որ ժողովրդեան նիւթական պիտոյիցը հոգ ունենան , այսինքն անոնց ապրուստը ճարեն , կերակրեղինաց գինը որոշեն , հասարակաց շէնքերը հոգան , և ասոնք ըսուեցան Շինուածապետք :

² Ժողովուրդը Հռոմ դառնալուն պէս նոր եռանդով մը Վոլսկեանց ու Անտիացւոց դէմ պատերազմի գնաց , Լոնգուլա և Պողուսկան քաղաքներուն տիրեց . բայց Կորիոլոն քաղաքը քաջութեամբ դէմ կը կենար : Երբոր Հռովմայեցիք աս քաղաքը պաշարած կեցեր էին , Թշնամեաց մեծ

---

¹ Տրիբուններուն պարտքը և իշխանութիւնը ինչ էր : — Շինուածապետաց պաշտօնն ինչ էր :
² Կորիոլոն քաղաքին ինչպէս տիրեցին Հռովմայեցիք : — Կորիոլանոսի ինչ պատիւ ըրին :

գունդ մը յարձակեցաւ հիւպատոսաց բանակին վրայ, անգլիէն ալ քաղաքացիք դուները բացած դուրս վազեցին։ Այն միջոցին բանակին պահպանութիւնը Մարկիոս երիտասարդին յանձնուած էր. ասիկայ ընտիր գունդով մը պարսպէն յարձակողները վանեց, ու փախչողներուն ետևէն վազելով անոնց հետ մէկտեղ ներս մտաւ՝ քաղաքը առաւ։ Պոստումիոս Կոմինիոս հիւպատոսը զինքը պսակեց, զօրապետի ղարդերովը զարդարեց ու փառաւոր ձի մը պարգևեց անոր, իշխանութիւն ալ տուաւ որ գերիներուն մէջէն ուզածը ընտրէ տասը հատ իրեն առնէ, նոյնպէս ալ աւարին մէջ եղած ամէն բաներէն տասնական հատ։ Մարկիոս շնորհակալութիւն ընելէն վերջը՝ միայն ձին առաւ, գերիներուն մէջէն ալ միայն իր հիւրընկալն ու բարեկամը, և ըրած յաղթութիւններէն աւելի զամէնքը իր վեհանձնութեանը ու անընչասիրութեանը վրայ զարմացուց։ Զօրքն ու ժողովուրդն ալ իր ըրած քաջութեան յիշատակը անջնջելի պահելու համար՝ քաջութեամբ տիրած քաղաքին անունովը մականուն դրին իրեն ու ըսուեցաւ Կորիոլանոս։

1 Քիչ ատեննէն Կորիոլանոս նորէն Վոլսկեանց վրայ պատերազմի գնաց, ու շատ քաջութիւններ ընելով երբոր դարձաւ, ուզեց որ այնչափ ծառայութեանցը փոխարէն զինքը հիւպատոս ընտրեն։ Ամէնքը հաւանեցան, ու ամէն բան պատրաստ էր. մէյմըն ալ ընտրուելու օրը Կորիոլանոս

---

1 Ի՞նչ պատճառաւ Կորիոլանոս ժողովրդեան հետ աւրուեցաւ։

մեծ հանդիսով չորս կողմը ծերակոյտն ու պատրիկները առած՝ հրապարակը եկաւ։ Ժողովուրդը ծերակուտին ու ազնուականաց Կորիոլանոսին վրայ ցուցուցած կարգէ դուրս սէրն ու պատիւը տեսնելով՝ սէրը ատելութեան դարձուց. ասանկով Կորիոլանոս մնաց, ու տեղը ուրիշ հիւպատոս ընտրուեցաւ, ինքն ալ սաստիկ ոխ պահեց ժողովրդեան դէմ։

[1] Վերջին խռովութեանց ատենը շատ երկիրներ չէին ցանուած, երեսի վրայ մնացեր էին. անոր պատճառաւ սով ընկաւ Հռոմ ու այնչափ սաստկացաւ որ եթէ հիւպատոսները նախատեսութեամբ չորս դին ցորեն գնելու մարդ չղրկէին՝ բոլոր գերիներն ու ժողովուրդը սովէն պիտի ջարդուէին։ Բայց տրիբունները անով ալ գոհ չեղան, սկսան այլ և այլ կասկածներու երթալ ու ժողովրդեան ալ միտքը պղտորել։ Հիւպատոսները ժողովուրդը ժողովքի կանչեցին որ իրենք զիրենք անոնց առջեւ արդարացընեն. Իկիլիոս տրիբունը թող չէր տար, անդադար խօսքերնին կը կտրէր։ Հիւպատոսները սկսան կանչուըռտել թէ “Մենք միայն իրաւունք ունինք խօսելու, որովհետեւ մենք կանչեցինք հոս ժողովուրդը. թէ որ տրիբունները զիրենք ժողված ըլլային, մենք ոչ կուգայինք և ոչ զիրենք կը խռովէինք”։ Ան ատենը Իկիլիոս ըսաւ իր իշխանակիցներուն. “Տրիբուններ, այսօր հիւպատոսներուն խօսքը թող ըլլայ. վաղը ես ձեզի կը հասկըցընեմ թէ որն է ձեր իրաւունքը”։

---

[1] Սովի պատճառաւ ինչպէս զօրացաւ ժողովրդեան կողմը։

Երկրորդ օրը տրիբունները ժողովուրդը հրապարակը ժողվեցին, և Իկիլիոս անոնց հետևեալ օրէնքը առաջարկեց որ ամենուն ալ ընդունելի եղաւ. «Տրիբուն մը ժողովրդեան առջևը խօսելու ատեն՝ ոչ ոք կարող ըլլայ անոր խօսքը կտրել կամ արգիլել. Թէ որ մէկը աս բաներս ընելու ըլլայ՝ տրիբունները վրան տուգանք դնեն, և թէ որ տուգանքը չվճարէ՝ մեռնի»: Անկէց վերջը ժողովուրդն ալ սկսաւ իր տրիբուններովը մասնաւոր ժողովներ ընել:

1 Այն միջոցին Սիկիլիայէն ցորեն եկաւ, ու ծերակոյտը սկսաւ մտածել թէ ինչ գնով ծախէ աղքատաց: Շատը կ՚ըսէին որ աս առիթը մի միայն յարմար ատեն է ժողովուրդը խոնարհեցնելու, ու պատրիկներուն ձեռքէն յափշտակուած իրաւունքները ետ առնելու: Կորիոլանոս՝ որ տրիբուններուն ու ժողովրդեան ոխերիմ թշնամին էր՝ սկսաւ չարաչար դէմ խօսիլ ու ըսել. «Թէ որ կ՚ուզեն ցորենը առջի գնով գնել, թող ծերակուտին առջի իրաւունքները նորէն անոր դարձընեն. Մենք որ Տարկուինիոսին չկրցանք համբերել, Սիկինիոսին ինչպէս պիտի համբերենք. Թող կ՚ուզէ նէ մէյմըն ալ դուրս քաշէ, ժողովուրդն ալ հետը տանի, նուիրական լեռան ճամբան բաց է առջևը»:

2 Աս խօսքերուս վրայ կատղեցաւ ժողովուրդը. ու թէ որ տրիբունները չվազէին Կորիոլանոսը չա-

---

1 Ցորենի գնոյն համար ինչ տժգոհութիւն եղաւ:

2 Կորիոլանոս ինչպէս դատապարտուեցաւ:

ղաւէին՝ ժողովուրդը հոն զէնքը առնել բռնեցէր ։ Կորիոլանոսին հոգը չէր գար․ բայց ծերակոյտը ժողովրդեան կատաղութիւնը տեսնելով վախցաւ զանիկայ պաշտպանելու ․ Սիկինիոս տրիբունը զԿորիոլանոսը՝ ի մահ դատապարտեց որ Տարպէան ժայռէն վար ձգուի․ պատրիկներն ու ժողովուրդը ուզեցին որ դատաստանի կանչուի, ու թէ որ յանցանք չունի նէ՝ ինքզինքը արդարացնէ ։ Սահմանեալ օրը Կորիոլանոս դատաստանի չեկաւ ու մշտնջենաւոր աքսորանքի դատապարտուեցաւ ։

¹ Կորիոլանոս սաստիկ ատելութեամբ լեցուած՝ ելաւ Հռոմէն ու Վոլսկեանց Աֆիդիոսին երկիրը գնաց, անոնց Տուղղոս իշխանին քով որուն դէմ շատ անգամ պատերազմի ելեր էր ։ Իրիկուան դէմ քաղաքը հասաւ, չճանչուած Տուղղոսին տունը գնաց, ներս մտաւ․ ու գլուխը ծածկած լռիկ մնջիկ կրակարանին քովը նստաւ ։ Տուղղոսին մարդիկը զաս տեսնելով սաստիկ զարմացան, ու անիկա կերպարանքը տեսնելով չհամարձակեցան ել գնա ըսելու ։ Տուղղոս որ սեղանի վրայ էր՝ Կորիոլանոսին քովը մտաւ, հարցուց թէ «Դուն ո՞վ ես, ի՞նչ կ'ուզես» ։ Այն ատենը Կորիոլանոս՝ երեսը բանալով՝ նոր Թեմիստոկլեսի մը պէս «Ես այն Մարկիոսն եմ որ քեզի ու Վոլսկեանց այնչափ չարիք հասուցի, ըսաւ․ հայրենիքէս աքսորուած՝ եկայ քեզի ապաւինեցայ, ոչ եթէ կեանքի ապահով տեղ մը գտնելու, հապա Հռոմայեցւոց դէմ վրէժխնդրութիւն ընելու համար» ։

¹ Ո՞ւր գնաց քաշուեցաւ ։

1 Տուղղոս որ անհաշտ թշնամի էր Հռովմայեցւոց, շատ սիրով և ուրախութեամբ ընդունեցաւ Կորիոլանոսը, երկուքը միասին մտածեցին թէ ինչ կերպով ընեն պատերազմը, և միկէն Վոլսկեանք բոլոր ազգով Հռովմայեցւոց դէմ ելան։ Կորիոլանոսին առջևը չդիմացան Հռովմայեցիք, քիչ ատենի մէջ անոնց շատ քաղաքները առաւ, ու վերջապէս գնաց Հռոմին դիմացը բանակեցաւ։ Բոլոր քաղաքը յուսահատութեան մէջ ընկաւ. Ժողովուրդը սարսափած՝ կ'ուզէր որ Կորիոլանոսին աքսորանաց վճիռը ետ կանչուի. իսկ ծերակոյտը դէմ կը կենար, իրեն նախատինք կը սեպէր թշնամւոյն դիմացը խոնարհելը։ Աս որ լսեց Կորիոլանոս՝ աւելի սկսաւ դէպ 'ի Հռոմ մօտենալ, այնպէս որ ծերակոյտն ալ զիջաւ, դեսպան խրկեց Կորիոլանոսի ու հաշտութիւն խնդրեց։ Դեսպանները թէպէտ և ամէնն ալ անոր ազգականներն ու բարեկամներն էին, աս խիստ պատասխանը բերին թէ “Հաշտութիւն ան ատենը կ'ընեմ, երբոր Վոլսկեանցմէ առած երկիրները Հռովմայեցիք նորէն անոնց դարձընեն”։ Ան ատեն քրմապետները, հիւպատոսները և քուրմերը, բոլոր իրենց սրբազան հանդիսական զգեստները հագած եկան աղաչեցին Կորիոլանոսի, բայց առջիններուն պէս անոնք ալ մերժուեցան, և վախը ամենուն վրայ տիրեց։

2 Երբոր տեսան թէ ուրիշ ճար չկայ՝ Հռովմայե-

---

1 Տուղղոս և Կորիոլանոս ինչ կերպով ելան Հռովմայեցւոց դէմ։

2 Կորիոլանոսին սիրտը ինչպէս առին Հռովմայեցիք։

ցի առնելնայք, Կորիոլանոսին Վոլումնիա մայրը, Վիրգիլիա կինը ու երկու որդիները հետերնին առած՝ սուգի հագուստներով եկան Վոլսկեանց բանակը գնացին. հոն որ հասան՝ իմացուցին Կորիոլանոսի թէ դուռն մը կանայք եկեր են. զինուորին մէկն ալ վազեց Կորիոլանոսին վրանը, "Կարծեմ թէ մայրդ, կինդ ու որդիքդ եկեր են" ըսաւ։ Կորիոլանոսի խելքը գլխէն գնաց, վազեց մօրը առջևը եկաւ որ գրկէ համբուրէ. բայց մայրը ետ քաշուեցաւ. "Պատասխանէս առաջ աս գիտնամ թէ թշնամիո՞յ քով եկեր եմ, ըսաւ, թէ որդւոյս քով, և բանակիդ մէջը ես քու գերի՞դ եմ թէ մայրդ։ Ուրեմն անոր համար այսչափ ապրեցայ որ նախ աքսորուիլդ տեսնեմ ու ետքը հայրենեաց հետ պատերազմիլդ։ Ի՞նչ սրտով կ'արշաւէիս դուռն ան երկիրը՝ որ զքեզ ծնաւ ու կերակրեց։ Ան սահմանէն դուրս ելլելէդ վերջն ալ չանցաւ բարկութիւնդ. մէյմը քեզի չդարձար չըսի՞ր թէ աս պարիսպին ետևն են իմ տունս, իմ աստուածներս, մայրս, կինս ու զաւակներս"։ Մէկ դիէն աս խօսքերս, մէկալ դիէն կանանց ըրած լացն ու խեղճ թափելը տեսնելով Կորիոլանոս՝ սիրտը շարժեցաւ, միտքը դարձաւ, ու գրկեց վերուց մայրը ըսելով. "Ո՜վ մայր իմ, Հռոմը ազատեցիր, բայց որդիդ կորսնցուցիր"։ Մէկէն երկրորդ օրը պաշարումը վերուց, չուզեց Հռոմ մտնել ու զօրքն առաւ ետ դարձաւ։

1 Կորիոլանոսին ինչպէս մեռնելուն վրայ տարաձայնութիւն կայ. ոմանք կ'ըսեն թէ Վոլսկեանք

---

1 Ի՞նչպէս մեռաւ Կորիոլանոս։

նոյնպէս ալ ան երկիրներն որ պատրիկները խարդախութեամբ իրենց սեփականներ են ։ Ասկէց սկսաւ ագարակային օրինաց առաջին կռիւը ։

¹ Ծերակոյտը սոսկաց այս համարձակութեան վրայ . “ Թէ որ հասարակ ժողովուրդը երկիր ունենայ , կ՚ըսէին , քիչ ատենէն մեզի պիտի հաւասարի ” . ուստի մտածեցին որ այս օրէնքը հնարողը շուտ մը կորսընցընեն ։ Ծերակոյտը ամբաստանեց թէ Կասսիոս թագաւորութեան ետեւէ է , ժողովուրդն ալ մէկէն հաւատաց ։ Եւ որովհետեւ իրաւցընէ Կասսիոս պատերազմին ատենը Լատիններէն ստակ առած ըլլալով հետերնին Թղթակցութիւն կ՚ընէր ու զիրենք Հռոմ կը կանչէր , ասով դիւրաւ կասկածելի եղաւ տրիբուններուն ու ժողովրդեան առջեւ . հիւպատոսութենէ ելլելուն պէս դատաստանի կանչեցին զինքը . ու Հռոմին մէջ բռնաւորութիւն կ՚ուզէ ընել ըսելով ՚ի մահ դատապարտեցին (486) ։ Իրեք անգամ հիւպատոս ընտրուեր էր Կասսիոս , ու վեց ամիս առաջ յաղթանակով Կապիտոլիոն մտեր էր ։

² Ժողովրդեան Կասսիոսի դէմ ունեցած բարկութիւնը շատ չտեւեց . և ամենուն միտքը ագարակային օրինաց վրայ էր ։ Ծերակոյտը զժողովուրդը Հռոմէն հեռացընելու համար Եկուեանց, Վոլսկեանց ու Վէյացւոց հետ ունեցած պատերազմը շարունակեց , բայց տրիբունները անդադար կը բողոքէին ու ագարակային օրէնքը կը ջանային հաստատել ։ Ամէն տարի ան հիւպատոսն որ

---

¹ Ի՞նչպէս դատապարտուեցաւ Կասսիոս ։
² Կասսիոսի մահուանը վերջացա՞ն կռիւները ։

սա ագրարականին օրինաց հաստատուելուն արգելք եղեր էր՝ ատենին դատաստանի կը կանչէին ։ Պատրիկները ասանկ լռած անդադար կռիւներէն աչք բանալու համար՝ Փաբիոսեանք ըսուած հռչակաւոր ցեղին մարդիկը իրենց գլուխ դրին ։

1 Եկուեանց դէմ եղած պատերազմին մէջ երեւցաւ թէ որչափ է եղեր ժողովրդեան ու պատրիկներուն իրարու դէմ ունեցած ատելութիւնը ։ Ան միջոցին որ հեծելագունդը թշնամիները հալածեց, Կեսոս Փաբիոս հիւպատոսը հրամայեց հետեւակ զօրքին որ փախչողներուն ետեւէն հասնի. բայց անիկայ տեղէն չշարժեցաւ, և Եկուեանք յաղթողի պէս ետ քաշուեցան ։

2 Աս երկպառակութիւններուն ծայրը գէշի երթալը յայտնի էր ։ Վէյացիք ու Եդրուրացիք որ գիտէին թէ արդէն ներքին խռովութիւններով Հռոմ տկարացած է՝ իրարու հետ միացան որ անոր վրայ յարձակին ։ Հռովմայեցւոց հիւպատոսները զօրքով Հռոմէն դուրս բանակած՝ իրենց երկպառակ զօրքովը պատերազմելու սիրտ չէին ըներ ։ Եդրուրացիք Հռովմայեցւոց ասանկ ուշանալէն որ տեսան, նախատեցին զանոնք իբրեւ վատ ու կնամարդի․ Հռովմայեցիք ալ ան նախատանաց չդիմանալով սկսան իրենք իրենցմէ պատերազմ ուզել ։ Փաբիոս Կեսոս հիւպատոսը ուզեց որ պատերազմէն առաջ ամէն զինուոր երդում ընէ որ յաղթող

---

1 Եկուեանց պատերազմին մէջ ինչ հակառակութիւն ըրաւ հետեւակ զօրքը ։

2 Վէյացւոց և Եդրուրացւոց պատերազմը Հռովմայեցւոց դէմ ինչպէս եղաւ ։

ցաւ * ։ Իսկ Վէյացիք եկան Յանիկուլոն լեռան արբեցին, ու բանակնին հոն դրին. չորս տարիէն ետքը հազիւ կրցան Հռովմայեցիք զանոնք անկէց հալածել (474)։

1 Երբոր արտաքին պատերազմները դադրեցան, ժողովրդականաց ու պատրիկներուն մէջ ընկած խռովութեան կրակը աւելի սաստիկ կերպով սկըսաւ բռնկիլ։ Գենուկիոս տրիբունը դատաստանի կանչեց ան հիւպատոսներն որ ագրարական օրինաց հակառակ էին. բայց ըրածը յանդգնութիւն սեպուեցաւ, ու ինքը 'ի մահ դատապարտուեցաւ։ Դատաստանին օրը ժողովուրդը հրապարակը դիզուած կը սպասէր. երբոր տեսան որ Գենուկիոս չիգար, սկսան կարծել թէ զղջացեր է, ամբաստանել չուզեր. մէյմըն ալ եկան իմաց տուին որ Գենուկիոս իր սենեկին մէջ մեռած գտնուեր է։

2 Աս յանկարծական մահն որ լսեց ժողովուրդը քիչ մը ահեցաւ. պատրիկներն ալ ատեն գըտնելով սկսան զինուոր ժողվել որ Հռոմէն դուրս պատերազմի խրկեն։ Երբոր Վոլերոն կորիճը՝ որ առջի պատերազմներուն մէջ զօրավարութեամբ շատ քաջութիւններ ըրած էր՝ ուզեցին հասարակ զինուորի անունով խրկել, յանձն չառաւ ու տրի-

---

1 Գենուկիոս տրիբունին յանցանքը ի՞նչ էր։
2 Վոլերոն երիտասարդը ի՞նչ կերպով տրիբուն եղաւ։

* Չար կամ Չարաշուք կ'ըսուէին հեթանոսաց մէջ քանի մը օրեր՝ անոնց մէջ հանդիպած երեւելի դժբաղդութեան մը համար, ու ան օրերը ամէն գործողութիւն կը դադրէր։

բուններուն գլխէն. երբոր անոնք ալ չօգնեցին, “Ժողովրդեան կը բողոքեմ, ըսաւ, վասն զի տէրբունները աւելի՝ յանձն կ'առնուն հռովմէայեցւոյ մը ծեծ ուտելը տեսնել՝ քան թէ իրենց անկողնի մէջ ապաննուիլը ,,: Այն միջոցին դահիճը զինքը ծեծելու համար մերկացընել կ'ուզէր. Վալերոն դահճին ապտակ մը զարկաւ, ձեռքէն ազատելով ժողովրդեան մէջ փախաւ ու սկսաւ կանչել. “Ժողովրդեան կը բողոքեմ. օգնեցէք ինձի, քաղաքացիք, օգնեցէք. ձեր տրիբուններուն վրայ մի վստահիք, անոնք ալ ձեր օգնութեանը կարօտ են ,,: Այն ատեն ժողովուրդը կատղած՝ հիւպատոսները բանի տեղ չդրաւ, դաւազանները կոտրեց ու դահիճները ցրուեց: Վալերոն տրիբունընտրուեցաւ (471) ու օրէնք դրաւ որ անկէց ետք պատրիկները չկարենան զմէկը տրիբուն ընտրել:

[1] Պատրիկները Վալերոնի ուժին դէմ արգելք մը հանելու համար՝ Ապպիոս Կղոդիոսը հիւպատոս դրին, որ ցեղովը հանդերձ հպարտ ու ժողովրդեան՝ թշնամի սեպուած էր: Ժողովուրդը Վալերոնին իշխանակից տուաւ Լետորիոս անունով կորիճ զինուորը, և Լետորիոս դատաստանի կանչեց Ապպիոս հիւպատոսը. “Ասիկայ պատրիկները հիւպատոս չընտրեցին, կ'ըսէր, հապա դահիճ մը որ ժողովուրդը տանջէ չարչարէ ,,: Ապպիոս աս բանիս վրայ սաստիկ բարկացած՝ երթալու ատենը սկսաւ կանչել թէ “Աստուածներն ու մարդիկ վկայ ըլլան որ դուք այսպիսի վատութեամբ հասարակապետութիւնը կը մատ-

---

1 Ապպիոս Կղոդիոս Ինչպէս հիւպատոս եղաւ:

նէք ,,: Սակայն ծերակոյտը հաւանեցաւ , ու առանց ընդդիմութեան օրէնք դրաւ որ անկէց ետքը ժողովուրդը ընտրէ իր տրիբունները :

1 Վոլսկեանց դէմ բացուած պատերազմին մէջ զօրավարը Ապպիոսն էր . ժողովուրդը անկէց ոխը հանելու համար կամաւ յաղթուեցաւ : Կատղեցաւ Ապպիոս , ժողվեց բոլոր զօրքը , հարցուց զինուորներուն թէ ո՞ւր է զէնքերնին , դրօշակիրներուն՝ թէ ո՞ւր է դրօշնին . հարիւրապետները ծեծել տուաւ ու գլուխնին կտրեց , զօրքն ալ տասանորդեց , այսինքն տասնական զինուորի մէջ միճակ կը ձգէր , և որո՛ւն որ կ'ելլէր միճակը՝ անիկայ կը սպաննուէր :

2 Տրիբունները սպասեցին որ Ապպիոսի հիւպատոսութեան ատենը լմննայ . լմննալուն պէս՝ զինքը ժողովրդեան առջևը դատաստանի կանչեցին : Բոլոր ծերակոյտը խռովուած էր . բայց Ապպիոս ոչ բարեկամութեան պաշտպանեալներովը և ոչ ծերակուտին աղաչանքովը յանձն առաւ հագուստ * ու լեզուն փոխել և թողութիւն խնդրել . այնպէս որ թէ ժողովուրդը և թէ տրիբունները ամբաստանեալ Ապպիոսին առջևը կը դողային : Վերջապէս անոր արիութեանը վրայ ապշած՝ ան օրը չկրցան բան մը որոշել , և ուրիշ

---

1 Վոլսկեանց դէմ պատերազմը ինչպէս առաջ տարաւ Ապպիոս :

2 Ի՞նչ կերպով ամբաստանուեցաւ :

* Սովորութիւն էր որ ամբաստանուած մարդը սուգի հագուստով ելլէր դատաստանի :

օրուան Թողուցին դատաստանը . բայց անիկայ նոյն օրը չհասած՝ հիւանդացաւ ու մեռաւ : Ժողովուրդը ուզեց որ վրան գամբանական ճառ խօսուի . որդին Հօրը վրայ փառաւոր ներբող մը ըրաւ , ու Թաղումը մեծ հանդիսով կատարեցին (470) :

1 Անկէց ետքը ժանտախտը մեծ ջարդ ըրաւ Հռոմին մէջ . մեռնողներուն Թիւը չկար , անանկ որ մեռելները Թաղելու չհասնելով՝ սկսան Տիբերիս գետը ձգել . մեռնողներուն մէջ էին նաեւ ծերակուտին մեծ մասը , երկու հիւպատոսներն ու տրիբուններուն կէսը :

2 Այն վեց տարուան մէջ տրիբունութիւնը շատ անկարգացաւ (462) : Տերենտիլլոս Արսա տրիբունը հիւպատոսաց իշխանութեանը չափ մը դնելու համար , որ առանց կարգի կանոնի ուզածնին կ'ընէին , առաջարկեց որ օրինաց գիրք մը շինուի ու ըստ այնմ կառավարուին Հռովմայեցիք : Ասոր վրայ ամէնքը տակնուվրայ եղան , Թէ ժողովուրդը և Թէ ծերակոյտը . Տերենտիլլոսի օրէնքը ոմանք մերժեցին , ոմանք ալ պաշտպանեցին : Պատրիկները Երդում ըրին որ այն առաջարկութիւնը Թող չտան որ կատարուի , վասն զի անով բոլոր իրենց ունեցած ազատութիւննին կը վերնար : Զայն հանեցին ամէն տեղ Թէ հրաշքներ եղեր են . կ'ըսէին Թէ երկինքը կրակ երեցաւ , գետնաշարժ

---

1 Ան ատենները ինչ երեւելի դիպուած եղաւ Հռոմ քաղաքին մէջ :

2 Պատրիկներուն հանած խռովութեանց պատճառն ինչ էր :

եղաւ, կով մը խօսեցաւ, երկնքէն անձրեւի պէս մեծ կատարուածք թափեցան, Սիբիլլայից գիրքը կ'ըսէ թէ քաղաքին վրայ Թշնամի պիտի գայ եւ այլն. բայց անօգուտ։ Ժողովուրդը հրապարակը վազեց, ուր երիտասարդ պատրիկները լեցուեր էին, եւ անոնց մէջ իր բարձր հասակովը երեւելի էր Կուինտիոս Կեսոն Ճարտարասան ու քաջ կտրիճը, որ կարգէ դուրս մարմնոյ ուժ ալ ունենալով շատ անգամ՝ իրեններուն գլուխ կեցած՝ հրապարակէն տրիբունները վռնտեր ու ժողովուրդը հեռացուցեր էր։ Խմբացան տրիբուններն որ աւե-կայ իրենց գրած օրէնքը պիտի փճացընէ. ամբաստանեցին զինքն ու վրան ծանր տուգանք դնելով աքսորեցին։

¹ Ան ատենը պատրիկներուն կուսակիցները սաստիկ դիմեցին. եւ Երդոնիոս հարուստ Սաբինացին չորս հազար հոգի, գերի, ծառայ, աքսորեալներ գլուխը ժողված՝ գնաց գիշերանց Կապիտոլիոնը առաւ (460), պահապաններուն շատը սպաննեց. Մնացածները քաղաքը փախան. "Զէնք առէք, զէնք առէք, Թշնամին քաղաքն է,, կանչելով սկսան ասդին անդին վազել։ Առաւօտը Երդոնիոս Կապիտոլիոնէն վար Թերթ Թերթ Թղթեր նետեց, յորդորելով ժողովուրդն որ իրեն օգնեն, "Վասն զի զձեզ ու աքսորեալները գերութենէ ազատելու եկեր եմ,, կ'ըսէր։ Ժողովուրդը տակն ու վրայ եղաւ. տրիբունները՝ մեծերուն դաւաճանութիւնն է ասիկայ, եւ Կապիտոլիոնին

---

¹ Երդոնիոս ի՞նչ պատճառաւ եւ ի՞նչպէս առաւ ու ետքը կորսնցուց Կապիտոլիոնին բերդը։

տրիբոնները իրենց բարեկամներն են, ըսելով յոր- դորեցին ժողովուրդն որ հողերնին չըլլայ, զէնք չառնեն։ Ծերակոյտն ու հիւպատոսները շփո- թեցան, խորհրդի ժողվուեցան. Վալերիոս հիւ- պատոսը ցատքեց վազեց ժողովրդեան մէջ ու սկսաւ ըսել տրիբուններուն. «Աս ի՛նչ է ձեր ըրածը, որ կ'ուզէք հասարակապետութիւնը Եր- դոնիոսին ձեռքը մատնել։ Թշնամին դռներնուս առջևը հասեր է, և դուք կը բանադատէք քաղա- քացիները որ զէնքերնին թողուն, ու նոր օրէնք դնելու ետևէ էք. քաղաքը առնուելէն ետքը որո՞ն համար պիտի դնէք ան օրէնքը»։ Ետքը դարձաւ ժողովրդեան ըսաւ. «Ո՛ քաղաքացիք, թէ որ քաղաքին առնուիլը ու անկէց առաջ եկած չա- րիքը հոգերնիդ չէ, գէթ հայրենեաց աստուա- ծոցը խնայեցէք՝ որ թշնամեաց ձեռքը մատնուեր են. Դիոս, Հերա, Աթենաս և ամենայն աս- տուածներն ու աստուածուհիները պաշարուած կեցեր են. քանի մը ծառաներ մեր փառաւոր մեհեանը բանակնին դրեր կեցեր են, պէտք չէ որ մենք ամէնքնիս ալ վազենք հալածենք զանոնք Դիոսի տաճարէն»։ Ժողովուրդը աս խօսքերէն ու ծերերուն յորդորանքէն սիրտ առած, Տուս- կուղեանցմէ ալ իրենց օգնութիւն հասնելով գնա- ցին թշնամեաց դէմ, Վալերիոս Պուպլիկոլան ա- ռաւ միջնաբերդը, բայց յաղթանակին չհասած՝ զարնուեցաւ մեռաւ. Վոլումնիոս մէկէն անոր տեղը անցաւ, և զօրքը տաքցած գլխով կռուե- լու ատենը՝ առանց իմանալու թէ անգլուխ կը պատերազմի՝ երեք օրուան մէջ բոլորովին յաղ- թեց։ Երդոնիոս սպաննուեցաւ. հետը եղողներն

ալ իրենց արժանաւոր պատիժը քաշեցին ։

[1] Յաջորդ տարին Եկուեանք ու Սաբիննեանք երկիրը ոտնակոխ ընելով՝ ինչուան Հռոմին մօտեցան ։ Մինուկիոս հիւպատոսը ոչ քաջութիւն և ոչ ճարտարութիւն ունենալով՝ չորս կողմէն թշնամիք զինքը պաշարեցին ։ Աս գործը երբոր Հռոմ հասաւ, ան ատենն ամէնքը սարսափեցան ինչպէս թէ բուն Հռոմն ալ բանակին հետ մէկ տեղ պաշարուած ըլլար ։

[2] Այնպիսի վտանգաւոր ժամանակ հարկ եղաւ որ դիկտատոր կամ իշխանապետ մը դնեն ։ Ամենուն աչքը Կուինտոս Կինկիննատոսին վրայ դնաց, որ հարստութենէն ընկած պատրիկ մըն էր, ու Կուինտոս Կեսոն որդւոյն աքսորուելէն ետքը Տիբեր գետէն անդին քաշուեր՝ իր պզտիկ ագարակը կը մշակէր ։ Օր մըն ալ երկիր հերկելու ատեն կը նայի որ դէպ 'ի իրեն պատգամաւորներ կուգան. եզները կը կեցընէ, կնկանը կ'ըսէ որ երթայ անակէն վրայի հագուստը բերէ, ու ճակտէն քրտինքը սրբելով անոնց դիմացը կ'ելլէ ։ Անոնք ալ մէկէն աւետիս կուտան թէ դիկտատոր ընտրուեցար, դաւաղանաւոր դահիճներ ալ կուտան իրեն որ ուզած հրամանները կատարուին, և Հռոմին ու զօրաց խեղճ վիճակը անոր հասկըցընելով կը հրաւիրեն որ շուտով Հռոմ դառնայ ։ Կինկիննատոս կը խռովի, բայց կը լռէ, և արցունք թափելով

---

1 Եկուեանց ու Սաբիննեանց արշաւանքին ատենը ի՞նչ վտանգի մէջ ընկաւ Հռոմէայեցւոց բանակը ։

2 Ի՞նչպէս ազատեցաւ ան վտանգէն ։

աս միայն կ՚ըսէ թէ “ Ուրեմն անդաստանս աս տարին ալ պիտի չսերմանուի ,, . ետքը ամէն բան կնկանը կը յանձնէ ու Հռոմ կ՚երթայ :

¹ Քաղաքը հասնելուն պէս իշխանապետը կը հրամայէ որ զինուոր ըլլալու պատրաստական եղողները ամէնքն ալ հետերնին հինգ օրուան համար հաց ու տասուերկու ցից առած՝ արեւը չմտած Արեսեան դաշտը ժողվուին : Կէս գիշերուան բանակը Լատինացւոց Ալգիդոն քաղաքը հասաւ, զինուորները ցիցերնին իրենց բանակին չորս բոլորը անկեցին ու հիւպատոսին բանակը պաշարող զօրքը իրենք պաշարեցին . և երկու զօրքը մէկ եղած՝ Եկուեանց բանակը ամէն կողմէ պաշարեցին ու հնազանդեցուցին : Փառաւոր յաղթանակով ու շատ աւարով Հռոմ մտաւ Կինկինատոս . որդին պատուով ետ կանչուեցաւ աքսորանքէն, և ինքը տասնըվեց օր դիկտատորութիւն ընելէն ետեւ՝ հրաժարեցաւ իշխանութենէն, ձգեց ծիրանին, ու գնաց դառնալով նորէն արօրը ձեռք առաւ (457) :

² Երբոր աս կերպով անցաւ վտանգը, քաղաքին մէջ նորէն կռիւը սկսաւ : Իկիլիոս տրիբունը օրէնք մը հանեց որ Աւենտին լեռան պարապ կտորները ժողովրդեան տրուին, և տրիբունները իրաւունք ունենան ուզած ատեննին ծերակոյտը ժողովքի կանչելու . թողուց ալ որ Տերենտի-

---

¹ Կինկինատոս ի՞նչպէս ըրաւ իշխանապետութիւնը :

² Իկիլիոս տրիբունին առաջարկած օրէնքը ի՞նչ էր, և ի՞նչ կռիւներու պատճառ եղաւ :

լեան օրէնքը ընդունուի և Ագարակային օրէնքը 'ի գործ դրուի ։ Ժողովրդին ու հրաման տրուեցաւ թէ ով որ կ'ուզէ աս օրէնքը պաշտպանէ ։ Հաս մարդիկ ան օրէնքին պաշտպանութիւն ընելէն վերջը՝ ոտք ելաւ յաղթահասակ ու ճարտասան Սիկկիոս Դենտատոսը, որ թէպէտ յիսունըութը տարեկան՝ բայց երիտասարդի մը պէս վառվըռուն էր, ու սկսաւ ըսել. " Քառասուն տարի է, ո՜ Հռովմայեցիք, որ հայրենեացս կը ծառայեմ. հարիւր քառասուն պատերազմի մէջ մտայ, քառասունըհինգ վէրք առի, որոնց մէկուն վրայ ալ չեմ ամըչցած. աս վէրքերուս տասուերկուքը մէկ օրուան մէջ առեր եմ՝ Երդոնիոսի ձեռքէն Կապիտոլիոնը ազատելու համար ։ Տասնըչորս քաղաքական պսակ * առի. պաշարման պսակի ** արժանի եղայ. երեք անգամ ալ պարսպագիմութեան պսակով*** պսակուեցայ. կրնամ նաև քաջութիւնս ցուցնելու համար համրել ութսունուիրեք ասկի մանեակ, վաթսուն ապարանջանք՝ նոյնպէս ասկի, տասնըութը նետ, քսանըհինգ զրահ՝ որոնցմէ ինը հատը մասնաւոր պատերազմի մը մէջ ինը թշնամի մեռցնելուս վարձն է ։ Ես սակայն ինծի պէս մարդը որ արիւն քրտինք մանելով այնչափ հարուստ երկիրներ աւելցուցեր եմ

* Կաղամախի ծառի ճիւղերէն շինուած պսակ մը կը տրուէր անոր որ պատերազմի մէջ ուրիշի կեանքը ազատեր էր ։

** Խոտէ պսակ կը տրուէր անոր՝ որ քաղաքի մը պաշարման վերցուելուն պատճառ կ'ըլլար ։

*** Աս պսակը անոր կը տրուէր որ յարձակման ատենը ամենէն առաջ քաղաքին պարսպէն վեր կ'ելլէր ։

իմ հայրենեացս՝ դեռ թիզ մը գետնի տէր չեմ եղած, ինչպէս նաև դուք ալ,,։

1 Վերջապէս ծերակոյտը Տերենտիլեան օրէնքը հաստատեց։ Իրեք հոգի գնացին Յունաստան որ Սողոնի օրէնքները օրինակեն բերեն (451)։ Անոնք երբոր Հռոմ դարձան, ալ ոչ նոր հիւպատոս դրուեցաւ և ոչ տրիբուն, հապա տարուան մը համար Տասնպետք անունով տասը դատաւոր ընտրեցին լիակատար իշխանութեամբ, ու անոնց յանձնեցին որ ան օրէնքները կարգի դնեն։ Աս դատաւորները, որ ամէնքն ալ պատրիկ էին, զարմանալի համաձայնութեամբ ու արդարութեամբ տէրութիւնը կառավարելով՝ ամենուն պատկառելի եղան։ Շարադրած օրէնքնին տասը հատ պղնձէ տախտակի վրայ փորեցին ու հրապարակը դրին որ ամէնքը կարդան, ու երբոր տարին լմնցաւ՝ իրենց պաշտօնէն ելան (450)։

2 Ժողովուրդը տեսնելով ասոնց լաւ կառավարութիւնը՝ որոշեց որ ամէն տեսակ իշխանութիւն վերցուի ու մինակ տասը հոգի ամէն բան հոգան, և նորէն տասնպետներ ընտրեց · բայց աս անգամ իրենց իշխանութեամբը զեղծան տասնպետք։ Ապպիոս, որ առջի տարուան տասնպետներուն մէկն էր, ամենուն սիրելի ըլլալով՝ երկրորդ տարին նորէն ինքն որ ընտրուեցաւ, առջի բերանը չուզել ձևացուց, ան մտքով որ իր ընկերները հրաժարին։ Երբոր ժողովուրդը ոտք կոխեց

---

1 Սողոնի օրէնքները ի՞նչ կերպով բերուեցան Հռոմ։

2 Տասնպետաց իշխանութիւնն ի՞նչ էր։

ու Նորէն զինքը տասնպետ դրաւ՝ իշխանութիւն տալով որ ինքը ընտրէ իր իշխանակիցները, Ապպիոս իր ուզած անզգամ մարդիկն ընտրեց, ու անոնց հետ խօսք դրաւ որ Թագաւորի պէս կառավարեն ժողովուրդը, և ինքը որ ինչուան ան ատենը կեղծաւորութեամբ ինքզինքը կը բռնէր՝ անկէց ետքը բոլոր իր ախտերը դուրս հանեց: Տասնպետները առջինին հարիւր քսան սպարաւոր դահիճներ ձգած՝ հրապարակը ելան. հարծես թէ տասն ալ մէյմէկ թագաւոր էին. օրէնքները ոտքի տակ առին, ծերակուտին ու ժողովրդեան ալ մտիկ չընելով՝ տարւոյն վերջը պաշտօննին չձգեցին ու ամէն բռնութիւն սկսան ընել, մէկը մէկալը աքսորել, մեռցընել, կողոպտել: Աս բաները տեսնելով շատ մարդիկ Հռոմէն ցրուեցան գնացին, մնացածներն ալ կարծէին թէ Նորէն Տարկուինեանց ժամանակը հասեր է. բայց ինչպէս Տարկուինեանց՝ սանկ ալ տասնպետաց բռնաւորութիւնը կնկան մը ձեռքով պիտի կործանէր:

[1] Վիրգինիոս անուանով առաքինի ու քաջ հարիւրապետ մը կար, որ իր Վիրգինիա աղջիկը Իկիլիոսին հետ նշաներ էր: Անգամ մը Ապպիոս տեսնելով Վիրգինիան՝ ուզեց իրեն կին առնուլ. բայց որովհետև ազնուականներուն արգիլած էր հասարակ ժողովրդեան հետ խնամութիւն ընելը, Ապպիոս ուզեց խարդախութեամբ կամքը առաջ տանիլ: Խորհուրդ տուաւ Կղոդիոս անու-

---

1 Ի՞նչ կերպով վերցուեցաւ տասնպետաց բռնաւորութիւնը:

նով ցած մարդու մը որ Ճամբան Վիրգինիային հանդիպի, բռնէ զինքը՝ իմ աղախինիս զաւակն է ըսելով, և Ապպիոսին առջևը դատաստանի ելլէ. Կղոդիոս ալ այնպէս ըրաւ, և կը պնդէր թէ Վիրգինիոսն ալ գիտէ աս բանս, բայց հոս չըլլալուն համար սպասենք, կ'ըսէր, մինչուան որ գայ: Ան ատեն Ապպիոս ըսաւ որ աղջիկը Կղոդիոսին տրուի մինչուան որ գայ Վիրգինիոս: Իկիլիոս՝ Վիրգինիային նշանածը՝ տագ կոխեց որ մինչուան հայրը չգայ՝ տալ չըլլար, բայց մտիկ չըրին: Ապպիոս գաղտուկ հրաման գրեց բանակը զօրապետին որ Վիրգինիոսը Հըռոմ չթողէ, և գրսուանց ապսպրեց որ Վիրգինիոսը կանչեն: Սակայն Ապպիոսէն առաջ Վիրգինիոսին բարեկամները մարդ հասուցեր էին անոր, անիկայ ալ Ապպիոսին գաղտուկ գրած հրամանէն առաջ Ճամբայ ելած ըլլալով՝ շուտ մը հասաւ. ապշեցաւ Ապպիոս ու ինչ ընելիքը չէր գիտեր: Դատաստանին ատենը թէպէտ Վիրգինիոս Կղոդիոսին ամէն խօսքերը սուտ հանեց, և բոլոր ժողովուրդն իմացաւ թէ որո՛ւն է իրաւունքը, բայց Ապպիոս կիրքովը կուրցած՝ վճիռ հանեց որ Վիրգինիան Կղոդիոսին տրուի: Վիրգինիոս տեսնելով որ ուրիշ ճար չկայ, եղած վճռոյն հաւնիլ ցըցուց, և հրաման ուզեց որ վերջի բարևը տայ իր զաւկին: Երբոր Ապպիոս հրաման տուաւ, Վիրգինիոս այրած սրտով գնաց Վիրգինիային քովը, ան ալ լալով մեռածի պէս հօրը գիրկն ընկաւ: Ան ատեն Թշուառ հայրը իր աղջկանը պատիւն ու ազատութիւնը պահելու մտքով մէկդի քաշեց զանիկայ, ու մսագործի մը ձեռքէն յանկարծ դանակը առնելն ու աղջկանը սիրտը խո-

Թելը մէկ ըրաւ՝ ըսելով. « Իմ տղաս աս Թուրը ազատէ զքեզ բռնաւորին ձեռքէն ,, . Ետքը քաշեց հանեց դանակն ու Ապպիոսին ցուցընելով, « Ա՛յ անգութ , ըսաւ , աս անմեղ արիւնը խնդրէ քեզմէ վրէժը ,, : Ու անանկ աղջկանը արիւնովը Թաթխուած դանակը ձեռքը բռնած՝ ժողովրդեան մէջէն անցաւ , ելաւ քաղաքէն ու բանակը գնաց , զօրքը յորդորեց որ ելլեն վրէժխնդրութիւն ընեն , ազատութիւննին ձեռք ձգեն. Հռոմի մէջ ալ Իկիլիոս Վիրգինիային արիւնլուայ մարմինը ժողովրդեան ցըցուց : Ան ատեն ամենուն գլուխը տաքցաւ , զօրքն ու ժողովուրդը ապստամբեցան ու ելան , Աւենտին լեռը գնացին , անկէց ալ Նուիրական ըսուած լեռը քաշուեցան : Ծերակոյտը նորէն աս ժողովրդեան երթալը տեսնելով սարսափեցաւ , պատգամաւորներ խրկեց անոնց : Տասնապետաց իշխանութիւնը ընկաւ , տասնապետները քշուեցան և Ապպիոս դատաստանէն ազատելու համար բանտի մէջ ինքզինքը սպաննեց (449) : Ան ատեն ժողովուրդն ալ դարձաւ , հիւպատոսութիւնն ու տրիբունութիւնը նորէն հաստատուեցան . Վալերիոս և Հորատիոս՝ երկուքն ալ ժողովրդեան սիրելի մարդիկ՝ հիւպատոս ընտրուեցան , ու վճիռ հանեցին որ նախ՝ երբոր ժողովուրդը ըստ ցեղից ժողվուած վճիռ մը տայ՝ ան վճիռը օրէնք սեպուի . Երկրորդ՝ առանց ժողովրդեան հաւանութեանը մէկը չկարենայ իշխանութեան հասնիլ . և աս օրէնքներուս դէմ յանցաւոր գտնուողին պատիժը մահ ըլլայ :

## ԳԼՈՒԽ Զ.

Երկոտասան տախտակաց օրէնքները. — Տրիբունաց զօրաց. — Համարակալք. — Սպուրիոս Մէլիոս. — Եդրուրիոյ դէմ պատերազմը. — Զօրաց թոշակ որոշուիլը. — Եդրուրիոյ պատերազմը. — Վէյա քաղաքին պաշարումը. — Ալբայի լճը. — Կամիլլոսի իշխանապետ ընտրուիլը. — Վէյա քաղաքին առնուիլը. — Փաղերիոյ պաշարումն ու առնուիլը. — Կամիլլոսի աքսորուիլը : ( 449–390 ) :

1 Տասնպետաց բռնաւորութիւնը կերպով մը սպառնալ եղաւ Հռովմայեցւոց ազատութեանը հաստատուելուն . և թէպէտ տասնպետութիւնը վերցուեցաւ , բայց երկոտասան տախտակաց օրէնքները հաստատուն մնացին , վասն զի բոլորն ալ Յունաստանի իմաստուն օրէնքներէն քաղուած էին , և անոնց հիմա հասածները միայն մնացած են : Այս օրէնքները իրեք մաս կը բաժնուէին . մեհենական , հրապարակական և առանձնական : Սակայն այն օրէնքներուն մէջ ալ իրաւանց հաւասարութիւն չկար , և ազնուականաց հետ խնամութիւն ընելը հասարակ ժողովրդեան արգիլուած էր :

2 Տրիբունները ծերակուտէն երկու նոր օրէնք

---

1 Երկոտասան տախտակաց օրէնքներն ի՞նչ էին :

2 Ուրիշ ի՞նչ օրէնք աւելցուցին Հռովմայեցիք անոնց վրայ : — Զինուորական տրիբուններուն իշխանութիւնն ի՞նչ էր :

խնդրեցին . Մէյմը որ հասարակ ժողովուրդը կարենայ ազնուականաց հետ խնամութիւն ընել. Մէյմ՚ալ որ ժողովրդականք կարենան հիւպատոս ընտրուիլ : Ծերակոյտը առջինը տուաւ, երկրորդին չէ ըսաւ . բայց երբոր տրիբունները տաք կոխեցին, յանձն առաւ ուրիշ նոր իշխանութիւն մը դնել՝ քան թէ հիւպատոսութիւնը ժողովըրդականաց ձեռքը տալ . ուստի վեց հոգի դրին որ զինուորական տրիբուն կամ տրիբունք զօրաց կ՚ըսուէին. ասոնք հիւպատոսաց իշխանութիւնն ու պաշտօնը ունէին, և անխտիր երկու կարգէն ալ կրնային ընտրուիլ (444) :

1 Երկու տարի վերջը ուրիշ երկու իշխաններ ալ դրին համարակալ անունով, որոնց պաշտօնն էր ժողովուրդը համրել, ու ամենուն՝ ինչուան ծերակոյտին ալ՝ ըրածը քննել ու գիր անցընել, և զօրաց կրթութեանը վրայ հոգ ունենալ : Ասոնց իշխանութիւնը առաջ հինգ տարի կը տևէր, ետքը մէկուկէս տարի ըրին :

2 Ան ատենները Հռոմ սաստիկ սով ընկաւ . և Սպուրիոս Մելիոս անունով հարուստ ու փառամոլ ասպետը Ետրուրիայէ ցորենները բոլոր ինքը գնեց ու ամէն օր ժողովրդեան կը բաժնէր սիրտերնին շահելու համար՝ որ զինքը թագաւորեցընեն : Երբոր ժողովրդէն ու տրիբուններէն բաւական կուսակից ժողվեց, ու իր տունը գիշերանց շատ զէնքեր ալ պատրաստեր էր, Մինուկիոս աղ-

---

1 Համարակալաց իշխանութիւնն ինչ էր :
2 Սպուրիոս Մելիոս ասպետին դաւաճանութիւնը ո՞րն էր :

Նուականը իմացաւ ու ծերակուտին հասկըցուց. Ծերակոյտն ալ անուանի Կինկիննատոսը որ ութսուն տարեկան էր՝ նորէն իշխանապետ դրաւ ։ Կինկիննատոս՝ Մելիոսը դատաստանի կանչեց. ան երբոր մտիկ չըրաւ, խրկեց Սերուիլոս Ահալա զօրապետը որ Մելիոսը բռնէ իրեն բերէ. երբոր Մելիոս նորէն չուզեց գալ, Ահալա զինքը հոն հրապարակին մէջ սպաննեց. Կինկիննատոս Մելիոսին երկիրները ծախել տուաւ, տունը փլուց ու ցորենը աղքատաց բաժնեց ։

1 Քանի մը տարի ետքը Ետրուրիոյ կռիւը սկըսաւ, որ շատ վնաս տուաւ Հռովմայեցւոց ։ Ետրուրիան Իտալիոյ ամենէն մեծ տէրութիւնն էր, և տասուերկու գաւառ կը բաժնուէր. գլխաւոր քաղաքներն էին Վոլատերրա (Վոլթէրրա), որուն շրջապատը չորս մղոն էր. Կլուսիոն (Քիուզի) Պորսենայի առջի մայրաքաղաքը. Վուլսինիա (Բոլսէնա) հարստութեանը համար անուանի, և Վէյա կամ Վէյէս՝ Հռոմին նախանձորդ ու Ետրուրացւոց սրբազան սեպուած քաղաքը ։

2 Պորսենային հետ եղած դաշնագրութեան ժամանակը լմնցած ըլլալով Ետրուրացւոց վրայ պատերազմի ելան Հռովմայեցիք ։ Ծերակոյտը հրաման հանեց որ պատերազմի գնացող զինուորաց թոշակ տրուի ինչուան պատերազմին վերջը. աս բանիս վրայ ուրախացաւ ժողովուրդը ու ամենայն սրտով

---

1 Ան ատենները ի՞նչ երևելի պատերազմ ունեցան Հռովմայեցիք ։

2 Ի՞նչ պատճառաւ բացուեցաւ Հռովմայեցւոց ու Ետրուրացւոց պատերազմը ։

զէնք առաւ որ պատերազմի երթայ։ Իսկ ան պատերազմին բուն պատճառը ա՛ս եղաւ։ Փիդենացիք՝ որ Հռովմայեցւոց նիզակակիցներն էին՝ Վէյացւոց Տոլումնիոս Թագաւորին հետ միաբաններ էին. Հիւպատոսները դեսպան խրկեցին աս փոփոխութեան պատճառը հարցընելու. Թագաւորը զանոնք սպաննել տուաւ ընդդէմ իրաւանց ազգաց. ուստի ծերակոյտը որոշեց որ շուտով աս անիրաւութեան վրէժխնդրութիւն ըլլայ։

1 Առջի պատերազմը Անիենոս գետին քովեղաւ, և Հռովմայեցիք իրենց քաջերուն արեամբը յաղթութիւնը գնեցին։ Երկրորդ պատերազմին ատենը Տոլումնիոս Թագաւորը շատ քաջութիւններ ըրաւ. բայց դիմացէն յաղթահասակ Կոռնելիոս Կոսսոս տրիբունը հագուստէն զանիկայ ճանչնալով՝ քաջութեամբ վրան յարձակեցաւ ու զինքը ձիէն վար քաշելով՝ ոտքին տակը սպաննեց, զէնքերը կողոպտեց, գլուխն ալ թրին ծայրը անցուցած թշնամեաց ցրուեց։ Ետրուրացիք սարսափած ցիր ու ցան եղան, և Հռովմայեցիք Փիդենէի տիրեցին. Կոսսոս յաղթանակաւ Հռոմ մտաւ, ու սպաննած Թագաւորին կողոպուտը Արամազդայ տաճարին նուիրեց։

2 Բայց քանի որ Վէյա մայրաքաղաքը կեցեր էր՝ Հռովմայեցւոց յաղթութիւնները անկատար էին. Իսկ ան առնելու համար տասը տարի պէտք էր աշխատիլ ու պատերազմիլ։ Հռովմայեցիք (105)

---

1 Առաջին պատերազմը ո՞ւր և ի՞նչպէս եղաւ։

2 Վէյա քաղաքը ի՞նչպէս պաշարեցին Հռովմայեցիք։

Վեյան պաշարեցին, և նոյն տարին Վոլսկեանց Անքսուր կամ Տերրաչինա ըսուած հարուստ քաղաքին տիրեցին։ Բայց զօրապետները տեսնալով որ Վեյան յարձակմամբ չեն կրնար առնուլ, ուզեցին սովի բռնել։ Զօրս դին փոսեր փորեցին, ու ձմեռը կենալու համար իրենց կաշիէ վրաններ շինեցին։ Վեյացիք անոնց բանակին այրեցին ու շինել տուած բաներնին կործանեցին։ Ետրուրացիք ալ ան միջոցին Սերգիոս հիւպատոսին բանակը ցրուեցին և փախուցին։ Այսպիսի վտանգներով ու շատ մարդ կորսնցնելով եօթը տարի պատերազմելէն վերջը, Հռոմայեցւոց հեթանոս ու աւելորդապաշտ պատմիչներուն խօսքին նայելով՝ շատ հրաշքներ սկսան երևնալ, որոնցմէ մէկը աւելի զարմանալի սեպուեցաւ։

[1] Ալբա քաղաքին քովի անտառին մէջ լիճ մը կար, ատիկայ սկսաւ յանկարծ աճիլ ու չափէ դուրս բարձրանալ, և մէկը չկար որ կարենար ասոր պատճառը իմանալ կամ մեկնութիւն մը տալ. Դեղփիս մարդ խրկեցին որ պատգամ հարցնէ։ Նոյն ատենը Հռոմայեցւոց յառաջապահ գնդէն մէկ զինուոր մը Վեյացի ծերու մը հետ կը բարեկամանայ, ան ալ կ'ըսէ իրեն թէ "Ինչուան որ Ալբայի լճին ջրերը չիջնան՝ Հռոմայեցիք չեն կրնար Վեյան առնուլ"։ Զինուորը ծերը խօսքի բռնելով առաջ առաջ կը տանի, ու յանկարծ կը դրկէ՝ իր զօրապետին առջևը կը հանէ։ Կ'իմանան որ ան ծերը հաւահմայ է եղեր։ Դեղփիսէն եկած պատ-

---

[1] Ի՞նչ գուշակութեանց սիրտ առին Հռոմայեցիք Վեյա քաղաքին տիրելու։

դամն ալ ծերան խօսքին հաստատութիւն եղաւ . ուստի ամէն ջանք ըրին Հռովմայեցիք ու ան լճին ջուրը այլեայլ առուակներ բաժնելով իջեցուցին :

1 Բայց անով ալ պաշարումը բանի չեկաւ . տասը տարի եղաւ , ու քաղաքը դեռ կը դիմանար : Ժողովուրդը սկսաւ խնդրել որ իշխանապետ մը ընտրուի , և ամենուն աչքը զինուորական տրիբուններէն Կամիլլոս Փուրիոս երիտասարդին վրայ դնաց՝ որ շատ քաջութիւններով երևելի եղեր էր : Վոլսկեանց պատերազմին մէջ ծունկը սաստիկ վիրաւորուելով պատերազմը չէր թողուցած , քաջասրտութեամբ նետը վէրքէն քաշեր հաներ ու առիւծաբար թշնամեաց վրայ յարձըկելով զամէնքն ալ հալածեր էր :

2 Կամիլլոս իշխանապետ ընտրուելուն պէս՝ բանակը գնաց ու սկսաւ զօրաց կարգ կանոն դընել : Արգիլեց որ առանց իր հրամանին պատերազմի չելլեն . իր բանակէն ինչուան թշնամեաց միջնաբերդը գետնի տակէն ական մը փորել տուաւ , ու գրեց ծերակուտին թէ “ Վէյա քիչ ատենէն ձեռքս պիտի անցնի ” : Ծերակոյտը հրաման տուաւ որ ով կ՚ուզէ քաղաքը երթալ կողոպտել՝ երթայ . ասով շատ մարդ գնացին բանակը դիզուեցան : Ան ատեն իշխանապետը հրամայեց զօրաց որ զէնքերնին առնեն ու քաղաքին վրայ յարձակին : Զօրքին մէկ մասը պարսպին վրայ դիմեց , մէկ մասն ալ ականին մէջէն յանկարծակի միջնաբերդին մէջ եղած Հերայի մեհեանը լեցուե-

1 Կամիլլոս ի՞նչպէս իշխանապետ ընտրուեցաւ :
2 Ի՞նչպէս առաւ Կամիլլոս Վէյա քաղաքը :

ցաւ, և Վէյացւոց մէջէն դէմ կեցողները բոլոր ջարդուեցան ։ Հրաման հանեց իշխանապետը որ զէնք չունեցողներուն խնայութիւն ըլլայ, և Հռովմայեցիք վազելով ամէն տեղ սկսան կողոպտել ։

1 Վէյա քաղաքին առնուելուն աւետիսը երբոր հասաւ Հռոմ՝ անպատմելի ուրախութեամբ լեցուեցաւ քաղաքը ։ Հռովմայեցի տիկնայք խմբովին մեհեանները վազեցին՝ աստուածոց շնորհակալութիւն ընելու, և ծերակոյտը հրաման հանեց որ չորս օր հասարակաց աղօթք ըլլայ ։ Իշխանապետին յաղթանակը շատ փառաւոր եղաւ, և Կամիլլոս չորս ճերմակ ձի լծուած կառքով Հռոմ մտաւ . բայց աս հանդէսը Հռովմայեցւոց շատին աչքին դէշ երևցաւ . որովհետև չորս ճերմակ ձիերը Արեգական ու Դիոսի միայն վայելուչ կը սեպուէին ։

2 Քանի մը օրէն ետքը տրիբունները ուզեցին որ Հռոմայ ժողովրդեան մէկ մասը երթայ Վէյա բնակի . ծերակոյտը դէմ կեցաւ, և ամենէն աւելի Կամիլլոս հակառակ երևցաւ աս կարծիքին ։ Տրիբունները վրան ոխ պահեցին, ու կ՚ուզէին զինքը սպաննել ։

3 Բայց Ետրուրիոյ պատերազմը դեռ չէր լմընցած . Կամիլլոս գնաց Փաղիսկեանց Փաղերիա

---

1 Հռովմայեցիք Վէյա քաղաքին առնուիլը որ լսեցին՝ ի՞նչ ըրին ։
2 Տրիբունները ի՞նչ պատճառաւ թշնամացան Կամիլլոսի ։
3 Կամիլլոս ի՞նչպէս առաւ Փաղիսկեանց մայրաքաղաքը ։

մայրաքաղաքը պաշարեց ։ Այն քաղաքին ազնուական տղոց վարժապետը սովորութիւն ունէր որ ամէն օր տղաքը քաղաքէն դուրս կը հանէր կը պըտըտցընէր. և որովհետև այն պաշարման ատենն ալ կը հանէր, օր մը յանկարծ տարաւ տղաքը Կամիլլոսին մատնեց, ըսելով որ "Քաղաքացիք տղոցը սիրոյն համար քեզի անձնատուր կ'ըլլան"։ Կամիլլոս ախորժելու տեղ բարկացաւ անոր անհաւատարմութեանը վրայ, հանուեցընել տուաւ զանիկայ, ձեռուըներն ետին կապած՝ աշկերտներուն ձեռքը տուաւ որ ծեծելով ծեծելով զինքը քաղաքը տանին ։ Փաղիսկեանք Կամիլլոսի վեհանձնութեանը վրայ զարմացած՝ Փաղերիային դուները բացին ու անձնատուր եղան ։

[1] Կամիլլոս երբոր Հռոմ դարձաւ, տրիբունները վրան զրպարտութիւն ըրին թէ Վէյայի կողոպուտէն շատ բան իրեն պահեր է ։ Տեսնելով Կամիլլոս որ զինքը պիտի դատապարտեն, ելաւ Հռոմէն (390). քաղաքին դուռը հասնելով ձեռուըները դէպ 'ի Կապիտոլիոն վերուց ու խնդրեց աստուածներէն որ եթէ անիրաւ տեղը աս նախատինքը ըրին իրեն՝ վրէժխնդիր ըլլան անոնց. ինքը գնաց Հռոմին մօտ Արդէա քաղաքը քաշուեցաւ, և հոն իմացաւ որ տրիբունները իր վրայ ծանր տուգանք դրեր են ։

---

[1] Ի՞նչ պատճառաւ Հռոմէն քաշուեցաւ Կամիլլոս ։

## ԳԼՈՒԽ Է.

Գաղղիացւոց Իտալիա արշաւանքը. — Կլուսիոնի պաշարումը. — Գաղղիացւոց Հռոմ վրայ երթալը. — Ալլիա գետին պատերազմը. — Գաղղիացիք Հռոմը կը կողոպտեն ու կ'այրեն. — Կապիտոլիոնի պաշարումը և ազատիլը. Կամիլլոս Թշնամիները կը հալածէ. — Հռոմին նորէն շինուիլը. — Լիկինեան օրէնք. — Գաղղիացւոց երկրորդ արշաւանքը. — Անիենոս գետին պատերազմը. — Պրետորք. — Կուրտիոս. — Մանլիոս Տորկուատոս. — Վալերիոս Կորվոս: (390–343):

*[1] Կամիլլոսի Հռոմէն ելլելէն ետև Կեդտիացւոց անունով մէկը կ'երթայ կ'ըսէ տրիբուններուն թէ "Գիտնաք որ Գաղղիացիք բանակով Հռոմ կը մօտենան". անոնք կըծիծաղին վրան, վասն զի ինչուան ան ատենը Գաղղիացւոց ինչ ազգ ըլլալն ալ չէին գիտեր եղեր. սակայն Գաղղիացիք երթալով առաջ կուգային: Արունս անունով հարուստ Էտրուրացին Հռովմայեցւոցմէ քաշած նախատանաց վրէժը հանելու համար՝ Իտալիոյ կլիման, պտուղներն ու գինին գովելով յորդորեր էր Գաղղիացիքը որ գան Էտրուրիոյ տիրեն. անոնք ալ գնացին Կլուսիոնը պաշարեցին: Քաղաքացիք սարսափած Հռովմայեցւոցմէ օգնութիւն խնդրեցին. անոնք ալ Փաբիոս Ամբուստոսի երեք որդիքը դեսպան խրկեցին Գաղղիացւոց՝ իմացընելով որ անիրաւութիւն է առանց պատճառի օտար տէրութեան վրայ ելլելը, և*

---

*[1] Գաղղիացիք ի՞նչ կերպով արշաւեցին Իտալիա:*

թէ Կղուսիացիք Հռովմայեցւոց դաշնակից են ։ Գաղղիացւոց զօրավարը Բրեննոս՝ գոռոզութեամբ մը պատասխան տուաւ թէ “ կարիճ մարդուն իրաւունքը իր թուրն է . Հռովմայեցիք ինչուան հիմայ և ոչ մէկ երկիր մը իրաւունքով առած են . իսկ մեր իրաւունքն աս է որ Կղուսիացիք իրենց երկիրը բանեցընելու մարդ չունին , ու մեզի ալ թող չեն տար որ բանեցընենք ” ։

1 Ան ատենը Փաբիոսեանք բարկացած , իրենց դեսպանութեան պարտքն ալ մոռցան , ու Կղուսիացւոց առջեն ընկած՝ Գաղղիացւոց վրայ վազեցին , իրենցմէ մէկն ալ իր ձեռքովը Գաղղիացի մը սպաննեց ։ Բրեննոս մարդ խրկեց Հռոմ ու աս բանիս հատուցում ուզեց . Ծերակոյտը փոխանակ պատասխան տալու՝ Փաբիոսեանց իրեքն ալ զինուորական տրիբուն ըրաւ , և ատով սկսաւ պատերազմը ։

2 Գաղղիացիք իրենց դրօշները բացած՝ Հռոմին վրայ վազեցին ։ Ո՛ր քաղաքներին որ անոնց մօտենալը կը լսէին՝ վախերնէն ասդին անդին կը փախչէին , և ան սարսափը քիչ ատենէն ինչուան Հռոմ հասաւ ։ Ծերակոյտը քառասուն հազար մարդ խրկեց Գաղղիացւոց դէմ , և Հռոմէն տասներմէկ մղոն հեռու Ալլիա գետին քովը երկու բանակները իրարու հանդիպեցան ։ Զինուորական տրիբունները իրենց բանակին յարմար տեղ մը չընտրեցին , ամրանալու պատնէշ մը չշինեցին , և

---

1 Ի՞նչ պատճառաւ սկսաւ պատերազմը Հռովմայեցւոց ու Գաղղիացւոց մէջ ։

2 Ալլիա գետին քովի պատերազմը ինչպէս եղաւ ։

առանց աստուածոց կամքը հարցընելու և զոհեր ընելու՝ ինչպէս որ միշտ սովորութիւն ունէին, զօրքը թշնամւոյն դէմ հանեցին։ Առջի՛ զարնուելուն Հռովմայեցիք բարբարոսաց բազմութենէն ու խառնաձայն գոռում գոչումէն սարսափած՝ սկսան փախչիլ. իրենց բանակին մէջտեղի կտորը բոլորովին ջարդուեցաւ, ձախ թեւին մէկ մասը Ալիա գետին մէջ խեղդուեցաւ, մէկալ մասն ալ Վէյա փախաւ. իսկ աջ թեւը գրեթէ անվնաս Հռոմ իյնալով մտաւ միջնաբերդը ամրացաւ (390)։

[1] Գաղղիացիք առանց փախչողներուն ետեւէն իյնալու՝ մեռելները կողոպտեցին, ու բոլոր անոնց զէնքերը լեռան պէս դիզեցին. վերջը Հռովմին վրայ գնացին ու իրիկուան դէմ հոն հասան։ Յառաջապահ գունդը իմացուց ետեւիններուն որ քաղաքին դուռները բաց են, ու պարսպին վրայ ամենեւին զօրք չկայ։ Բայց Գաղղիացիք վախնալով որ Հռովմայեցիք դարան գործած չըլլան՝ որոշեցին որ ան գիշերը քաղաքին ու Անիենոս գետին մէջ տեղը բանակած անցընեն։

[2] Հռոմին մէջ եղած ահուդողին չափ չկար՝։ Շատ մը ծերեր, կանայք ու տղաք քովի քաղաքները փախեր էին. երիտասարդները հետերնին զէնք և ուտելիք առած՝ Կապիտոլիոն բերդը մտան պահուըտեցան։ Իսկ քուրմերն ու ծերակուտին ծերերը ժողովրդեան մեղքերուն համար զոհ ըլլանք ըսելով հագուած կապուած և փղոսկրէ աթոռներու վրայ նստած՝ ժողով ընելու տեղեր-

---

[1] Ան պատերազմէն ետքը ինչ ըրին Գաղղիացիք։
[2] Հռոմ ինչպէս մտան։

նին չարութեան։ Առաւօտ ըլլալուն պէս Գաղղիացիք Հռոմ մտան. առջի բերան փողոցներուն ու հրապարակներուն մէջին խոր լռութիւնը տեսնելով վրանին վախ մը եկաւ, բայց վերջը սկսան համարձակ տները մտնել։ Երբոր տեսան ան ծերերը որ չարունակ նստեր էին արձանի պէս անշարժ, զարմանք եկաւ վրանին, ու կարծեցին թէ անոնք Հռովմայեցւոց կուռքերն են։ Բայց երբոր մէջերնէն մէկը գնաց Պապիրիոսին ճերմակ մօրուքը շոյեց, Պապիրիոս իրեն նախատինք սեպելով ձեռքի փղոսկրէ գաւազանը Գաղղիացւոյն գլխուն իջեցուց. ան ատեն Գաղղիացին հանեց թուրը՝ Պապիրիոսը սպաննեց, և ետքը զամէնքն ալ մեռուցին. անկէց սկսաւ ջարդը. կանայքն ու տղաքը անխնայ թրէ անցուցին, տները կողոպտեցին, կործանեցին, բոլոր քաղաքին կրակ տուին, ու քիչ ատենուան մէջ Հռոմը աւերակ դարձաւ։

[1] Միայն Կապիտոլիոնը մնացեր էր Հռովմայեցւոց ապաստան. Գաղղիացիք ան ալ պաշարեցին, ու մէկ կողմէն մարդու ոտքի ճամբայ տեսնելով որ ինչուան միջնաբերդը կ՚երթար, պայծառ գիշեր մը ժայռէն վեր ելան և սողոսկելով ինչուան ծայրը հասան՝ սաստիկ լռութիւն պահելով որ ոչ պահապանները իմանան՝ և ոչ շները։ Բայց Հերայի տաճարին նուիրուած սագերը կանչուըռտելով թեւերնին զարնելով Հռովմայեցիքը արթնցուցին։ Ամենէն առաջ Մանլիոս կորիճը զէն-

[1] Կապիտոլիոն ի՛նչպէս ազատ մնաց Գաղղիացւոց ձեռքէն։

քի վազեց ու իր ընկերներուն օգնութեամբը բոլոր թշնամիքը ժայռէն վար գլորեց։

1 Ան միջոցին Կամիլլոս իր հայրենեացը ապերախտութիւնը մոռնալով, Արդէացիքն ու Ալլիայի պատերազմէն փախած հայրենակիցները քովը ժողվեց, ու Գաղղիացւոց վրայ տեղ տեղ մանր յաղթութիւններ կ'ընէր, յուսալով որ քիչ ատենէն իր հայրենիքը ազատէ։ Հռովմայեցւոց ծերակոյտն ու երիտասարդները վեց ամիս պաշարուած կենալով սաստիկ նեղը մնած՝ հաշտութիւն ըրին, դաշինք դնելով որ Գաղղիացւոց հազար լիտր (240 հօխա) ոսկի տան, անոնք ալ թողուն հեռանան Հռովմայեցւոց երկրէն։ Ոսկին կշռելու ատենը երբոր Գաղղիացիք խարդախութիւն կ'ընէին, տրիբունները սկսան գանգատիլ. Բրեննոս ամբարտաւան զօրավարը հանեց իր թուրն ալ կշիռքին մէջ դրաւ "Վա՜յ յաղթուածին" ըսելով։ Երբոր աս խօսակցութիւնները կ'ըլլային, Կամիլլոս իշխանապետ ընտրուած՝ վրայ հասաւ, հրամայեց Հռովմայեցւոց որ ոսկին ետ տանին։ Գաղղիացւոց ալ ըսաւ որ պատերազմի պատրաստուին. ու երկու պատերազմով զամէնքն ալ ջարդեց ցիր ու ցան ըրաւ։

2 Անոր վրայ փառաւոր յաղթանակաւ Հռոմ մտաւ Կամիլլոս. կառքին ետևէն կուգային Հռոմէն դուրս փախած արք և կանայք, և ինքը ըսուե-

---

1 Հռովմայեցիք ինչ կերպով յաղթեցին Գաղղիացւոց։

2 Կամիլլոս ինչ յաղթանակ ըրաւ Գաղղիացւոց քշուելէն ետքը։

ցաւ Երկրորդ հիմնադիր Հռոմայ. Մանլիոսի ալ Կապիտոլեան մականունը տրուեցաւ : Իսկ սագերուն համար Թափօր մը հաստատեցին, որ ամէն տարի օր մը բազմազարդ գահաւորի մը մէջ սագ մը կը դնէին ու հանդիսով կը պտըտցնէին. առջևէն ալ կախած շուն մը կը տանէին՝ որովհետև շները Գաղղիացւոց Կապիտոլիոն ելլելու ատենը չէին հաջած :

1 Հռովմայեցիք իրենց հայրենիքը ատանկով ձեռք ձգեցին, բայց պէտք էր քաղաքը նորէն շինել : Տրիբունները գործեալ առաջարկեցին որ հասարակապետութեան աթոռը Վէյա փոխադրուի : Դէմ կեցաւ Կամիլլոս աս բանիս, ու զօրաւոր փաստերով ժողովուրդը համոզեց որ իրենց բուն քաղաքը չթողուն : Մէկ տարուան մէջ Հռոմ նորէն շինուեցաւ, բայց անանկ փութալով որ շատ փողոցներ ու տներ ծուռումուռ շէնքեր եղան, շատ լուալակներ ալ որ առաջ փողոցներու ու հրապարակներու մէջէն կ՚անցնէին՝ առանձնականաց տանց մէջ մնացին :

2 Այս փորձանքներով Հռովմայեցւոց իշխանութիւնը շատ տկարացաւ. Նուաճուած ազգերէն շատը գլուխ քաշեցին. Եկուեանք, Վոլսկեանք, Ետրուրացիք զէնք առին ու զինուորական տրիբուններուն յաղթեցին : Կամիլլոս նորէն իշխանապետ ընտրուեցաւ, ու Սուտրիոնի քով թշնամիներէն վրէժը հանեց . բայց նոր փառք մըն ալ

1 Նորէն ի՞նչ կերպով շինուեցաւ Հռոմ քաղաքը:
2 Շրջակայ ազգերուն ի՞նչպէս յաղթեց Կամիլլոս:

իրեն ան եղաւ՝ որ Հռոմ քաղաքը մէյմէկին ալ ազատեց գերութենէ ։

[1] Մանլիոս Կապիտոլեան նախանձելով Կամիլլոսին վրայ՝ սկսաւ ժողովրդեան խոստմունքներ ընել, ու զամէնքը մեծերուն դէմ կը գրգռէր. բնական ճարտասան ալ ըլլալով՝ ամենուն սիրտը իրեն կը քաշէր որ վրանին թագաւորէ ։ Կուսանելիոս Կոսսոս իշխանապետը Մանլիոսին միտքը իմանալով՝ բռնեց բանտ դրաւ զինքը ։ Ասոր վրայ ժողովուրդը սուգ մտաւ, ու սկսաւ իր պաշտպանը ուզել, ինչուան որ ազատեցաւ Մանլիոս և նորէն առջի ձուլը բռնեց ։ Տրիբունները որ առաջ անոր կուսակից եղեր էին՝ տեսան որ հասարակապետութիւնը վտանգի մէջ է, Մանլիոսը դատաստանի կանչեցին. Մանլիոս ինքզինքը պաշտպանելու համար իր ծառայութիւնները, քաջութիւնները ու քառասուն տեսակ վարձատրութիւնները մէջտեղին ձգեց. մէկ ձեռքովը կուրծքը բանալով առած վէրքերը կը ցուցնէր, մէկալն ալ դէպ 'ի Կապիտոլիոն երկնցուցած՝ կ'աղաչէր դատաւորներուն որ աչքերնին իր ազատած միջնաբերդին վրայ դարձընեն ։ Կամիլլոս մտածեց որ ժողովուրդը անանկ տեղ մը ժողվէ դատաստանի՝ ուսկից Կապիտոլիոնը չերեւնայ, ուստի Պետելինոյ նուիրական անտառն ընտրեց ։ Հոն փոփոխամիտ ժողովուրդը զՄանլիոսը 'ի մահ դատապարտեց, և Մանլիոս Տարպեան ժայռէն վար ձգուեցաւ՝ ուսկից որ եօթը տարի առաջ Գաղղիացիքը վար նետեր էր (383) ։

---

[1] Մանլիոս Կապիտոլեան՝ ինչ պատճառաւ ու ինչպէս 'ի մահ դատապարտուեցաւ ։

[1] Այն ատեններն որ ազնուականաց ու ժողո-վրդականաց մէջի կռիւը նորէն սկսեր էր՝ Թեթև պարապայ մը ծանր դիպուածներու պատճառ եղաւ ։ Փաբիոս Ամբուստոս ազնուականը իր մեծ աղջիկը Սուլպիկիոս պատրիկին հետ կարգեր էր, պզտիկն ալ Լիկինիոս Ստոլոնի հետ, որ թէպէտ անուանի մարդ՝ բայց ժողովրդականներէն էր ։ Օր մը երբոր երկու քոյրերը Սուլպիկիոսի տունն էին, Սուլպիկիոս որ զինուորական տրիբուն էր՝ հրապարակէն տուն դառնալով, առջևէն գնացող դահիճը տանը դիմացը հանելուն պէս՝ ըստ սովորութեան ձեռքի գաւազանովը դրան կը զարնէ ։ Այս ձայնը լսելուն պէս պզտիկ քոյրը՝ սաստիկ կը վախնայ. մեծը վրան կը խնդայ, ու կը զարմանայ ան սովորութիւնը չգիտնալուն ։ Այս ծաղրածութեան վրայ պզտիկը խիստ կ'առնուի, ու կ'երթայ հօրը կը գանգատի, ան ալ կը խոստանայ որ վրէժը հանէն ։ Իր Լիկինիոս փեսայէն ու Սեքստիոս Լատերանոս բարեկամին հետ կը միաբանի որ պատրիկներուն ազատութիւնները քիչցընէ ։ Լիկինիոս և Սեքստիոս տրիբուն ընտրուելով Լիկինեան օրէնքը առաջարկեցին, որ կը հրամայէր որ ամէն մարդ հինգ հարիւր օրավարէն աւելի երկիր չկարենայ ունենալ, ու երկու հիւպատոսներէն մէկը միշտ ժողովրդականացմէ ընտրուի ( 377 ) ։ Ինչուան ան ատենը այսպիսի յանդուգն առաջարկութիւն չէր եղած. ինը տարի ազնուականաց հետ կռուըռտելէն վերջը երբոր հաստատուելու

[1] Այն ատենները ինչ նոր կռիւ բացուեցաւ ազնուականաց ու ժողովրդականաց մէջ ։

վրայ էր՝ յանկարծ իմացուեցաւ որ Ադրիական ծովուն եզերքէն նորէն ուրիշ Գաղղիացիք իրենց վրայ կուգան. աս որ լսեցին՝ ամէն վէճ դադրեցաւ, ամէն առանձնական պահանջմունքները վերջացան, ու ամէն մարդ հասարակաց վտանգին առջևը առնել կը մտածէր : Ազնուականք և ժողովրդականք՝ ինչուան քուրմերն ալ առ հասարակ զէնք առին :

[1] Կամիլլոս ան ատենը թէպէտ և ութսուն տարեկան էր՝ իշխանապետ ընտրուելով թշնամւոյն առջևը ելաւ : Գաղղիացւոց ծանր ու երկայն թուրերուն դիմանալու համար՝ զօրացը պողպատէ սաղաւարտներ ու երկաթապատ վահաններ բաժնեց, որոնց վրայէն թուրերը սահելով բերաններն կը դառնար. անանկ ալ աղէկ շարեց զօրքը՝ որ Անիենոս գետին քով բոլորովին ջարդեց թշնամին (367) :

[2] Այն պատերազմէն դառնալէն ետքը պատրիկները ստիպուեցան որ Լիկինեան օրէնքը ընդունին : Սեքստիոս Լատերանոս առաջին ժողովրդական հիւպատոս եղաւ (366) : Տեսնելով որ հիւպատոսները արտաքին բաներու զբաղած ըլլալով չէին կրնար ներքին դատաստաններու ուշադրութիւն ընել, ուրիշ երկու իշխան ընտրեցին պրէտոր անուամբ, որ դատաստանները անոնք տեսնեն ու հիւպատոսաց հոն չեղած ատենը տէրութիւնը իրենք կառավարեն :

---

1 Անիենոս գետին քովի պատերազմը ինչպէս եղաւ :

2 Այն պատերազմէն ետքը ինչ նոր կարգաւորութիւն եղաւ Հռովմայեցւոց մէջ :

1 Այն ատենները Հռոմի հրապարակին մէջ մեծ վիհ մը բացուեցաւ՝ որ հողով չէին կրնար լեցընել. քուրմերն ըսին որ « Այն վիհը լեցընելու համար Հռոմին ամենէն աղնիւ բանը մէջը նետելու է »: Երբոր ամէնքը սարսափած տարակուսած կը մնային, Կուրտիոս անունով կտրիճ տղայ մը զէնքերով զարդարուած՝ գնաց ձիովը ան վհին մէջ նետուեցաւ, ըսելով. « Զէնքը ու կտրճութիւնն է ամէն բանէն աղնիւ »: Կ'ըսեն թէ ան ատեն վիհն ալ վրան գոցուեցաւ:

2 Ինչուան Սամնիտնի պատերազմը Հռովմայեցիք Եռնիկեանց, Գաղղիացւոց, Վոլսկեանց և Ետրուրացւոց հետ անդադար պատերազմի հետ էին՝ ինչուան որ անոնք ամէնքն ալ նուաճուեցան, և Գաղղիացիք Հռովմայեցւոց սահմանէն բոլորովին պախսեցան 349ին ատենները: Այն պատերազմներուն մէջ մէկ քանի գիպուածէ զատ յիշատակի արժանի բան չկայ:

3 Անգամ մը որ Գաղղիացիք Հռոմէն երեք մղոն հեռու բանակած կեցեր էին, մէջերնէն վիթխարի զինուորին մէկը Հռովմայեցւոց բանակէն մէկը կանչեց որ մենամարտութիւն ընէն: Քիչ մը ատեն Հռովմայեցիք պատասխան չտուին. բայց վերջապէս Մանլիոս կտրիճ երիտասարդը, որ Կապիտոլիոնը ազատող Մանլիոսին որդին էր,

---

1 Կուրտիոս ասպետին հայրենասիրութիւնը ո՞րն էր:

2 Այն ատենները ի՞նչ պատերազմներ ունեցան Հռովմայեցիք:

3 Մանլիոս Տորկուատոսին քաջութիւնը ո՞րն էր:

հրամանն կ'ուղէ զօրապետէն որ երթայ ան յանդուգն Գաղղիացւոյն հետ զարնուի : "Գնա , կ'ըսէ զօրապետը , ու ցուցուր որ Հռովմայեցի անունը անյաղթելի է ,, : Գաղղիացին տեսնելով իր ախոյեանը , կը սկսի ծաղր ընել , երգ երգել ու զէնքերը վար ձգել : Իրարու մօտենալէն ետև՝ Գաղղիացին առաջ կուգայ , ձախ ձեռքով վահանը վեր կը վերցընէ ու աջով թուրը Հռովմայեցւոյն զէնքերուն վրայ կ'իջեցընէ . Ճարպիկ Հռովմայեցին յարմար ատեն գտնելով՝ անոր զէնքերուն ու մարմնոյն մէջ տեղը կը մտնէ ու թուրը փորը խոթելով մէկէն հոն զէնքը գետին կը փռէ . գլուխը կը կտրէ ու վզէն մանեակը կը հանէ՝ իր վիզը կ'անցընէ : Հռովմայեցիք ուրախութեամբ յաղթական երիտասարդին դիմացը կ'ելլեն ու զէնքը իշխանապետին առջևը կը տանին . զօրքը մէկ բերնով Տորկուատոս անունը տուին իրեն՝ որ Մանեկաւոր ըսել է , իշխանապետն ալ բոլոր զօրաց առջևը անոր քաջութիւնը գովելով ոսկի պսակ մը պարգև տուաւ :

[1] Ուրիշ պատերազմի մը ատեն ալ Վալերիոս անունով պատանին սիրտ ըրաւ յաղթահասակ Գաղղիացւոյ մը դիմացը ելաւ : Կ'ըսեն թէ կռուոյն ատենը ագռաւ մը Վալերիոսի սաղաւարտին վրայ իջեր ու Գաղղիացւոյն երեսն ու աչուըները կտուցովը վիրաւորեր է . և անոր՝ թռչունին վրայ զարմացած կեցած ատենը Վալերիոս զէնքը զարկեր սպաններ է : Այս քաջութեանը փոխարէն

[1] Վալերիոս Կորվոս ինչ քաջութիւն ըրաւ :

*ոսկի պսակ ու տասը զուարակ տուաւ Վաղերիոս, և Կորվոս այսինքն ագռաւ ըսուեցաւ :*

## ԳԼՈՒԽ Ը.

Հռովմայեցւոց միջին Իտալիոյ տիրելը. — Կամպանիա և Սամնիոն. — Կապուա. — Լատինացւոց ապստամբութիւնը. — Վեսուվ լեռան քով եղած պատերազմը. — Տիտոս Մանլիոս. — Դեկիոս. — Սամնիացւոց հաշտութիւն խնդրելը. — Կաւդիոնի կիրճը. — Հռովմայեցւոց անհաւատարմութիւնը. — Եթրուրացւոց ապստամբութիւնը. — Վադիմոն լճին պատերազմը. — Կրտսեր Դեկիոսը. — Սամնիոնի, Լատիոնի, Կամպանիոյ և Եթրուրիոյ նուաճումը : (343–282) :

1 *Հռովմայեցիք որ ինչուան այն տարիները իրենց ուժը տկար Թշնամեաց վրայ փորձեր էին, անկէց ետքը պէտք եղաւ որ մեծամեծ ու զօրաւոր Թշնամեաց հետ զարնուէին, այսինքն Սամնիացւոց, Պիւռոսի և Կարքեդոնացւոց հետ* (343) :

2 *Իտալիոյ ամէն կողմերէն աւելի գեղեցիկը Կամպանիա ըսուած նահանգն էր : Բնակիչներն էին Օսքիկեանք, Պիկենտեանք, Աւրունկեանք, ամէնքն ալ Թոյլ ու վատ բնաւորութեամբ. իրենց մայրաքաղաքն ալ Կապուա զեղխութեամբ լեցուած էր, և փողոցներուն մէջ անուշահոտ իւղագործաց խանութներ միայն կը տեսնուէին :*

---

1 *Հռովմայեցիք երբ սկսան զօրաւոր Թշնամիներու դէմ ելլել :*

2 *Կամպանիան ի՞նչ երկիր էր :*

Հարկաւ այսպիսի քաղաք մը սիրով չկարենար Հռոմին յաղթել:

1 Կամպանիոյ արևմտեան գլխն ուրիշ երկիր մըն ալ կար Սամնիոն անունով՝ անտառային ու լեռնային, և գետերուն ու կիրճերուն բազմութեանը համար անմատչելի: Ասոր մէջ ութը տեսակ գիւղացի ցեղեր կը բնակէին, որ ամենևին քաղաք չունէին. և զատ զատ ընդարձակ ձորերու մէջ հովուական կեանք անցընելով երկար ատեն իրենց առանձնութեանը մէջ մնացին: Բայց անգամ մը քիչ մը հեռացան իրենց ձորերէն, Եարուրացւոց ձեռքէն Վուլդուռնա քաղաքն առին ու անունը Կապուա դրին: Երեսուն տարի ետքը երբոր ուրիշ Սամնիտացիք եկան Կապուան պաշարեցին, բնակիչները Հռովմայեցւոցմէ օգնութիւն խնդրեցին. անոնք չուզեցին օգնել, ըսելով որ Սամնիտացիք մեզի դաշնակից են: Դեսպանները աս լսելուն պէս՝ կանչուըռտելով ըսին. “Կապուացիք Հռովմայեցւոց կուտան իրենց քաղաքը, իրենց երկիրները, իրենց մեհեանները. ասկէց վերջը թէ որ մէկը զմեզ նախատէ՝ ձեր հպատակները կը նախատէ”: Ծերակոյտը աս լսելով՝ ամէն բան ընդունեցաւ, ու մէկէն մարդ խրկեց Սամնիտացւոց որ ետ քաշուին:

2 Անկէց վերջը սկսան ան դժնդակ ու արիւ-

---

1 Սամնիտացւոց պատերազմը ի՞նչ պատճառաւ սկսաւ:

2 Քանի՞ տարի քշեց Սամնիտացւոց պատերազմը: — Ան պատերազմներուն մէջ Հռովմայեցւոց քաջերը որո՞նք եղան:

նահեղ պատերազմներըն՝ որոնց նմանը չէին ըրած Հռովմայեցիք, և անոնցմով մերձաւորեալ բոլոր Իտալիան նուաճեցին։ Այն ատեններ Հարիւր վաթսուն հազար հոգի կար Հռովմին մէջ զինուորութեան յարմար. Սամնիտացիք կ'երևնայ թէ անոնցմէ աւելի զօրք ունեցած են՝ որ պատերազմը եօթանասունուհինգ տարի տևեց. երեսունուհինգ տարի միակերպ պատերազմ եղաւ, ու երեսունհաչորս տարի զինադադարում։ Հռովմայեցւոց կողմէ քաջերն էին Պապիրիոս Կուրսոր, Դեկիոս Մուս, Փաբիոս Հզառուլլիանոս. իսկ Սամնիտացւոց կողմէն Պոնտիոս Հերեննիոս։

1 Այն միջոցին Լատինացիք ալ՝ որ Հռեգիլլեան ծովակին արիւնահեղ պատերազմէն 'ի վեր Հռովմայեցւոց հաւատարիմ դաշնակից եղեր էին՝ երբոր շատ տարի վրան անցնելով ուժովցան՝ կ'ուզէին որ Հռովմայեցւոց հետ մէկ ըլլան, նոյն իրաւունքներին ունենան, և հիւպատոսին մէկը ու ծերակուտին կէսը իրենցմէ ըլլայ։ Մանլիոս հիւպատոսը ըսաւ որ "Ծերակուտին մէջ առջի նստող լատինը սպաննողը ես կ'ըլլամ,,։ Անկէց բոլոր ժողովուրդը յորդորուած՝ սկսան պատերազմի պատրաստուիլ։

2 Հռովմայեցիք իրենց բանակը Վեսուվ լեռան ստորոտը դրին։ Զօրքը ճակատեցընելէն առաջ Դեկիոս ու Մանլիոս հիւպատոսները մէյմէկ

---

1 Լատինացիք ի՞նչ պատճառաւ պատերազմ բացին Հռովմայեցւոց դէմ։

2 Վեսուվ լեռան քովը պատերազմը ի՞նչպէս եղաւ։

զոհ ըրին, ու Հռովմայեցւոց քաջութիւնը վառելու համար այսպիսի առասպել մը հնարեցին՝ որ իբր թէ նոյն օրերը երկուքն ալ երազ մը տեսեր են՝ որ յաղթահասակ և փառահեղ մարդ մը կ'երևնայ իրենց ու կ'ըսէ. "Սանդարամետական դից ու Երկիր աստուածուհւոյն զօրապետ ու բանակ մը պէտք է. ուստի երկու կողմէն որուն զօրապետն որ թշնամւոյն գունդերը աստուածոց նուիրելով՝ ինքզինքն ալ անոնց ետևէն զոհէ, յաղթութիւնը իր ժողովուրդը պիտի վաստըկի": Ու երկու հիւպատոսները միջերնին խօսք դրին թէ ո՛ր կողմէն որ Հռովմայեցւոց բանակը սկսի տկարանալ՝ ան կողմի հիւպատոսը ինքզինքը նուիրէ:

[1] Որովհետև Լատինները թէ լեզուով և թէ բնաւորութեամբ իրենց շատ նման էին, Հռովմայեցիք ապսպրեցին իրենց զօրացն որ հրամանէ դուրս մարդ չշարժի: Ան միջոցին Լատիններուն զօրապետներէն մէկը ելաւ կանչեց որ մէկը դիմացը գայ ու մենամարտութիւն ընեն. Հռովմայեցւոցմէ մարդ չշարժեցաւ՝ հրաման չըլլալուն համար. բայց Մանլիոս հիւպատոսին որդին Տիտոս Մանլիոս ան ամօթը չքաշելով, վազեց դէմն ելաւ՝ յաղթեց Լատինացւոյն, սպաննեց զինքն ու թշնամւոյն կողոպուտը ձեռքն առած՝ շիտակ վազեց հօրը վրանը որ գովութիւն լսէ. "Հա՛յր, ըսաւ, որպէս զի ամէնքն ալ գիտնան որ ես քու զաւակդ եմ՝ ահա քեզի կ'ընծայեմ մեր թշնամւոյն կողոպուտը": Հայրը երբոր տեսաւ, սաս-

---

1 Տիտոս Մանլիոս ինչ քաջութիւն ըրաւ ու ինչպէս մեռաւ:

տիկ ներգացաւ. “Որովհետև հիւպատոսական ու հայրական իշխանութիւնը չպատուեցիր ու զինուորական կարգի դէմ ըրիր՝ ըսաւ, պէտք է պատժուիս որ մեկալ զօրաց ալ օրինակ ըլլաս. առէք դահիճներ, ըսաւ, կապեցէք տղուս գլուխը”: Այն անգութ հրամանին վրայ սարսափեցան ամէնքը. և երբոր տեսան արիւնլուայ փռուած կտրիճին մարմինը՝ սոսկումը կատաղութիւն դարձաւ, ու սկսան դհայրը անիծել: Փառաւոր յուղարկաւորութեան հանդէս ըրին մեռելին համար, ու դիակը Թշնամւոյն կողոպուտովը զարդարեցին:

[1] Պատերազմին որ սկսաւ, առջի գարնուանքին Հռովմայեցւոց ձախ Թևը Լատինացւոց յարձակմանը չկարենալով դէմ դնել՝ սկսաւ տկարանալ: Աս որ տեսաւ ձախ Թևին զօրավարը Դեկիոս՝ գնաց Վալերիոս քրմապետին հարցուց Թէ զօրացը համար ինքզինքը պատարագելու առեն ինչ պէտք է ընէ ու ինչ ըսէ, ու քրմապետին ըսածին համեմատ՝ ծիրանին վրան առած, գլուխն ալ քող մը ձգած, նիզակի մը վրայ բաղկատարած կեցած՝ աս խօսքերս ըսաւ. “Ով դիք, խնամակալք Հռովմայեցւոց, կը խնդրեմ որ յաղթութիւնը մեզի պարգևէք. ահա հասարակապետութեան սիրոյն համար ես ինքզինքս ու Թշնամեաց գունդերը Սանդարամետական դից ու Երկրի կը նուիրեմ”. ետքը զէնքերն առած՝ ձի հեծաւ, կրակի պէս Թշնամեաց մէջ նետուելովը իրար անցուց զամէնքը,

---

[1] Լատինացւոց պատերազմին մէջ ինչ քաջուԹիւն ըրաւ Դեկիոս:

իրենց ալ նետերով զարնուեցաւ մեռաւ ։ Այսով Հռովմայեցիք սիրտ առին ու թշնամւոյն վրայ վազելով անանկ ջարդ մը տուին որ անոնց չորս մասէն մէկը հազիւ ազատեցաւ ։ Անկէց ետքը խելք սորվեցան Լատինք ու բոլորովին Հռովմայեցւոց հնազանդեցան ։

1 Վոլսկեանց Կորիոլանոսի քաղաքը ան ատենները նորէն ապստամբեցաւ , բայց շուտով նուաճուեցաւ , ու Կորիոլանացւոյ մը աներկիւղ համարձակութեամբը բոլոր գերիները ազատեցան ։ Վասն զի հարցուցին անոր թէ ի՞նչ պատժոյ արժանի են քաղաքակիցներդ ․ “ Ան պատժոյն , ըսաւ , որուն արժանի են ազատութեան արժանի եղողները ։ — Բայց թէ որ ներենք , ըսին Հռովմայեցիք , ի՞նչպէս պիտի վարուիք մեզի հետ ։ — Ինչպէս որ դուք մեզի հետ վարուիք ․ թէ որ պայմանները արդար են , միշտ հաւատարիմ կը մնանք , իսկ թէ որ անիրաւ՝ քիչ ատեն ։ „ Աս համարձակ հոգւով տրուած պատասխանին շատ հաճեցաւ ծերակոյտը ․ ամէնքը մէկ բերան ըսին որ “ Այսպիսի ազատասէր ժողովուրդ մը պէտք չէ որ գերի մնայ , Հռովմայեցի ըլլալու արժանի է „ ․ ու Հռոմայ քաղաքակից սեպուելու ամէն իրաւունքը տուին անոնց ։

2 Սամնիտացիք ամենևին զէնքերնին չէին թողուր ․ երբոր շատ անգամ յաղթուեցան և ուզեցին հաշտութիւն ընել , Հռովմայեցիք յանձն չա-

---

1 Կորիոլանացիք ի՞նչ կերպով նուաճուեցան ու ետքը ազատեցան ։

2 Սամնիտացւոց պատերազմը ի՞նչ կերպով սաստկացաւ ։

ռին : Այն առենը երկու կողմէն ալ սկսաւ սաստիկ պատերազմը : Սամնիտացւոց Պոնտիոս Հերեննիոս զօրավարը գնաց Կաւդինի քով բանակեցաւ , և գիտնալով որ պատերազմով չկրնար Հռովմայեցւոց յաղթել՝ նեղ տեղւոյ մը մէջ զանոնք պաշարելու միջոցով ձայն հանեց թէ Սամնիտացիք Հռովմայեցւոց դաշնակիցներուն Լուկերիա բերդը պաշարեր են. տասը զինուոր ալ հովուի հագուստով խրկեց որ Հռովմայեցւոց բանակին մօտ երթան ոչխար արածեն . անոնք երբոր Հռովմայեցւոցմէ բռնուեցան , ըսին թէ Սամնիտացիք Լուկերիան պաշարեցին ու առնելու վրայ են :

¹ Լուկերիա բերդը երթալու երկու ճամբայ կար , մէկը երկայն ու ապահով, մէկալը կարճ բայց վտանգաւոր . վասն զի երկու նեղ կիրճէ պէտք էր անցնիլ . երբոր հիւպատոսները առանց մտածելու գնացին ան նեղ ճամբէն մտան , Սամնիտացիք ետևէն առջևէն ճամբան մեծամեծ քարերով ու ծառերով գոցեցին : Հռովմայեցիք տեսան որ վերը բլուրներուն վրայ դիզուած կեցեր են թշնամիք , ուզեցին ետ քաշուիլ , բայց ճար չկար . հարկ էր կամ անձնատուր ըլլալ և կամ մեռնիլ : Պոնտիոս մարդ խրկեց խորհուրդ՝ հարցուց իր խոհեմ հօրը Հերեննիոսին . ան ծերն ալ ելաւ անձամբ բանակը գնաց ու ըսաւ . " Կամ զամէնքը սպաննէ , կամ զամէնքը պատուով ետ դարձուր . կամ ջնջէ թշնամիներդ և կամ քեզի բարեկամ ըրէ զանոնք " : Պոնտիոս ոչ մէկն

---

¹ Ի՞նչ վտանգի մէջ ընկան Հռովմայեցւոց զօրքերը Լուկերիա բերդին քով :

ըրաւ ոչ մէկալը. իսկ բարձրանալով Հռովմայեցիք ամօթէն ու յուսահատութենէն ստիպուած՝ յանձն առին Պոնտոսի ամէն ուզածները կատարել. Սամնիացւոց տուին մէկ հարիւր տաղանդ ու իրենց ամէն զինուորական հագուստները, իսկ իրենք շապիկանց թրի տակէ անցան գնացին, և երկու հիւպատոսները ու մէկ հարիւր ասպետները խօսք տուին որ մէյմ՚ալ Սամնիացւոց երկիրը ոտք չկոխեն :

1 Երբոր այս ամօթալի հաշտութեան գոյժը Հռոմ հասաւ, ամէնքը սուգ մտան, խանութները գոցուեցան, դատաստանները դադրեցան : Քաղաքացիք ոչ միայն զօրապետաց դէմ ու ան վատ դաշնադրութեան խորհուրդ տուողներուն վրայ բարկացեր էին, հապա նաև բոլոր զօրաց. այնպէս որ նէրս ալ չէին ուզեր առնուլ զանոնք : Բայց զօրաց խեղճութիւնը տեսնելով՝ սրտերնին շարժեցաւ. զօրքն ալ տրտում տխուր մտածութեան Հռոմ մտան, ու ամօթէն վազեցին տուներնին մտան գոցուեցան :

2 Երբոր ժողվուեցաւ ծերակոյտը, Պոստումիոս հիւպատոսը սկսաւ խօսիլ. “Մեր խոստմունքը պահելու ամենևին պարտական չենք, ըսաւ. միայն մենք երդում ըրինք, ուրեմն մատնեցէք զմեզ Թշնամւոյն ձեռքը ու պատերազմը նորէն սկսեցէք„ : Աս խօսքին վրայ ծերակոյտն ու ժո-

---

1 Հռովմայեցիք երբոր Սամնիացւոց հետ եղած դաշնադրութիւնը լսեցին՝ ի՞նչ ըրին :
2 Ի՞նչ կերպով աս դաշնադրութիւնը լուծել ուզեցին :

զօրավարըը ծառի զարկին, գովեցին. Պոստումիոսին՝ և անոնց որ հաշտութեան երաշխաւոր եղեր էին՝ հազարապետները հանեցին ու ձեռքերնին ետևնին կապուած առին տարին զիրենք։ Երբոր Սամնիտացւոց առաջանը ելան Պոնտիոսին առջև, ազդարարը քուրմը այսպէս ըսաւ. “Որովհետև աս մարդիկը առանց Հռոմայ ժողովրդեան հրամանին հաշտութիւն ընելու խօսք տուեր են՝ յանցաւոր են, և որպէս զի ժողովուրդը աս յանցանքէն պատասխանատու չըլլայ՝ ահա աս մարդիկը ձեզի կը թողում,,։ Քուրմին խօսքը լմննալուն պէս՝ Պոստումիոս կ'երթայ ոտքովը անոր կը զարնէ ու կ'ըսէ. “Ես ասկէց ետքը Սամնիտացի եմ, և Հռոմայեցւոց ազդարարաքուրմին զարնելովս՝ իրաւանց ազգաց դէմ բան ըրի. ասով Հռոմայեցիք օրինաւոր պատճառ կ'ունենան Սամնիտացւոց դէմ պատերազմ ընելու,,։ Այսպիսի տղայական խարդախութեան վրայ թէպէտ և բարկացաւ Պոնտիոս, սակայն Հռոմայեցւոցմէ աւելի վեհանձն գտնուեցաւ. վասն զի հրամայեց որ ամէնուն շղթաները արձըկեն, ու զիրենք ետ խրկելով ըսաւ. “Թէ որ չէք ուզեր դաշնադրութիւնը պահել՝ եկէք նորէն մտէք Կաւդիոնի կիրճը,,։ Պատերազմը նորէն սկսաւ. յաղթուեցան Սամնիտացիք, և իրենք ալ Հռոմայեցւոց պէս առանց զէնքի թրի տակէն անցան (313)։

¹ Այն ձախորդութեանը վրայ Սամնիտացիք բարկացած՝ Ետրուրացւոցմէ օգնութիւն խնդրեցին։

---

¹ Ետրուրացւոց բոլորովին յաղթուիլը ինչ կերպով եղաւ։

Ետրուրացիք երկու անգամ յաղթուելէն ետքն ալ (311 և 310) ամէն ուժերնին ժողված՝ վերջին ճիգը թափեցին ։ Երդում ըրին զինուորները որ ամենեքին ետ չքաշուին, և ատոր համար ամէն մարդ իրեն մէկ ընկեր մը ընտրեց, որ եթէ փախչելու ըլլայ՝ մէկէն անիկայ հոն զինքը զարնէ սպաննէ. սակայն պատերազմիլը աւելի ապահով էր քան թէ փախչիլը. սաստիկ պատրաստուած սկսան պատերազմի երթալ, և երկու զօրքը Վադիմոն լճին քով ճակատեցան ։ Ետրուրացի զօրաց կատաղութիւնն ու յուսահատութիւնը այնչափ էր որ շուտով թուրերնին ձեռք առնելու համար՝ սլաքներն ու նետերը գետին ձգեցին, ու Հռովմայեցւոց առաջին ու երկրորդ կարգը զարկին վիրաւորեցին. բայց երրորդ անոնց նոր լեգէոններ օգնութեան հասան՝ վիրաւորուածներն ալ սիրտ առին, Ետրուրացիք շփոթեցան՝ ջարդուեցան, բանակնին առնուեցաւ, ու հազիւ եղաւ որ մնացածները ձգեն փախչին ։ Այն պատերազմէն ետքը Ետրուրացւոց ուժը բոլորովին կոտրեցաւ (309) ։

¹ Սամնիտացիք ալ մեծ պարտութիւն տեսան պատերազմի ; զօրքերնին փառաւոր ու ահաւոր երեւցնելու համար նոր նոր զէնքեր հնարեցին ։ Զօրքը երկու գունդ բաժնուեցաւ, մէկուն վահանները ոսկիէ էին, միւսինը արծըթէ. զրահները հիւսած, ձախ ծունկերնին բարձապան ունէին, գլուխնին բարձր փետրազարդ սաղաւարտ, որպէս զի հասակնին բարձր երեւնալով

---

¹ Սամնիտացիք ի՞նչպէս յաղթուեցան Հռովմայեցւոցմէ ։

աւելի վախ ձգեն Թշնամւոյն սիրտը ։ Ոսկի վահան-ունեցող զօրաց հագուստը գոյնզգոյն էր, մեկալ-ներնուն ձերմակ ։ Բայց Հռովմայեցւոց փոյթը չէ-ղաւ. մանաւանդ Թէ զօրապետները Թշնամւոյն ան հարուստ զէնքերը աւարի առնելով՝ սկսան իրենց զօրքը քաջալերել. " Զինուորին զարդը երկաթն ու ուժն է կ՚ըսէին. ոսկին ու արծաթը պատերազմէն առաջ կը փայլին, բայց կռուէ ատեն արեան ձառագայթաց մէջ փայլունութիւննին կը կորսնցնեն ։ Յաղթութենէն վերջը ալեալ է ատենն է զարդարուելու. աւարը յաղթականներին որս է ընչերը Թշնամիին " ։ Պատերազմը սկսելուն պէս զարնուեցան ու փախան Սամնիտացիք, և բանակ-նին առնուեցաւ. Ծերակոյտը հրամայեց որ Պա-պիրիոս Կիւրսորին փառաւոր յաղթանակ ընէ, և յաղթանակին զինուոր զարդը Թշնա-մեացմէ առնուած զէնքերն էին. այնչափ փառա-ւոր եղաւ ան անզամնուն յաղթանակը, որ իւ-չուան հրապարակին մէջի ոսկերչաց խանութները աւելցած ոսկեզօծ վահաններով զարդարեցին ։

¹ Եկուեանք Սամնիտացւոց օգնած ըլլալուն հա-մար՝ Հռովմայեցիք վրէժխնդրութիւն ըրին ։ Յի-սուն օրուան մէջ անոնցմէ քառասունումէկ քա-ղաք առին, որը քանդեցին՝ որը այրեցին ։ Բայց վրան շատ չանցաւ, Ետրուրացիք, Ումբրացիք, Բոյացիք և Գաղղիացիք Սամնիտացւոց հետ միացան ու ահաւոր դաշնակցութիւն մը ըրին ։ Ծերակոյտը միայն հինգ բանակ ոտք հանեց ։ Փաբիոս և Դե-

¹ Եկուեանց ու անոնց դաշնակիցներուն Ի՞նչպէս յաղթեցին Հռովմայեցիք ։

ցեք, հիւպատոսին մահուանը աստուածոց բարկութիւնը անցաւ. Դեկկիոսի հոգին ետեւէն կը քաշէ իր հետը նուիրած թշնամիները և դժոխոց կատաղիները ահա առեր կը տանին զիրենք ,,: Սանկով Հռովմայեցիք զօրացան, ու թշնամիք յաղթուեցան:

¹ Սամնիացիք անով ալ չյուսահատելով ուզեցին որ կամ բոլորովին յաղթեն կամ յաղթուին: Քառասուն հազար հոգի ժողվուեցան Ակուիլոնիա քաղաքն ու խօսք տուին որ զօրապետին խօսքէն դուրս չելլեն: Բանակին մէջ տեղը վանդակներով ու տախտակներով երկու հարիւր քառակուսի տանաչափ ընդարձակութեամբ տեղ մը շինեցին ու չորս կողմէն կտաւով պատեցին: Հոն Ովիոս Պակիոս անունով ծեր քուրմը Սամնիացւոց հին արարողութեամբը զոհ մատոյց: Զոհը լմննալէն վերջը զօրապետը բոլոր զօրքին գլխաւորները ներս կանչեց, որ մէկիկ մէկիկ շրջափակը մտան, ու սեղանին մօտ գնացին երդումըրին՝ որ ինչ որ հոն տեսնեն կամ լսեն՝ ամենևին մարդու չյայտնեն: Ետքը երդուընցուցին զանոնք ու սարսափելի անէծքներ ըսել տուին ամէն մէկուն իր գլխուն ու բոլոր տանը վրայ՝ թէ որ պատերազմէն փախչի կամ փախչողները չսպաննէ: Ով որ յանձն չառաւ երդուընել՝ անիկայ մէկէն սեղանին առջեւը մորթեցին: Սամնիացւոց գլխաւորները սանկ անէծքներով կապուելէն ետև, տասնըվեց հազա-

---

¹ Սամնիացիք ինչ հանդիսաւոր պատրաստութիւն տեսան որ նորէն պատերազմին Հռովմայեցւոց դէմ:

րով գունդ մը ձեւացուցին՝ որ ան շրջափակէն յե-շատակաւը ըսուեցաւ Լէգէոն կոչուի, և անոնց փառաւոր զէնքեր ու փետրազարդ սաղաւարտներ տուին՝ որպէս զի մէկալ զօրքէն տարբերութիւն ունենան :

1 Հռովմայեցիք իրենց աւելորդապաշտութեանը նայելով չար գուշակութիւններ ունեցեր էին. վասն զի վառեակները կուտ չէին ուտեր : Պապիրիոս Կուրսոր աս գուշակութեան ամենևին չնայեցաւ, բանեց վառեկարածը բանակին գլուխը դրաւ, ան ալ պատերազմը չսկսած՝ նետով մը զարնուեցաւ : Ան ատեն "Աստուածները յանցաւորը պատժեցին" կանչեց Պապիրիոս, ու պատերազմի նշան տուաւ. երկու կողմին ալ ջարդը սոսկալի եղաւ, ու երբոր չէր գիտցուեր թէ որը յաղթող պիտի ըլլէ՝ Թշնամեաց ետևէն սկսաւ ամպի պէս փոշի մը ելլել : Վասն զի Հռովմայեցւոց ձիաւորներէն գունդ մը իրենց զօրապետին ճարտարութեամբը ձիերնուն ետևը մեծամեծ ծառեր կապած՝ ասդին անդին քաշկռտելով սաստիկ փոշի կը հանէին. Թշնամիք ալ կարծելով թէ ետևէն շատ մը Հռովմայեցիք հասեր են զիրենք պաշարելու՝ Թողուցին փախան. միայն Կաւալեգէոնին զինուորները իրենց երդմանը հաւատարիմ մնալով ամէնքն ալ հոն կեցան ջարդուեցան : Ան օրը կորսնցուցին Սամնիացիք երեսուն հազար հոգի և իննսունեօթը գրօշ : Մէկ օրուան մէջ Ակուիլոնիա ու Կոմինիոն քաղաքները և ուրիշ

---

1 Հռովմայեցիք ի՞նչ պատրաստութիւն ունէին, և ի՞նչպէս եղաւ պատերազմը :

շատ պզտիկ քաղաքներ այրեցան մոխիր դարձան։

1 Իրաւ է որ Սամնիացիք անկէց ետքն ալ քիչ մը ատեն զօրացան, սիրտ ըրին, ու ինչուան յաղթեցին ալ Փաբիոս Գուրգէս հիւպատոսին։ Բայց երբոր Պոնտիոս Հերեննիոս մեռաւ, հետը մեռաւ նաև Սամնիացւոց ազատութիւնը, և Սամնիոն քաղաքը աւերակ դարձած՝ Հռովմայեցւոց իշխանութեան տակը մնաց (282)։

2 Այս աշխարհակալութիւններով Հռովմայեցւոց տէրութիւնը Տիւռէննեան ծովէն ինչուան Ադրիական ծովը տարածուեցաւ, այսինքն ան Յունաստանին դիմացը՝ որուն վրայ ալ քիչ ատենէն աչք պիտի ձգէին։ Երկու հարիւր եօթանասուն ու երեք հազար զէնք առնող կրցող քաղաքացի ունէին ան ատենը, և օրէ օր իրենց զօրութեանը հետ իշխանասիրութիւնն ալ աճելով կը պատրաստուէին որ մը բոլոր աշխարհիս տիրապետելու։

---

1 Ի՞նչ կերպով բոլորովին նուաճուեցան Սամնիացիք։

2 Հռովմայեցիք ո՞րչափ զօրացած էին ան ատենները։

## ԳԼՈՒԽ Թ.

Մեծ Յունաստան. — Տարենտացիք Հռոմայեցւոց դեսպաններուն նախատինք կ'ընեն. — Պիւռոսի Իտալիա անցնիլը. — Հերակլէայի պատերազմը. — Կինէաս. — Փաբրիկիոս. — Ասկուղոնի պատերազմը. — Պիւռոսի Սիկիլիա անցնիլը. — Բենեւենտոյի պատերազմը. — Պիւռոսի Եպիրոս դառնալը. — Տարենտոնի առումը. — Մեծին Յունաստանի նուաճումը (281-264):

1 Հռոմայեցիք ան ատենները մէկ պատերազմ մը լմնցընելնուն պէս ուրիշ մը կը սկսէին, ուստի Միջին Իտալիան նուաճելէն ետեւ Մեծին Յունաստանի տիրելու նայեցան:

2 Մեծ Յունաստան Սամնիոնի հարաւային կողմը կ'իյնար. և բնակիչները մեղկ ու իրենց նախնեացը քաջութիւնը կորսնցուցած մարդիկ էին. վասն զի Յունաստանէն եկած այլ և այլ գաղթականներ էին, անոր համար ալ Մեծ Յունաստան ըսուեր էր երկիրը, որ զուարճալի էր ու շատ բարեբեր, և սահմանը հիւսիսէն Միջին Իտալիան էր, հարաւէն Միջերկրական ծովը, արեւելքէն Ադրիական ծովը, և արեւմուտքէն Ետրուրիան: Կը բաժնուէր Ապուլիա, Լուկանիա, Մեսապիա և Բրուտիոն, և մէջը մեծակառոյց քաղաքներ շատ կային, ինչպէս Պեստոն՝ հոյակապ շէնքերուն

1 Սամնիացիքը նուաճելէն ետեւ ինչ ըրին Հռոմայեցիք:

2 Մեծ Յունաստան ուր կ'իյնար և ինչ երկիր էր:

համար անուանի, Սիբարիս՝ բնակիչներուն փափկասիրութեանը համար, որ ինչուան իրեք հարիւր հազար զօրք կրնար հանել, ինչպէս նաև Կրոտոնէ քաղաքը. իսկ Տարենտոն հարստութեանը համար շատ երևելի էր։ Յոյն և Հռովմայեցի գաղթականներուն մեծ տարբերութիւնը աս էր որ Յոյնք իրենց մայրաքաղաքէն կախում չունէին, իսկ Հռովմայեցիք բոլորովին Հռովմայ հրամանին տակն էին. ուստի Յունաց գաղթականութիւնը ցրուած էր, իսկ Հռովմայեցւոցը տարածուած հայրենեաց։

¹ Մեծին Յունաստանի պատերազմին պատճառ տուողները Տարենտացիք եղան։ Ասոնք օր մը երգոյ՝ խաղի մը համար ծովահայեաց մեծ թատրոնը ժողվեր կեցեր էին, յանկարծ տասը Հռովմայեցի ցռկանաւերու դրօշակներ սկսան երևնալ։ Ան ատենը Փիլոքարիս ճարտասանը ոտք ելաւ, ըսաւ թէ հին դաշնադրութիւն մը ունէինք մենք Հռովմայեցւոց հետ որ իրենց հրաման չկար Լակինեան Հերայի հրուանդանէն անդին անցնելու. ուստի պէտք է որ ան բարբարոսաց յանդգնութեան պատիժը տանք։ Շուտ մը նաւեր իջեցուցին ծովը, և Հռովմայեցիք սկսան փախչիլ. ցռկանաւերէն հինգը բռնուեցան, մէջի մարդիկն ալ գերի ծախուեցան (281)։

² Ծերակոյտը մարդ խրկեց Տարենտացւոց և ուզեց որ աս նախատանաց հատուցումն ըլլայ։

---

¹ Մեծ Յունաստանի պատերազմին պատճառը ի՞նչ եղաւ։

² Ի՞նչ նախատինք ըրին Տարենտացիք Հռովմայեցւոց դեսպաններուն։

Դեսպանները տօնի մը օր Թատրոնը մտան , ուր որ ամբողջաբար Ցեղը իրենց ժողովքները կ'ընէին , ու տեսան որ բոլոր ժողովուրդը կերած խմած գինովցած է ։ Իրենց գլխաւորը Պոստումիոս երբոր Հռովմայեցւոց պահանջմունքներն առաջարկեց , Տարենտացիք ամէնքը մէկ բերան սկսան ծիծաղիլ , բառերուն չհաւնիլ , և թէ որ յունարէն բառ մըն ալ ծուռ հնչէր , աւելի ծիծաղնին կը բարձրացնէին , ու տգէտ , բարբարոս կանչելով Հըռովմայեցիները ծաղր կ'ընէին . ան աստիճանի հասուցին աս իրենց անխելք յանդգնութիւննին որ ինչուան Թատրոնէն դուրս ալ վռնտեցին դեսպանները . ան բաւական չէր , դեսպանները Թատրոնին առջևը ժողվուած խաժամուժ ամբոխին մէջէն անցնելու ատեն՝ ժողովուրդն ալ շատ նախատինքներ ըրաւ անոնց , այնպէս որ Պոստումիոս և ընկերները սաստիկ բարկութեամբ և ըսպառնալեօք իրենց տեղը դարձան ։

1 Ուշ արթընցան Տարենտացիք , տեսան որ Թըշնամին քաղաքամարտիկ զօրքով իրենց վրայ կուգայ , և իրենք ամենևին պատրաստութիւն չէին տեսած դէմ կենալու , ուստի Եպիրացւոց Պիւռոս Թագաւորը իրենց օգնութեան կանչեցին ։

2 Աս Թագաւորը , որ Արծիւ Եպիրոսի ըսուեր էր , իր ատենի զօրապետներուն մէջ ամենէն անուանին էր ։ Մեծին Աղեքսանդրի քաջութեանը ժառանգ՝ անոր պէս կը սիրէր ինքն ալ

---

1 Երբոր Հռովմայեցիք պատերազմի ելան Տարենտացւոց վրայ , անոնք ինչ ըրին ։

2 Պիւռոս ինչ բնաւորութեան տէր էր ։

ամէն տեղ արշաւելով իր բաղդը փնտռել: Անոր փառասիրութեանը քիչ մը սանձ կը դնէր Կինեաս անունով իմաստուն Թեսաղացի իշխանը՝ որ Դեմոսթենեսի աշակերտ եղած էր, և այնպէս զօրաւոր էր իր խօսքը որ ինչուան ինքը Պիւռոս ալ կը խոստովանէր թէ շատ քաղաքներու անոր ճարտասանութեամբը տիրեր եմ քան թէ իմ թրովս:

1 Երբոր Պիւռոս Իտալիա երթալու խորհուրդը յայտնեց անոր, "Տէր արքայ, ըսաւ Կինեաս, Հռովմայեցւոց հետ ըրած պատերազմներնուս վախճանը ի՞նչ պիտի ըլլայ: — Իտալիոյ տիրել,, ըսաւ թագաւորը: "Իտալիոյ տիրելէդ վերջը ի՞նչ պիտի ընես: — Հարուստ ու բազմամարդ Սիկիլիա կղզին կեցեր է, անոր ալ կը տիրենք: — Անոր տիրելէդ վերջը արշաւանքդ պիտի դադրեցնե՞ս: — Սիկիլիայէն Ափրիկէն մօտ է, կ'երթանք անոր ալ կը տիրենք: — Այս ամէն աշխարհակալութիւններէն ետքը ի՞նչ պիտի ընենք: — Ան ատենը, սիրելիդ իմ Կինեաս, կ'ուտենք կը խմենք, հանգիստնիս կը նայինք,, ըսաւ Պիւռոս. "Ո՛հ տէր արքայ, ըսաւ Կինեաս, ո՞վ կ'արգիլէ զքեզ հիմակուընէ ան հանգստութիւնը վայելելու՝ որ այնչափ արեամբ և աշխատութեամբ կ'ուզես գտնել,,:

2 Պիւռոսի իշխանասիրութիւնը թող չտուաւ որ Կինեասայ խելացի խորհրդին մտիկ ընէ: Երբոր Տարենտացւոց խաւրած նաւերն հասան,

---

1 Կինեաս ի՞նչ խորհուրդ տուաւ Պիւռոսի:
2 Ի՞նչ պատրաստութեամբ Իտալիա անցաւ Պիւռոս:

քսան հազար հետեւակ զօրք ժողվեց Պիւռոս, երեք հազար հեծեալ, երկու հազար աղեղնաւոր, հարիւր պարսաւոր և քսան փիղ. Նաւերը դրաւ զանոնք ու ինքն ալ մեկնեց ճամբայ ելաւ։ Հազիւ թէ ծովուն մէջ բացուեր էր, յանկարծական սաստիկ փոթորիկ մը ելաւ որ բոլոր նաւերը ցրուեց։ Ինքը Պիւռոս գիշեր մը ամբողջ սաստիկ ալեկոծութիւն քաշելէն ետեւ՝ աւելի փախստականի քան թէ Թագաւորի պէս մինակ հասաւ Տարենտոն. քանի մը օրէն վերջը նաւերն ալ հասան։

1 Տարենտացիք կարծելէն թէ Պիւռոսի իրենց համար պատերազմելու ատենն ալ իրենք իրենց ամէն ուրախութիւնները պիտի ընեն, բայց խաբուեցան։ Վասն զի Թագաւորը սկսաւ զանոնք զինուորութեան կրթել, ստիպել զամէնքը որ զէնք առնուն, ու զինուոր գրուիլ չուզողներուն դէմ սաստիկ խստութիւն բանեցուց։ Բաղնիքներ-ը, Թատրոնները ու կրկէսները գոցել տուաւ, ուրախութիւններն ու խնջոյքները դադրեցուց, քաղաքին դռներն ալ պահապաններ դրաւ որ մարդ չկարենայ փախչել։

2 Այն միջոցին Լեւինոս հիւպատոսը՝ զօրքը հետն առած կը մօտենար. Պիւռոս դիմացն ելաւ, և երկու բանակները Սիրիս գետին քով Պանդոսիայի ու Հերակլէայի մէջ տեղը ճակատեցան։ Պատերազմէն առաջ ձին հեծաւ Թագաւորը, գնաց ինչուան գետին եզերքը, որպէս զի Թշնամեաց դիրքը դիտէ։ Երբոր տեսաւ Հռովմայեցւոց խիստ

---

1 Պիւռոս Տարենտոն հասնելէն ետքը ինչ ըրաւ։
2 Սիրիս գետին քովի պատերազմը ինչպէս եղաւ։

կերպարանքը, անոնց կարգն ու բանակներուն դէմքը՝ շատ զարմանալով ըսաւ. «Անոնց կարգապահութեան մէջ ամենևին բարբարոսական բան չկայ. վերջը տեսնենք»: Պատերազմը սկսաւ, երկու կողմէն ալ հաստատուն քաջութեամբ պատերազմեցան, ու կռուոյն տատանեցած ատենը քիչ մնաց որ Պիւռոս սպաննուէր: Անով խրատուեցաւ, ու իր Թագաւորական զգեստը Մեգակղէս բարեկամին հագցուց. Հռովմէյեցի ասպետ մը յարձակեցաւ Մեգակղեսին վրայ, սպաննեց զինքը, ու զէնքերը կողոպտած՝ վազեց Լեւինոսին՝ կանչելով. «Պիւռոսը սպաննեցի»: Այն յաղթութեան ու ուրախութեան ձայնէն բոլոր Հռովմայեցւոց բանակը սիրտ առաւ, և քիչ մնաց որ Յոյնք բոլորովին յաղթուէին: Վազեց Պիւռոս՝ բարձր տեղ մը ելաւ, ու գլուխն ու ձեռուըները բացած սկսաւ պոռալ կանչել, իմացնել զօրացը Թէ ինքը կենդանի է, փղերն ալ Թշնամեաց վրայ քշեց: Այն ատենը տակն ու վրայ եղան Հռովմայեցւոց լեգէոնները: Ձիերը այն փղերուն հոտին չդիմանալով ու անոնց ահռելի ձայնէն խրտած կը կատղէին ու կը դառնային կը փախչէին: Հետևակ զօրքն ալ չկրցաւ այն ահաւոր աշտարակազարդ գազաններուն առջևը դիմանալ, և սարսափած Թողուց զէնքերն ու փախաւ: Տասնըհինգ հազար Հռովմայեցիք ընկան մեռան, ութը հազար ալ գերի գնացին. բայց Պիւռոս ալ իւր զօրաց մեծ մասը կորսնցուց:

[1] Յաղթանակով մտաւ Պիւռոս Տարենտոն,

---

[1] Այն պատերազմէն ետքը ինչ ըսաւ Պիւռոս:

մեծերը եկան իրեն ուրախակից ըլլան, և Պիւռոս ըսաւ անոնց. “Թէ որ մէյմըն ալ այսպիսի յաղթութիւն ընեմ՝ բանս գէշ է”։ Երկրորդ օրը Պիւռոս Հռովմայեցւոց մեռելները դիտելու կ'ելլէ, ու տեսնելով որ ամենուն երեսն ալ դէպ 'ի թշնամին դարձած է, և ամէնքն ալ դիմացէն վիրաւորուած են, “Ա՜հ, ըսաւ, թէ որ Հռովմայեցիք իմ զօրքս ըլլային, կամ թէ ես անոնց թագաւոր ըլլայի, բոլոր աշխարհիս կը տիրէի”. և հրամայեց որ պատուով թաղեն զանոնք։

[1] Պիւռոս ուզելով հաշտութիւն ընել Հռովմայեցւոց հետ, Կինէաս ճարտասան զօրապետը դեսպան խրկեց։ Կինէաս Հռոմ հասնելով թագաւորին կողմանէ շատ ընծաներ տուաւ մեծամեծաց ու անոնց տիկնանցը, բայց ընծաները ընդունելի չեղան։ Կինէաս ըսաւ ծերակուտին որ յանձն կ'առնու Պիւռոս Հռովմայեցւոց գերիները ազատ արձակել, և անոնց օգնել որ Իտալիոյ տիրեն, միայն թէ իրեն բարեկամ ըլլան ու Տարենտացւոց դէմ թշնամութիւն չընեն։ Ծերակուտէն շատը հաւանեցան, կ'ուզէին հաշտութիւն ընել. բայց Ապպիոս ծերունին, որ կուրութեանը համար պաշտօնէն հրաժարած ու տունը քաշուած կը կենար, երբոր լսեց թէ ծերակոյտը կը մտածէ Պիւռոսին հետ հաշտութիւն ընելու, հայրենեացը փառաց նախանձովը վառուած՝ չորս որդւովը (որ ամէնքն ալ հիւպատոս եղեր էին) ատեան կ'երթայ ու կ'ըսէ. “Ո՞ւր են ան ձեր ապառնալիքները, որով բոլոր աշխարհք կը դողացընէիք. ը-

---

[1] Ի՞նչ պայմաններով ուզեց հաշտութիւն ընել։

սելով որ եթէ Մեծն Աղեքսանդր Իտալիա ալ գար՝ չէինք թողուր իրեն որ անյաղթելի ըսուի, այլ այնպէս կ'ընէինք որ փախչելով կամ մեռնելով Հռովմայ փառքը աւելի պայծառացընէր։ Ինչո՞ւ հիմա Պիւռոսի անունէն այսչափ կը վախնանք։ Թէ որ Պիւռոս հաշտութիւն ընել կ'ուզէ, թող առաջ Իտալիայէն դուրս ելլէ ու ետքը հաշտութեան վրայ խօսի. քանի որ հոս զէնք առած՝ Հռովմայեցւոց սահմանը կը պղծէ, Հռովմայեցիք միշտ հետը պիտի պատերազմին, թէպէտ բիւր Լեւինոսներու ալ յաղթէ"։ Սիրտ տալէն քաջալերուեցան Հռովմայեցիք, և ծերակոյտը պատասխան տուաւ Կինէասայ թէ Պիւռոս հաշտութիւն կ'ուզէ նէ՝ թող նախ Իտալիայէն դուրս ելլէ։

1 Երբոր Կինէաս դարձաւ Տարենտոն, հարցուց իրեն Պիւռոս թէ ինչ տեսար Հռոմ. "Հռոմ քաղաքը տաճարի մը կը նմանի, ըսաւ Կինէաս, ծերակոյտը ինծի թագաւորի ժողով մը երեւցաւ. Հռովմայեցիք այնպիսի բազմագլուխ վիշապի մը կը նմանին, որուն գլուխը քանի որ կտրես՝ նորէն կը բուսնի. արդէն Լեւինոսի ունեցած զօրաց կրկինը պատրաստեր են, անոնց քառապատիկն ալ պատրաստելու կարողութիւն ունին"։

2 Կինէասայ ետեւէն Հռովմայեցւոց դեսպանները ալ Տարենտոն հասան՝ որ Պիւռոսին հետ գերիներուն փրկանաւորութեանը վրայ խօսին.

---

1 Կինէաս ինչ տեղեկութիւն տուաւ Պիւռոսի Հռովմայեցւոց վրայ։

2 Հռովմայեցւոց կողմանէ ով եկաւ Պիւռոսի դեսպան։

իմ միտքս դարձընել, այսօր ալ փորձէ չես կըր-նար զիս մոլորցընել»։

[1] Յաջորդ տարին Հռովմէացիները զօրավար դըրին Փաբրիկիոս հիւպատոսն ու Պիւռոսի դէմ խըր-կեցին։ Երբոր երկու զօրքը դիմացէ դիմաց բա-նակներնին կը դնէին, անծանօթ մարդումը մէկը հիւ-պատոսին նամակ մը բերաւ՝ որուն մէջ Պիւռոսին բժիշկը կը խոստանար իրեն որ թոյն խմցընէ թա-գաւորին թէ որ Հռովմէացիները իր աս մեծ ծա-ռայութեանը արժանի վարձ տան։ Փաբրիկիոս իր Եմիլիոս ընկերակցին հետ խորհուրդ ըրաւ ու վեհանձնութեամբ նամակ մը գրեց, զաւաճանու-թիւնը Պիւռոսին խմացուց. ան ալ ըսաւ զարմանա-լով. «Ո՛ Փաբրիկիոս, աւելի դիւրին է արեւը իր ընթացքէն խոտորեցընել քան թէ զքեզ պա-տուոյ ճամբէն»։ և առանց փրկանքի բոլոր գերե-ները հիւպատոսին դարձուց. բայց Փաբրիկիոս ալ չուզելով թշնամւոյն առատաձեռնութենէն վար մնալ՝ ինքն ալ Տարենտացւոց ու Սամնիտացւոց գե-րիներէն նոյնչափ մարդ իրեն ղրկեց։

Պիւռոս ան ատենը յարմար առեն սեպելով հաշտութեան խօսակցութիւնները նորոգելու, Կի-նէասը նորէն դեսպան ղրկեց. բայց հիւպատոսը հաշտութեան վրայ խօսք չուզեց լսել՝ քանի որ Պիւռոս բոլոր զօրքովը Իտալիայէն դուրս չէ ելած. ուստի հարկ եղաւ որ երկրորդ անգամ պատե-րազմի պատրաստուին, և Ճակատեցան Ասկուղոնի քով։ Ինչուան գիշեր քաշեց պատերազմը. Պիւռոս վիրաւորուեցաւ, յաղթութիւնը անորոշ մնաց,

[1] Ասկուղոնի պատերազմը Ք՝ինչպէս եղաւ։

ու երկու կողմն ալ հաւասար կոտորածով քաշուեցին դարձան : Այն պատերազմին մէջ Պիւռոս Եպիրոսէն բերած զօրացն ու երեւելի զօրապետներուն շատը կորսնցուց · իր դաշնակիցներն ալ սկսան պաղիլ, ու չէր գիտեր ուսկից նոր զօրք ժողվէ · ընդհակառակն Հռովմայեցիք դիւրաւ զօրք կը ժողվէին ու նոր նոր լեգէոններ կը հանէին · ուստի յարմար առթի մը կը սպասէր որ Իտալիայէն քաշուի :

[1] Երբոր Պիւռոս սաստիկ տարակուսած կը սպասէր, Սիկիլիայէն դեսպան եկաւ իրեն որ Կարքեդոնացւոց ու Մամերտացւոց դէմ օգնութիւն կը խնդրէր : Գնաց Պիւռոս, երկու ազգին ալ յաղթեց ու սկսաւ Ափրիկէ երթալու պատրաստուիլ · բայց Կարքեդոնացիք ժամանակ չտուին, բոլոր Սիկիլիան իրեն դէմ հանեցին : Պիւռոս տեսնելով որ անկարելի է իրեն Սիկիլիա կենալը, պատճառ բերելով թէ դաշնակիցներս զիս Իտալիա կը կանչեն՝ ելաւ Սիկիլիայէն · Կարքեդոնացիք նաւատորմիղին վրայ հասան ու երկու հարիւր ցռկանաւէն տասուերկու հատը միայն թողուցին : Պիւռոս ալ զինուորին տեղը լեցնելու համար երբոր Լոկրիս հասաւ, Պերսեփոնեայ մեծագանձ տաճարը կողոպտեց : Երբոր Իտալիա հասաւ, տասը հազար Մամերտացիք հոն պահուըտած՝ ճամբան արգիլեցին · հարկ եղաւ որ հետերնին պատերազմի, ու երկու կողմէն ալ շատ ջարդ եղաւ : Թագաւորը վիրաւորուած՝ յաղթահասակ Մամերտացիէ մը միամարտութեան հրաւիրուեցաւ, բայց մէկ զարնուածքով անոր գլուխը ուսովը հանդերձ փրցուց :

---

[1] Ի՞նչ պատճառաւ Սիկիլիա գնաց Պիւռոս :

¹ Անկէց ետքը Կուրիոս Դենտատոս Հիւպատոսը Բենեւենտ քաղաքին մօտ պատերազմեցաւ հետն (275) ու յաղթեց։ Ան անգամ Պիւռոս Հռովմայեցիքը փղերով ալ չկրցաւ վախցընել. մանաւանդ թէ անոնք գազանները վախցընելու գիւտ գտան, որ կանեփէ գնտակներ կը շինէին ու բռնկցուցած՝ կը նետէին փիղերուն առջեւ, անոնք ալ խրտելով առաջ երթալու տեղ ետ ետ կը դառնային ու Պիւռոսի բանակը տակնուվրայ կ'ընէին։ Պիւռոս յաղթուեցաւ, Իտալիայէն փախաւ, և ետքը Արգոսի պաշարման մէջ պառաւի մը ձեռքով մեռաւ։

Ինչուան ան ատեն Հռովմայեցիք կարգաւորեալ բանակ դնելու սովորութիւն չունէին, հապա հովիւներու պէս իրարու մօտ կը կանգնէին վրաննին. երբոր Պիւռոսի բանակն առին՝ սորվեցան որ բանակին տեղը չափելու և չորս դին փոս բանալու է եղեր։

² Տարենտացիք յոյսերնին կտրած և Պիւռոսի դրած պահապաններէն նեղացած՝ Կարքեդոնացւոց ապաւինեցան. անոնք եկան, երկրին տիրելու մտքով շատ նաւերով Տարենտոնի նաւահանգիստը պաշարեցին, Հռովմայեցիք ալ մէկալ կողմէն պաշարեցին քաղաքը, ստիպեցին որ քաղաքացիք անձնատուր ըլլան, բոլոր երկրին տիրեցին, բերդին աշտարակներն ալ փլուցին։ Տարենտոնի իյնալովը մէկալ Յունաց բոլոր գաղթականներն ալ ընկան,

---

¹ Պիւռոս ի՞նչ կերպով բոլորովին յաղթուեցաւ Հռովմայեցւոցմէ։

² Տարենտացիք ի՞նչպէս նուաճուեցան։

*և Հռովմէական հասարակապետութեան սահմանը տարածեցաւ մինչեւ Ռուբիկոնա (Ռուբիկոն) Մակըրային գետակը (264) ։*

## ԳԼՈՒԽ Ժ.

Կարթէգինացիք. — Սիկիլիա. — Առաջին Պունիկեան պատերազմին պատճառը. — Հռովմայեցւոց յաղթութիւնը. — Միլէի նաւային պատերազմը. — Հռեգուլոս. — Քսանթիպպոս. — Ամիլքար Բարքասին յաղթութիւնը. — Եգատեան կղզեաց պատերազմը. — Կարթէգինացւոց հպատակութիւն խնդրելը. — Վարձկան զօրաց պատերազմը. — Հռովմ մէջ եղած դիպուածները ։ (264–237)։

1 *Անկէց վերջը սկսան Հռովմայեցիք իրենց մեծայաղթ զէնքերը Իտալիայէն դուրս տարածել ։ Պիւռոս Սիկիլիայէն ելլելու ատեն աս նշանաւոր խօսքը ըսեր էր. "Ի՜նչ գեղեցիկ քաջութեան ասպարէզներ կը թողունք հոս Հռովմայեցւոց ու Կարքեդոնացւոց". աս կանխատեսութիւնը քիչ ատենէն կատարուեցաւ ։*

2 *Իտալիոյ դիմացը Ափրիկէի ծովեզերքը զօրաւոր ազգ մը եղած էին ան ատեն Կարքեդոնացիք վաճառականութեամբ ու հարստութեամբ, որ մէջ Ափրիկէի ծովեզերքը Սեպտէի կամ Ճիպրալթարայ*

---

1 *Հռովմայեցիք երբ և ի՞նչպէս սկսան Իտալիայէն դուրս աշխարհակալութիւն ընել ։*

2 *Ի՞նչ վիճակի մէջ էին ան ատենները Կարքեդոնացիք ։*

նուաճեցին ինչուան Փիւնիկեան քաղաքները. Սպա-նիայի ծովեզերքը, Քորսիկա, Սարդինիա և Սի-կիլիա կղզիներուն տէրեր էին:

1 Առջի Պունիկեան կամ Կարքեդոնական պա-տերազմին պատճառը Սիկիլիան եղաւ, որ Միջեր-կրական ծովուն կղզիներուն մէջ ամենէն մեծն է, և Հարաւային Իտալիոյ ծայրը կեցած ըլլալով գրե-թէ անոր շարունակութիւնն է, անոր պէս պտը-ղաբեր, բազմամարդ ու բազմահարուստ: Սիկի-լիոյ մէջ անուանի քաղաքներ էին Մեսինա, Սե-գեստա և Ակրագանդ՝ որ երկու հարիւր հազար բնակիչ ունէր, և Սիրակուսա՝ որ Հռոմէն աւելի հարուստ, աւելի ծաղկած և թերևս աւելի ալ բազմամարդ էր:

2 Այն ատեններն երեք զօրաւոր տէրութիւններ Սիկիլիոյ վրայ կը կռուէին. Հերոն Սիրակուսայի թագաւորը, Մամերտացիք * որ Սիկիլիոյ բնակիչ-ները սրէ անցընելով Մեսսինայի տէրեր էին, և Կար-քեդոնացիք: Մամերտացիք վախնալով որ Սիկի-լիայէն աւելի վրէժխնդրութենէն՝ Հռովմայեցւոցմէ օգնու-թիւն ուզեցին: Մէկ կողմէն Ապպիոս Կղօդիոս

---

1 Առջի Պունիկեան պատերազմին պատճառը ինչ եղաւ: — Սիկիլիան ինչ երկիր էր:
2 Հռովմայեցիք ինչ կերպով սկսան Սիկիլիոյ տիրել:

* Ագաթոկլէի վարձկան կամպանիացի զօրքը խաղաղու-թեամբ Մեսսինա քաղաքը մտնելով բնակչաց հետը ապրե-ներ, շուտ հալածեր, անոնց կանանցն ու ստացուածքը յափշտակեր ու Մեսսինա մեծ քաղաքին տիրեր էին. ա-նոնք էին Մամերտացի ըսուածները:

դաշնակից ազգերէն առած նաւերովը անցաւ Ներուցէն ու Սիրակուսացւոց և Կարքեդոնացւոց յաղթեց. մէկալ կողմէն իր իշխանակիցը Վալերիոս Մեսսալա եօթանասունըեօթը ամուր քաղաքներ առաւ. անոնց հետ էր նաև Ակրագանդը՝ որուն մէջ յիսուն հազար զօրք կար, և Հռոմայեցիք անիկայ առնելու համար քսան հազար հոգի կորսնցուցին: Վալերիոս Մեսսանա քաղաքը սաստիկ վտանգէ մը ազատելով ինքն ալ Մեսսանա ըսուեցաւ: Հերոն Հռոմայեցիները տեսնելէն առաջ անոնցմէ յաղթուած հետերնին հաշտութիւն ըրաւ, ու յիսուն տարուան Թագաւորութեան ատենը դաշնադրութեանը հաւատարիմ կեցաւ (261):

1 Սակայն քանի որ Կարքեդոնացւոց ձեռքն էին ծովեզերքն ու ծովեզերեայ քաղաքները, վտանգ կար որ Հռոմայեցւոց բանակը սովէ բռնուի: Ծերակոյտը գիտնալով որ ծովային զօրաց կարօտութիւն ունի, պատերազմական նաւեր շինել տուաւ, և իրենց օրինակ եղաւ՝ Կարքեդոնացւոց Իտալիոյ ծովեզերքը զարկած մէկ ցռկանաւը. երկու ամսուան մէջ հարիւր հատ հընգամեթի ու քսան եռամեթի նաւ պատրաստեցին:

2 Ան նաւերէն առջի ճամբայ ելած տասնըեօթը հատը Հեփեստոսի կղզիներուն քովերը (որ Լիպարեան կղզիք ալ կ'ըսուին) Կարքեդոնացւոց ձեռքն ընկան. բայց Դուիլլիոս հիւպատոսը փա-

---

1 Հռոմայեցիք ի՞նչ կերպով սկսան ծովային զօրութիւն ունենալ:

2 Դուիլլիոս հիւպատոսը ի՞նչ յաղթութիւն ըրաւ:

ռաւոր յաղթութեամբ մը ան Նախատինքը վերցուց ։ Միլէս (Մելացցոյ) քաղաքին քով Կարքեդոնացւոց նաւատորմղին վրայ յարձակեցաւ և յաղթեց ։ Հռովմայեցիք իրենց նաւերուն դանդաղութեանը ճար մը ընելու և Կարքեդոնացւոց նաւերուն արագաշարժութիւնը արգիլելու համար ագռաւ անունով գործիք մը հնարեցին՝ որ երկաթի կեռերով շարժական կամրջի կը նմանէր, ու Թշնամեաց նաւերը կարթելով անշարժ կը բռնէր, որով ծովու վրայ ցամաքի պէս կը կռուէին ։ Ասով Կարքեդոնացւոց յաղթեց Դուիլիոս ․ երեք հազար մարդ ջարդեց, եօթը հազար գերի բռնեց, տասներչորս ցռկանաւ ընկղմեց, երեսունըմէկ հատ ձեռք ձգեց ու մնացածները ցրուեց ։ Այն փառաւոր յաղթութեան լուրը երբոր Հռոմ հասաւ, ամէնքը ուրախացան ․ Դուիլիոսի յաղթանակ ու կարգէ դուրս պատիւներ ըրին, և առաջին նաւամարտի յաղթանակին յիշատակ մշտնջենաւորելու համար ցռկաւոր * սիւն մը կանգնեցին գեղեցիկ արձանագրութեամբ ։ Եւ Դուիլիոս կերպով մը բոլոր կենացը մէջ իր յաղթանակը շարունակեց ․ վասն զի ամէն իրիկուն կերակրէն ետև կ՚ելլէր քաղաքը կը պտըտէր, ու առջևէն ջահընկալ նուագածու մը կ՚երթար ։

1 Հռովմայեցիք ուրիշ քանի մը մանր յաղթու-

---

1 Ո՞րն էր առաջին մեծ յաղթութիւնը որ Հռովմայեցիք ըրին Կարքեդոնացւոց դէմ ։

* Ցռկաւոր սիւնը ճերմակ մարմարինէ կոթող մըն էր՝ նաւու ցռուկներով կամ քիթերով զարդարած ․ և աս սիւնը ինչուան հիմա կայ ։

թիւններ ալ ընելով ծովու վրայ՝ սիրտ առին, և ուզեցին որ մեծ ճակատամարտով մը պատերազմը վերջացընեն: Իրեք հարիւր երեսուն ցռկանաւ, քառասուն հազար մարդ՝ Ատտիլիոս Ռեգուլոս հիւպատոսին հետ խրկեցին, որ գնաց Սիկիլիոյ հարաւային ծովեզերքը Եկնոմոս քաղաքին քով Թըշնամեաց նաւատորմիղին դէմ ելաւ, որ իրեք հարիւր քառասուն նաւ էր: Հաւասար արիութեամբ երկու կողմէն ալ պատերազմեցան, բայց վերջապէս Կարքեդոնացիք յաղթուեցան, և իրենց նաւերէն վաթսունի մը չափ բռնուեցան, երեսուն հատ ալ ընկղմեցան: Իսկ Հռովմայեցւոց կողմանէ քսանըչորս նաւ կորսուեցաւ:

1 Ան յաղթութեամբ սիրտ առաւ Ռեգուլոս և ուզեց բուն Ափրիկէ երթալ, Կարքեդոնացւոց հետ հոն պատերազմիլ: Աս առաջարկութեան վրայ ամէն կողմէն տրտունջ ելաւ, ու զինուորներն այնպիսի երկայն նաւարկութեան վտանգներն ու անծանօթ երկիրներն մտածելով չէին ուզեր երթալ: Երբոր Մաննիոս լեգէոնապետը ամենէն աւելի ձայնը բարձրացուց ու սաստիկ կըգանգատէր, Ռեգուլոս գահճին ձեռքէ գաւազաններն ու տապարները ցըցունելով ահեղ ձայնով մը անոր երեսն 'ի վեր կանչեց. "Ես գիտեմ թէ ի՛նչպէս խօսքս առաջ տանիմ,,: Հնազանդեցաւ զօրքը, ճամբայ ելաւ ու հասաւ Ափրիկէ (256):

2 Ռեգուլոսի հիւպատոսութեան ժամանակը

---

1 Ի՞նչ կերպով Ափրիկէ անցաւ Ռեգուլոս:

2 Ռեգուլոսի հիւպատոսութեան ժամանակն որ լմնցաւ՝ ի՞նչ ըրաւ:

ընթանալով, հրամանն եկաւ իրեն որ փոխանհիւպատոսի անուամբ պատերազմը տանի։ Աս փառաւոր հրամանին վրայ սկսաւ գանգատիլ Հռեգուղոս. կ՚ուզէր որ իրեն յաջորդ մը խրկեն ու ինքը ետ դառնայ. վասն զի կ՚ըսէր " Երկրիս վարձուորը մեռեր, ու մշակներէն մէկը արօրներս գողցեր է. պէտք է որ անձամբ երթամ մշակացս վրայ կենամ. ապա թէ ոչ՝ երկիրս անգործ մնալով կինս ու տղաքս ալ երեսի վրայ կը մնան,,։ Ծերակոյտը իր վրան առաւ անոր երկիրը մշակել տալ, կնկան ու տղաքը հոգալ, գողցուած բաներուն ալ հատուցանել։ Ահա այսչափ ան ատեններու աղքատութիւնը պատուաւոր էր, ու յաղթող զօրավարը՝ երկրագործութիւնը զօրավարութեան պատուոյն հետ չէր փոխեր։

[1] Հռեգուղոս հետը տասնըհինգ հազար հետեւակ զօրք ու հինգ հարիւր միայն ձիաւոր ունէր։ Այսչափ քիչ զօրքով ամէն պատերազմի մէջ յաղթող եղաւ, հարիւր քաղաքէն աւելի առաւ, ու Կարքեդոնացիքը հաշտութիւն խնդրելու ստիպեց. բայց վրանին անանկ ծանր ու խիստ պայմաններ դրաւ, որ անոնք ալ յուսահատած՝ նորէն պատերազմի սկսան պատրաստուիլ։ Ան միջոցին իրենց օգնութիւն հասաւ Քսանթիպպոս հռչակաւոր Լակեդեմոնացի զօրապետը, որ Կարքեդոնացւոց սիրտ առաւ՝ ու զօրքերնին կարգաւորեց։ Պատերազմը սկսաւ, ու Քսանթիպպոս հնարքով մը Հռովմայեցիքը ընդարձակ դաշտի մը մէջ ձգեց, ու անթիւ ձիաւորներովը ու փղերովը չորս կող-

---

[1] Ի՞նչպէս յաղթուեցան Հռովմայեցիք։

մէն պաշարելով բոլորովին յաղթեց, զօրավարներն ալ քովի հինգ հարիւր հոգւովը գերի բռնեց։

1 Երբոր Կարքեդոնացիք յաղթանակով Հռեգուղոսն ու ընկերները շղթայակապ հետերնին տարած Կարքեդոն մտան, քաղաքին առջի սուգն ու տրտմութիւնն անպատմելի ուրախութիւն և ցնծութիւն դարձաւ. իսկ Քսանթիպպոս մտածելով որ իր աս փառքը օր մը կրնայ նախանձու պատճառ տալու՝ ինքիրմէ ուզեց անկէց հեռանալ ու իր հայրենիքը Սպարտա դարձաւ։ Ոմանք կ'ըսեն թէ Կարքեդոնացիք վրան նախանձելով՝ ճամբան նաւով երթալու ատենը զինքը խղդեցին։

2 Կարքեդոնացիք ուզելով հաշտութիւն ընել Հռովմայեցւոց հետ, Հռեգուղոսը (որ չորս տարի բանտը կեցեր էր) Հռոմ խրկեցին որ գերեաց փոխանակութեան վրայ խօսի, երդում առնելով անկէց որ եթէ յանձն չառնուն Հռովմայեցիք, նորէն շղթայակապ ետ դառնայ։

3 Եղաւ Հռեգուղոս ծերակուտին առջևն ու Կարքեդոնացւոց խնդիրքը յայտնեց. ամէնքը ուզեցին իր կարծիքը իմանալ, բայց ինքը պատասխան տուաւ թէ ծերակուտին խորհրդակից ըլլալու փառքս կորսնցուցի. իբրև Հռովմայ քաղաքացի չեմ կրնար խորհուրդ տալ, վասն զի գերի եմ։ Բայց երբոր շատ ստիպեցին, ըսաւ թէ պէտք չէ

---

1 Կարքեդոնացիք Հռեգուղոսը գերի բռնելով ի՞նչ յաղթանակ ըրին։

2 Ի՞նչ կերպով հաշտութիւն ընել ուզեցին Կարքեդոնացիք։

3 Հռեգուղոս ի՞նչպէս կատարեց իր դեսպանութիւնը։

որ հաշտութիւն ընենք ու գերիները փոխանակենք, վասն զի Կարքեդոնացւոց զօրավարները ամենքն ալ կորիճ երիտասարդներ են որ կրնան իրենց հայրենեացը շատ ատեն ծառայել, բայց մենք այսօրուան վաղուան ծերեր ենք ։ Շատ դժուարութեամբ յանձն առաւ ծերակոյտը զիջանիլ աս մեծ անձնական խորհրդին, որուն նմանը պատմութեան մէջ հազիւ կը գտնուի ։ Անկարելի եղաւ Ռեգուղոսին սիրտը կերպով մը շարժել, ոչ բարեկամաց աղաչանքովը, ոչ կնոջը և ոչ որդւոցը թափած արցունքներովը ։ Գիտէր Ռեգուղոս թէ Կարքեդոնի մէջ ի՞նչ բարբարոսական տանջանքներ պիտի քաշէ․ բայց երդմանը վրայ հաւատարիմ կենալու դիտաւորութիւնը զօրացաւ սրտին մէջ ու մահուան երկիւղին յաղթեց ։

1 Կարքեդոնացիք վրան սաստիկ բարկացած՝ արտեւանունքը կտրեցին, ու զինքը մութ բանտ դրին․ շատ անգամ կը հանէին Ափրիկէի բոցակէզ արեւուն մէջը կը կեցնէին․ ետքը սուր սուր ու դուրս ցցուած գամերով լեցուն սնտուկի մը մէջ գոցեցին, ու գիշեր ցորեկ անդադար սնտուկը ասդիս անդին շարժելով տանջեցին, ետքն ալ խաչի վրայ կախեցին ու անանկով մեռաւ ։

2 Ափրիկէի արշաւանքը այսպիսի ձախորդ կերպով վերջանալով, Հռովմայեցիք պատերազմին առջի տարիները վաստըկած ուժերնին ալ կորսնցուցին, ու մէկ անգամուան մէջ միայն իրեք հարիւր

1 Ի՞նչպէս մեռաւ ։

2 Ուրիշ ի՞նչ ձախորդութիւններ ունեցան Հռովմայեցիք անոր միջոցին ։

ցուկանաւնին ալեկոծութեանց ընկղմեցաւ։ Կղոդիոս Պուլքեր պաշարեց Դրեպանոն քաղաքը. Երեսուն հազար մարդ կորսնցուց, ու իննըսուն-ութեք նաւ։ Ու ասոր պատճառը ան էր կ՚ըսէ հեթանոս պատմիչը, որ ամպարշտութեամբ մը զօրացը սիրտը կոտրեր էր. վասն զի երբոր տեսաւ որ նուիրական վառեակները կուտ չեն ուտեր, առաւ զանոնք ալ ծովը նետեց՝ ըսելով. “ Որովհետև ուտել չեն ուզեր, թող ջուր խմեն ,,։

1 Կարքեդոնացիք Սիկիլիոյ զօրացը սպարապետ անուանեցին Ամիլքար Բարկասը, որ մեծին Աննիբաղայ հայրն ու Ափրիկէի ամենէն երևելի զօրավարն էր։ Իտալիոյ ծովեզերքը կողոպտելով Սիկիլիա անցաւ ու Երիքսի և Պանորմոսի մէջտեղն եղած Եւկիերկտոս լեռան տիրեց, որ պատերազմի շատ յարմար դիրք ունէր։ Ան սեպացեալ լեռան վրայէն ամէն օր արծուի պէս կը խոյանար կ՚իջնար թշնամեաց վրայ, ու լեռէն մը չէր թողուր անցնելու։ Ըռանեկով վեց տարի Հռոմայեցւոց ամէն ըրած ջանքը փճացուց։

2 Վերջապէս Լուտատիոս երկու հարիւր հինգաթի նոր նաւատորմիղով Եգատեան կղզեաց քով Կարքեդոնացւոց հետ զարնուեցաւ ու յաղթեց անոնց։ Կարքեդոնացիք ուզեցին հաշտութիւն ընել. վասն զի հինգ հարիւր ցուկանաւ կորսնցուցեր էին, վաճառականութիւննին չէր քաներ,

1 Կարքեդոնացւոց կողմանէ ո՞վ եղաւ սպարապետ։

2 Ի՞նչ կերպով վերջացաւ առաջին Պունիկեան պատերազմը։ — Քանի՞ տարի քշեց։

ու պատերազմէն օգուտ մը չէր տեսնուեր: Յանձն առին Հռովմայեցիք սա պայմանով որ Կարքեդոնացիք Սիկիլիայէն ելլեն, Սիրակուսացւոց հետ պատերազմ չընեն, և տասը տարի երկու հազար երկու հարիւր տաղանդ վճարեն (որ տասնըմէկ միլիոն Ֆրանքէն աւելի կ'ընէ):

Այսանկով լմնցաւ առաջին Պունիկեան պատերազմը, որ անընդհատ քսանըչորս տարի քշեց:

[1] Վրան շատ չանցաւ, Կարքեդոնացիք ուրիշ նոր փորձանքի մը մէջ ընկան: Վասն զի Ափրիկէ գնացող վարձուոր զօրքը շուտով իրենց թոշակը չառնելնուն համար ապստամբեցան ու բոլոր Ափրիկէի քաղաքները ոտք հանեցին, բաց 'ի Ուտիկէ և Հիպպոնեա քաղաքներէն: Ասոնք ամէնքն ալ եօթանասուն հազարի չափ էին, և իրենց գլուխ դրած Սպենդիոս կամպանիացի փախստական գերին և Մաթոս ափրիկեցին՝ գնացին Ուտիկէն ու Հիպպոնեան պաշարեցին: Ան ատեն սկսաւ Լիբէական ըսուած պատերազմը, որ մէջի եղած անչափ արիւնահեղութեանց ու անգթութեանց համար անփաւէջ ալ ըսուեցաւ: Երկու կողմէն ալ ամենևին գերի պահել չկար. բռնածնին մէկէն կը սպաննէին: Կարքեդոնացիք Գիսկոն զօրավարը խրկեցին որ խաղաղութիւն ընէ. կատաղի վարձկաննե-ները բռնեցին ան խեղճը, ձեռուըները կտրեցին ծնկուըները կոտրեցին ու ողջ ողջ գետինը թաղեցին. Նոյնպէս ըրին նաև բոլոր անոր քովի մարդիկներուն: Վերջապէս երբոր սպարապետ

[1] Լիբէական կամ Անքաւելի ըսուած պատերազմը որն էր:

ընտրուեցաւ մեծն Ամիլկար, վարպետութեամբ վարձկանները քշելով տարաւ անձողոպրելի կիրճերու մէջ ձգեց. սովը սաստկացաւ մէջերնին, ու սկսան մէկզմէկ ուտել: Ապստամբաց գլուխը Սպենդիոս՝ գլխաւորներէն ինը հոգի հետն առած եկաւ Ամիլկարին հետ հաշտութիւն ընելու: Հանիլ ցըցուց Ամիլկար՝ աս պայմանով որ մէջերնէն տասը հոգի իր ձեռքը տան՝ զով որ ինքը ուզէ. անոնք հաւանութիւն տալուն պէս "Դուք էք աս տասը հոգին" ըսաւ, ու բոլորն ալ բռնեց խաչել տուաւ: Անգլուխ մնացած քառասուն հազար զօրքն ալ պաշարեց, ու անանկ ջարդ մը տուաւ անոնց որ մէկ հոգի մըն ալ մէջերնէն չկրցաւ ազատիլ: Մաթոսին գունդն ալ բռնուեցաւ, ու երկար ատեն ան խեղճերուն ձայնովը ու հեծութիւններովը տեսարաններու մէջ զուարճացան Կարքեդոնացիք: Ասանկով լմնցաւ վարձկան զօրաց արիւնահեղ պատերազմը, որուն վրայ ան դարուն մէջ ալ բոլոր ազգերը սոսկացին:

[1] Սարդինիոյ մէջ եղած վարձուոր զօրքը Ափրիկէի վարձկանացը ըրածին նայելով իրենք ալ որչափ որ ան կղզւոյն մէջ Կարքեդոնացի կար՝ սպաննեցին ու կղզւոյն տիրեցին: Սարդինիոյ նորէն տիրելու համար շատ պատրաստութիւններ ըրին Կարքեդոնացիք. Հռովմայեցիք կարծեցին թէ ան պատրաստութիւնները իրենց համար են, ու Կարքեդոնացւոց դէմ պատերազմ հրատարակեցին: Կարքեդոնացիք Հռովմայեցւոց դէմ կենալու կա-

1 Սարդինիոյ վարձուորներն ինչպէս ապստամբեցան ու նուաճուեցան:

բողութիւն չունենալով հաշտութիւն խնդրեցին, և նոր դաշնադրութիւն մը ըրին (235) որով բոլոր Սարդինիան Հռովմայեցւոց պիտի ըլլար, ու Կարքեդոնացիք պատերազմ չընելու համար վեց միլիոն ու կէսէն աւելի ֆրանք պիտի տուժէին։

¹ Գունիկեան առջի պատերազմին ատենները Հռովմին մէջ քանի մը երևելի դիպուածներ եղան։ Նումա Պոմպիլիոսի ատենէն 'ի վեր (235) առաջին անգամն էր որ Յանոսի տաճարը գոցուեցաւ։ Լատինացւոց դրականութիւնը սկսաւ ձևաւորիլ։ Լիւիոս Անդրոնիկոս ասպետը առաջինն եղաւ որ 240ին իր թատերգութիւնները հրատարակեց։ Քանի մը տարի վերջը Նեւիոս և Էննիոս բանաստեղծները ելան։ Փլաւմինիոս համարակալը սկսաւ կրկէսն ու հասարակաց ճամբաները շինել տալ. ան ատենը սկսաւ նաև արծըթէ ստակ մտնել Հռոմ։ Կտեսիբիոս աղեքսանդրացին իր հնարած ջրաժամացոյցը Հռոմի մէջ ալ սկսաւ բանեցընել։ Նոյն ատենը ուրիշ ատելի սովորութիւն մըն ալ մտաւ Հռովմայեցւոց մէջ։ Որովհետև չէին գիտեր թէ գերիներն ինչ ընեն, և մեռցընելն ալ անգթութիւն կը սեպէին, որոշեցին որ անոնք կրկէսին մէջ իրարու հետ կռուին. աս կռուողները Սուսերամարտիկք ըսուեցան։ Այն անգութ տեսարանը ժողովրդեան հաճոյ երևցաւ, և մարդկային արեան գետի պէս վազելը տեսնելու աչքը վարժելով բնական գթասրտութիւնը շատ պակսեցաւ։

---

¹ Առաջին Գունիկեան պատերազմին ատենները ինչ երևելի դիպուածներ պատահեցան Հռոմ։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Երկրորդ Պունիկեան պատերազմը. — Պաշարումն Սագունտոնի. — Աննիբալին Գաղղիա մտնելը. — Ալպեան լեռներէն անցնիլը. — Տիկինոս գետին պատերազմը. — Տրեբիոյ պատերազմը. — Ապեննեան լեռներէն անցնիլը. — Տրասիմէն լճին քով Հռոմայեցւոց յաղթուիլը. — Փաբիոս Դանդաղկոտն. — Տերենտիոս Վարրոն. — Կաննէայ ճակատամարտը. — Հարաւային Իտալիոյ Հռոմայեցւոցմէ թողնուիլը: (237-216):

1 *Երկրորդ Պունիկեան պատերազմը հին պատմութեան երևելի դիպուածներէն մէկն է: Ան առենները Կարքեդոնի մէջ երկու ազգատոհմ իրարու ձեռքէ իշխանութիւնը առնելու կ'աշխատէին, Աննոնեանք և Բարկասեանք՝ այսինքն վաճառականք ու զօրականք: Բարկասեանք աներկիւղ զինուորներ ըլլալով, հասարակաց բարին կ'ուզէին, ու սաստիկ կ'ատէին Աննոնեանքը որ շահասէր մարդիկ էին, ու փոխանակ հայրենեաց պատուոյն ու փառացը համար պատերազմելու՝ իրենց շահը միայն կը մտածէին: Աս երկու ազգատոհմին երկպառակութիւնը պատճառ եղաւ Կարքեդոնի կործանմանը:*

2 *Ան միջոցին որ Հռոմայեցիք Գաղղիա յայն-*

---

1 *Երկրորդ Պունիկեան պատերազմին առենը Կարքեդոնացիք ինչ վիճակի մէջ էին:*

2 *Երկրորդ Պունիկեան պատերազմին պատճառը ինչ եղաւ:*

կոյս Ալպեանց ըսուած երկրին (այսինքն հիմա-կուան Փիէմոնթի ու Լոմպարտիոյ) բնակչացը հետ կը պատերազմէին (237–219), Կարքեդոնացիք Ամիլկարին ու Ասդրուբաղին ձեռքովը Սպանիոյ մէջ տիրելով առաջ կ'երթային, և 227ին ան աստի-ճան զօրացան՝ որ Հռովմայ ծերակոյտը վախնալով որ Իտալիան ալ ձեռքէն չերթայ՝ ստիպեց Ասդրու-բաղը որ Եբրոս գետէն անդին չանցնի։ Բայց վեց տարի ետքը երբոր Ասդրուբաղ սպաննուեցաւ, իրեն յաջորդ տուին Աննիբաղ Բարկաս քսանըմէկ տարեկան երիտասարդը, որ Մեծին Ամիլկարայ որդին էր (221)։

[1] Աս դեռահասակ զօրավարը իր ատենի հե-տևակ ու ձիաւոր զինուորաց մէջ ամենէն անուանի էր. պատերազմական արուեստին հնարքներու և բանակ կազմելու իրեն պէս հմուտ չկար. ոչ միայն արշաւանք մը տեղագրել՝ հապա նաև անիկայ 'ի գործ դնելը շատ աղէկ գիտէր։ Մեծամեծ վտանգ-ներու մէջ յանդգնութեան հետ զարմանալի խո-հեմութիւն մը ունէր։ Թէ՛ մարմնով և թէ մտքով յոգնիլ չունէր. ամենէն առաջ ինքը թշնամւոյն վրայ կը յարձըկէր, և ամենէն վերջը ետ կը քա-շուէր։ Աս ամէն կատարելութեանցը հետ ան-հաշտ ատելութիւն մըն ալ ունէր Հռովմայեցւոց դէմ՝ պզտիկուց սրտին մէջ տոգորուած։ Կը պատմեն թէ ինը տարեկան եղած ատենը՝ Ամիլ-կար իր հայրը երբոր զոհ կը մատուցանէ եղեր, հօրը վիզը պլլուեր աղաչեր է Աննիբաղ որ զինքը հետը Սպանիա տանի. Ամիլկար խօսք տուեր է ի-

---

[1] Ի՞նչ բնաւորութեան տէր էր Աննիբաղ։

րեն՝ թէ որ երդումը ընէ որ անհաշտ թշնամի ըլլայ Հռովմայեցւոց . մէկէն Աննիբաղ ձեռքը բագնին վրայ կը դնէ կ'երդուըննայ , ու երդումը կը պահէ ։

1 Առջի բերան իր միտքը չյայտնեց Աննիբաղ . միայն նայեցաւ որ Սպանիոյ մէջ Կարքեդոնացւոց իշխանութիւնը զօրացընէ ։ Տագոս գետին քով հարիւր հազարէն աւելի ժողվուած դաշնակից ազգաց վրայ ըրած փառաւոր յաղթութենէն ետքը , յայտնեց իր դիտաւորութիւնը՝ տով աշխարհք զարմացուց ու Խռալիան դողացուց . եկաւ Հռովմայեցւոց նիզակակից Սագունտոն քաղաքը պաշարեց ։ Հռովմայեցիք դեսպանտխրկեցին իրեն , մտիկ չըրաւ ։ Ան ատեն դեսպանները Կարքեդոն գնացին . անոնց կողմը բռնեց վատ Աննոնը , և ըսաւ թէ « Քանի որ Բարկասի ցեղէն մարդ կայ , անկարելի է Հռովմայեցւոց հետ դաշնակցութիւն ընելը » ։ Ան խօսքին վրայ սաստիկ սրդողեցաւ ժողովուրդը ու անորոշ պատասխանով մը դեսպանները ետ ճամբեց ։

2 Անգին Աննիբաղ սաստկացուց պաշարումը . ութը ամիս քաջութեամբ դիմանալէն ետև՝ տեղէ մը օգնութիւն գտնելու յոյսը կտրած Սագունտացիք ուզեցին դաշնադրութիւն ընել . Կարքեդոնացիք անանկ խիստ պայմաններ դրին որ քաղաքացիք աւելի մեռնիլ ուզելով քաղաքին կրակ տուին ու իրենք ալ մէջը անով տեղով այրեցան (218) ։

---

1 Ի՞նչ կերպով սկսաւ երկրորդ Պունիկեան պատերազմը ։

2 Ի՞նչպէս առնուեցաւ Սագունտոն ։

1 Սագունտոնի թշուառութեան գոյժը Հռոմ հասնելուն պէս՝ ամէնքը սոսկացին, ու նորէն դեսպան խրկեցին: Եղաւ Փաբիոս Կարքեդոնացւոց ծերակուտին առջևը, ու պատմուճանին ծայրը ծալլած ցըցուց անոնց ու ըսաւ խրոխտանօք. "Ահա ասոր մէջ գրած բերեր եմ ձեզի խաղաղութիւն կամ պատերազմ. ընտրեցէք: — Դուն ընտրէ" կանչեց անդիէն ծերակոյտը նոյնպիսի խրոխտանօք: "Աղէկ, ես ձեզի պատերազմը կուտամ", պատասխանեց Փաբիոս, ու պատմուճանին ծայրը թօթուեց. Կարքեդոնացիք ալ ուրախութեամբ պատերազմը յանձն առին:

2 Աս լսելուն պէս Աննիբաղ՝ յիսուն հազար հետևակով, ինը հազար Նումիդացի ձիաւորով ու երեսունըեօթը փիղով կայծակի պէս Եբրոս գետէն ու Պիրենեան լեռներէն անցաւ, ու Հռովմայեցիք դեռ զէնքը Սագունտոնի քով կարծած ատեննին՝ ինքը Հռենոսի եզերքը հասաւ՝ ամէն անցած տեղերուն բնակիչքը իրեն դաշնակից ընելով: Աճապարեցին Հռովմայեցիք, վազեցին որ առջևն առնեն. Սկիպիոն հիւպատոսը Մասսիլիա (Մարսիլիա) հասաւ, իրեք հարիւր ձիաւոր խըրկեց որ երթան թշնամւոյն շարժմունքը լրտեսեն. Կարքեդոնացիք ալ նոյն մտքով հինգ հարիւր Նումիդացի զօրք խրկեր էին: Իրարու հետ զարնուեցան աս զօրքերը, ու Իտալացիք յաղթող ելան: Սկիպիոն անով սիրտ առած՝ զօրքը Հռենոսէն վեր

1 Հռովմայեցիք Սագունտոնի առումն որ լսեցին՝ ինչ ըրին:
2 Աննիբաղ ինչպէս մտաւ Գաղղիա:

հանեց, ու երբոր Կարքեդոնացւոց բանակած տեղը հասաւ՝ իմացաւ որ իրեք օր առաջ ճամբայ ելեր էին։ Չհամարձակեցաւ անոնց ետեւէն իյնալու, գնաց Ալպեան լերանց ստորոտը՝ անոնց իջնալուն սպասեց։

1 Աննիբաղայ աս յանդուգն քաջութեանը ամենեւին օրինակ չկայ։ Այնպիսի ժողովրդեան մը գլուխ կեցած որ ծովու ու ցամաքի վրայ հարիւր անգամէն աւելի յաղթուած էր, կ'երթար Հռոմին վրայ յարձակելու որ իր թրովը ու դիւցազուններովն ան աստիճան բարձրացեր ու փառաւորուեր էր։ Իր հանճարը միայն իրեն առաջնորդ առած, հայրենիքէն հեռու, իր ետեւէն այնչափ թշնամի ազգեր թողուցած՝ Իտալիա կը վազէր, և ամէն օգնութենէ զրկուած ըլլալէն զատ՝ դժբաղդութեան մըն ալ հանդիպելու որ ըլլար՝ փախչելու տեղ չունէր։

2 Աֆրիկեցիք երբոր սկսան բարձրաբերձ ու սեւ եղեւինները, սառնապատ ու ձիւնապատ Ալպեան լեռները տեսնել, որ ամպերու հետ միացած կ'երեւնային՝ սկսան վհատիլ։ Իմացաւ Աննիբաղ. "Մի՛ կարծէք, ըսաւ անոնց, որ աս երկիրը երկինքի հետ կպած է, միթէ Գաղղիացիք երբոր գնացին Հռոմը այրեցին՝ աս լեռներէն անդին թռչելով անցան"։ Բնութեան արգելքները բաւական չէին. տեղացւոց հետ ալ անդադար պատերազմելով ճամբայ բանալու էր։ Վերջապէս ինը օրուան մէջ՝ չլսուած նեղութեամբ ու աշխատան-

---

1 Աննիբաղ ի՞նչպէս սիրտ ըրաւ Իտալիա անցնելու։
2 Ի՞նչպէս անցաւ Ալպեան լեռները։

քով Աննիբաղ Ալպեան լեռանց գագաթն ելաւ. և հոն կեցած իր յոգնած դադրած զօրացը կ'երևցընէր Պադոս (Փօ) գետին ոռոգած բարեբեր դաշտերը, և հեռուանց մատով կը ցուցունէր Հռոմ քաղաքին տեղը։ Նոյնպիսի դժուարութիւններով վեց օրուան մէջ Ալպեան լեռներէն վար իջաւ Աննիբաղ, բայց զօրքը հազիւ թէ քսանըվեց հազար հոգի մնաց. անոնց ալ վեց հազարը Նումիդացի ձիաւորներն էին։ Աննիբաղի պէս քաջայանդուգն մարդը միայն կրնար այնչափ քիչ զօրքով Իտալիոյ վրայ յարձակելու միտ ընել, ուր Հռովմայեցիք ինչուան եօթըհարիւր հազար հետևակ ու եօթանասուն հազար ձիաւոր կրնային հանել։

1 Հասաւ Աննիբաղ, տեսաւ որ Սկիպիոն հիւպատոսը Տիկինոս գետին եզերքը (որ Պադոսին մէկ ճիւղն է) բանակած կեցեր էր։ Պէտք էր որ վրանին յարձակէր, վասն զի դիրքը աղէկ էր, և Գաղղիացիքը նորէն իր կողմը ձգելու ու լքեալ զօրացը սիրտ տալու համար հարկ էր յաղթութիւն մը ընել։ Աննիբաղ աս խօսքս միայն ըսաւ զօրացը. “Աս թշնամւոյն երկրին մէջ ուրիշ յոյս չունինք բայց եթէ յաղթել կամ մեռնիլ,,։ Զօրքը շատ եռանդով պատերազմեցան. Հռովմայեցիք ալ չկարենալով Նումիդացի ձիաւորաց յարձակմանը դէմ դնել, որ առանց սանձի ու թամբի ձիեր հեծած կայծակի պէս կը հասնէին կը զարնէին, սկսան փախչիլ։ Հիւպատոսը վիրաւորուեցաւ, ու քիչ

1 Հռովմայեցիք ի՞նչ կերպով Աննիբաղայ դէմ ելան։

մնաց պիտի մեռնէր ալ թէ որ տասնըեօթը տարեկան որդին չհասնէր ու զինքը չազատէր։ Այս կտորուածն որ տեսան Գաղղիացիք՝ մեծ մասը Աննիբաղայ կողմը անցան։

1 Սկիպիոն Տրեբիա գետէն անդին քաշուեցաւ՝ յուսալով որ Գաղղիացիք նորէն իրեն հետը միանան. հասաւ ետեւէն Աննիբաղ ու սկսաւ զինքը հալածել։ Այն ատեն վրայ հասաւ Սեմպրոնիոս հիւպատոսը նոր բանակով. բայց փառասիրութեամբ՝ չուզելով քիչ մը սպասել որ չըլլայ թէ Սկիպիոն առողջանայ ու յաղթութեան փառքը անոր երթայ, շուտ մը պատերազմի պատրաստուեցաւ. Աննիբաղ ալ զինքը որոգայթի մէջ ձգեց, ու երեսուն հազար Իտալացի ջարդեց։ Այն յաղթութեամբ բոլոր Գաղղիացիք Աննիբաղայ կողմը անցան, որով մէկէն զօրաց թիւը եղաւ իննսուն հազար։

2 Այն ատենը միտքը դրաւ Աննիբաղ որ Միջին Իտալիա ալ մտնէ։ Մարտ ամսուն մէջ (217) Ապեննեան ՝լեռներէն անցաւ, ուր սաստիկ փոթորկի մը բռնուեցաւ։ Ամպերը հովէն քշուելով՝ լեռներուն վրայ որ հասան պաղեցան, ու այնպէս սաստիկ ու թանձր ձիւն եկաւ որ զինուորները յոգնած դադրած՝ իրենց վերարկուներուն տակը մեռելի պէս թաղուած կը պառկէին։ Այն ձեանը ետեւէն այնպիսի սաստիկ ցուրտ մը ըրաւ որ շատ մարդիկ ու ձիեր սառեցան ու մեռան։

---

1 Տրեբիա գետին քովի պատերազմը ի՞նչպէս եղաւ։

2 Ապեննեան լեռներէն ի՞նչպէս անցաւ Աննիբաղ։

1 Աննիբաղ լսելով որ Փլամինիոս հիւպատոսը Արետիոն քաղաքը հասեր է, կարճ ճամբով սկսաւ դէպ 'ի հոն երթալ: Այն ճամբան ճահիճներով լեցուն ըլլալով, չորս օր ու երեք գիշեր ինչուան մէջքերնին ջուրերու մէջ քալելով հազիւ անցան Կարքեդոնացիք, ու քիչ մը հանգչելու համար իրենց կարասիները կը դիզէին, անոնց վրայ կը հանգչէին և կամ սատկած ձիերնուն վրայ կը պառկէին: Ինքը Աննիբաղ ալ մնացած մէկ փղին վրայ նստած, արդէն քիչ մը հիւանդ ըլլալով, երեք գիշեր ալ ամենևին քնացած չըլլալուն, գիշերուան խոնաւութենէն ու ճահիճներուն վրայէն փչած վնասակար հովերէն աչքին մէկը կորսնցուց:

2 Փլամինիոս Արետիոնի պարսպին քով Կարքեդոնացւոց կը սպասէր: Աւելորդապաշտ Հռովմայեցիք իրենց սարսափը պարտըկելու մտքով ամէն տեսակ չար ու ձախորդ գուշակութիւններ մէջ կը բերէին. այնպէս կը պատմէին թէ Լատիոնի քաղաքներէն մէկուն մէջ Հերայի նիզակը ինքիրմէ շարժեր է. Ամիտեռնոնի դաշտին մէջ ճերմակ ճիւաղներ երևցեր են. Գաղղիոյ մէջ գայլ մը գիշերապահ զինուորի մը թուրը պատենէն հաներ տարեր է. Եդրուրիոյ Կապենա քաղաքին վրայ մէկ օրուան մէջ երկու լուսին երևցեր է. Վոլսկեանց Անտիոն մայրաքաղաքը ցորենի հասկերուն մէջէն արիւն ելեր է, ևայլն: Բայց Փլամինիոս

---

1 Երբոր լսեց Աննիբաղ Փլամինիոսին իր վրայ գալը՝ ի՞նչ ըրաւ:

2 Փլամինիոս մէկէն զարնուեցա՞ւ Կարքեդոնացւոց հետ:

անոնց մէջէն չքնելով կ'ուզէր որ ժամ մը առաջ պատերազմը սկսի Կարքեդոնացւոց կողմէն ։

¹ Աննիբաղ Փղամինիոսի միտքն ու բնաւորութիւնը հասկընալով սկսաւ բոլոր Արետինոնի քովի դաշտերն աւրըշտկել, և ուզածը եղաւ. վասն զի Փղամինիոս կատղած՝ սկսաւ Աննիբաղայ ետևէն վազել. նա ալ տարաւ զինքը մինչուան Տրասիմէն լճին քով նեղ տեղ մը ձգեց, ուր Հռովմայեցիք թանձր մառախուղի մէջ թաղուած՝ բան մը չէին տեսներ, իսկ ինքը քովի բլուրներուն վրայ ելլելով բարձրէն ամէն բան կը տեսնէր. Նումիդացիքն ալ Հռովմայեցւոց ետևի կողմէն խրկեց, ու չորս դիէն զանոնք պաշարած՝ մէկէն վրանին յարձակեցաւ ։ Երեք ժամ միակերպ պատերազմեցան ։ Փղամինիոս շատ քաջութիւններ ընելէն ետքը ընկաւ մեռաւ, զօրքն ալ սկսան ցրուել. փախչողները ոչ լիճ կը նայէին և ոչ լեռ ։ Տասնըհինգ հազար Հռովմայեցի ան պատերազմին մէջ մեռան, վեց հազար գերի բռնուեցան, և հազիւ տասը հազար հոգի այլևայլ ճամբաներով Հռոմ դարձան ։

² Տրեբիա գետին քովի կոտորածը չէր իմացուցած ծերակոյտը ժողովրդեան. բայց աս անգամ անկարելի եղաւ ծածկելը ։ Պոմպոնիոս պրետորը բեմն ելաւ ու սկսաւ կանչել. “Մեծ պատերազմ մը կորսնցուցինք” ։ Աս գոյժը բոլոր ժողովուրդը ահուդողու մէջ ձգեց, և շուտ մը իշ-

---

¹ Տրասիմէն լճին քովի պատերազմը ի՞նչպէս եղաւ ։

² Հռովմայեցիք իրենց զօրացը յաղթուիլն որ լսեցին՝ ի՞նչ ըրին ։

խանապետ ընտրեցին Փաբիոս Մաքսիմոս անուանի պատրիկը ։

1 Աս խոհեմ մարդը միտքը դրեր էր որ անկարելի է մէկէն յաղթել Աննիբաղին, ուստի կը ջանայր որ կամաց կամաց անիկայ ակարացընէ. աս պատճառաւ Փաբիոսին կունկտատոր մականունը դրին, որ Դանդաղկոտ ըսել է ։ Շատ չանցաւ, զօրքը սկսաւ անոր դէմ գանգատիլ. վասն զի միշտ բանակին մէջ փակուած կամ բլուրներու վրայ կեցած կը տեսնէր որ Կարթագէնացիք ազատ համարձակ կը կողոպտէին՝ տանակէս կ'ընէին Սամնիոնն ու Կամպանիան ։ Բայց Փաբիոս ոչ անոնց գանգատներուն և ոչ ծաղրաբանութեանցը մտիկ կ'ընէր ։ Տժգոհներուն գլխաւորն էր Մինուկիոս՝ հեծելազնդին զօրապետը. որ ինչուան Հռոմ ալ գնաց, զօրաց բերնէն գանգատ ըրաւ, և ամէնքն ալ սկսան Փաբիոսին վրայէն վստահութիւննին կորսնցընել ու կարծել թէ կամաւ թող կուտայ Փաբիոս որ Աննիբաղ անվնաս մնայ ։ Իրաւցընէ ալ Աննիբաղ անգամ մը Ճամբէն մոլորելով Կամպանիոյ Վուլտուռնոս գետին Ճահիճներուն մէջ ընկեր էր՝ չորս կողմէն լեռներով պատած, և անոնց Ճամբուն բերանը Փաբիոս բռնած էր. Կարթագէնացիք այնպիսի որոգայթի մէջ բռնուած՝ քիչ մնաց որ ամէնքն ալ պիտի ընջուէին. բայց Աննիբաղեայ հնարագիտութեան առջեւ բան չէր դիմանար ։ Կէս գիշերուն երկու հազար եզներու եղջիւրներուն վրայ խռիւներ կապեց բռընկցուց,

1 Փաբիոս ի՛նչ ընտրութեան տէր էր, ու ի՛նչ Ճամբայ բռնեց Կարթագէնացւոց դէմ ։

ու եղները Հռովմայեցւոց վրայ քշեց։ Երբոր անոնք եղջիւրնին թօթուելով Հռովմայեցւոց վրայ վազեցին, Հռովմայեցիք սարսափած՝ ձգեցին փախան. ան միջոցին Աննիբաղ ալ բոլոր զօրքովը կերճէն ելաւ ազատեցաւ։

1 Այս լուրը Հռոմ հասնելուն պէս՝ Հռովմայեցիք ան չարախօս Մինուկիոսին իշխանապետին հաւասար իշխանութիւն տուին, որով զօրքն ալ երկու բաժնուեցաւ. Մինուկիոս պզտիկ յաղթութիւն մը ընելով հպարտացաւ ու սկսաւ ծիծաղել իր իշխանակցին դանդաղութեանը վրայ. անոր փորձառութիւնն ու խրատներն արհամարհեց, իր գնդովը յարձակեցաւ Թշնամւոյն վրայ, ու քիչ մնաց որ բոլոր զօրքովը ջարդուէր՝ թէ որ չվազէր Փաբիոս, ու Կարքեդոնացւոց յաղթելով զինքը Թշնամւոյն ձեռքէն չազատէր։ Ան ատենը դարձաւ Աննիբաղ իր զօրացը ըսաւ. “Ձեզի չէ՞ ըսեր որ ան լեռան վրայ կեցող ամպը վերջապէս պիտի ճայթի ու գլուխնիս սաստիկ փոթորիկ մը պիտի հանէ„։

2 Մինուկիոս ճանչցաւ իր յանցանքը. զօրքը հետն առած գնաց Փաբիոսին բանակը, ու զանեկայ իրեն հայր կանչելով իր պատուոյ նշանները անոր ոտքը դրաւ, զօրքն ալ անոր օրինակին հետեւելով Փաբիոսը պաշտպան անուանեցին. և երբոր զօրաց աղաղակը դադրեցաւ, ելաւ Մինուկիոս ու ըսաւ Փաբիոսի. “Վեհանձն իշխանապետ,

---

1 Մինուկիոս ի՞նչպէս յաղթուեցաւ Աննիբաղէն։
2 Փաբիոսին խոհեմութիւնը ի՞նչ կերպով յայտնի եղաւ։

այսօր երկու յաղթութիւն ըրիր․ մէկը Աննիբաղայ վրայ քաջութեամբդ, մէկալն ալ իմ վրաս՝ խոհեմութեամբդ ու վեհանձնութեամբ․ մէկումը ազատեցիր զմեզ, մէկալովն ալ խրատեցիր։ Այսուհետև դուն իմ հայրս ես, ու ես քու ձեռքիդ տակը կ'ուզեմ հրամայել ու յաղթել,,։ Աս զուրցելուն պէս՝ գնաց գրկեց իշխանապետը, երկու զօրքն ալ իրարու հետ պագտուեցան։

1 Քիչ ատենէն Փաբիոս իշխանապետութենէն հրաժարեցաւ։ Մսավաճառի մը որդին Տերենտիոս Վարրոն, որ անդադար կ'ըսէր թէ քանի որ պատրիկները սպարապետ կը դրուին՝ պատերազմը լմննալիք չունի, հիւպատոս ընտրուեցաւ, և իրեն իշխանակից տուին Փաբիոսի աշակերտն ու բարեկամ Պօղոս Եմիլիոսը, և մեծաբան Վարրոնը ճամբայ ելաւ՝ ըսելով, թէ մէկ օր մը բաւական է ինծի որ թշնամին տեսնելս ու յաղթելս մէկ ընեմ։

2 Աննիբաղ Վարրոնի աս յանձնապաստանութիւնը տեսնելով շատ ուրախացաւ, ու գնաց Կաննեայի ընդարձակ դաշտերուն մէջ բանակը դրաւ, ուր դիւրաւ կրնար իր հեծելագունդը բանեցնել․ զօրքն ալ անանկ շարեց որ արևը կռնակնին կը զարնէր, հովերն ալ ետևնէն կը փչէին, ու գետնի տաք աւազը Հռովմայեցւոց երեսին կը զարնէին։ Զօրաց շարքին մէջ ուրիշ վարպետութիւն մըն ալ բանեցուց․ տկարները մէջ տեղը դրաւ, աջ թևն էին Նումիդացիք, ու ձախ թևը Գաղղիացի ու

---

1 Ո՞վ էր Տերենտիոս Վարրոն։
2 Կաննեայի պատերազմին պատրաստութիւնը ինչ կերպով էր։

Սպանիացի ձիաւորները ։ Իսկ Հռովմայեցւոց զօրաց շարքը բոլորովին տարբեր էր․ վասն զի բոլոր ուժերնին մէջտեղը ժողվեր էին ։

[1] Արեւը ծագելուն պէս՝ պատերազմի նշան տուաւ Վարրոն ։ Իրեք ժամ կատաղաբար պատերազմելէն ետքը՝ Հռովմայեցիք սկսան տկարանալ․ Կարքեդոնացիք չորս կողմէն զանոնք պաշարեցին ու սկսան սոսկալի ջարդ տալ, այնպէս որ Աննիբաղայ սիրտը չդիմացաւ կ'ըսեն, զօրացը մէջ վազեց ու սկսաւ կանչել․ "Ո՛վ զօրականք, խնայեցէք յաղթուողներուն"։ Յիսուն հազար Հռովմայեցի, քանիմէկ տրիբուն, ութսուն պատրիկ, շատ մը ասպետ և Պօղոս Էմիլիոս հիւպատոսը պատերազմին մէջ մեռան, տասնըչորս հազար հոգի ալ գերի բռնուեցան ։ Իսկ Աննիբաղ վեց հազար հոգի միայն կորսնցուց, որոնց մեծ մասը Գաղղիացի էին ։ Կաննեայ պատերազմին պէս արիւնահեղ կոտորած ոչ երբեք ունեցան Հռովմայեցիք ։ Իսկ Կարքեդոնացիք այն յաղթութեամբ տիրեցին Ապուլիոյ, Սամնիոնի, Կամպանիոյ և Մեծին Յունաստանի ։ Դաշնակից ազգերն ալ տեսնելով որ Հռովմայեցւոց բանը գէշ է, սկսան Աննիբաղայ հետ միանալ (216) ։

---

[1] Ի՞նչպէս եղաւ Կաննեայ պատերազմը ։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

Երկրորդ Պունիկեան պատերազմին շարունակութիւնը. — Կարթէգոնացիք Աննիբաղայ չեն օգներ. — Կապուայի առումը. — Մարկէլլոս. — Հռովմայեցիք Կապուան կը պաշարեն. — Կարթէգոնացիք Հռոմին վրայ կ'երթան. — Սիրակուսայի պաշարումը. — Սկիպիոնի Սպանիոյ մէջ ըրած յաղթութիւնը. — Ասդրուբաղ Իտալիա կ'անցնի. — Մետաւրոսի պատերազմը. — Սկիպիոն Ափրիկէ կ'անցնի. — Զամայի պատերազմը. — Կարթէգոնացւոց հաշտութեան խնդրելը (216–201)։

1 Կաննեայ պատերազմէն ետքը հռովմէական հասարակապետութիւնը շատ տկարացեր էր։ Ժողովուրդը կ'ուզէր Հռոմէն ելլել երթալ, և արդէն պատրիկներէն շատը նաւերնին բաներ էին։ Աննիբաղայ Մահարբաղ զօրավարը կ'առաջարկեր իրեն որ շիտակ Հռոմին վրայ երթայ. "Թող տուր ինծի կ'ըսեր որ առջևէն երթամ, հինգ օրէն քեզի Կապիտոլիոնի մէջ կերակուր կերցնեմ"։ Բայց աղէկ գիտեր Աննիբաղ որ յոգնած զօրքով այնպիսի ընդարձակ ու պատերազմափորձ քաղաքը չառնուիր։

2 Հռովմայեցւոց ծերակոյտը սա վտանգին մէջ զարմանալի քաջութիւն ու հայրենասիրութիւն ցուցուց։ Վարրոնին դիմացն ելաւ՝ որ Կաննեայէն

---

1 Կաննեայ պատերազմէն ետքը Հռովմայեցիք ինչ ըրին։

2 Ծերակոյտը ինչ կարգադրութիւններ ըրաւ։

փախածները ժողվեր եւ կը դառնար, և շնորհակալ եղաւ որ հասարակապետութեան ազատութենէն յոյսը չէ կորած. ուզեցին զինքը իշխանապետ ալ ընել, բայց յանձն չառաւ: Մէկէն արգելք հանեցին Հռոմայեցիք որ մեռնողներուն վրայ ամենեւին ողբ չըլլայ. միայն պատուիրեցին որ յիշատակնին պատուելու համար երեսուն օր սուգ բռնուի: Ամէն քաղաքացիք տասնըեօթը տարեկանէ ինչուան վաթսուն տարեկանը զինուոր գրուեցան. ինչուան բանտի մէջ եղող յանցաւորներն ու գերիները զինեցին՝ խօսք տալով որ ազատեն զիրենք՝ թէ որ քաջութիւն ընեն: Կաննեաէն փախչողները Սիկիլիա խրկեցին, իսկ գերի բռնուողները չգնեցին՝ եւ չառին, որպէս զի անով թշնամւոյն ձեռքը սստակ անցուցած չըլլան:

1 Իսկ Աննիբաղ պատերազմէն ետքը մէկէն իր Մագոն եղբայրը աւետաւոր խրկեց Կարքեդոն: Եղաւ Մագոն ծերակուտին առջեւն ու Կաննեայ պատերազմին մէջ սպաննուած Հռոմայեցի ազնուականներէն առնուած իրեք գրիւ լեցուն ոսկի մատնիները դիմացնին թափելով՝ պատերազմը առաջ տանելու ու բոլորովին թշնամեաց յաղթելու համար օգնութիւն խնդրեց: Ան ատենը Նախանձոտ ու հայրենատեաց Աննոնը ելաւ ըսաւ. “ Թէ որ Աննիբաղ յաղթող է, օգնութեան կարօտ չէ. իսկ թէ որ յաղթուած՝ օգնութեան արժանի չէ ”: Ասանկով Աննիբաղ անօգնական մնաց.

---

1 Աննիբաղ ինչ.ըրաւ Կաննեսի յաղթութենէն ետքը:

պէտք եղաւ որ ունեցած քիչ զօրքովը տասնըչորս տարի ալ Հռովմայեցւոց հետ կռուի ։

1 Տեսնելով Աննիբաղ որ իր զօրքը քսանըհինգ հազար մնաց, կէս մը ջարդուելովը կէս մըն ալ Գաղղիացւոց քաշուելովը՝ որ ձեռք ձգած աւարնին ապահովելու գնացեր էին, սիրտ չըրաւ Հռոմին վրայ երթալու, և ուզեց ձմեռը Միջին Իտալիա անցնել։ Այնպիսի քաղաք մը կ'ուզէր որ թէ ընդարձակ ըլլայ և թէ ծովեզերեայ, որպէս զի կարենայ հայրենեացը հետ առանց արգելքի վերաբերութիւն ունենալ. Նէապօլիս և Նոլա քաղաքները իրենք զիրենք պաշտպանեցին անոնց դէմ, բայց Կապուա դռները բացաւ Կարքեդոնացւոց, որ մնան հոն ու երկար աշխատանքէ յոգնութիւն առին ։

2 Սակայն Աննիբաղ պարապ չէր կենար. Կապուա կեցած կը ջանար գրգռել, Հռովմայեցւոց դէմ հանել Մակեդոնիան, Գաղղիան, Սպանիան, Յունաստանն ու Սիկիլիան, և համաշխարհական դաշնակցութեամբ մը Իտալիոյ վրայ սպառնալ. բայց անոնք ալ ուզածին պէս չշարժեցան ։ Փիլիպպոս՝ Մակեդոնացւոց թագաւորը՝ գնաց Աւոս գետին բերանը Լեւինոս պրետորէն յաղթուեցաւ. Նոյնպէս յաղթուեցան նաև Յոյնք և Գաղղիացիք. Սպանիան Սկիպիոնեանց ու Ասդրուբաղին ձեռքը մատնուած՝ ինչ ըլլալիքը յայտնի չէր. միայն Սիկիլիան Հերոն թագաւորին մեռնելէն ետքը Կարքեդոնացւոց կողմն անցաւ ։

---

1 Ի՞նչպէս Կապուա մտաւ Աննիբաղ ։
2 Հռովմայեցւոց դէմ ի՞նչ թշնամիներ հանեց ։

¹ Այն միջոցին նոր զօրավար ունեցան Հռովմայեցիք Մարկեղոս կտրիճը որ Սուսէր Հռովմայ ըսուած էր ։ Երբոր Աննիբաղ Նոլան առնելու փորձեր կ՚ընէր, շատ զօրքով դէմն ելաւ Մարկեղոս, ու ինչուան ստիպեց Աննիբաղը Կամպանիայէն ալ ելլելու ։ Այն ատենը Աննիբաղ Տարենտոնի վրայ դիմեց՝ որ Հարաւային Իտալիոյ երկրորդ մայրաքաղաքը կը սեպուէր ; և շուտ մը տիրեց անոր ։

² Ծերակոյտը հազիւ թէ Մարկեղոսին յաղթութեանց աւետիսն առնելով կ՚ուրախանար, գուժկան հասաւ թէ Պոստումիոս Ալբինոս հիւպատոսը քսանըհինգ հազար հոգւով Լիտանա անտառին մէջ Գաղղիացւոց սպաննուեր է ։ Մէկէն խանութները գոցուեցան և տարապին ու յուսահատութիւնը ամենուն վրայ տիրեց ։ Հասարակապետութիւնը երեսունըհինգ հազար հոգի զինեց, որ գնացին Կապուան ու Տարենտոնը պաշարեցին ։ Կարթագոնացիք երկու քաղաքն ալ պաշտպանելու կարողութիւն չունենալով՝ Կապուայի օգնութեան գնացին, և երկու տեղ ետևէ ետև Կապուայի առջևն ու Լուկանիոյ մէջ զարկաւ՝ ջարդեց Աննիբաղ Հռովմայեցիքը ։ Բայց Հռովմայեցիք քանի որ Աննիբաղայ ան խօսքը կը յիշէին թէ Կապուան Իտալիոյ մայրաքաղաքը պիտի ըլլայ, յուսահատելու տեղ աւելի սիրտ կ՚առնէին ։

---

1 Մարկեղոս ինչ քաջութիւն ըրաւ ։
2 Տարենտոնի առնուելէն ետքը ինչ ըրին Հռովմայեցիք ։

1 Այն ատենը կարգէ դուրս յանդուգն խորհրդով մը Աննիբաղ Կապուան թողուց ու սկսաւ Հռոմին վրայ վազել, անանկ արագութեամբ որ զինքը Կամպանիա կարծած ատեններնին՝ իր յառաջապահ գունդը Հռոմին առջևը երևցաւ: Մէկէն Փուլուփոս հիւպատոսը շատ զօրքով հասաւ ու Հռոմը ազատեց: Ծերակուտը վախ չցուցնելու համար՝ նոյն օրը քաղաքէն Սպանիա զօրք խրկեց, ու մունետիկի ձեռքով Աննիբաղին բանակած դաշտը ծախեց. Աննիբաղ ալ Հռոմայ մեծ հրապարակին խանութները բոլոր ծախելու հանեց: Այնչափ որ նոր զօրք օգնութեան կուգար Հռովմայեցւոց: Աննիբաղ վախնալով որ չորս դիէն յանկարծ շրջապատուի, Հռոմին պաշարումը վերուց, և Սամնիտներէն ու Լուկանիայէն անցնելով՝ անիրաւ աւարով Բրուտիան հասաւ:

2 Սակայն Հռովմայեցւոց բաղդը բացուելով՝ Կապուան ծանր պայմաններով անձնատուր եղաւ, և բնակչաց գլխաւորները Հռովմայեցւոց վրէժխնդրութենէն վախնալով՝ իրենք զիրենք թունաւորեցին:

3 Այն միջոցին յաղթութեամբ առաջ կը քալէր Մարկեղոս Սիկիլիոյ մէջ. Սիրակուսան ալ պաշարեց. բայց ան քաղաքը Հերոն թագաւորին ազգականն Արքիմեդեսին հանճարովը երկու տարի դիմացաւ պաշարմանը: Աս հռչակաւոր երկրա-

---

1 Աննիբաղ Հռոմը ինչպէս պաշարեց:
2 Կապուան ինչ կերպով առին Հռովմայեցիք:
3 Սիրակուսայի ու Սիկիլիոյ ինչպէս տիրեց Մարկեղոս:

չափը այնպիսի մեքենաներ կը հնարէր՝ որ մէկէն բիւրաւոր նետեր ու քարեր կը թափէր անոնց֊մով Հռովմայեցւոց վրայ ։ Ծովէն կողմէն ալ ուրիշ մեքենաներով անոնց նաւերը ծովուն երեսէն վեր վերցընելով՝ ուժով կը ձգէր կ'ընկղմէր, և կամ ժայռերու կը զարնէր ջարդուփշուր կ'ընէր. ան֊կէց զատ՝ հայլիներու վրայ արևուն ճառագայթ֊ներն ամփոփելով Հռովմայեցւոց նաւերը կ'այ֊րէր ։ Զինուորները սարսափած՝ սիրտ չէին ըներ պարսպին մօտենալու. փայտի կամ չուանի կտոր մը պարսպին վրայ երևնալուն պէս ամէն բան կը թողուին կը փախչէին՝ կանչելով թէ Արքիմեդէս նորէն մեքենայ մը հնարեր է ։ Բայց վերջապէս տօնի մը օր Սիրակուսացւոց անհոգ կեցած ատե֊նը վազեց Մարկեղոս առաւ քաղաքն, և հրաման տուաւ որ կողոպտեն ։ Սպաննուածներուն մէջ էր նաև Արքիմեդէսը. վասն զի երկրաչափական ձևե֊րուն զբաղած ատենը՝ զինուորին մէկը չգիտնա֊լով կը զարնէ կը սպաննէ զինքը ։ Շատ ցաւեցաւ վրան Մարկեղոս. փառաւոր թաղում ըրաւ ա֊նոր, ու հանճարոյն արժանի հոյակապ շիրիմ մը կանգնել տուաւ (212) ։ Ետքը նաև բոլոր Սիկի֊լիոյ տիրեց ։

[1] Աննիբաղ իմացաւ որ վերջապէս Կարքեդո֊նացիք կը պատրաստուին օգնութիւն խրկելու իրեն, և թէ երկու Սկիպիոնները Սպանիոյ մէջ յաղթուեր ու սպաննուեր են. քիչ մը սիրտ առաւ ։ Իսկ Հռոմի մէջ մէկը չկար որ ուզենար Սպանիա

---

[1] Ի՞նչ լուրերով սիրտ առաւ Աննիբաղ ։ — Հռով֊մայեցիք զո՞վ ընտրեցին Սպանիոյ զօրավար ։

երթալ, զօրագլուխ ըլլալ: Քսանըչորս տարեկան Սկիպիոն պատանին ուզեց որ զինքը ղնեն զօրավար, որ երթամ հօրը ու հօրեղբօրը մահուան և հասարակապետութեան վրէժը հանեմ կ՚ըսէր. Ժողովուրդն ալ ուրախութեամբ զօրավար անուանեց զինքը: Այս ընտրութեամբ Հռոմ ազատեցաւ և Կարքեդոն կործանեցաւ:

¹ Սկիպիոն Ճարտասան էր, հնարագէտ, ու վայելչադէմ: Կ՚ըսէին թէ իր հայրը աստուած մըն է եղեր, ինքն ալ կը ջանար որ ռամկին աս կարծիքը սուտ չհանէ. ուստի շատ անգամ Կապիտողին կ՚երթար ու Արամազդայ տաճարին քովը կեցած կը մտածէր. պաշտօնեաներն ալ կը զարմանային որ ինչպէս շները ուրիշ ամէն գնացողներուն վրայ կը հաջէին, ու իրեն դէմ ձայն չէին հաներ. "Ես ինչ որ կը խօսիմ, կ՚ըսէր, կամ գիշերը անուրջք տեսած եմ և կամ աստուածային ազդեցութիւն մը եղած է վրաս, ան կը խօսիմ": Մեղկ ու կնատ բնաւորութիւն մը ունենալով՝ ինչուան ան ատեն իր պատանեկութիւնը անառակ բաներու մէջ անցուցեր էր. բայց զօրաց մէջ մտնելուն պէս՝ բոլորովին տարբեր մարդ դարձաւ (211):

² Սպանիա հասնելուն պէս ըսաւ զօրաց՝ թէ Գղուտոնի կողմանէ եկեր եմ Կարթագենէի առնելու (որ Կարքեդոնացւոց իշխանութեան թումբն էր). ու գնաց անիկայ պաշարեց: Երկու զինուոր եկան աղաչեցին որ իրենց դատաստանը կտրէ.

---

¹ Ի՞նչ բնաւորութեան տէր էր Սկիպիոն:

² Ի՞նչպէս տիրեց Սպանիոյ Կարթագենէ քաղաքին:

“ Վայը հոն ,, ըսաւ Սկիպիոն՝ ու քաղաքը ջնջեցաւ : Խրատուցինէ ալ Կարթագենէն առաւ , և անոր յաղթութեանը Սկիպիոն Իտալիայ մեծամեծ զօրավարացը կարգն անցաւ : Այն ատեն սկսաւ աւելի մեծ բան մտածել , որ էր Կարթագենէն կործանել . բայց ատոր համար պէտք էր նախ Նումիդիացիքը որսալ՝ որ անպարտելի ձիաւորներ էին : Ուստի մինակ ելաւ Աֆրիկէ գնաց որ Նումիդիացւոց Սիփաքս թագաւորին սիրտը վաստըկի , ու շուտ մը Հռոմ դարձաւ ծերակուտէն հրաման առնելու՝ որ Աֆրիկէի վրայ պատերազմի երթայ :

1 Անիբաղ էր հայրենիքէն զատուելու օգնութեանը սպասելով՝ Բրուտիոնի մէջ անդադար Հռովմայեցւոց զօրավարներուն հետ կը պատերազմէր : Երդոնէայի պատերազմին մէջ՝ Փուլուիոս հիւպատոսի փոխանորդին զօրքէն տասնուերեք հազար հոգի ջարդեց . Պետեղիայի քով Մարկեղոսին դարան մը գործելով զօրացը մէկ մասին հետ զինքը սպաննեց (208) : Մէկալ կողմանէ ալ Լատինք պատերազմէն յոգնած՝ չէին ուզեր ոչ Կարթագենացւոց և ոչ Հռովմայեցւոց կողմն բռնել . դաշնակիցներէն շատն ալ չէին ուզեր օգնել Հռովմայեցւոց . իսկ Հռովմին բնակչաց թիւը երկու հարիւր եօթանասուն հազարէն՝ հարիւր երեսուն հազարի իջեր էր . արտերը երեսի վրայ մնացեր էին , մարդ չկար որ զանոնք մշակէր :

2 Այսպիսի նեղութեան ատենը յանկարծ

---

1 Այն միջոցին Անիբաղ ի՞նչ կ՚ընէր :
2 Ասդրուբաղ ի՞նչ կերպով անցաւ Իտալիա ու ի՞նչպէս մեռաւ :

ձայն ելաւ թէ Ասդրուբաղ Աննիբաղայ եղբայրը Սկիպիոնը խաբելով Պիրենեան լեռներէն Հռո-դանոսէն ու Ալպեան լեռներէն անցնելով ու Գաղղիացիքը ոտք հանելով Հռոմին վրայ կուգայ: Ներոն հիւպատոսը Ասդրուբաղին իր եղբօրը գրած թուղթը բռնելով անոր միտքը կ'իմանայ, ու յան-դուգն խորհրդով մէջ հազար ընտիր զօրք հետն առած՝ կը վազէ Ճամբան անոնց դիմացն առնե-լու. եօթը օրուան մէջ դրեթէ բոլոր Իտալիան կը պտըտի, կ'երթայ Լիւիոս իշխանակցին հետ կը միանայ ու Մետաւրոս գետին քով Ասդրու-բաղին դէմ կը զարնուի: Աննիբաղայ եղբայրը զարմանալի քաջութեամբ ու ճարտարութեամբ կը պատերազմի. բայց վերջապէս կ'իյնայ կը մեռ-նի, հետն ալ յիսունըվեց հազար կարթագենացի: Մէկէն ետ դարձաւ Ներոն հիւպատոսը, և ան գիշերն որ Աննիբաղ եղբօրը հասնելուն կը սպա-սէր, Ներոն Ասդրուբաղին գլուխը անոր բանա-կին մէջ նետել տուաւ: Ապշեցաւ Աննիբաղ, ու սկսաւ կանչել. "Ո՛վ դժբաղդ Կարքեդոն. այ-սօր որ չկրցաւ քաջութիւնդ բաղդիդ յաղթել„ (207): Սակայն ինքը առանց յուսահատելու տարեն տարի կը յարձըկէր, կը ջարդէր, կը կողոպ-տէր, պատերազմը առաջ կը տանէր ու Հռոմը կը սարսափեցընէր:

[1] Սկիպիոն առաջարկեց ծերակուտին որ Ան-նիբաղը Իտալիայէն հեռացնելու մի միայն հնարքն է Աֆրիկէի վրայ պատերազմի երթալ: Ծերակոյ-

---

[1] Սկիպիոն ինչ պատրաստութեամբ Աֆրիկէ գնաց:

ար աս յանդուգն առաջարկութեան վրայ Թէ-պէս զարմացաւ, բայց երեսուն ցուկանաւ տուաւ Սկիպիոնին: Շատ մարդիկ ինքնակամ գնացին անոր հետ միացան, և բոլոր Եդրուրիոյ քաղաքները խոստացան իրեն օգնելու. Կերէն ցորեն տուաւ. Պոպուլոնիան Թուր. Տարկուինիա առագաստի կտաւ. Վոլատերրա նաւու կազմածքը. Արետինոնը երեք հազար վահան, երեք հազար սաղաւարտ, նետեր, տապարներ, մանգաղներ, ու հարիւր քսան հազար գրիւ ցորեն. Պերուս և Կլուսիոն քաղաքներն ալ փայտեղէն տուին:

1 Երբոր ամէն բան պատրաստուեցաւ, Ճամբայ ելաւ Սկիպիոն Ափրիկէ երթալու, ու երկու վտանգի մէջ Թողուց Հռոմը. վասն զի մէկ կողմէն Կարքեդոնացւոց զօրավարը Մագոն Գաղղիացիքը ոտք կը հանէր, մէկալ կողմանէ Աննիբալ Բրուտիոնի մէջ կեցած ուզածը կ'ընէր, և մարդ չէր համարձակէր դիմացը ելլելու: Ափրիկէ հասածին պէս լսեց Սկիպիոն որ Սիփաքս Հռոմայեցիները Թողեր ու Կարքեդոնացւոց կողմը անցեր էր, բայց Մասինիսսա Թագաւորը, որուն երկրին տիրեր էր Սիփաքս, Սկիպիոնին շատ օգնութիւն ըրաւ: Սկիպիոն Նումիդացիքն ու Կարքեդոնացիքը բանագնացութեան զբաղեցուց, և յարմար ատեն գտնելուն պէս գիշերանց վրանին յարձակեցաւ, բանակներնուն կրակ տուաւ այրեց, ու քառասուն հազար հոգի ջարդեց: Քիչ մը ետքը ուրիշ յաղթութիւն մըն ալ ըրաւ, և Տունիսին ու քանի մը ուրիշ քաղաքներու ալ տիրեց: Կարքեդոնա-

---

1 Սկիպիոն Ափրիկէ անցնելուն պէս ինչ ըրաւ:

ցիք տեսնելով որ բանակնին գէշ կ'երթայ՝ Աննիբաղը եւ կանչեցին (202)։

[1] Նեղացաւ Աննիբաղ եւ կանչուելուն վրայ, և մտածելով որ տասնըչորս տարուան աշխատանքը պարապ ելաւ՝ հառաչելով սկսաւ ակռաները կրճտել. ետեւ ետեւ կը դառնար կը նայէր Իտալիոյ վրայ, որ իր այնչափ յաղթութեանցը վկայ եղեր էր, ու աստուածոց՝ մարդկանց և հայրենեացը կը բողոքէր։ Աֆրիկէ հասնելուն պէս Աննիբաղ լրտեսներ խրկեց որ երթան թշնամւոյն բանակը դիտեն. Հռովմայեցիք բռնեցին զանոնք ու Սկիպիոնին բերին. ան ալ տուաւ՝ բոլոր բանակը պտըտցընելէն ու ամէն բան ցուցնելէն վերջը՝ ստակ ալ տալով ետ ճամբեց զիրենք։ Աս որ լսեց Աննիբաղ շատ զարմացաւ, ուզեց հաշտութիւն ընել, և խնդրեց որ Սկիպիոնի հետ տեսնուի։ Համաձայնեցաւ Սկիպիոն, և կ'ըսեն թէ ան մեծանուն մարդիկը մէկզմէկ տեսնելնուն պէս՝ իրարու վրայ զարմացած՝ քիչ մը ժամանակ անբարբառ կեցեր են։ Բայց չկրցան պայմաններուն վրայ միաբանիլ, և որոշեցին որ իրենց բանը պատերազմով լմնցընեն։

[2] Երկրորդ օրը Զամա քաղաքին քով երկու կողմի զօրքերը պատերազմի պատրաստուեցան։ Զարմանալի կերպով շարեց նորէն Աննիբաղ զօրքը, և յաղթութիւնը անտարակուսելի կ'երենար. բայց իր հնարագէտ ճարտարութեանը, փորձառութեանն ու պատերազմական հանճա-

---

1 Աննիբաղ ինչպէս դարձաւ Աֆրիկէ։
2 Զամայի պատերազմը ինչպէս եղաւ։

րոյն հակառակ կեցաւ քաղքը. յաղթուեցաւ Աննիբալ, ու քառասուն հազար մարդ կորսնցուցած՝ Կարթագենան փախչելով ինքզինքը հազիւ կրցաւ ազատել (202)։

1 Տեսաւ Աննիբալ որ ալ Հռոմայեցւոց յաղթելու յոյս չկայ, յորդորեց Կարթագենացիքը որ հաշտութիւն ընեն. Սկիպիոն ալ այսպիսի խիստ պայմաններով յանձն առաւ հաշտութիւնը, այսինքն Կարթագենացիք իրենց բռնած գերիները ետ դարձընեն, փղերնին ու նաւերնին տան, և տասը ցռկանաւ միայն ունենան, յիսուն տարուան մէջ ալ տասը հազար տաղանդ (յիսունեւհինգ միլիոն մէկ հարիւր երեսուն հազար Ֆրանք) վճարեն։ Հինգ հարիւր նաւ տուին Հռոմայեցւոց, որ աչքերնուն առջևը ծովուն մէջ տեղը ամէնն ալ այրեցին։ Նոյնպէս տուին նաև բոլոր զէնքերնին ու փղերնին. բայց երբոր տուգանքը վճարելու եկաւ կարգը, ծերակոյտը սկսաւ լալ։ Աս վատութիւնը տեսնելով Աննիբալ սկսաւ ծիծաղիլ. “Զէնքերնիս առնուած ու նաւերնիս այրած ատենը պէտք էր լալ, ըսաւ. դուք Կարթագենը յաղթուած տեսնելով անզգեն ու անտարբերտան՝ չհառաչեցիք, կաթիլ մը արցունք չթափեցիք. հիմա հեծեծանօք կուլաք, վասն զի դուք ալ պէտք է որ տուգանքին ձեզի ընկած մասը վճարէք. քիչ ատենէն պիտի իմանաք որ հիմակուան ցաւերնիդ քաշելու վշտերնուդ ամենէն թեթևն է”։

---

1 Ի՞նչ պայմաններով հաշտութիւն ըրին Հռոմայեցիք Կարթագենացւոց հետ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Մակեդոնիա և Յունաստան. — Ծերակոյտը Փիլիպ-պոսի դէմ պատերազմ կը հրատարակէ. — Փլամինինոսի ճարտարութիւնը. — Շանագլուխք ըսուած տեղւոյն պա-տերազմը. — Յունաստանի ազատութիւնը. — Պեր-սէոսի դէմ պատերազմը. — Պօղոս Էմիլիոս. — Պիւդ-նայի պատերազմը. — Պօղոս Էմիլիոսի յաղթանակը. — Յունաստանի դէմ եղած պատերազմը. — Կորնթոսի աւերումն ու կործանումը. — Յունաստան և Մակեդո-նիա Հռովմայեցւոց տէրութեանը գաւառ կ'ըլլան: (200–146):

*¹ Հռովմայ ծերակոյտը երկայնմտութեամբ ու հայրենասիրութեամբ Աննիբալի հանճարոյն յաղ-թանակելէն ու ծովու տէր ըլլալէն ետև, աչքը Մակեդոնիոյ ու Արևելքի վրայ դարձուց: Այն եր-կրին տիրապետելը Կարքեդոնէն աւելի դժուար կ'երևնար իրեն. վասն զի անոր քաղաքականու-թիւնը, հարստութիւնն ու հանճարը՝ իր մեծու-թեանն ու զօրութեանը նշան էին: Մեծին Աղեք-սանդրի աշխարհակալութեանը ձայնը բոլոր Ի-տալիան դողացուցեր էր, և ամէնքը կը կարծէին որ իր զօրավարները Ասիոյ Թագաւորութեանը հետ անոր խելքն ու քաջութիւնն ալ ժառանգեր էին: Բայց Յունաստան փոխուած էր. ընդունայն տեղը կը վախնային Հռովմայեցիք:*

---

*¹ Հռովմայեցիք անկէց ետքը ի՛նչ նոր աշխարհա-կալութեան ետևէ եղան:*

1 Կարքեդոնի պատերազմը լմըննալէն ետքը տարի մը հազիւ անցեր էր (200), Մակեդոնիոյ պատերազմը սկսաւ։ Ժողովուրդը պատերազմէ ձանձրացած՝ հանգչիլ կ՚ուզէր, ծերակոյտը մտիկ չէր ըներ։ Երկրորդ Պունիկեան պատերազմին ատենը Փիլիպպոս Կարքեդոնացւոց կողմը բռներ էր, հիմայ ալ Հռովմայեցւոց դէմ ընդհանուր դաշնակցութիւն մը կը մտածէր ընել. աս պատճառները բաւական էին վրան պատերազմ բանալու։

2 Յունաստանի մէջ ան ատենը իրեք երեւելի դաշնակցութիւններ կային, այսինքն Ետոլացիք, Բէովտացիք ու Աքայեցիք։ Թէ որ ճարտար թագաւոր մը աս այլ և այլ ժողովուրդները միացըներ, կրնար Յունաստան երկար ատեն Հռովմայեցւոց դէմ կենալ. բայց Փիլիպպոս իր բաղդէն օգուտ քաղել չէր գիտեր։ Արատոսը՝ որ Աքայեցւոց գլուխն էր՝ թունաւորել տուաւ, և անոր յաջորդող Փիլոպեմենն ալ մեռցընելու ջանաց։ Աս վատութեանը վրայ բոլոր Յոյնք բարկացան, և Հռովմայեցիք անկէց ետքը Մակեդոնիոյ տիրեցին։

3 Սակայն Մակեդոնիոյ բնական ամուր դիրքը պատճառաւ՝ դիւրաւ հոն չէր մտցուեր։ Հիւսիսէն ու արեւելքէն կային անպարտելի Միսիացիք ու Թրակիացիք. արեւմուտքէն Իլլիրիոյ լեռնոտ գաւառներն ու Եպիրոսի հետեւակ զօրքերը։ Աս ար-

---

1 Ի՞նչ կերպով ու ի՞նչ պատճառաւ սկսան Հռովմայեցիք Յունաստան արշաւել։
2 Յունաստան ան միջոցին ի՞նչ վիճակի մէջ էր։
3 Մակեդոնիա ի՞նչ երկիր էր։

գեղջերուն ալ յաղթելէն ետքը՝ պէտք էր կամ Պանդէոս ու Պինդոս լեռներուն բարձրաբերձ գօտիներէն անցնիլ, և կամ կիրճերուն մէջէն երթալ՝ որոնք քանի մը մարդիկ կրնային ամբողջ բանակի մը դէմ պաշտպանել։ Մակեդոնիոյ երեւելի քաղաքներն ասոնք էին. Ստագիրա՝ Արիստոտելի հայրենիքը. Եդեսիոս՝ Թագաւորաց գերեզմանատեղին, և Պելլա՝ Թագաւորանիստ քաղաքը։ Աս Թագաւորութեան լեռներուն ստորոտն էին Յունաստանի մէկալ մանր տէրութիւնները։

1 Մակեդոնիոյ կիրճերը մտնելու համարձակող Հռովմայեցւոց առջի զօրքը հազիւ կրցաւ դուրս ելլել։ Ժողովուրդը աս բանիս վրայ բարկացաւ. երեսուն տարեկան Փլամինինոս զանձապետը հիւպատոս ընտրեցին, որ Աննիբաղէն ետքը ան տեղնի առաջին խորագէտ մարդն էր։ Փոխանակ լեռներէն անդին անցնելու համար ժամանակ կորսնցընելու, անոնց չորս կողմը պտըտեցաւ Փլամինինոս։ Յոյնք տարապաչած՝ նոր բարբարոսներ տեսնելու կը սպասէին. երբոր տեսան աս երիտասարդ զօրավարին քաղցր բնաւորութիւնը, և թէ իրենց լեզուն աղէկ կը խօսի՝ վրան շատ զարմացան։ Եւ որ մեծն էր իրենց առջեւը՝ ան բարբարոսները գնած բաներնուն գինը անվրէպ կը վճարէին, չէին կողոպտեր, և մէկուն ստացուածքին չէին դպչեր։

2 Փլամինինոս առանց պատերազմի Յունաստանի, Թեսսաղիոյ ու Եպիրոսի տիրելէն ետքը՝

1 Ինչպէս մտան Հռովմայեցիք Մակեդոնիա։
2 Փլամինինոս ո՞ւր և ի՞նչպէս յաղթեց Փիլիպպոսի։

Փիլիպպոսի հետ պատերազմելու պատրաստուեցաւ. Շանագլուխք ըսուած դաշտին մէջ զարնուելով յաղթեց անոր, ու ծանր պայմաններով հաշտութիւն ըրաւ հետը: Անկէց անցաւ գնաց Կորնթոս, ու հոն Յունաց ազատութիւն խոստանալով՝ իբրև ազատիչ Յունաստանի փառաւորուեցաւ (196):

[1] Պերսէոս իր հօրը Փիլիպպոսի ոչ քաջութիւնն ունէր և ոչ խելքը (179), և երկար ատեն Հռովմայեցւոց դէմ կեցաւ ալ նէ՝ հօրը առած պատրաստութեամբն էր: Լիկինիոս Կրասսոսին հետ զարնուեցաւ Պերսէոս ու յաղթեց անոր. բայց որովհետև ըրած յաղթութենէն օգուտ քաղել չէր գիտեր՝ հաշտութիւն ուզեց ընել. Հռովմայեցիք յանձն չառին: Պօղոս Էմիլիոս զօրավարը, որ Սպանիոյ ու Լիգուրիոյ պատերազմներուն մէջ փորձ եղեր էր, հարիւր հազար զօրքով Պերսէոսին վրայ եկաւ. Ողիմպոս լեռնէն անցաւ ու հասաւ Մակեդոնիա: Պերսէոսի բանակին որ մօտեցաւ՝ տեսաւ անոր զօրաց աղէկ կարգաւորութիւնն ու բազմութիւնը՝ զարմացաւ, և մէկէն չուզեց պատերազմիլ: Այն միջոցին լուսինը խաւարեցաւ ու երկու զօրաց ալ սիրտը սաստիկ վախ ձգեց. շատ զոհեր ըրաւ Էմիլիոս աստուածոց, ու յաջող գուշակութիւններ հանել տալով պատերազմի պատրաստուեցաւ: Պատերազմի նշանը տրուելուն պէս՝ երկու մակեդոնական փաղանգը վահաննին քովէ քով բերած, նիզակնին վար առած, անթափանցելի երկաթէ պարիսպ մը պէս խրարու

[1] Պիւդնայի պատերազմը ի՛նչպէս եղաւ:

կապան միացան՝ Եմիլիոսին զօրամանքը սարսափ դարձաւ ։ Առջի բերան ջանաց սրտին վախը դրսէն չցուցընել ․ բայց երբոր տեսաւ որ իր յառաջապահ գունդը կոտրուեցաւ ու ետեւիններն ալ սկսան փախչիլ, չկրցաւ բարկութիւնը զսպել, մեբարկուան քաշեց պատառեց ու յաղթութենէ ալ յոյսը կտրեց ։ Այն միջոցին տեսաւ որ փաղանգը առաջ գալու ատենը գետնին անհաւասարութենէն ու միանգամայն իր սաստիկ տարածուած ըլլալէն՝ փաղանգին մէջտեղերը պարապ միջոցներ կան, մանր գունդեր արձըկեց վրան, որ ան տեղերէն գնացին փաղանգին մէջը մտան, մէկալընոնք ալ դրսէն եկան պաշարեցին, ու երկու կողմէն սոսկալի ջարդ տուին Մակեդոնացւոց ։ Այս պատերազմին մէջ, որ Պիւդնայի քով եղաւ, քսանըհինգ հազար զինուոր կորսընցուցին Մակեդոնացիք (168) ։

1 Պերսէոս վիրաւորուած՝ Սամոթրակէ կղզին փախաւ ․ բայց երբոր հոն ըսեց թէ իր սիրելի իշխանը՝ որուն յանձներ էր երկու որդիքը՝ զանոնք Հռովմայեցւոց մատներ է, անոնց սիրոյն համար գնաց ինքն ալ անձնատուր եղաւ Հռովմայեցւոց ։ Երբոր Եմիլիոսին բանակը հասաւ, անոր ոտքին ինկած աղաչեց որ գէթ զինքը յաղթական կառքին ետեւը չկապէ ու Հռովմին մէջ պտըտցընելով ժողովրդեան առջեւը խայտառակ չընէ ։ Ծիծաղեցաւ հիւպատոսը ․ “Այն բանը քու ձեռքդ է” ըսաւ,

---

1 Պերսէոս ինչ կերպով Պօղոս Եմիլիոսին ձեռքն ինկաւ ։

հասկցընելով որ եթէ չես ուզեր խաղք ըլլալ՝ ինք-
զինքդ սպաննէ։

¹ Պօղոս Էմիլիոսի յաղթանակին պէս մեծա-
հանդէս յաղթանակ դեռ չէր եղած, որ երեք օր
աւ-քշեց։ Յաղթանակին անցնելու փողոցներուն
մէջ բոլոր ժողովուրդը ճերմակներ հագեր էր։
Մեհեանները ծաղիկներով ու դրասանդներով
զարդարուած՝ անդադար անուշահոտ խունկեր
կը ծխէին։ Առջի օրը հազիւ բաւեց երկու հարիւր
յիսուն կառքով արձանները ու պատկերները ան-
ցընելու։ Երկրորդ օրը անցուցին Մակեդոնացւոց
դեղեցիկ ու հարուստ զէնքերն ու եօթը հարիւր
յիսուն աման՝ մէջը լեցուն արծաթ ու ոսկի դրա-
մով։ Երրորդ օրը կանուխ պատերազմական փող
զարնուելով՝ սկսան անցնիլ հարիւր քսան եզ՝ ոս-
կեզօծ եղջիւրներով, վզերնին գլուխնին ծոպերով
ու ծաղիկներով զարդարուած, ոսկի ամաններ, ա-
կանակուռ ոսկի բաժակ մը և չորս հարիւր ոսկի
պսակ՝ որ Յունաստանի ու Ասիոյ քաղաքներուն
ընծաներն էին։ Ետքը կուգար Թագաւորին կառքը՝
մէջը իր զէնքերն ու Թագաւորական կառքը
դրուած. անոր ետևէն կուգային Պերսէոսի որ-
դիքը իրենց վարժապետներովն ու դաստիարակ-
ներովը, և ասոնք անդադար կը զուրցէին խեղճե-
րուն որ ձեռքերնին բացած ժողովրդէն գթու-
թիւն խնդրեն։ Աս սրտաշարժ տեսարանին վրայ
ամենուն աչքէն արցունք կը թափէր. քանի որ ան
խեղճ տղաքը կը տեսնէին՝ հանդիսին փառաւորու-
թենէն համ չէին առներ։ Անոնց ետևէն կուգար

¹ Պօղոս Էմիլիոսին յաղթանակը ի՞նչպէս եղաւ։

տարաբաղդ Պերսէոսը՝ սեւեր հագած, և չորս կողմը բարեկամները առած՝ որ ամէնքն ալ կուլային։ Ամենէն ետքը Պօղոս Էմիլիոս կուգար փառաւոր կառքի մը մէջ նստած, ոսկեճամուկ ծիրանի հագած, ու ձեռքը ձիթենւոյ ճիւղ մը բռընած. զօրքն ալ չորս դին պատած՝ յաղթական երգեր կ'երգէին։ Բայց Էմիլիոսի սիրտն ալ ուրախ չէր. վասն զի յաղթանակէն հինգ օր առաջ մէկ որդին թաղեց՝ յաղթական կառքը հեծաւ, անկէց էջաւ ու մէկալ որդւոյն ալ մահը տեսաւ իրեք օր ետքը։

1 Երկու տարի միայն ապրեցաւ Պերսէոս, ու բանտին մէջ կամաւ անօթի կենալով երկու որդւոցը հետ մեռաւ. պզտիկ որդին Աղեքսանդր արքայորդւոյ աստիճանը մոռնալով սկսաւ հիւսնութիւն ընել. բայց ետքը լատիններէն սորվեցաւ ու նօտար եղաւ։

2 Յունաց աչքը շատ ուշ բացուեցաւ. տեսան որ մեծ սխալմունք ըրեր թողեր են որ Հռովմայեցիք դան Մակեդոնիոյ տիրեն, ու Սպարտացւոց և Աքայեցւոց կռուոյն ատենը չուզեցին որ Հռովմայեցիք ներս մտնեն ու միջնորդութիւն ընեն (147)։ Շատ ջանաց Մետեղլոս համոզել Աքայեցիքն որ համբերեն՝ չպատերազմին մինչուան որ Հռոմէն դեսպան գայ, մտիկ չըրին։ Դեսպանները հասան Կորնթոսի հրապարակը, ու հրովարտակ մը կարդացին որ Սպարտա, Արգոս, Կորնթոս և ուրիշ քանի մը երեւելի քաղաքները դաշնակցութենէն

1 Պերսէոս ի՛նչպէս մեռաւ։
2 Մակեդոնիոյ առնուելէն ետքը Յոյնք ի՛նչ ըրին։

զատուելին։ Ժողովուրդը աս բանիս կատղեցաւ, ու քիչ մնաց որ դեսպանները պիտի մեռցնէր։ Հռովմէ Մետեղղոս Թրակիայէն անցաւ, Աքայեցւոց հետ զարնուեցաւ ու վճռական մեծ յաղթութիւն մը ըրաւ (146)։

[1] Նաեւ եւս Թեբէն ու Մեգարան առնելով գնաց Կորնթոսն ալ պաշարեց Մետեղղոս, ուր տասնըհինգ հազար հոգւով ամրացեր էր Դիէոս՝ Աքայեան դաշնակցութեան գլխաւորը։ Երբոր Մումմիոս հիւպատոսը եկաւ Մետեղղոսին ձեռքէն սպարապետութիւնը առաւ, Դիէոս պզտիկ յարձակման մը մէջ յաղթող ելլելով քաջալերուեցաւ, ու ելաւ Հռոմայեցւոց դէմ Լեւկոպետրաս ըսուած տեղը պատերազմելու։ Յոյնք բոլոր իրենց կանայքն ու տղաքը քովի բլուրներուն վրայ հաներ էին որ իրենց քաջութիւնը տեսնեն։ Բայց չկրցան երկար ատեն Հռոմայեցւոց զօրութեանը դէմ կենալ, յաղթուեցան, և ան օրը Յունաստանի ազատութեան վերջին օրն եղաւ (145)։

[2] Յաղթականները գնացին Կորնթոսն առին, երիկ մարդիկը թրէ անցուցին, կանայքն ու տղաքը գերի ծախեցին, քաղաքն ալ բարբարոսաբար կողոպտեցին ու այրեցին։ Մումմիոս տեսնելով որ Պերգամոյի թագաւորը պատկերի մը համար հարիւր տաղանդ (հինգ հարիւր հազար ֆրանք) կուտայ գնելու, “Աս կտաւը պէտք է որ մոգական զօրութիւն մը ունենայ„ ըսաւ, ու առաւ

---

1 Լեւկոպետրայի պատերազմը ինչպէս եղաւ։
2 Կորնթոսը ինչպէս կործանեցին Հռոմայեցիք։

Հռոմ խրկեց։ Փիդիասի ու Ապելլեսի հրաշակերտ գործքերն ալ Հռոմ տանելու համար՝ նաւապետին յանձնելու ատենը, "Աղէկ նայէ, որ չկորսուին, կ'ըսէր, ապա թէ ոչ՝ նորերն քեզի շինել կուտամ"։ Աս պատճառաւ ալ էին ահա ան ատենը Հռովմայեցիք, որ ետքը իրենց նուաճած ազգէն լուսաւորեցան, ու այնպիսի անգիւտ ճարտարութեանց յարգը ճանչցան։

Այսպէս բոլոր Յունաստան հռովմէական գաւառ մը եղաւ՝ Աքայիա անունով, և միայն Եգեան ծովը մնաց Ասիոյ և Հռովմայեցւոց հասարակապետութեան մէջտեղը սահման։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Աննիբաղ Ասորւոց Անտիոքոս թագաւորին քովը կը փախչի. — Փոքր Ասիա. — Հռովմայեցւոց հետ պատերազմը. — Թերմոպիլէի պատերազմը. — Աննիբաղայ դժբաղդութիւնը. — Մագնեսիոյ պատերազմը. — Աննիբաղայ մահը. — Հռովմայեցւոց փառասիրութիւնը. — Բարուց ապականութիւնը. — [illegible]րութիւնը. — Կատոն համարակալ։ (201–149)։

Աննիբաղ[1] Զամայի քով յաղթուելէն ետքը նորէն պատերազմի կը պատրաստուէր (201)։ Կարքեդոն քաշուած, Փիլիպպոս թագաւորին Հռովմայեցւոց հետ ունեցած կռիւները կը դիտէր, ու ամէն ջանք կ'ընէր որ նորէն հայրենիքը զօրաց-

[1] Զամայի պատերազմէն ետքը ի՞նչ ըրաւ Աննիբաղ։

նելու հնարք մը գտնէ։ Ամենուն հետ անաչառութեամբ վարուելով՝ տէրութեան մէջ մնացած զեղծմունքները կը շտկէր, հասարակաց ստակը վատնողները կը պատժէր, անիրաւ դատաւորներին որ արդարութիւնը ստակով կը վաճառէին, և ան ատենակալները որ աղքատաց ստակը կ՚ուտէին՝ իշխանութենէ կը ձգէր։ Գիշեր ցորեկ խելքը հայրենեաց ազատութեանը վրայ ըլլալով՝ երբոր կը մտածէր թէ արեւելքն ու արեւմուտքը իրարու հետ դաշնակից ընելով Խոսրովայ դէմ հանէ, Կարքեդոնի հարուստները վրան ոխ պահեցին, զինքը Հռովմայ ծերակուտին մատնեցին, ու Ասորւոց Անտիոքոս թագաւորին հետ ունեցած թղթակցութիւնը բռնեցին։ Մարդ խրկեցին Հռովմայեցիք Կարքեդոն որ Աննիբաղը ձեռքերնին մատնեն, բայց անիկայ առաջուց գուշակելով նաև ան մատնութիւնը՝ միշտ նաւահանգստին մէջ պատրաստ պահած նաւը մտաւ ու Տիւրոս գնաց, անկէց ալ Անտիոքոսի քովը քաշուեցաւ։

[1] Անտիոքոս ինչուան Փոքր Ասիոյ գեղեցիկ երկրին վրայ տարածեր էր իր իշխանութիւնը։ Փոքր Ասիոյ Միսիա գաւառին մէջ էր Տրովիա՝ տասնամեայ պաշարմամբը անուանի․ Պերգամոն՝ իր համանուն թագաւորութեան մայրաքաղաքը․ Լիւդիոյ մէջ անուանի էր Փոկէա քաղաքը, Զմիւռնա՝ որ Հոմերոսի հայրենիքը կը սեպուէր․ Եփեսոս՝ Անահտայ հոյակապ տաճարովը ամէն տեղ հռչակուած․ Սարդիկէ՝ Կրեսոսի մայրաքաղաքը։

---

[1] Անտիոքոս ի՞նչ երկիրներու կը տիրէր ան ատենները։

Կարիոյ մէջ էին Միլետոն և Ալիկառնասս. Բիւթանիոյ մէջ՝ Նիկիա ու Պրուսա. Պափղագոնիոյ մէջ՝ Սինոպ, Պոնտոսի մէջ Տրապիզոն և Կեռասուս, ուսկից եկած էր կեռասենին. Փռիւգիոյ մէջ երևելի էին Լաւոդիկէ և Կիւբիրա. Գաղատիոյ մէջ՝ Պեսսինոս և Գորդիոն, Կապադովկիոյ մէջ՝ Կոմանա. Կիլիկիոյ մէջ Տարսոն և Իսսոս: Բայց Անտիոքոս Փոքր Ասիայէն զատ ուրիշ մեծամեծ գաւառներ ալ ունէր, այսինքն Ասորիք, Փիւնիկէ և Բաբելաստան, և ասոնց մէջ էին Անտիոք, Պալմիրա, Դամասկոս, Տիւրոս և Բաբելոն քաղաքները, հնութեան ու հարստութեան կողմանէ ամէնն ալ անուանի: Այսպիսի զօրաւոր թագաւորի մը եկաւ ապաւինեցաւ Աննիբաղ, մանաւանդ որ Անտիոքոս Հռովմայեցւոց վրայ ոխ ունէր, վասն զի անոնք կ՚ուզէին արգիլել որ Եգիպտոսի ու Թրակիոյ չտիրէ, և իրմէ աս խրոխտ պատասխանը տուեր էին. «Ինչպէս որ ես իրենց Իտալիոյ բաներուն չեմ խառնուիր, իրենք ալ իմիններուս չխառնուին»:

¹ Անտիոքոս առջի բերան Կարքեդոնացի դիւցազնին խօսքերուն վրայ մտիկ ըրաւ. որոշեց որ իրեն տասնըմէկ հազար մարդ ու հարիւր նաւ տայ որ երթայ Ափրիկէն ոտք հանէ. ինքը թագաւորն ալ բոլոր նաւերովը ու զօրքովը Եւրոպա պիտի անցնէր, ու Իտալիոյ վրայ հանէր Մակեդոնիան ու Յունաստանի հասարակապետութիւնները. և տարակոյս չկայ թէ ան դաշնակցութեան հետ բոլոր ազգերը կը միանային՝ այնպիսի ատեն որ Սպա-

---

¹ Ի՞նչ խոստմունք ըրաւ Անտիոքոս Աննիբաղայ:

Նումացիք ու Գաղղիացիք ալ իրենց գլուխ մը կը փնտռէին տալը ելլելու համար։ Բայց ան խելացի խորհուրդն առաջ չգնաց․ արդէն Անտիոքոսին մարդիկը սկսեր էին Աննիբաղայ վրայ նախանձիլ, Հռովմայեցիք ալ դեսպաններ խրկեցին որ Աննիբաղին հետ ստէպ տեսնուելով կը ջանային թագաւորին առջեւ կասկածելի ընել զանիկայ, այնչափ որ ինչուան մտերմութեան կասկած առնելով սկսաւ Անտիոքոս իրմէ զգուշել։

[1] Կ'ըսեն թէ այն դեսպաններուն մէջ էր նաեւ Սկիպիոն Ափրիկեցին, որն որ օր մը Աննիբաղայ հարցուցեր է թէ զօրավարաց մէջ զո՞վ առաջին կը սեպես․ պատասխաներ է Աննիբաղ․ "Աղեքսանդրը։ — Երկրորդ զո՞վ կը սեպես։ — Պիւռոսը։ — Հապա երրո՞րդ։ — Զիս"։ Ան ատենը ժպտելով զուրցեր է Սկիպիոն․ "Հապա ինծի յաղթէիր նէ՝ ինչ պիտի ըսայիր։ — Աղեքսանդրէ, Պիւռոսէ ու ամէն քաջ զօրավարներէ ալ վեր կ'ըլլայի" ըսեր է Աննիբաղ։

[2] Անտիոքոս երկու տարի տարապարտութեամբ կենալէն ետքը, Հռովմայեցիք սկսան Յունաստանի վրայ զօրք խրկել։ Անտիոքոս՝ Թոաս անունով նախանձոտ ու վատ մարդուն խորհրդովը տասը հազար զօրքով Յունաստան անցաւ, յուսալով որ հոն երեւնալուն պէս՝ բոլոր Յոյնք իրեն հետ պիտի միանան, բայց մէկը տեղէն չշարժեցաւ․ Ետոլա-

---

1 Սկիպիոն ու Աննիբաղ իրարու հետ ինչ խօսակցութիւն ըրած կը պատմուին։

2 Անտիոքոս ե՞րբ և ինչ կերպով Հռովմայեցւոց դէմ պատերազմի ելաւ։

ցնք միայն զինքը ազատարար անուանեցին, ու չորս հազարամարդ խրկեցին իրեն։ Ան ատենը Անտիոքոս փոխանակ գործ տեսնելու ուզեց սպասել. ձմեռն անցընելու համար Եւբիոյ Քաղկիս քաղաքը գնաց ու հոն իր փառաւոր հարսնիքը կատարեց։

¹ Ան միջոցին Հռովմայեցւոց լեգէոնները շուտ շուտ առաջ կուգային. Ակիլիոս Գղաբրիոն հիւպատոսը Թերմոպիլէի վրայ յարձակեցաւ՝ ուր վեց հարիւր Ետոլացիք պահպանութիւն կ՚ընէին։ Կատոն տրիբունը ընտիր գնդով մը ժայռերու վրայ ելլելով Ետոլացիքը ստիպեց որ ետ քաշուին. Ասորւոց զօրքը ձգեցին փախան, և Անտիոքոս ինքզինքը ապահովելու համար Ասիա անցաւ (192)։

² Խորհուրդ ըրաւ Անտիոքոս իրեններուն հետ թէ ի՞նչ ընելու է որ յաղթական Հռովմայեցիք Ասիա ոտք չկոխեն։ Շողոքորթ պալատականները կը վստահացընէին Թագաւորը թէ Հռովմայեցիք չեն կրնար Ասիա մտնել. ան ատենը դարձաւ " Ես անոր կը զարմանամ, ըսաւ Աննիբաղ. թէ ինչպէս ինչուան հիմա չհասան,,։ Այս խօսքին վրայ սարսափեցաւ Անտիոքոս, սկսաւ նորէն Աննիբաղին վրայ վստահութիւն ունենալ, ու թշնամեաց դէմն առնելու պատրաստութիւն տեսնել։ Բայց քիչ ատենէն նորէն Աննիբաղայ թշնամեաց ձեռքովը անոր վրայ միտքը աւրուեցաւ, ու մէյմըն ալ անոր խորհուրդ չհարցուց։

---

¹ Թերմոպիլէի պատերազմը ինչպէս եղաւ։

² Աննիբաղ ի՞նչ առթով նորէն Անտիոքոսի խորհրդական եղաւ քիչ մը ատեն։

1 Ղուկիոս Սկիպիոն հիւպատոսը, որ ետքը Ասիացի կամ Ասիական ըսուեցաւ, իր եղբօրը Սկիպիոն Ափրիկեցւոյն հետ Մագնեսիա քաղաքին վրայ կուգար : Հոն ութսուն հազար զօրքով բանակած կեցեր էր Անտիոքոս . առջի զարնուածքին փախան Ասորիք . Հռովմայեցիք յիսուն հազար մարդ սպաննեցին ու գերեցին կ'ըսեն, և իրենցմէ երեք հարիւր յիսուն հոգի միայն կորսուսին : Ետքը այս պայմաններով հաշտութիւն ըրին Անտիոքոսին հետ, որ բոլոր Փոքր Ասիան ինչուան Տօրոս լեռը իրենց թողու, ու տասնըհինգ հազար տաղանդ վճարէ (եօթանասունըհինգ միլիոն ֆրանք) պատերազմին ծախքին համար, Աննիբաղն ալ Հռովմայեցւոց ձեռքը տայ (190) :

2 Աննիբաղ աս լսելուն պէս՝ Հայաստան փախաւ՝ մեր Արտաշէս կուսակալին քով, որ անոր խորհրդովը Երասխ գետին քով Արտաշատ քաղաքը շինեց : Բայց երբոր տեսաւ Աննիբաղ որ Արտաշէս Հռովմայեցւոց հետ բարեկամութիւնը շատցընելով՝ օր մը ինքը վտանգի մէջ կրնայ իյնալ, ելաւ Բիւթանիոյ Պրուսիաս թագաւորին քովը փախաւ : Թէպէտ ծերացեր էր Աննիբաղ, սակայն իր անունն ալ բաւական էր Հռովմայեցիքը վախցընելու : Փլամինինոս եկաւ ծերակուտին կողմանէ Աննիբաղը Պրուսիասէն ուզեց : Պրուսիաս տեսնելով որ եթէ զանիկայ չմատնէ՝ թագաւորութիւնը ձեռքէն պիտի երթայ, մարդ խրկեց որ

---

1 Փոքր Ասիոյ ի՞նչպէս տիրեցին Հռովմայեցիք :

2 Աննիբաղ Հռովմայեցւոց ձեռքը չմատնուելու համար ո՞ւր փախաւ, և ի՞նչպէս մեռաւ :

պալատը պաշարեն, Աննիբաալը բռնեն բերեն. Աննիբաալ չուզելով կենդանի անոնց ձեռքը մատնուելով Հռոմ տարուիլ ու տեսարան ըլլալ՝ թոյն առաւ մեռաւ: Ասանկ մահ ունեցաւ ան կարգէ դուրս մարդը, որ այնչափ տարի Հռովմայ բաղդը վտանգի մէջ ձգեց (183): Նոյն տարին մեռաւ նաև Սկիպիոն Ափրիկեցին:

[1] Ան ատենները (201-149) Հռովմայեցւոց գրագիտութիւնը սկսեր էր քիչ մը ծաղկիլ. Պղաւտոս իր կատակերգութիւնները կը շարագրէր, Էննիոս Ցաղերգութիւնները կը հրատարակէր՝ որ հիմա կորսուած են, և Յունաց անուանի թատերգութիւնները լատիներէն կը թարգմանէր: Տերենտիոս թատրոնի մէջ իր կատակերգութիւնները կը ձևացընէր. Պօղոս Էմիլիոս առաջինն եղաւ որ Յունաստանէն բերած գրքերը իր շինած դրատանը մէջ դրաւ. Մարկեղոս Փիլիպպոս համարակալը 164ին քաղաքին միջօրէականին յարմար արևացոյց մը շինել տուաւ: Ճարտարապետութիւնն ալ առաջ երթալու վրայ էր. հասարակաց շէնքերն ու մեհեանները կը զարդարուէին Յունաստանէն ու արևելքէն բերուած արձաններով ու պատկերներով: Բայց միանգամայն զեղխութիւնն ալ ամէն բան կը փճացընէր. բարուց ապականութիւնը ամէն տեղ տիրեր էր, և օրէնքները ուժերնին կորսնցուցեր էին:

---

[1] Հռովմայեցւոց գրականութիւնը ան ատենները ինչ վիճակի մէջ էր:

[1] Պատրիկները ան ատեններն օրէ օր ժողովըրդեան վրայ կը բռնանային, իրարու հետ ալ խնամութեամբ միացած՝ անվախ ուզածնին կ'ընէին. իրենց յանդգնութեանն ու ամբարտաւանութեանը չափ չկար: Բիւթանիոյ Թագաւորը Պրուսիաս՝ գերծած գլխով և ազատագրեալ ծառայի հագուստով ու գլխարկով ծերակուտին առջևը կ'ելլէր ու խոնարհութեամբ կը կանչէր. "Ողջոյն ընդ ձեզ, ազատարար դիք, ես ձեր հրամանը կատարելու եկեր եմ": Անոր ետևէն կուգար Մասինիսայի որդին՝ ըսելով. "Երկու բանի վրայ շատ վշտացաւ Նումիդիոյ Թագաւորը. մէյմը որ իրաւունք ունէր Հռովմայ ծերակոյտը իրմէ օգնութիւն պահանջելու, ու դեսպաններու ձեռքով խնդրեց. մէյմ'ալ որ Թագաւորին խրկած ցորենին գինը վճարեց": — Անտիոքոս Եպիփան Եգիպտոսի տիրելու ատենը՝ ծերակոյտը մէկ խօսքով մը զանիկայ արգիլեց. Պոպիլիոս Լենա ելաւ Թագաւորին առջևն ու ըսաւ որ Եգիպտոսէն ելլես երթաս. երբոր տեսաւ թէ անիկայ կը տարակուսի՝ ձեռքի գաւազանովը անոր չորս բոլորը գիծ մը քաշեց ու "ինչուան որ ծերակուտին պատասխան չտաս, ըսաւ, չկարենաս աս գծէս դուրս ելլել": Մէկէն հնազանդեցաւ Անտիոքոս:

[2] Ժողովրդեան առջևն ալ պատրիկները օրէնքները համարձակ ոտքի տակ կ'առնէին. զիրենք

---

1 Իրենց քաղաքական կառավարութեան հոգին ինչպէս էր:

2 Ժողովրդեան իշխանութիւնը որչափ պակսած էր: — Սկիպիոնեանց վրայ ինչ կը պատմուի:

դատաստանի ալ կանչելու ըլլար ժողովուրդը, կամ յանդգնութեամբ և կամ դատաւորաց ակա_րութեամբը մահապարտութենէն կ՚ազատէին։ Փաբիոսի փեսան իբրև մատնիչ ամբաստանուե_ցաւ. դատաւորը զանիկայ արդարացընելու համար բաւական սեպեց անոր աներոջը աս խօսքը. “Ցանցաւոր չէ, որովհետև Փաբիոսին փեսայ գտնուեր է„։ — Մեռեզզոսը ամբաստանեցին որ տէրութեան գանձէն բան գողցեր է, և մուր_հակները դատաստանարանը բերին՝ որոնց մէջ յայտնի կ՚երևնար գողութիւնը. դատաւորները չուզեցին նայիլ անոնց։ — Երկու Սկիպիոննե_րուն վրայ երբոր ամբաստանութիւն եղաւ թէ Ասորւոց պատերազմին մէջ Անտիոքոսէն կաշառք կերեր են, Սկիպիոն Ափրիկեցին արժանի չսե_պելով իր ամբաստանողներուն պատասխան տալ՝ բեմն ելաւ ու ըսաւ. “Ո՛վ Հռովմայեցիք, աս օրս ես Ափրիկէի մէջ Աննիբաղայ ու Կարքեդոնացւոց յաղթեցի. եկէք Կապիտոլիոն երթանք, աս_տուածոց շնորհակալ ըլլանք և խնդրենք իրենցմէ որ միշտ ձեզի ինծի նման զօրավար պարգևեն„։ Ա_մէնքը ետևէն Կապիտոլիոն վազեցին, ժողովուրդ, դատաւորք և տրիբունք, և միայն գերբները մնա_ցին հրապարակը։ Բայց պատմիչներէն ոմանք կ՚ըսեն թէ Սկիպիոն տեսնելով որ թշնամիները կը շատնան, և չուզելով հասարակ քաղաքացւոյ մը պէս դատաստանի ելլել՝ ինքզինքը արդարացը_նել, գնացեր Կամպանիա իր գեղը քաշուեր և հոն մեռեր է, գերեզմանին վրայ աս դառն խօսքը փորագրել տալով. “Ապերախտ հայրենիք, և ոչ ոսկերքս տեսնես„։

¹ Իտալիոյ ժողովրդեան խրատուանցը վերծանողներէն եղաւ Կատոնը, որ ահաւոր նայուածքով ու զօրաւոր բնութեամբ մարդ մըն էր։ Իր ազգատոհմին անունն էր Պօրկիոս այսինքն խոզարած, բայց պզտիկուց 'ի վեր Կատոն ըսուեցաւ՝ որ խորագէտ ըսել է։ Տասնըեօթը տարեկան եղած ատենը Աննիբալայ դէմ պատերազմի գնացեր էր, և առած վէրքերը քաջութեանը վկայ էին։ Ետքը սկսեր էր իր պզտիկ ագարակը մշակել. առաւօտը քովի գիւղաքաղաքները կ'երթար ու իր աղերսարկուներուն փաստաբանութիւն կ'ընէր. ետքը կը դառնար, խեղճ հագուստ մը վրան առած՝ իր գերիներուն հետ արտերը կը մշակէր, ու անոնց հետ կերակուր կ'ուտէր. ծառաներուն հետն ալ ամենայն քաղցրութեամբ հօր պէս կը վարուէր. “ Աղէկ տանտէրը, կ'ըսէր, պէտք է որ իր հին կարասիքը, հնցած երկաթեղէնն ու ծերացած գերիները ծախէ ”։ Վալերիոս Փլակկոս Կատոնին վրայ մեծ համարում ունենալով առաւ Հռոմ բերաւ զինքը, որ և հետզհետէ գանձապետ եղաւ, պրետոր, հիւպատոս, ետքն ալ համարակալ։

² Այնչափ պատուոյ մէջ ալ իր ճամբան չփոխեց Կատոն. առջինին պէս կ'ապրէր, ու կը ջանար որ հին ատենի Հռովմայեցւոց առաքինութիւնները Հռոմի մէջ նորոգէ։ Կէս օրուան կե-

---

¹ Հռովմայեցւոց աւրուած ժամանակը ո՞վ եղաւ անուանի մարդ։ — Ի՞նչ բնաւորութեան տէր էր Կատոն։

² Կատոնին սակաւապիտութիւնը ի՞նչպէս էր։

ռակրին համար մէկ Ֆրանքէն աւելի ծախք չէր ըներ . անկողինն էր քանի մը ոչխարենի՝ գետինը փռած . բարեկամին մէկը մեռնելու ատենը իրեն գորգ մը թողեր էր, Կատոն քովը չպահեց ան գորգը՝ ծախեց :

[1] Այսպիսի խստակեաց մարդը հարկաւ Հռովմայեցւոց բարուց ապականութիւնը պիտի պակսեցընէր . վասն զի ան ատենները սուտ վկայութեանց, սուտ կտակներ շինելու, քսութեանց, մարդ թունաւորելու ու մարդասպանութեանց թիւը չկար Հռոմի մէջ : Կատոն վերցընել տուաւ Սպանդարամետի հանդէսը, և սրբապիղծ գիշերային խորհրդատօները, ուր վեց հազար հոգիէն աւելի մեռեր էին : Գանձապետ ըլլալուն պէս ազնուականաց զեղխութեանը դէմ սկսաւ կռուըտիլ, կարասեաց, կառքերու ու կանանց զարդարանքին վրայ տուրք դրաւ : Գոցել տուաւ ան ջրանցքները՝ ուսկից հասարակաց աղբիւրներուն ջրերը այլեայլ մարդկանց պարտէզներն ու տուները կ'երթային, և հասարակապետութեան եկամուտները շատցուց : Ասկէց զատ ազնուականաց վրայ ամենայն խստութիւն կը բանեցընէր՝ երբոր բանի մը մէջ զիրենք յանցաւոր բռնէր . Կուինտիոս Փլամինինոսը մարդասպանութեանը համար ծերակոյտէն դուրս վռընտեց :

[2] Կատոնին Հարտասանութիւնն ու խստութիւնը խիստ քիչ օգուտ ըրին Հռովմայեցւոց :

---

1 Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ :

2 Հռովմայեցիք Կատոնի յիշատակը ի՞նչպէս պահեցին :

Բայց ժողովուրդը չուզեց մոռնալ անոր յիշատակը, Ազատութեան տաճարին մէջ արձան մը կանգնեցին իրեն այսպիսի արձանագրութեամբ. “Կատոնի, որ փրկարար հրամաններով, իմաստուն նորոգութիւններով ու կարգաւորութիւններով իր գանձապետութեան ատենը նորէն կանգնեց Հռովմէական հասարակապետութիւնը՝ որ բարուց ապականութեամբը կործանելու վրայ էր”:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Գաղղիա յայսկոյս Ալպեանց. — Հռովմայեցւոց ու երկրին բնակչաց հետ պատերազմը. — Երրորդ Պունիկեան պատերազմը. — Կարթէգոնի ու Մասինիսայի կռիւները. — Հռովմայեցւոց անհաւատարմութիւնը. — Կարթէգոնի պաշարումը. — Սկիպիոն Եմիլիանոս Կարթէգոնը կ'առնէ ու կը կործանէ: (200-145):

[1] Երբոր Հռովմայեցիք արեւելքի մէջ դիւրաւ յաղթութիւններ կ'ընէին, Գաղղիա յայսկոյս Ալպեանց ըսուած երկրին պատերազմասէր ժողովուրդը շատ նեղութիւն կուտար անոնց: Այն երկիրը գրեթէ Իտալիոյ ամէն կողմէն աւելի գեղեցիկ ու բարեբեր էր. Ալպեան լեռները փառաւոր գօտիի մը պէս՝ անոր չորս կողմը կը պատէին, բաց 'ի հիւսիսէն՝ ուր Միջին Իտալիոյ հետ կը կպչէր ու Լիգուրիոյ և Ադրիոյ խաղաղաւէտ ծոցե-

---

[1] Գաղղիա յայսկոյս Ալպեանց ըսուած երկիրը ուր կ'իյնար:

րուն վրայ կը տարածի ։ Մէջ տեղէն կ'անցնի Պադոս (Փոյ) գետը, որ Նեղոսին պէս երբեմն կը բարձրանայ ու քովի երկիրները կոխելով իր բաղմաթիւ ձիւղերովը տեղւոյն բնական բարեբերութեանը կ'օգնէ ։

[1] Նախ Իբերացիք, ետքն ալ Ետրուրացիք բնակեր էին ան երկրին մէջ. բայց իրեք չորս հարիւր տարիէն 'ի վեր Գաղղիացիք տիրեր էին ու չորս կտոր բաժներ էին անիկայ. Գաղղիա յայնկոյս Պադոսի, և Գաղղիա յայսկոյս Պադոսի, Լիգուրիա և Վենետիա ։ Մէջը բնակող գլխաւոր ազգերն էին Բոյացիք, Լիգուրացիք, Ինսուբրացիք, Կինոմանք, Ապուանք և Վենետք ։ Երևելի քաղաքներն էին (մեծ մասը Ետրուրացւոցմէ շինուած) Գաղղիա յայնկոյս Պադոսի ըսուած մասին մէջ՝ Մեդիոլանոն կամ Միլան, Մանտուա՝ ուր ետքը ծնաւ Վիրգիլիոս՝ Լատինացւոց քերթողահայրը. Վերկելլէ կամ Վերչելլի՝ ոսկեհանքերովը անուանի ։ Գաղղիա յայսկոյս Պադոսի ըսուածին մէջ, Մուտինա կամ Մոտենա՝ որուն քովը էր հռչակաւոր Լիտանա անտառը. Պղակենտիա կամ Փիաչենցա, որ դիրքը գեղեցկութեանը համար աս անունը առեր, այսինքն վայելչութիւն ըսուեր էր. Լիգուրիոյ մէջ Գենուա կամ Ճենովա, որ Իտալիոյ ամենահարուստ քաղաքներէն մէկն էր. Վենետիոյ մէջ Վերոնա, որուն հիմակուան հնութիւններն ալ կը ցուցընեն առջի մեծութիւնը. Պատաւիոն կամ Փատուա՝

---

1 Քանի՛ կտոր կը բաժնուէր, ու ի՛նչ երևելի քաղաքներ կային մէջը ։

Տիտոս Լիւիոս պատմագրին հայրենիքը. Ակուիլէա և Տերգեստէ կամ Թրիեստ, որ մօտ ատեններս ծաղկեցաւ:

1 Աս բարեբեր երկրին բնակիչները ամենեւին Իտալացւոց չէին նմաներ. վայրենի գազաններու պէս անվախ էին, հասակնին ալ սովորական մարդկանց հասակէն՝ շատ բարձր: Պատերազմի ատենը առջի զարնուածքնին սարսափելի էր, իսկ երկրորդ յարձակմունքնին ան աստիճան կը տկարանար՝ որ կանացի քաջութենէ ալ վար կը մնային:

2 Աննիբալ Իտալիայէն ելած ատենը շատ յիշատակներ թողեր էր ան քաջ ազգին: Զամայի պատերազմէն ետքը Ամիլկար Կարքեդոնացին Գաղղիացիքը ժողվեց ու պատերազմի պատրաստուեցաւ (200): Պղակենտիայ մէկ մասը կործանեցին բարբարոսներն ու Պադուսէն անցան, քիչ մնաց որ Կրեմոնայի ալ պիտի տիրէին. բայց Փուրիոս Պուրպուրէոս պրետորը շուտով հասաւ քաղաքն ազատեց, ու պատերազմի մը մէջ ալ յաղթեց՝ ուր Ամիլկար երեսունըհինգ հազար հոգւով մեռաւ: Ուրիշ շատ պատերազմներ ալ ունեցան աս Գաղղիացիները Հռովմայեցւոց հետ ինչուան քառասուն տարի. բայց իրենց քաջասրտութեամբը հանդերձ չկրցան Հռովմայեցւոց բազմաթիւ զօրացն ու երկայնմտութեանը դէմ կենալ, ու իրենց զանազան գաւառները հետզհետէ հպատակեցան Հռովմայեցւոց:

---

1 Բնակիչները ինչ բնաւորութեան տէր էին:
2 Հռովմայեցւոց դէմ ինչ պատերազմներ ըրին:

1 Լիգուրիացիք միայն մնացեր էին. վասն զի աս քաջ ազգը՝ Ալպեանց ստորոտը Թփալից ու մացառուտ տեղեր բնակած՝ ամէնքն ալ չարքաշ ու արագաշարժ մարդիկ էին, և անմատչելի տեղեր քաշուած ապահով կը կենային։ Ան լեռներուն ու մացառներուն մէջ պատերազմելով անոնք ալ շատ ջարդ տուին Հռովմայեցւոց. բայց վերջապէս Թշնամեաց զինուորական կրթութենէն ու ճարտարութենէն յաղթուեցան։ Հռովմայեցիք անոնցմէ քառասուն հազար հոգի տարին Սամնիոն բնակեցուցին. և 163ին յայսկոյս Ալպեանց Գաղղիան բոլորովին ազատութիւնը կորսնցուց։

2 ԵՐՐՈՐԴ ՊՈՒՆԻԿԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ։ Ան գարուն մէջ տեղուանքը ուրիշ մեծ դիպուած մըն ալ Պունիկեան երրորդ պատերազմը եղաւ, որ թէպէտ կարճ քշեց, բայց ան ատենի Հռովմայեցւոց նենգաւոր վարմունքին աւելի յայտնի յիշատակ մնաց։

Զամայի պատերազմէն ետքը եղած դաշնադրութեամբ Սկիպիոն Աֆրիկեցին Կարքեդոնը Հռոմին հետ կապեր էր, և անոր վրայ պահապանի կամ լրտեսի մը պէս վայրենամիտ Մասինիսսան թողեր էր, որ ութսուն տարեկան մարդ՝ գիշեր ցորեկ ձիու վրայ հեծած՝ Կարքեդոնացւոց կործանմանը կ'աշխատէր, և հետզհետէ շատ գաւառներ ձեռ-

---

1 Հռովմայեցիք ի՞նչպէս և ե՞րբ տիրեցին Գաղղիոյ յայսկոյս Ալպեանց։
2 Երրորդ Պունիկեան պատերազմին պատճառը ի՞նչ էր։

քերնէն կ'առնէր ։ Գանգատեցան Կարքեդոնացիք. Հռովմայեցիք ալ տեսան անիրաւութիւնը, բայց չուզեցին արգիլել ։ Մասինիսսան սկսաւ նորէն իր արշաւանքները, ու քանի մը տարուան մէջ եօթանասուն քաղաքի կամ գիւղաքաղաքի տիրեց ։ Երբոր Կարքեդոնացիք նորէն բողոքեցին ծերակուտին, աս անգամ մտիկ ընել ձևացուց. վասն զի Պերսէոսին հետ պատերազմ ունենալով կը վախնար որ Կարքեդոնացիք Մակեդոնացւոց հետ դաշնակցութիւն մը չընեն. Կատոնը Ափրիկէ խըրկեցին որ երթայ զիրենք Մասինիսսային հետ հաշտեցընէ. բայց անիկայ այնչափ կողմնակցութիւն սկսաւ ընել՝ որ Կարքեդոնացիք չընդունեցան իր միջնորդութիւնը ։ Ոխ պահեց վրանին Կատոն. 'ի դարձին ծերակուտին առջևը ելած ատենը՝ վերարկուին ծայրէն քանի մը թուզ գետինը ձգեց որ Ափրիկէէն բերած էր. երբոր ամէնքը անոնց աղուորութեանը վրայ սկսան զարմանալ, " Ասոնք բուսցընող երկիրը, ըսաւ, Հռոմէն իրեք օր հեռու է ",։ Անկէ ետքը ինչ որ խօսէր՝ ծայրը հոն կը բերէր թէ "պէտք է Կարքեդոնը կործանել" ։

[1] Աս դժբաղդ քաղաքին բնակիչները իրեք մաս բաժնուած էին. մէյմը Հռովմայեցւոց կողմը եղողները՝ որոնց պաշտպան էին Աննոնեանք. մէյմը Նումիդացւոց կողմը եղողները՝ որոնց գլուխն էր Աննիբաղ Պասեր (այսինքն ճնճղուկն). և բուն Կարքեդոնի կողմը եղողները՝ որոնց գլուխ կեցած էր Ամիլքար Սամնիտացին ։ Անիկայ երբոր Մասինիսսային կուսակիցները վռընտեց, անիկայ

[1] Ի՞նչ վիճակի մէջ էր ան ատենները Կարքեդոն ։

անթիւ ձիաւորներով սկսաւ Կարքեդոնի երկիրը ոտնակոխ ընել ։ Բնակիչքը անոր ապստամբութիւններէն ձանձրացած՝ վրան վազեցին որ զինքը հալածեն , և սկսան պատերազմիլ Հռովմայեցւոց դեսպաններուն առջևը , որոնց ապսպրեր էր ծերակոյտը որ եթէ տեսնեն թէ Կարքեդոնացիք կը յաղթեն՝ մէկէն հաշտութիւն խնդրեն , իսկ թէ որ յաղթուելու ըլլան՝ թող տան Մասինիսային որ լաւ մը ջարդէ զանոնք ։ Քաջութեամբ դէմ կեցան Կարքեդոնացիք Թշնամւոյն յարձակմանցը ․ բայց իրիկուան անօթութենէ թուլցած՝ հաշտութիւն խնդրեցին ։ Եւ աս պայմանները դրուեցան ․ զէնքերնին տան , Մասինիսային իշխանութեանը տակ ըլլան , և քաղաքնին իրենց մնայ ։ Հազիւ թէ խեղճերը զէնքերնին թողեր էին , Նումիդացի ձիաւորները վրանին յարձըկեցան ու յիսուն հազար մարդ ջարդեցին ։

¹ Հռովմայեցիք մեծ ուրախութիւն ցըցուցին Կարքեդոնացւոց կոտորածին վրայ , և ալ անոնցմէ վախ չունենալով՝ յայտնի պատերազմ հրատարակեցին անոնց դէմ ։ “ Մեր քաղաքին յանցանքը ինչ է ,, ըսին Կարքեդոնացւոց դեսպանները ։ — “ Այն է որ Հռովմայեցւոց նիզակակից Մասինիսային դէմ պատերազմեցաք ,, ըսաւ ծերակոյտը ։ — “ Անոր ինչ փոխարէն կ՚ուզեն Հռովմայեցիք ,, ։ Ասոր ալ պատասխանը աս եղաւ ․ “ Իրենց գլխուն ճարը տեսնեն Կարքեդոնացիք ,, ։ Եւ մէկէն բանակ մը Ափրիկէ անցուցին Հռովմայեցիք , որուն զօրա-

---

¹ Հռովմայեցիք ինչ կերպով պատերազմ հրատարակեցին Կարքեդոնացւոց դէմ ։

վարժներն էին Մարկիոս Կենսորինոս ու Մանիլիոս Նեպոս հիւպատոսները (149)։

[1] Ամենայն կերպով կ'ուզէին Կարքեդոնացիք հաշտութիւն ընել. Հռովմայեցիք պատանդ ուզեցին անոնցմէ՝ ազնուականի իրեք հարիւր տղայ, անոնք ալ տուին. սակայն հիւպատոսները անդադար առաջ կուգային։ Ուտիկէ քաղաքն որ հասան՝ Կարքեդոնէն պաշտաւոր դեսպաններ եկան, ու երբոր հիւպատոսներուն դիմացն ելան՝ փող զարկին, լռութիւն եղաւ, և ութսուն հազար զօրաց առջևն ըսին Հռովմայեցիք. “ Եթէ հաշտութիւն կ'ուզէ Կարքեդոն, թող բոլոր զէնքերը բերէ մեզի տայ „։ Ան ցաւալի պայմանին ալ յանձն առին խեղճ Կարքեդոնացիք, և մէկէն երկու հազար մեքենայ ու երկու հարիւր հազարէն աւելի ամէն տեսակ զէնք Հռովմայեցւոց բանակը բերին։

[2] Կարծէին Կարքեդոնացիք թէ անով ազատեցան. մէյմըն ալ տրտում տխուր դարձան դեսպանները գուժեցին ծերակուտին ու հրովարտակը՝ հիւպատոսաց բերնէն թէ “ Կարքեդոն պիտի կործանուի, և բնակիչքը ծովէն տասը մղոն հեռու՝ ուզած տեղերնին երթան բնակին „։ Աս անգթութեան ու խարդախութեան վրայ կատղեցան Կարքեդոնացիք, և ամենեքին զէնք որ չունէին՝ հայրենասիրութեամբ ճարեցին։ Մէկէն 'ի մէկ բոլոր քաղաքը ընդարձակ զինարան մը դարձաւ. տուն, պալատ, տաճար, ամէն տեղ գործարան

---

1 Ի՞նչ պայման առաջարկեցին Կարքեդոնացւոց՝ հետերնին հաշտուելու համար։

2 Կարքեդոնացիք իրենց փափաքին հասա՞ն։

եղաւ։ Եօթը հարիւր հազար հոգի անդադար աշխատելով օրը հարիւր քառասուն վահան կը շինէին, անոնք փլուցին և անոնց փայտերովը նաւեր շինեցին. երբոր երկաթն ու պղինձը հատաւ՝ տեսան անոնց տեղը ոսկի ու արծաթ գործածել. աղեղներու ալ լար շինելու համար՝ կանայք ինչուան իրենց գլխուն երկայն մազերը կտրեցին։

1 Հիւպատոսները կարծէին թէ անդէն Կարքեդոնացիք զիրենք տեսնելնուն պէս՝ պիտի հնազանդին. բայց երբոր պարապին վրայ զօրք ու բաբաններ շարուած տեսան՝ շատ զարմացան։ Երկու անգամ յարձակեցան, երկու անգամին ալ ետ քշուեցան, և նաւատորմիղներնուն մէկ մասը այրեցաւ։ Ան միջոցին Ասդրուբաղ քառսուն հազար հոգւով բանակին մէջտեղը կեցած էր, Իմիլկոն Փառնէասն ալ երկու հազար ձիաւորով կայծակի պէս թշնամւոյն բանակին հետացողներուն վրայ կը յարձըկէր։ Անգամ մը քիչ մնաց որ աս երկու զօրավարները Հռովմայեցւոց բանակը բոլորովին պիտի ջարդէին. քսանուիրեք տարեկան երիտասարդ Սկիպիոն Եմիլեան տրիբունը՝ Պօղոս Եմիլիոսի որդին, իր քաջասրտութեամբը իրեք հարիւր ձիաւորով ազատեց բանակը, և զօրքը վրան զարմացած՝ մէկէն հոն բանակին մէջ քաղաքական պսակ տուին իրեն։

2 Երբոր ան քաջ տրիբունը Հռոմ դարձաւ,

---

1 Հռովմայեցիք երբոր տեսան Կարքեդոնացւոց իրենց դէմ պատերազմի պատրաստութիւնը՝ ինչ ըրին։

2 Սկիպիոն ինչպէս հիւպատոս եղաւ, ու Աֆրիկէ որ գնաց՝ ինչ ըրաւ։

ժողովուրդը մէկէն զինքը հիւպատոս անուանեց, թէպէտ և դեռ ան պաշտօնին հասնելու համար պէտք եղած տարիքը չունէր: Սկիպիոն Ափրիկէ դառնալուն պէս ամէն բան փոխուեցաւ. բոլոր կաքաւիչներն ու ծառաները բանակէն դուրս հանեց, և անկարգութեան տեղ՝ սաստիկ խստութիւն ու զինուորական կրթութիւն հաստատեց: Մէկէն պատ մը քաշեց, ու Կարքեդոնացւոց ցամաքին հետ ունեցած հաղորդակցութիւնը բոլորովին կտրեց, ծովէն ալ նաւահանգստին բերանը ամբարտակով մը գոցեց: Չյուսահատեցան Կարքեդոնացիք, աւելի զարմանալի գործք մըն ալ իրենք մտածեցին. արք և կանայք՝ առանց ձայն մը հանելու քովի ժայռը ծակեցին, նոր նաւահանգիստ մըն ալ բացին և նոր նաւատորմիղ մը հանեցին, որ երկար ատեն Հռովմայեցւոց հետ պատերազմեցաւ:

[1] Վերջապէս յաղթեցին Հռովմայեցիք ու պարիսպներէն անցան մայրաքաղաքը: Հոն նոր տեսակ պատերազմ մը սկսաւ. տները մէյմէկ միջնաբերդ դարձան, որ հարկ էր մէկիկ մէկիկ պաշարել ու առնել, փողոցներն ալ դիակներով լեցուեցան: Հռովմայեցի զինուորները առաջ անցնելու համար սկսան մեռելներն ու վիրաւորները ճանկերով ու երկաթժանիններով մէկդի քաշել ու ճամբայ բանալ: Վեց օր ու վեց գիշեր տեւեց աս պատերազմը. եօթներորդ առաւօտը կենդանի մնացած ժողովուրդը յիսուն հազար հոգի էրիկ մարդ կնիկ մարդ և տղաք աղաչաւորի հագուստով եկան յաղթականին ոտքը ընկան որ կեանքերնին

[1] Ի՞նչ կերպով առնուեցաւ Կարքեդոն:

խնայէ ։ Ի՛նը հազար հոգի Ասկղեպիոսի տաճարը փախած՝ չէին ուզեր անձնատուր ըլլալ՝ գիտնալով որ իրենց ներում չկայ. անոնց մէջ էր նաև Ասդրուբաղ, ու իր կինն և որդիքը ։ Աս զօրավարը մահն աչքին առջև տեսնելով՝ տկարացաւ, ու ձեռքը ձիթենւոյ ճիւղ մը առած՝ ելաւ տաճարէն գնաց հիւպատոսին ոտքն ընկաւ, կեանքը աղաչեց ։ Ան ատենը սոսկալի տեսարան մը բացուեցաւ. փախստականները մեհենին կրակ տուին, Ասդրուբաղին կինը տօնի օրուան պէս զարդարուած՝ մեհենին վրայ ելաւ, ու իր անարժան երկանը վատութիւնը նզովելով՝ բռնեց որդիքը սպաննեց, ու ինքզինքը բոցերուն մէջ նետեց (146)։

1 Ասանկով կործանեցաւ, եօթը հարիւր քառասուներչորս տարի դիմանալէն ետքը, աշխարհքիս հռչակաւոր հասարակապետութիւններէն մէկը ։ Կ'ըսեն թէ աս ահաւոր կործանումը տեսնելով Սկիպիոն Եմիլիանոս՝ սկսեր է լալ, ոչ թէ Կարքեդոնի հապա Հռոմի վրայ, և Հոմերոսին աս տողը զուրցեր է. “Տրոյան ալ ատենով իր խեղճութեան օրը պիտի տեսնէ„. գրեթէ գուշակելով իր հայրենեաց՝ այսինքն Հռովմայ բաղդը, որ օր մը բարբարոսաց ձեռքը պիտի մատնուէր, ու քանի՜ քանի անգամ թշուառութեան պիտի հասնէր ։

2 Չկրցան Հռովմայեցիք ոչ իրենց ուրախութիւնը և ոչ ատելութիւնը բռնել ։ Ան միջոցին որ մեծ հանդիսով յաղթական հիւպատոսը ներս

1 Ի՞նչպէս կործանեցաւ ։

2 Հռովմայ ծերակոյտը ի՞նչ հրովարտակ հանեց Կարքեդոնի համար ։

կը մտնէր Երկրորդ Աֆրիկեցի ըսուելով, ծերակոյտը հրովարտակ մը հանեց որ Կարքեդոնը բոլորովին կործանի, և Նզովք դրաւ ան մարդուն որ համարձակի մէկմըն ալ հոն բնակիլ և կամ նորէն աւերակները կանգնել։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Սպանիա. — Կատոնի արշաւանքը. — Իր յաջորդաց քաղաքագիտութիւնը. — Սպանիացւոց ապստամբութիւնը. — Հռովմայեցւոց յաղթութիւնները. — Գալբա պրետորին նենգութիւնը. — Վիրիաթ. — Հռովմայեցւոց յախորդութիւնները. — Վիրիաթայ մահը. — Նումանտիոյ պատերազմը. — Հռովմայեցւոց կոտորածը. — Սկիպիոն Եմիլիանոս Սպանիա երթալը. — Նումանտիոյ պաշարումն ու առումը։ (200-133)։

¹ Իտալիոյ արևմտեան կողմը, Տիւռենեան ծովէն անդին կ'իյնայ Սպանիան՝ ոսկւոյ ու արծաթի հանքերովը անուանի։ Կարքեդոնացիք շատ հարստութիւն հաներ էին անկէց, Հռովմայեցւոց ալ աչքը անոր վրայ էր։ Բայց Սպանիոյ տիրելու համար շատ արիւն պէտք էր թափէին. վասն զի Սպանիացիք ամէնքն ալ զինուոր էին, և կանայք էրիկ մարդկանց պէս կը պատերազմէին. մէջերնէն մէկը գերի որ իյնալու ըլլար՝ կամ ինքզինքը կը մեռցնէր, և կամ իր տէրը կը սպաննէր. ամենևին չէին կրնար գերութեան համբերել։ Շատ Սպանիացիք գերի բռնուած՝ Հռոմ տարուելու ատեն-

¹ Սպանիան ի՞նչ երկիր էր։

նին՝ մահը քան զգերութիւնը լաւ սեպելով՝ նաւը ծակեր ու անոր հետ մէկտեղ ընկղմեր են։

[1] Բնութիւնն ալ անանց ապառաժութեանը օգնելով՝ արտաքին յարձակմունքներէ Սպանիան աղէկ պաշտպանած է. հիւսիսէն Պիրենեան անմատչելի լեռներով Գաղղիայէն զատուած է. մէկալ կողմերէն ալ Ատլանտեան Ովկիանոսն ու Միջերկրական ծովը թշնամեաց արշաւանքները կը դժուարացընեն։

[2] Երկրին ներսերը շատ երեւելի քաղաքներ չկային. մեծամեծ քաղաքները ծովեզերեայ էին, և գրեթէ ամէնն ալ Միջերկրական ծովին եզերքը, ինչպէս Նոր Կարթագինէ՝ որ Ասդրուբաղ Բարկաս շինել տուաւ, և Կարքեդոնացւոց մասին գլխաւոր քաղաքն էր. Սագունտոն (Մուրվիէտրոյ), որուն կործանումը երկրորդ Պունիկեան պատերազմին պատճառ եղաւ. Ոլիսիպպոս (Լիսպոնա), Կուրդուբա (Քորտովա), Իտալիկա (Հին Սեւիլիա), Հիսպալիս (Նոր Սեւիլիա) որ իրենց վաճառականութեամբն ու դպրոցներովը շատ հռչակաւոր էին. Գադէս (Քատիքս), ասոր մօտ էր Հերակլեայ նեղուցը (Ճիպրալթար), որ երկար ատեն աշխարհիս ծայրը սեպուած էր։ Ներսերը երեւելի էին Նումանտիա՝ որ տասնըչորս տարի Հռովմայեցւոց դէմ կենալովը մեծ անուն հանեց. Սեգոբրիգա (Սեկորպա) Կելտիբերեանց մայրաքաղաքը, որ Կեղտաց ու Իբերեանց ցեղերէն բաւ

1 Բնական դիրքը ինչպէս էր։
2 Սպանիոյ երեւելի քաղաքները որո՞նք էին։

ղագղրուած զօրաւոր ազգ մըն էին․ Տոլետոն (Թոլէտոյ)։

1 Հռովմայեցիք Սպանիոյ իրաւամբ մը տիրելու մտքով, իբրև Կարքեդոնացւոց երկիրներուն ժառանգ իրենք ըլլալով՝ Կատոնը խրկեցին որ երթայ Սպանիոյ տիրէ․ ան ալ գնաց մեծ յաղթութիւն մը ըրաւ, չորս հարիւր քաղաք կամ գեղ առաւ, ու Եբրոս գետին և Պիրենեանց մէջտեղի երկիրը բոլորովին Հռովմայեցւոց երկիր ըրաւ։ Իր արդարութեամբն ու անշահասիրութեամբն անանկ ըրաւ որ տեղացիք սկսան Հռովմայեցւոց վրայ աւելի սէր ձգել քան թէ Կարքեդոնացւոց (195)։

2 Բայց ամէն զօրավարներն ալ Կատոնի չէին նմաներ․ պրետոր, հիւպատոս, փոխանորդ հիւպատոսի, զով ալ խրկեցին անկէ ետքը Հռովմայեցիք՝ ամէնքն ալ իրենք հարըստանալու կը ջանային։ Ուզածնին կ՚ընէին․ բնակչաց բոլոր ցորենը աժան աժան կ՚առնէին, վրան սոսկալի գին մը կը դնէին ու բոլոր երկիրը սով կը ձգէին։ Ուրիշ տեղ ամբողջ ժողովուրդներ կը ստիպէին որ գետնին տակը խոնաւ հանքերը մտնեն ու իրենց ոսկի և արծաթ գտնեն։ Ան խեղճերէն շատը քիչ ատենէն կը մեռնէին, բայց պրետորին հոգը չէր, վասն զի իրենց մէջէն ով որ աւելի ոսկի ու արծաթ կը բերէր՝ ծերակոյտը աւելի անոր գովեստ ու պատիւ կուտար։

3 Սպանիացիք Հռովմայեցւոց այսպիսի բռնու-

---

1 Ի՞նչ կերպով տիրեցին Հռովմայեցիք Սպանիոյ։
2 Ի՞նչ բռնութիւններ ըրին Սպանիացւոց վրայ։
3 Սպանիացիք ի՞նչպէս ոտք ելան։

Թիւններէն ազատելու համար՝ զէնք առին, Սեքստոս Դիգիտիոս պրետորը հալածեցին, և Պօղոս Եմիլիոսի զօրքէն ալ վեց հազար հոգի ջարդեցին. բայց Պօղոս Եմիլիոս ալ պատերազմի մը մէջ քսան հազար Լուսիտանացի սպաննելով վրէժը հանեց: Հինգ տարի ետքը՝ Կալպուռնիոս և Կուինտիոս պրետորները Տագոս գետին քով յաղթութիւն մը ըրին, ուր երեսունհինգ հազար Իբերիացի մեռան. բայց մնացածները անով ալ չհանդարտեցան: Սեմպրոնիոս Գրակքոս երեք հարիւր քաղաքի տիրեց ու չորս պատերազմի մէջ քառասունհինգ հազար հոգի ջարդեց թշնամիներէն: Աս կոտորածներով տկարացան Սպանիացիք ու 180էն հնազանդեցան Հռովմայեցւոց:

1 Քիչ ատենէն Սալոնդիկոս անունով մէկը ըսելով թէ աստուածները իրեն ոսկի նիզակ մը տուին որ թշնամեաց յաղթեմ, ջանաց Կելտիբերեանները ոտք հանել: Շատ մարդ ժողվեց, ու Հռովմայեցւոց դէմ պատերազմի պատրաստուած ատենին՝ վազեց ինքը անոնց բանակը մտաւ որ պրետորը սպաննէ. մէկէն բռնեցին, գլուխը կտրեցին ու ցիցի մը վրայ անցուցած՝ Կելտիբերեանց ցուցուցին, անոնք ալ առանց պատերազմելու ձգեցին փախան:

2 Տասնըմէկ տարի հանդարտ կեցաւ Սպանիա. Հռովմայեցիք ալ կարծեցին թէ վախ չմնաց. բայց անիկայ հրաբուղխ մըն էր որ աղէկ չէր մարած: Լուսիտանացիք նախ ոտք ելան, ու շուտ մը բոլոր

---

1 Սալոնդիկոսի պատմութիւնն ի՞նչ է:
2 Նորէն ի՞նչպէս ոտք ելան Սպանիացիք:

ցամաքակղզին ալ հանեցին։ Կալպուռնիոս Պիսոն յաղթուեցաւ անոնցմէ, Հռոմանացիք ալ մեծ ջարդ մը տուին Փուլիոս Նոբիլիորին զօրացը (153)։ Հինգ տարի միակերպ այսպիսի կոտորածներ ունենալով սարսափեցան Հռովմայեցիք, ու մարդ չէր ուզեր երթալ ան անվերջանալի պատերազմին։ Վերջապէս Սկիպիոն Էմիլիանոս ինքզինքը զինուոր գրել տալով ամենուն օրինակ եղաւ, և արշաւանքը յաջող գնաց. բայց յաղթութեանցը փառքը կորսնցուց Ղուկուղղոս հիւպատոսը՝ Կեղտիբերեանց դէմ ըրած խարդախութեամբը. վասն զի Կաւկայի բնակչացը խոստանալէն ետքը որ կեանքերնին շնորհէ՝ բոլորն ալ թրէ անցուց։ Անգին Գաղբա պրետորն ալ աւելի անգութ նենգութիւններ կ՚ընէր։ Լուսիտանացիք ուզեցին անձնատուր ըլլալ. հաւանեցաւ Գաղբա, և յորդորեց զանոնք որ գան իրենց տուած բարեբեր երկիրները բնակին. " Զէնքերնիդ տուէք, ըսաւ. Հռովմայեցիք ասկէց ետքը պաշտպանութիւն կ՚ընեն ձեզի "։ Խեղճերը զէնքերնին թողուցածին պէս՝ չորս կողմէն զօրքով պատեց զանոնք, ու երեսուն հազար հոգի ջարդեց։

[1] Ան կոտորածէն ազատողներուն մէջ Վիրիաթ անունով աննշան մարդ մը կար, որուն արուեստն էր նախ հովուութիւն, ետքը որսորդութիւն և աւազակութիւն. և երկար ատեն սարսափեցուցեր էր ան երկիրները։ Լեռներն ու անտառները և նեղ կիրճերը՝ իրեն պէս աղէկ ճանչցող չկար. ցորեկը մարդու չէր երևնար ու գիշերները միայն դուրս

---

1 Ո՞վ էր Վիրիաթ։

կ՚ըլլէր . Հռովմայեցւոցմէ շատ մարդ . Թշնամիներէն ոմանք կը ձգէր կը փախչէր , ու ժայռերու վրայէն եղնիկի պէս վար կը ցատքէր :

1 Լուսիտանացիք հազիւ թէ տասը հազար հոգի մէկտեղ ժողվուած՝ չորս կողմէն Հռովմայեցւոցմէ պաշարուեցան , և երբոր յուսահատած անձնատուր ըլլալ կը մտածէին՝ գնաց մէջերնին մտաւ Վիրիաթ . ու յորդորեց զիրենք որ ամէն ջանք ընեն Հռովմայեցւոց ձեռքէն ազատելու : Երբոր անոնք ամէնքը խօսքին հաւանեցան , ու զինքը դրին իրենց առաջնորդ ու զօրավար , Վիրիաթ հազար ձիաւոր հետը առաւ , մէկալ զօրաց հրամայեց որ դէպ 'ի ամէն կողմը փախչելով ցրուին , և իրենց ժողվուելու տեղ որոշեց Տրիբոլա քաղաքը : Աս որ տեսան Հռովմայեցիք՝ չէին գիտեր թէ ինչ ընեն , Վիրիաթին՞ վրայ յարձըկին թէ մէկալ փախչող զօրաց ետևէն իյնան . վերջապէս առջի խորհուրդը որոշեցին : Վիրիաթ առջի բերան թողուց որ վրան գան , և երբոր մօտեցան՝ զարկաւ մարակը իրեն կայծակի պէս վազող պզտիկ ձիերուն ու աներևոյթ եղաւ . Հռովմայեցիք ալ վախնալով որ Ճամբէ դուրս տեղուանք չմոլորին՝ ետևէն չինկան (149) :

2 Աս պատերազմական հնարքով ան հովուին անունը մեծցաւ . շատ մարդիկ գնացին իրեն զինուոր գրուեցան , և քիչ ատենի մէջ մեծ բանակ կազմեց Վիրիաթ : Վետիղիոս պրետորը տեսնե-

---

1 Առջի բերան ինչ քաջութիւններ ըրաւ :
2 Վետիղիոսի և ուրիշ զօրավարներու ինչպէս յաղթեց :

լով որ բանը կը մեծնայ, բոլոր ուժովը սկսաւ վրան երթալ. Թշնամւոյն հասնելու համար անծանօթ անտառ մը կար, անխոհեմութեամբ մէջը մտաւ։ Վիրիաթ յանկարծակի քիչ մը զօրքով Հռոմայեցւոց առջեւն ելաւ. ետեւէն ընկաւ Վետիլիոս ու գարանի մը մէջ բռնուեցաւ, ուր չորս հազար հոգի կորսնցուց։ Իրեն յաջորդող զօրավարներն ալ նոյն փորձանքին հանդիպեցան, եւ Վիրիաթ հինգ տարի միակերպ Եբրոս գետէն ինչուան Տագոս գետը արշաւելով առջեւն ելած զօրքը կը ջարդէր, եւ լեռներու վրայ ծիրանիներով զարդարուած յաղթութեան նշաններ կը կանգնէր։

1 Ան ձախորդութեանց վրայ շատ խռովեցան Հռոմայեցիք, եւ որոշեցին որ հիւպատոս մը խրկեն (145)։ Փաբիոս Եմիլիանոս իր նախորդներէն աւելի ճարտար ըլլալով՝ առջի բերան քանի մը յաղթութիւններ ըրաւ. բայց 141ին՝ յանկարծակի վրան հասաւ Վիրիաթ, ու քիչ մնաց որ բոլոր զօրքովը մէկտեղ թրէ պիտի անցընէր Եմիլիանոսը՝ թէ որ շուտով անիկայ չխոնարհէր ու հաշտութիւն չընէր. ծերակոյտն ալ ան դաշինքը հաստատեց։ Այնպիսի նախատալից հաշտութեան վրայ ամըչցաւ Կեպիոն հիւպատոսը, եւ երդումը ոտքի տակ առած՝ Վիրիաթին վրայ յարձակեցաւ. բայց յաղթելէն յուսահատած՝ ստակի ուժով զինքը վրանին մէջ սպաննել տուաւ։ Վիրիաթին հետ մեռաւ նաեւ Սպանիոյ ազատութիւնը։

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Վիրիաթ։

1 Սակայն բարձր լեռներու վրայ Նումանտիա անունով չափաւոր ընդարձակութեամբ քաղաք մը կար. ութը հազար պատերազմող մարդիկ հոն մտած Հռովմայեցւոց ամէն ջանքը պարապ կը հանէին։ Պոմպէոս Հռուփոս հիւպատոսը շատ զօրքով վրանին գնաց, չարաչար ջարդուեցաւ, և աղէկ պայմաններով հաշտութիւն խնդրեց. բայց մէյմը որ վտանգէն ազատեցաւ՝ լրբութեամբ Նումանտիացւոց դեսպաններուն առջևը դաշնադրութիւնը ուրացաւ։

2 Անոր վրայ սաստիկ բարկացան քաղաքացիք, ու քաջութիւննին նորէն վառուեցաւ։ Պոպիլիոս Լենա հիւպատոսը յաղթուեցաւ անոնցմէ։ Մանկինոս երեսուն հազար զօրքով գնաց, մէկ գիշերուան մէջ տասը հազարը կորսնցուց, ու անանկ դէշ տեղ մը ինկաւ որ իրմէ հինգ անգամ պակաս թուով թշնամիէն ստիպուած՝ հաշտութիւն խնդրեց, ու իր զօրավարներովը երդում ըրաւ։ Նումանտիացիք սաստիկ ուրախացած՝ Տիբերիոս Գրակքոս գանձապետը իրենց քաղաքը հրաւիրեցին որ գայ իր հաշուեգիրքը առնու, որ զօրաց փախչելու ատենը ինկեր էր և իրենք գտեր էին. հաւանեցաւ Գրակքոս, ուրախութեամբ գիրքը Նումանտիա տարին, իրեն հասարակաց սեղան մը ըրին և շատ աղաչեցին որ հետերնին նստի։

---

1 Սպանիոյ ո՞ր քաղաքը երկար ատեն դէմ կեցաւ Հռովմայեցւոց։
2 Նումանտիացիք ի՞նչպէս յաղթեցին Մանկինոս հիւպատոսին։

¹ Ծերակոյտը ան մեծանձնութիւնը բանի տեղ չդրաւ, դաշնադրութիւնը չուզեց հաստատել, և հրամայեց որ Մանկինոսը Նումանտիացւոց ձեռքը մատնեն. Հռովմայեցիք իրենց հիւպատոսին ձեռուըներն ոտուըները կապած՝ կիսամերկ տարին քաղաքին դրան առջեւը ձգեցին։ Օր մը հոն կեցաւ խեղճ Մանկինոսը. բայց քաղաքացիք ան ծաղրական հատուցումը չընդունեցան, Հռովմայեցիք ալ իրենց պատիւը պահելու համար այնչափը բաւական հատուցումն սեպեցին. Տիբերիոս Գրակքոսին խորհուրդն ալ արհամարհելով որոշեցին որ Նումանտիան կործանեն (136)։

² Երկու հիւպատոս ու երկու բանակ զօրք նորէն գնացին քաղաքին վրայ ու բան մը չկրցան ընել, և եօթը տարի ան ութը հազար հոգին պաշտպանեցին ան պզտիկ քաղաքը այնչափ և այնպիսի հռչակաւոր լեգէոններու դէմ։ Վերջապէս Սկիպիոն Եմիլիանոսը պէտք եղաւ որ Սպանիա երթայ. գնաց տեսաւ որ զօրքը իրենք զիրենք անկարգութեան տուած են, ու մէջերնին ամենևին զինուորական կրթութիւն չկայ (134). սկսաւ զիրենք գերիներու պէս աշխատցընել. կահերնին ու քսան օրուան կերակուր կռնակնին՝ վեց վեց ցից ալ ձեռքերնին տուած՝ երկայն տեղեր կը քալցընէր, և կամ պատեր շինել կուտար ու քիչ ատենէն կը հրամայէր որ կործանեն. « Երբոր վրա-

¹ Ծերակոյտը ի՞նչ նոր անիրաւութիւն ըրաւ Նումանտիացւոց դէմ։

² Սկիպիոն Եմիլիանոս ի՞նչ կերպով խրկուեցաւ Նումանտիոյ վրայ ու ի՞նչ ըրաւ։

նոր արիւնոտել չէք ուզեր՝ գէթ ցեխոտեցէք,, կ՚ըսէր ։ Զինուորները աշխատանքէն ձանձրացած՝ սկսան պատերազմ ուզել. Եմիլիանոս չէ ըսաւ. վաթսուն հազար զօրքովը ու յաղթութեան վրայ կը տարակուսէր, աւելի ապահով կերպով կ՚ուզէր յաղթել ։ Նումանտիոյ չորս կողմը պատ քաշել տուաւ, Տուէրոյ գետն ալ որ մէջէն կ՚անցնէր դոցել տուաւ, որպէս զի սովի բռնելով առնէ քաղաքը ։

1 Վրան շատ չանցաւ՝ սաստիկ սով ընկաւ քաղաքին մէջ, այնպէս որ սկսան իրենց հիւանդներն ուտել, ու Հռոմայեցիներէն հատած հաշտութիւն խնդրեցին ։ Սկիպիոն կը պահանջէր որ առանց պայմանի անձնատուր ըլլան. բայց ասոնք իրենց քաջութեանը ձեռք չէր տար ։ Ան ատենը Հռեթոգենէս Կարաւնոս անունով՝ քաղաքին գլխաւորներէն մէկը, բոլոր քաղաքացիները իր տանը առջևը կը ժողվէ, կրակ կուտայ անոր, թոյն կը բաժնէ անոնց ու կը յորդորէ որ մէկզմէկ մեռցնեն ։ Երբոր ամէնքը կ՚իյնան կը մեռնին, ան սրտոտ Սպանիացին ալ ինքզինքը կրակին մէջ կը նետէ ։ Շատ մարդիկ ալ Եմիլիանոսին անձնատուր եղան կ՚ըսեն. անոնցմէ յիսուն հատը իր յաղթանակին համար պահեց Սկիպիոն, և մնացածը գերի ծախեց ։ Մնաց Նումանտիա ու հող և մոխիր միայն դառաւ. ոչ գերի բռնել կրցաւ և ոչ կողոպուտ ընել, սոսկ անուան մը վրայ յաղթանակ պիտի ընէր (133) ։

---

1 Ի՞նչպէս առնուեցաւ Նումանտիա ։

1 Այն պաշարմանէն ետքը կարծեցին Հռոմայեցիք թէ բոլորովին նուաճուեցաւ Սպանիա, և իրենց գաւառներէն մէկը սեպեցին. բայց ետքը պիտի տեսնենք որ Սպանիացիք Հռոմայեցւոց հնազանդելու կամք չունէին։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Սիկիլիոյ մէջ ստրկաց ապստամբութիւնը. — Եւնոսի թագաւոր հրատարակուիլը. — Ստրկաց յաղթուիլը. — Հռոմի մէջ ժողովրդեան խեղճութիւնը. — Իտալիոյ բնակչաց պակսիլը. — Ազնուականաց բռնաւորութիւնը. — Գրակքոսեանք. — Տիբերիոս. — Կայիոս. — Գաղղիոյ պատերազմը։ (139-118)։

2. Հասարակապետութեան գեղեցիկ օրերն անցնելէն ետև Հռոմայ ներքին պատմութիւնը՝ ասպետաց, ծերակուտին և ժողովրդեան մէջ անդադար կռիւ է, և այնպիսի կռիւ որ Ապպիոսեանց ատենին պէս ճարտասանութեամբ չէր լմըննար, հապա բոլոր Իտալիոյ քաղաքներուն մէջ արեան գետեր կը վազցընէր։

3 Այն ատենները ստրուկ կամ գերի ըսուած մարդկանց ապստամբութիւնը եղաւ, որ շատ խռովութեանց ալ պատճառ եղաւ։ Հարուստները շատ

---

1 Նումանտիոյ կործանմանէն ետքը բոլորովին նուաճուեցա՞ւ Սպանիա։

2 Հռոմ ի՞նչ վիճակի մէջ էր այն ատենները։

3 Ստրկաց կամ գերիներու ապստամբութիւնը ի՞նչ էր։

բարբարոսութեամբ կը վարուէին անոնց հետ. անգթութիւն չկար որ ան խեղճերուն դէմ չբանեցնէին. սակայն վերջապէս ամէնքն ալ յաղթահարուած ապստամբեցան։

1 Այն գերիներուն աւելի շատ գտնուած տեղը Սիկիլիա էր։ Աս բարեբեր կղզին Իտալիոյ անբեր կղզիներուն կերակուր կը հայթայթէր, և սակայն հոն տեղի գերիները սաստիկ կարօտութենէ սկսան գողութիւն ընել. վրանին գազաններու մորթ հագած, ձեռքերնին լախտ, հետերնին խոշոր շներ առած՝ ճամբորդաց, ագարակներու ու քաղաքներու վրայ կը յարձակէին ու կը կողոպտէին (139)։

2 Մէջերնին Եւնոս անունով Ասորի մը կար որ կը պարծենար թէ ըլլալու բաները առաջուց կը մարգարէանայ, և ըրած գուշակութեանց գլխաւորն ան էր թէ ինքը օր մը թագաւոր պիտի ըլլայ. սակայն կատակով կ'երթային իրեն կ'աղաչէին որ թագաւորած ատենը իրենց պաշտպանութիւն ընէ։ Օր մը Եննա քաղաքին ազնուականներէն մէկուն գերիները ապստամբեցան, և գլուխ ընտրելով իրենց Եւնոս մարգարէն՝ զինքը թագաւորեցուցին, ան ալ անունը փոխեց՝ Անտիոքոս դրաւ։

3 Քիչ ատենի մէջ շատ մարդիկ գնացին Անտիոքոսին հետ միացան. որ առհասարակ բանակ մը կազմած՝ սկսաւ Սիկիլիոյ մէջ պտըտիլ, տէրերնին աւըրշորկել ու գերիները ազատ հանել. ինչուան երկու հարիւր հազարի հասաւ Անտիոքոսին զօրքը

---

1 Գերիները ի՞նչ կեանք կ'անցընէին։
2 Ո՞վ էր Եւնոս։
3 Գերիները ի՞նչպէս նուաճուեցան։

ու բոլոր կղզին սկսաւ դողդողալ: Հռոմայեցիք վախցան, երեք եւեւ չորս պրետոր խրկեցին, չորսն ալ յաղթուեցան: Կալպուռնիոս Պիսոն և Ռու-պիլիոս հիւպատոսաց բանը յաջող գնաց. Տաւրո-մենիոն և Ենիա քաղաքներին առին՝ որ ապստամբ-ներու մեծ ապաստանարաններն էին: Տաւրոմե-նիոնի մէջ այնպիսի սաստիկ սով ընկաւ որ ինչուան քաղաքացիք մէկզմէկ սկսան ուտել. Ենիա քաղա-քին մէջ ալ այրի մը մէջ գտան Անտիոքոս Թագա-ւորը՝ որ հոն էր խոհակերին, բաղանեպանին ու խեղկատակին հետ պահուըտած էր (132):

[1] Որովհետեւ Հռոմի բնակիչները անդադար պատերազմներով օրէ օր սկսան քիչնալ, ու պա-կասութիւնը լեցընելու համար Հռոմայեցիք մտածեցին որ շատ մը գերի Իտալիա բերեն բնա-կեցընեն: Հարուստները ժողովրդականներէն ա-ւելի գերի կ'ուզէին, վասն զի ամէն ուզածնին կը-նային անոնց ընել տալ, ու անոնց բողոքելէն վախ չունէին. բայց սա գերիներէն ալ շատը երկիր կը մշակէին, շատն ալ քաղաքին մէջ լեցուած, ու շատ անգամ իրենց տէրերուն աչքը մտնելով գե-րութենէ ազատ կը սեպուէին ու քաղաքացի կը գրուէին: Ասանկով կամաց կամաց հին Հռոմէա-կան ցեղը կը ջնջուէր ու անոնց տեղը ազատագիր-ներն ու գերիները կը բռնէին: Ան ժամանակները Հռոմայ ժողովուրդը գրեթէ ամէնքն ալ ազատա-գիրներու որդիք էին. այնպէս որ օր մը մեծ հրա-պարակին մէջ երբոր իրենց աղաղակովը Սկիպիոն Եմիլիանոսին խօսքը կը կտրէին, "Լռեցէք, ըսաւ,

[1] Իտալիոյ մէջ ինչ կերպով շատցան:

անհարազատ որդիք Իտալիոյ․ որչափ ալ կան-չուրանելու ըլլաք, անոնք որ ես կապկապած Հռոմ բերի՝ չեն կրնար զիս վախցընել, Թէպէտ և կապերէն արձըկուած ըլլան,,։

1 Ընդ. հակառակին բոլոր Իտալացիք անօթու-Թենէ ու խեղճութենէ կը մեռնէին։ Պերսէոս Թագաւորին դէմ պատերազմ բացուելու ատենը հարիւրապետին մէկը ժողովրդեան կ'ըսէր․ "Հայրս ինծի պզտիկ ագարակ մը Թողուց․ քառասունու-երեք տարի տէրութեան ծառայելէս ետքը մէկ Թիզ մը չմեծցաւ ժառանգութիւնս, և ես այնչափ աղոց տէր եղայ,,։ Մէկալ ամէն ծեր զինուորներն ալ նոյն բանը կրնային ըսել, բայց ազնուականաց հոգը չէր․ մանաւանդ Թէ աս Թշուառութեանց պատճառը իրենք էին․ վասն զի կ'ուզէին որ մէյմը ժողովրդականաց ցեղը բոլորովին ջնջուի, որպէս զի անկէց ետքը ամէնքին վախ չունենան, ու իրենք միայն ուզածնուն պէս երկիրը կառավարեն։

2 Երկու եղբարք ժողովրդեան իրաւանքը պաշտպան կեցան, ու սկսան ազնուականաց դէմ կռուիլ. երկար ատեն երկուքն ալ մեծ եռանդով ու քաջութեամբ պատերազմեցան, բայց կեանքերնին կորսնցուցին։ Տիբերիոս և Կայիոս Գրակքոս, որ Գրակքոսեանք կ'ըսուին, անուանի ազնուական ցեղէ էին, և մայրերնին Կոռնելիա՝ Սկիպիոն Ափրիկեցւոյն աղջիկն էր․ երբոր էրիկը Սեմպրո-

---

1 Բոլոր Իտալացիք ի՞նչ վիճակի մէջ էին։

2 Ո՞վ գտնուեցաւ աս ատենները ժողովրդեան իրաւանքը պաշտպան։ — Ո՞վ էին Գրակքոսեանք։

նիոս Գրակքոս մեռաւ, Եգիպտացւոց Պտղոմէոս թագաւորը ուզեց զինքը իրեն թագուհի ընել, յանձն չառաւ Կոռնելիա՝ որպէս զի կարենայ իր երկու որդիքն աղէկ կրթել։ Օր մը Կամպանիացի հարուստ տիկին մը անոր տունը կուգայ ու անոր իր գոհարեղէն զարդերը ցուցնելով կ'աղաչէ որ ինքն ալ իրենինները ցուցընէ։ Կոռնելիա քիչ մը ատեն զանիկայ խօսքի կը բռնէ՝ մինչուան որ որդիքը դպրոցէն դառնան. երբոր եկան ու մօրերնուն սենեակը մտան՝ ձեռքը պագնելու, զանոնք ցուցը-նելով Կամպանիացի տիկնոջը «Ահա ասոնք են, ըսաւ, իմ գոհարեղէն զարդարանքս ու գանձերս»։ Իրաւցընէ զանոնք հասարակապետութեան մէյմէկ զարդ ու պարծանք ընելու փափաքով՝ անոնց հա-մար Յունաստանէն անուանի վարժապետներ բերաւ, և ինքն ալ անձամբ անոնց դաստիարակութեանն ու յառաջադիմութեանը վրայ հոգ կը տանէր։ Գովելի փառասիրութեան ալ կը յորդորէր զա-նոնք՝ ըսելով թէ «Մինչուան երբ Սկիպիոնի սկե-սուրը * պիտի ըսուիմ. օր մը առաջ Գրակքո-սեանց մայրը ըսել տուէք ինծի»։

1 Կոռնելիային այսչափ խնամքը անօգուտ չե-ղաւ։ Անդրանիկ որդին Տիբերիոս՝ քիչ ատենի մէջ ազնիւ բնաւորութեամբն ու փառաւոր գործքե-րովը մեծ անուն հանեց. քաջութեամբը զօրաց

---

1 Տիբերիոս ինչ բնաւորութեան տէր էր, ու ինչպէս առաջ գնաց։

* Սկիպիոն Եմիլիանոս Կոռնելիայի աղջիկն ա-ռած էր։

սիրելի եղաւ, Ճարտասանութեամբն ալ զամէնքը զարմացուց ։ Կարքեդոնի պատերազմին վրայ ինքը նախ ցատքեց եղաւ, ետքն ալ գնաց Սպանիա՝ շատ քաջութիւններ ըրաւ, և Մանկինոսին դաշնադրութիւնը ստորագրեց ։ Ետրուրիայէն անցնելու ատենը կը տեսնէ ասիկայ որ ան բարեբեր դաշտերը երեսի վրայ մնացեր են, մէջի երկրագործները ու հովիւները գերիներ են, և Հռովմայ մէջ ժողովուրդը անգործ անօթութենէ կը մեռնի . շատ կը ցաւի, միտքը կը դնէ որ աս բաներուս դարման մը ընէ . տրիբուն կ'ընտրուի 133ին, շատ խելացի ու խոհեմ մարդկանց հետ խորհուրդ կ'ընէ որ նոր ագարակային օրէնք մը հաստատէ ։ Կ'ուզէր որ ազնուականք որչափ որ հասարակաց երկիրներէն յափշտակեր են՝ ետ տան, և իրենց պահեն միայն հինգ հարիւր արտավար, իրենց որդւոցն ալ ամէն մէկուն երկու հարիւր յիսուն, մնացածը աղքատ քաղաքացւոց բաժնուի ։ Եւ որովհետև բոլոր հարուստները աս օրինաց դէմ կը բողոքէին, Ճարտասան տրիբունը պատասխան կուտար անոնց . “ Աս ինչպէս բան է . վայրենի անասունները իրենց որջը ունին՝ ուր ուզած ատեննին կ'երթան կը քաշուին, և անոնք որ Իտալիոյ պաշտպանութեանը համար արիւննին կը թափեն՝ տեսած լուսէն ու ծնած օդերնէն զատ բան մը պիտի չունենա՞ն ։ Առանց տան, առանց հաստատուն բնակութեան մը իրենց կնանց ու զաւակացը հետ թափառական ասդին անդին կը պտըտին . ուրիշները զանոնք աշխարհիս տէր կը կանչեն, և անոնք թիզ մը երկիր չունին ” ։

¹ Երբոր տեսաւ Տիբերիոս որ հարուստները շատ դէմ կը կենան՝ բարկացաւ, ու աւելի խիստ օրէնք մը առաջարկեց, և ինչուան տրիբուններուն իշխանութիւնը ուզեց վերցընել՝ որ իր առաջարկած բաներուն հակառակ կը կենային : Երբոր տրիբունութեան ժամանակը լմնցաւ, մտածելով Տիբերիոս որ առանց ձեռքը իշխանութիւն մը ունենալու գործք չկրնար տեսնել՝ ուզեց որ նորէն զինքը տրիբուն ընտրեն. ասոր լսեցին հարուստները՝ տեսան որ լուռ կենալով չկարենան պիտի յաղթել անոր, բռնութիւն ուզեցին բանեցընել : Այն օրն որ զինքը ընտրելու համար ժողվուեր էր ժողովուրդը՝ շատ ձախորդ գուշակութիւններ եղաւ Տիբերիոսին՝ հեթանոս պատմիչներուն խօսքին նայելով. օրինակի համար՝ տունէն ելլելու ատենը ոտքը դրան զարնուեցաւ. քիչ մը առաջ գնաց, տեսաւ որ երկու ագռաւ իրարու հետ կը կռուէին, քիչ մըն ալ առաջ գնաց՝ քար մը ցատքեց ոտքին վրայ ինկաւ. առաւօտը կինն ալ իրը թէ բան մը զգալով շատ յորդորեր էր որ նոյն օրը դուրս չելլէ : Մտիկ չըրաւ Տիբերիոս, հրապարակը գնաց՝ ուր շատ բազմութիւն ժողվուած էր : Երբոր տեսաւ որ հարուստները իրենց գերիներուն ձեռքը զէնք տուեր են, իմացաւ որ ան պատրաստութիւնները իրեն դէմ են. ուստի ձեռքը գլխուն տարաւ որ իմացընէ իր բարեկամներուն որ գլուխս վտանգի մէջ է : Մէկէն Սկիպիոն Նասիկա քրմապետը ելաւ կանչեց թէ Տիբերիոս իր գլխուն համար թագ կ՚ուզէ, և Սկիպիոն Սկեւոլային հրամայեց որ

---

¹ Ի՞նչ կերպով սպաննուեցաւ :

վազէ բռնէ ան բռնաւորը ։ Հիւպատոսը չուզեց բռնութիւն բանեցընել ։ Այն ատենը կանչեց Նասիկա ․ « Բարի է, հիւպատոսը հասարակապետութեան մտածելու եղաւ ․ ձգ որ կ'ուզէ հայրենիքն ազատել՝ թող իմ ետևէս գայ »։ Բոլոր ծերակուտին մարդիկը իրենց գերիներովը ետևէն գնացին, ու մէկմէկ գաւազան և կոտրած նստարաններ ձեռքերնին առած՝ կատաղաբար իրենց թշնամեաց ետևէն սկսան վազել ։ Հասան Տիբերիոսին ետևէն, ու նստարանի կոտորով մը զարկին սպաննեցին զինքը ․ հետը սպաննեցին նաև իրեք հարիւր բարեկամները և մարմիննին Տիբերիս գետը ձգեցին ․ Տիբերիոսի բոլոր մէկալ կուսակիցներն ալ աքսորեցին ։ Ծերակոյտը ժողովրդեան սիրտը առնելու համար ալ շատ դէմ չկեցաւ երկիրներուն բաժանմանը ․ և Սկիպիոն Նասիկա անկեց ետքը ժողովըրդեան ատելի ըլլալով Ասիա խրկուեցաւ, ուր քիչ ատեննէն սրտին ցաւէն մեռաւ ։

[1] Իրեք հոգի գրուեցան որ ագարակային օրէնքը հաստատեն, և էին Փուլուիոս Փլակկոս, Պապիրիոս Կարբոն և Կայիոս Գրակքոս ։ Բայց այնչափ բնակիչներ ու բնակութիւններ փոխուեր էին որ դժուար էր իմանալ թէ որ երկիրը հարուստները յափըշտակեր են ․ ատ պատճառաւ շատ կռիւներ ու դատաստաններ բացուեցան ։ Շատ Իտալացիք Հռոմ գնացին՝ աս բանիս վրայ գանգատ ըրին, հարուստներն ալ սկսան բողոքել, և ամէնքը Սկիպիոն Էմիլիանոսին կ'երթային որ տէրութեան մէջ ամե-

---

[1] Տիբերիոսի մեռնելէն ետքը ագարակային օրինաց խնդիրը ինչ եղաւ ։

նէն անուանի մարդը կը սպանուէր : Սկիպիոն սկսաւ զանոնք պաշտպանել. ժողովուրդը վրան ոխ պահեց, և ան իրեք եռապետները յայտնի սկսան իրեն դէմ թշնամութիւններ ընել : Օր մը Փուլուիոս և Կարբոն հարցուցին իրեն թէ Տիբերիոսի մահուան վրայ ի՛նչ կարծիք ունի. «Իրաւամբ մեռուցին զինքը, ըսաւ Սկիպիոն, որովհետև տէրութիւնը կը խռովէր»: Աս խօսքին վրայ ամէնքը հրապարակին մէջ սկսան մռմռալ, և ան ատեն Սկիպիոն ան խօսքը դարձուց որ քիչ մը առաջ յիշեցինք. «Լռեցէք անհարազատ որդիք Իտալիոյ. ո՛րչափ ալ կանչելու ըլլաք, անոնք որ ես կապկպած հոս բերի՝ զիս չեն կրնար վախցնել, թէպէտ և հիմա արձակ ըլլան»: Ժողովարանէն ելլելու ատենը ծերակոյտը յաղթանակով Սկիպիոնը տունը տարաւ. բայց երկրորդ օրը անկողնին մէջ մեռած գտան զանիկայ առանց վէրքի : Ոմանք ըսին թէ ազգականները զինքը մեռուցեր են, ոմանք ալ թէ ինքը տեսնելով որ այնչափ խառնակութիւնները ալ չկարենայ տանել՝ ինքզինքը մեռուցեր է :

[1] Կայիոս Գրակքոս քիչ ատենէն իր եղբօրը յաջորդեց, և սկսաւ անոր մահուան վրէժը խնդրել : Երազ մըն ալ տեսնելով թէ եղբայրը իրեն երևցեր ու ըսեր է թէ «Կայիոս, ճակատագիրը քեզի ալ ինծի պէս մահ կը պատրաստէ», տրիբունութեան ետևէ եղաւ. ընտրութեան օրը այնչափ Իտալացիք եկան դիզուեցան Մարսեան դաշտին մէջ, որ ալ տեղ չճարալով՝ շատերը տուներուն վրայէն ձգեցին իրենց քուէները : Ընտրուեցաւ

---

[1] Կայիոս Գրակքոս ի՛նչպէս զօրացաւ :

Կայիոս, և Ժողովուրդը զինքը Տիբերիոսին նման կը տեսնէր, բայց անկէց ալ աւելի ճարտասան. ձայնը անանկ զօրաւոր էր որ բոլոր հրապարակը կը լեցնէր, և ձայնին սաստկութիւնը քիչ մը մեղմելու համար՝ խօսելու ատենը ետևը սրնգահար մը կը կեցնէր:

¹ Այս նոր տրիբունին պահանջածները մեծամեծ բաներ էին. այսինքն ագարակային օրէնքը դրուի, Իտալացիք քաղաքակցութեան իրաւունք ունենան, Կապուա, Տարենտոն և Կարքեդոն քաղաքները ալ նորէն շինուին: Ասոր վրայ շատ խռովեցաւ ծերակոյտը. մանաւանդ որ Կայիոս սկսաւ մեծագործութիւններ ալ ընել. Իտալիոյ մէջ փառաւոր ճամբաներ բանալ տուաւ, ձորեր լեցուց, ճահիճներ ցամքեցուց, ասդին անդին գաղթականներ հաստատեց, հասարակաց ցորենանոցներ շինեց, երկայն ճամբաներուն վրայ մղոնացոյց կոթողներ տնկել տուաւ, և հասարակաց գանձը խելքով մատակարարեց, այնպէս որ Հռովմայ թագաւորը կը կարծուէր: Հարուստները Կայիոսին սա իշխանութենէն վախցած՝ որ չըլլայ թէ օր մը զիրենք փճացընէ, մտքերնին դրին որ շուտով կեանքը վերցընեն: Հրապարակին մէջ երկու կողմէն ալ շատ կռիւներ եղան. ծերակոյտը Կայիոսի ոխերիմ Թշնամւոյն Ոպիմիոսի յանձնեց որ հասարակապետութիւնը պաշտպանէ. Ոպիմիոս ալ մէկէն հրամայեց ծերակուտին ու ասպետաց որ ամենքը զէնք առնեն: Կայիոսի իշխանակիցը Փու-

---

¹ Ի՞նչ պահանջմունք ունեցաւ ու ի՞նչ շինութիւններ ըրաւ:

լուխոս՝ իր կողմանէ դէմ կենալու համար պատրաստութիւն տեսաւ. շատ մարդ ժողվեց, հիւպատոսութեան ատենը Գաղղիացւոցմէ առած զէնքերը անոնց բաժնեց ու Աւեննոսին լեռը քաշուեցաւ:

[1] Կայիոս տնէն ելլալու ատենը՝ կինը Լիկինիա իր որդին գիրկը բռնած՝ լալով ու եղբօրը մահը անոր յիշեցընելով շատ աղաչեց որ դուրս չելլէ. մտիկ չըրաւ Կայիոս, հրապարակին մէջ հօրը արձանին դիմացը կեցաւ ու երկար ատեն լուռ մտածելէն ետև սկսաւ հառաչել ու լալ. ետքը իրեններուն քովը գնաց: Ոպիմիոս մեծ գնդով մը Աւեննոսին լեռան վրայ վազեց. երբոր հանտեղինները սկսան դէմ կենալ, ձայն հանեց թէ անոնցմէ ով որ ծերակուտին կողմը անցնի՝ պատժէն կ'ազատի: Ան ատենը բոլոր Կայիոսին կուսակիցները ցրուեցան. բայց բարեկամներէն ոմանք զինքը ազատելու համար ինչուան 'ի մահ պատերազմեցան: Կատաղեացնուիրուած անտառը փախաւ Կայիոս, բայց երբոր տեսաւ որ հոն ալ ետևէն կը հասնին՝ իր հաւատարիմ գերւոյն հրամայեց որ զինքը սպաննէ. գերին դողալով կատարեց հրամանը, ու տիրոջը վրայ ինքզինքն ալ զարկաւ սպաննեց: Ոպիմիոս հիւպատոսը Կայիոսին գլուխը բերողին անոր ծանրութեամբը ոսկի խոստացեր էր. Սեպտիմուլէոս անունով մէկը Կայիոսին գլուխը կտրեց, ուղեղը մէջէն պարպեց ու տեղը կապար լեցուց որ ծանր կշռէ, ու շատ մը ոսկի առաւ: Ան ահաւոր կոտորածին ատենը իրեք հազար մարդ

---

[1] Կայիոս ի՞նչպէս մեռաւ:

մեռաւ, Կայիոսի և Փաւլոսիոսի հետ ամենուն ալ մարմինը Տիբերիս գետը նետեցին, ու անոնց ազգականներուն արգիլեցին որ սուգ չընեն: Այսպիսի ատելի յաղթանակի մը յիշատակը պահելու համար՝ Ոպիմիոս հիւպատոսը Միաբանութեան տաճար մը կանգնել տուաւ:

1 Ժողովուրդը Գրակքոսեանց մահուան պատճառը աղէկ գիտնալով, անոնց անունովը արձաններ կանգնեցին, ու սպաննուած տեղերնին անոնց զոհեր ու նուիրմունքներ կ'ընէին: Կուռնելիա՝ որ շատ աշխատելով չէր կրցած Կայիոսի միտքը փոխել, իր երկու զաւակները կորսնցընելով քաջութեամբ համբերեց, և շատ տարի ալ ապրեցաւ. ամէն կողմէն երեւելի մարդիկ ու թագաւորներու դեսպաններ մեծ հետաքրքրութեամբ զինքը տեսնելու կ'երթային, ու որդւոցը գիպուածները պատմել կուտային իրեն: Ետքը իրեն արձան մըն ալ կանգնեցին՝ վրան աս խօսքս միայն գրած. “Կուռնելիա մայր Գրակքոսեանց”:

2 Քանի մը տարի առաջ Հռովմայեցւոց զօրքը Մասսիլիա կամ Մարսիլիա քաղաքը պաշտպանելու համար Գաղղիա մտեր էին: Վասն զի Մարսիլիան (որ Հռոմէն հարիւր յիսուն տարի առաջ Փոկէացիք շիներ էին) չորս կողմը եղող Գաղղիացւոց դէմ չկարենալով դնել՝ Հռովմայեցւոցմէ օգնութիւն ուզեց. անոնք ալ Սեքստիոս Կալուինոսը

---

1 Ժողովրդեան մէջ ի՞նչ կերպով մնաց Գրակքոսեանց յիշատակը:

2 Հռովմայեցիք ի՞նչպէս ազատեցին Մարսիլիա քաղաքը:

խորհեցին որ գնան անոնց օգնեն ու Աքուէ-Սեքստիէ (Էքս) քաղաքը չմտնեն (124)։

¹ Հռովմէացիները Մարսիլիան ազատելէն ետքը անհիմն պատճառով մը Ալլոբրոգացւոց դէմ պատերազմ բացին։ Ալլոբրոգները (Սավոյացիք) իրենց օգնութիւն կանչեցին Արուեռնիացիքը. ասոնք Գաղղիոյ ամենէն զօրաւոր ազգն էին, և իրենց բանակապետներուն ու Թագաւորաց պերճութեամբը անուանի, որ կառքով գաւառներու մէջէն անցնելու ատեննին ոսկի կը սփռէին։ Կ'ըսեն թէ ասոնց Թագաւորը Բիտուիտոս երկու հարիւր հազար զօրքով Դոմետիոսի հիւպատոսին դէմ ելեր է, և Թշնամեաց քիչութիւնը տեսնելով սկսեր է կանչել արհամարհանօք. "Ա՞ս է բոլոր բանակը. ասոնք հազիւ իմ շուներուս կը բաւեն"։ Եւ իր ահագին երկաթապատ գամփռ շները ցուցըներ է։ Սակայն Գաղղիացիք փիղերը տեսնելով սարսափած կը փախչէին. Բիտուիտոս բռնուեցաւ, և իր արծըթէ կառքը նստած՝ Դոմետիոսի յաղթանակին զարդ եղաւ (121)։

---

¹ Ալլոբրոգներուն վրայ ինչ պատճառաւ գնացին։ — Արուեռնիացւոց վրայ ինչ գիտելիք կայ։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Մարիոս. — Յուգուրթայի պատերազմը. — Մարիոս պատերազմը կը վերջացնէ. — Կիմբրացւոց և Տեւտո-նեանց արշաւանքը. — Իտալիոյ արհաւիրքը. — Օրանժի պատերազմը. — Մարիոսին Ե հիւպատոսութիւնը. — Էքսի ու Վերչելլեայ պատերազմը. — Գերեաց երկրորդ ապստամբութիւնը (119-101)։

¹ Նումանտիոյ պաշարման ատենը Սկիպիոն Է-միլիանոս դիտեր էր որ բոլոր զինուորին մէջը ա-մենայն ճշդութեամբ զինուորական կարգը կա-նոնը կը պահէ ու զանազան քաջութիւններով անուն կը հանէ. աս զինուորն էր Մարիոսը։ Օր մը սեղանին վրայ խօսքը ան ատենի զօրավարներուն վրայ գալով՝ Սկիպիոնին հարցուցին թէ իր ետքը ո՞վ կրնայ բռնել. «Թերեւս ասիկայ» ըսաւ. ու կամացուկ մը Մարիոսին ուսը զարկաւ։ Արպինոն քաղաքը անանշան ծնողաց որդի էր Մարիոս. բայց ոգւոյն բնութեանը հետ զարմանալի կատարելու-թիւններ ունէր։ Պզտիկուց 'ի վեր պատերազմի մէջ մեծցած ըլլալով՝ իրեն նախատինք կը սեպէր սորվիլ արուեստ, գիտութիւն, քաղաքականու-թիւն և մանաւանդ յունարէնը՝ որ գերի ծառաներու-տեան մը լեզու է կ՚ըսէր։

² Սպանիայէն երբոր դարձաւ Մարիոս, Սկի-պիոնին խօսքը միտքը պահելով՝ իշխանութեան

¹ Ո՞վ էր Մարիոս։

² Ի՞նչ կերպով սկսաւ իշխանութեան հասնիլ։

հասնելու մեծ ջանք և յոյս ունէր, ուստի որի-բուն եղաւ. Գրականութեանց կռուոյն մէջ մտնելէն առաջ, ուզեց զէնքով անուն հանել ու ամենուն աչքը վախցընել, որ սակ ճարտասանութեամբ չէր կրնար. անոր համար եղաւ Նումիդիա գնաց, ուր Հռովմայեցիք Յուգուրթային դէմ պատերազմ կ'ընէին:

[1] Մասինիսային տեղը Նումիդիայ թագաւոր նստեր էր իր որդին Միկիփսա, որ երկու որդի ունէր Եմպսալ ու Ադերբաղ, և մէկ Յուգուրթա կամ Յուգուրթ անունով եղբօրորդի մը. ասիկայ Մասինիսային պէս Ափրիկէի ամենէն քաջ ձիաւորն ու ճարտար որսորդն էր, և անդադար առիւծներու հետ կը կռուէր: Հռովմայեցիք Նումանտիան պաշարելու ատեն երբոր Միկիփսայէն օգնական զօրք խնդրեցին, անոր խրկած զօրաց գլուխն էր Յուգուրթա, որ զամէնքը իր քաջութեանը վրայ զարմացուց. ան ատենը գիտեր էր Յուգուրթա Հռովմայեցւոց զօրավարներուն շահասիրութիւնը, և միտքը դրեր էր որ անկէց իրեն օգուտ քաղէ: Միկիփսային մեռնելու ատենը իր տէրութիւնը երկու որդւոցը ու անոր մէջ բաժնեց. բայց որովհետև Յուգուրթա մինակ թագաւորելու կը բաղձար, և կամքը կատարելու համար ալ ամէն բան աչքը առեր էր, բռնեց նախ անգթաբար Մասինիսային որդւոցը մէկը այսինքն Եմպսալը սպաննեց, անոր երկրին տիրեց ու մէկէն Հռոմ շատ ոսկիով ու ստակով դեսպաններ խրկեց որ երթան իրեն կուսակից ժողվեն, և ծե-

---

[1] Յուգուրթեան պատերազմին պատճառն ինչ էր:

րակոյտը իր հետը բարեկամացըներէն, առաւ հասա-րակապետութեան անուանի մարդկանց շատը կա-շառուեցան: Յուգուրթա տեսնելով որ իրաւցընէ ամէն բան կը կատարուի Հռոմ ոսկիի ուժով, գնաց Մասինիսայի մէկալ որդին Ադերբաղը Կիրտա քաղաքին մէջ պաշարեց, ուր շատ Իտալացի վա-ճառականներ ալ կային: Բողոքեցին անոնք՝ բայց ընդունայն տեղը. երբոր տեսան որ Յու-գուրթա պաշարումը կը սաստկացընէ, Ադերբաղը համոզեցին որ դաշնադրութիւն ընէ: Յուգուր-թա խօսք տուեր էր որ անոր բան մը չընէ. բայց ձեռքը անցնելուն պէս՝ սպաննել տուաւ, ետքը զո՛վ որ տեսաւ քաղաքին մէջ ձեռքը զէնքով՝ թէ Իտալացի և թէ Նումիդացի, զամէնքն ալ Թրէ անցուց:

1 Հռովմայ ժողովուրդը բարկացաւ, և սկսաւ հարուստները ամբաստանել թէ Յուգուրթայի կամակից էին: Պատերազմ բացուեցաւ անոր դէմ. բայց Կալպուռնիոս Պիսոն և իր տեղապահը Սկաւրոս՝ որ Նումիդիոյ վրայ խրկուեցան՝ Թա-գաւորին ոսկիովը կուրցան ու հետը հաշտութիւն ըրին: Ան ատեն ժողովուրդը սաստիկ բարկացաւ. Յուգուրթը Հռոմ կանչեցին, ան ալ իր կաշառած բարեկամացը վրայ վստահացած՝ ելաւ եկաւ: Տրիբուններէն մէկը հրամայեց որ պատասխան տայ, ուրիշ մըն ալ կաշառուած՝ հրամայեց որ լռէ. հասկըցաւ ժողովուրդը որ անոնց խաղալիկ եղեր է ու աւելի բարկացաւ, և աս կատակերգութիւնը

---

1 Ի՞նչպէս Հռոմ՝ կանչուեցաւ ու ետ դարձաւ Յուգուրթ:

ապանութեամբ մը լմնցաւ ։ Վասն զի Մասինիսսայի ազգականներէն մէկը Թագաւորութեան ետեւէն ըլլալուն համար՝ Հռոմին մէջ սպաննել տուաւ զանիկայ Յուգուրթ, և աս խօսքերս ըսելով Հռոմէն ելաւ. “Ծախուէր քաղաք, զինք ալ գնելու համար գնող մը միայն պակաս է,,։

1 Յուգուրթին դէմ նորէն պատերազմ հրատարակուեցաւ. Ալբինոս հիւպատոսը Նումիդիա գնաց, բայց շատ բան չկրցաւ ընել (110)։ Ինքը Հռոմ կանչուելով տեղը Աւղոս եղբայրը թողուց, որ անապարծ ու անկարող մարդ մը ըլլալով դարանի մը բռնուեցաւ, ու բոլոր զօրքովը Թրի տակէ անցաւ ։ Հռովմայեցիք Նումիդիոյ վրայ խրկեցին Մետելլոս Ճարտար ու անուանի զօրավարը, Մարիոսն ալ իրեն տեղապահ տուին. Մետելլոս հասնելուն պէս, նախ սկսաւ զօրքը կրթել, բարեկարգել. ետքը ամենայն կերպով Յուգուրթին ետեւէն ընկաւ ; բանի տեղ չդնելով անոր ոչ պատգամաւորները և ոչ խոստմունքները ։ Բայց խորագէտ Նումիդացին ընտիր գնդով մը միշտ բլուրներու վրայ կեցած՝ հիւպատոսին ամէն պատրաստութիւնը կը տեսնէր, և յանկարծ յանկարծ վրան կը յարձակէր ։ Վակկա քաղաքին քով քիչ մնաց որ Հռովմայեցւոց բոլոր բանակը ոչխարի ջարդէր ։

2 Այն պատերազմին մէջ ամէն զօրավարներէն աւելի իր Ճարտարութեամբը անուն հաներ էր Մարիոս. զօրքը վրան մեծ սէր ունէր, Հռոմի մէջ

---

1 Մետելլոս ինչպէս յաղթուեցաւ Յուգուրթէն։
2 Մարիոս ինչ կերպով հիւպատոս ընտրուեցաւ ։

ալ ամէնքը անոր քաղցրութեանցը վրայ կը խօսէին ։ Մարիոս աս բաներս տեսնելով հասկըցաւ որ փափաքած իշխանութեանը պիտի հասնի ․ հրաման ուզեց Մետեղլոսէն որ Հռոմ երթայ ու հիւպատոսութեան ելնէ ըլլայ ։ Առջի բերան չէ ըսաւ Մետեղլոս, բայց անոր թախանձանքէն ստիպուած թող տուաւ որ երթայ ։ Հռոմ հասնելուն պէս՝ Մարիոս սկսաւ ժողովրդեան աչքը մտնելու համար ազնուականաց դէմ ժողովրդեան կողմը բռնել ․ Մետեղլոսին անկարողութիւնը պարսաւել ու խոստանալ որ եթէ իրեն յանձնեն զօրավարութիւնը՝ Յուգուրթը կամ սպաննէ և կամ բռնէ ։ Յաջողեցաւ ուզածը ․ հիւպատոս անուանեցին զինքը և Նումիդիոյ պատերազմը իրեն յանձնեցին ․ ինքն ալ Սիւղլա երիտասարդը իրեն գանձապետ ընտրեց (որ օր մը իրեն ոսոխ պիտի ըլլար) և Ճամբայ ելաւ (107) ։

¹ Մարիոս Ճարտարութեամբն ու արագութեամբը Նումիդիոյ թագաւորը շփոթեց, երկու անգամ յաղթեց անոր, շատ ամուր քաղաքներ առաւ ձեռքէն, և այնչափ նեղը ձգեց որ Յուգուրթ իր Բոկքոս աներոջը քով փախաւ որ Մաւրիտանիոյ թագաւոր էր ։ Մարիոս հասաւ ետեւէն, ու սկսաւ Մաւրիտանիան ոտնակոխ ընել ․ Բոկքոս նեղը մտնելով հաշտութիւն խնդրեց ։ Հռովմայեցիք ուզեցին որ Յուգուրթը ձեռք տրուի, Բոկքոս ալ ազատութեան ուրիշ Ճար չգտնելով հանեց փեսան անոնց ձեռքը տուաւ ։ Ասանկով պատերազմը լմնցաւ, և Նումիդիոյ մեծ մասը Հռովմայ գաւառ

---

¹ Ի՞նչպէս բռնուեցաւ Յուգուրթ ։

եղաւ։ Մարիոս Ցուգուրթը շղթայակապ իր կառքին եաեւը ձգած՝ յաղթանակով Հռոմ մտաւ, և բոլոր ժողովուրդը խեղճ թագաւորը բարձր ձայնով ծաղր կ՚ընէին, այնչափ որ ամօթէն խելքը կորսընցուց կ՚ըսեն։ Բանտապանները ականջէն ոսկի գինդերն առնելու համար քաշեցին ականջները փրցուցին, ու խոնաւ բանտի մը մէջ դրին զինքը մերկ, ուր մնած ատենը կատակաբանութեամբ զուարցեր էր. "Ո՜վ Թշուառութեան. Հռոմին բաղնիքները ինչ պաղ են եղեր,,։ Վեց օր հոն, անօթի կենալէն ետև մեռաւ Ցուգուրթ (106)։

[1] Բայց Հռովմայեցիք ան յաղթութեան վրայ ուրախանալու ատեն չունեցան։ Շատ մը ահաւոր գունդ մը տարածեցաւ Իտալիա, թէ Կիմբրացիք և Տեւտոնեանք ամէն տեղ աւեր ու սարսափ ձգելով Գաղղիոյ վրայ կը վազեն։ Չէին գիտեր Հռովմայեցիք թէ անոնք ինչ ազգ են. կ՚ըսէին թէ Պալթիկ ծովուն եզերքէն կուգան. ամէնքն ալ բարձրահասակ, սեւաչուի, խոշորաձայն, ձառադէմ ու զօրաւոր մարդիկ։ Իտալիոյ բերանը Ալպեանց ստորոտը հռովմայեցի զօրավարի մը յաղթեր ու Հռենոսի աջ եզերքը հասեր էին. հոն երբոր խմացան անոնք որ գետին մէկալ կողմը Հռովմայեցւոց ձեռքն է, որոնց տէրութեան մէկ սահմանն ալ Թրակիոյ, Լիւրիկէի ու Մակեդոնիոյ մէջ տեսեր էին, սկսան Հռովմայեցւոցմէ վախնալ, և ըսին թէ "Թող մեզի Հռոմ երկիր տայ ու իրեն

---

[1] Ան ատենները լ՛ինչ ազգեր արշաւեցին Հռովմայեցւոց սահմանները։

համար պատերազմինք ,,։ Միզանոս հիւպատոսը՝ որ անոնց դէմ գնացեր էր՝ խորոխտ կերպով մը պատասխանի տուաւ . "Հռոմ ձեզի տալու երկիր չունի , և ձեր ծառայութեանը կարօտ չէ ,,։ Յուսահատեցան բարբարոսները , որոշեցին որ պատերազմին , և բոլորովին Միզանոսի յաղթեցին ։

1 Յաջորդ տարին Կասսիոս հիւպատոսը սպաննուեցաւ , և իր փոխանորդը Սկաւրոս գերի բռննուեցաւ ։ Ան ատենը մտածեցին բարբարոսները որ Ալպեան լեռներէն անցնին , և Հռոմը կամ առնուն կամ կործանեն ։ Սկաւրոսն ալ կանչեցին ու հարցուցին անոր թէ ինչ բանի վրայ է քու հայրենեացդ ուժը . "Ալպեան լեռներէն անցէք , ըսաւ Սկաւրոս , ոտքերնիդ Իտալիա կոխեցէք , ան ատենը կը տեսնէք թէ որն է Հռոմին զօրութիւնը . իմ հայրենիքս անյաղթելի է ,,։ Աս համարձակ պատասխանին վրայ բարկացան , և զօրավարներէն մէկը թուրը քաշեց՝ Սկաւրոսը վիրաւորեց (107)։

2 Ան միջոցին Սերուիլիոս Կեպիոն՝ հիւպատոսի փոխանորդը՝ Տեկտոսագք ըսուած Գաղղիացիները նուաճելու կ'երթար , որ Կիմբրեան ցեղէն ըլլալով՝ աս բարբարոսաց հետ միանալու մտքով ոտք ելեր էին . Տոլոզան ( Թուլուզ ) պաշարեց ու առաւ՝ որ Գաղղիոյ ամենէն հարուստ քաղաքն էր , մէջի ուխտատեղի եղած մեհեաններուն պատճառաւ . վասն զի Նուիրական լիճ մըն ալ կար հոն , ուր ամէն տարի շատ հարստութիւն կը դի-

---

1 Կիմբրացիք ինչ պատճառաւ Հռոմի վրայ չգնացին ։

2 Տեկտոսագները ինչպէս նուաճուեցան ։

զուէր ։ Հիւպատոսը այն քաղաքը կողոպտեց , և հարիւր տասը հազար լիտր ոսկի ու տասնըհինգ հազար լիտր արծաթ հանեց կ'ըսեն ։ Այս գանձը Մարսիլիայի վրայէն Հռոմ խրկեր էր . բայց միանգամայն Ճամբուն վրայ միանաւոր մարդիկ կեցը-նելով սուրհանդակը սպաննել տուեր ու գանձին տէրը եղեր էր ։

։ Կեպիոնին իշխանակիցը Մանլիոս անոր ազ-նուականութեանը նախանձելով՝ հետը չմիացաւ , ուզեց զատ պատերազմիլ ։ Կիմբրացիք Արաւսիոյ (Օրանժ) քով բանակներին դրեր էին . Երբոր իմա-ցան որ իրենց Մանլիոսին խրկած դեսպանները Կեպիոն բռներ նախատեր էր՝ երդում ըրին որ մինչ որ ձեռքերնին անցնի՝ աստուածոց նուիրեն ։ Պատերազմը սկսաւ , և ութսուն հազար Հռով-մայեցիէն և քառասուն հազար գերիէն տասը հոգի միայն ազատեցաւ կ'ըսեն . այն ազատուող-ներուն մէջ էր նաև Սերտորիոս երիտասարդը՝ որ ետքը այնչափ անուանի եղաւ ։ Յաղթականները իրենց երդումը կատարելով Հռովմայեցւոց բոլոր զօրքը թրէ անցուցին , մինչուան նաև ձիերը , և դիակներուն հետ բոլոր զէնքերը՝ ոսկին ու ար-ծաթն ալ Հռոնոս գետը նետեցին . Կաննեայ պատերազմէն ետև անանկ ահաւոր պատերազմի չէին հանդիպած Հռովմայեցիք , և Իտալիա մեծ վտանգի մէջ էր . բայց բաղդ ունեցաւ որ Կիմբրա-ցիք Ալպեան լեռներէն չանցան ։

---

։ Կիմբրացիք Ինչպէս յաղթեցին Կեպիոնի ։

1 *Այն կոտորածին գոյժն որ հասաւ Հռոմ, ամենուն վրայ յուսահատութիւնը տիրեց. կարծէին որ Կիմբրացիք Հռոմին դռները հասեր են: Մէկէն ծերակոյտը Աֆրիկէէն Մարիոսը կանչեց, զինքը հիւպատոս անուանեց, և Իտալիոյ բոլորը անոր ձեռքը յանձնեց: Մարիոս սկսաւ զօրքը կրթել ու աշխատանքի վարժեցընել, և Հռոդանոս գետէն ինչուան ծովը մեծ ջրանցք մը բանալ տուաւ անոնց: Իրեք տարի միակերպ բարբարոսաց յարձակմանը կը սպասէին Հռովմայեցիք, և ան իրեք տարուան մէջ Մարիոսը վրայէ վրայ հիւպատոս ընտրեցին *:*

2 *Վերջապէս 103ին արևմուտքէն Տեւտոնեանք երևցան, որ և ամէնք ալէս առաջ կուգային: Աս բարբարոսները հասածնուն պէս՝ պատերազմի ճակատեցան. Մարիոս արգիլեց իրեններուն որ ամենևին բանակէն դուրս չելլեն՝ որչափ ալ թշնամին զիրենք հրաւիրելու ըլլայ. վասն զի կ'ուզէր որ մէյմը իր զօրքը վարժի ու թշնամեաց հսկայաձև հասակէն, կատաղի աչքերէն ու վայրենի աղաղակէն չվախնայ: Անոնց թագաւորը Տեւտոբոքոս յաղթահասակ ու հսկայազօր մարդ մըն էր, ու մէկ ցատքելով՝ քովէ քով կեցած վեց ձիու վրայէն*

---

1 Որաւսիոյ պատերազմին գոյժն որ առին Հռովմայեցիք՝ ի՞նչ ըրին:
2 Կիմբրացւոցմէ ետքը ի՞նչ բարբարոսներ ելան Հռովմայեցւոց վրայ:

* Ըստ օրինաց՝ երկրորդ անգամ հիւպատոս ընտրուելու համար առջինին վրայ գէթ տասը տարի պիտի անցնէր:

կ'անցնէր։ Երբոր տեսան որ Հռովմայեցիք պատերազմի չեն ելլեր, վեց օրուան մէջ բանակնին վերուցին, երգելով և Հռովմայեցիքը նախատելով ճամբայ ելան ու կը կանչէին թէ "Հռոմ կ'երթանք, բան մը ունի՞ք ձեր տները խրկելու"։

[1] Մարիոս ալ աս բանիս կը սպասէր. մէկէն ետևնէն ընկաւ, ու գնաց Էքս քաղաքին քով դիմացնին բանակեցաւ։ Երկու բանակին մէջ տեղը գետակ մը կար. Հռովմայեցիք երբոր սկսան գանգատիլ թէ ծարաւէ կը պապակին, հիւպատոսը գետակը ցուցնելով (որ անմիջապէս թշնամեաց քովէն կ'անցնէր) "Թէ որ մարդ էք, ըսաւ, ձեր արեամբը գնեցէք ան ջուրը"։ Պատերազմը սկսաւ, և բոլոր օրը կատաղաբար դէմ կեցան Տեւտոնեանք. բայց երբոր մութը կոխեց, սկսան փախչիլ։ Հռովմայեցիք ինչուան իրենց բանակը փախուցին Տեւտոնեանները. բայց հոն կանգ առին, վասն զի անոնց կանայքը կատղած՝ ակռանին կրճտելով ձեռքերնին սուր սուր կացինները շարժելով Հռովմայեցիները վախցուցին։ Բոլոր գիշերը չորս կողմէն ցաւի ու յուսահատ ոռնալու ձայներ կը լսուէին, որ մօտակայ լերանց արձագանգին հետ խառնուելով Հռովմայեցւոց բանակին վրայ սարսափ կը ձգէին։ Երկու օրէն ետքը պատերազմը նորէն սկսաւ, բայց քիչ քշեց. աւելի արիւն թափուեցաւ ու յաղթութիւնը շուտ որոշուեցաւ։ Հարիւր հազար Տեւտոնեանք ընկան մեռան. պատերազմին տեղը ՆԵԽԵԱԼ ԴԱՇՏ ըսուեցաւ, և տեղացիք երկար ատեն մեռելներուն ոսկորներովը իրենց

[1] Մարիոս ինչպէս յաղթեց Տեւտոնեանց։

այգիներուն ցանկ ու խեչակներ չձգեցին : Իսկ աւարը զինուորները միաբանեցան՝ իրենց զօրապետին առջին . Մարիոս ալ հանդիսաւոր զոհ մը մատուցանելէն ետև բոլորին ալ 'ի պատիւ աստուածոց այրեց (102) :

1 Այսպիսի վտանգը դեռ բոլորովին չէր անցած : Կիմբրացիք Նորիկեան Ալպեանք բռնած լեռներէն անցնելով Ատիճէ գետին հովիտը իջան : Կատուլոս հիւպատոսը անոնց առջևն առնելու համար՝ Ատիճէի վրայ կամուրջ մը շինել տուաւ, քովն ալ բերդ մը . Կիմբրացւոց փոյթը չեղաւ . առասպելեալ հսկաներուն պէս ժայռերը վրայէ վրայ դիզեցին, անտառ մը կտրեցին ու իրենց շինած ահագին կամրջովը գետէն անցան : Կատուլոս՝ Պադոս գետէն անդին քաշուեցաւ, Կիմբրացիք ալ Տեւտոնեանց գալուն սպասեցին : Բայց յանկարծ լսեցին որ Տեւտոնեանց ազգը Հռովմէայեցիք եկան Կատուլոսի ու Մարիոսի առաջնորդութեամբը, որ հինգերորդ անգամ հիւպատոս ընտրուեր էր : Ուզեցին ատեն վտանգելէն, և Մարիոսի դեսպան խրկեցին ըսելով " Մեզի ու մեր Տեւտոնեան եղբարց համար երկիր տուր : — Ձեր եղբարցը համար, հոգ մ՚ընէք, ըսաւ Մարիոս, անոնք երկիր ունին . մենք անոնց այնպիսի երկիր մը տուինք որ յաւիտեան պիտի պահեն : — Դուն հիմա զիս ծաղր կ՚ընես, ըսին Կիմբրացիք . բայց վայ քեզի ու քու ժողովրդեանդ՝ երբոր Տեւտոնեանք Իտալիա հասնին ,, : Ան ատեն Մարիոս " Անոնք հոս են, և չվայլեր որ դուք առանց զանոնք

1 Կիմբրացիք ինչպէս իջան Իտալիա :

տեսնելու երթաք ,, ըսաւ , ու շղթայակապ Տեւտոպոլոս Թագաւորին հետ բոլոր գերիներն առջենին հանեց ։ Սաստիկ կատղեցան Կիմբրացիք , և ուզեցին Մարիոսէն որ պատերազմի ժամանակ ու տեղ որոշէ որ տեսնեն թէ որո՞ւն կ'իյնայ Իտալիան , ան ալ որոշեց երկրորդ օրը՝ որ Վերկելլէի դաշտին մէջ զարնուին ։

[1] Ան օրը բարբարոսներէն երկու հարիւր հազար հոգի պատերազմի ճակատեցան ։ Հետեւակ զօրքերնին քառակուսի կեցեր էին՝ վահաններէն երկաթի շղթայով իրարու հետ կապուած ։ Հեծելագունդը տասնըհինգ հազար հոգի էր՝ փառաւոր կերպով զարդարուած . սաղաւարտներուն վրայ վայրենի գազաններ ու ահաւոր գլուխներ կային բերանաբաց , և բարձր փետուրներ՝ որով ձիաւորները աւելի բարձրահասակ կ'երեւնային ։ Մարիոս իր զօրքը անանկ շարեց որ քամին ու յուլիս ամսուն արեւուն տաք ճառագայթները թշնամեաց երեսը կը զարնէին ։ Բարբարոսաց հետեւակ զօրքը այնպիսի փոշւոյ փոթորիկ մը հանեց որ Մարիոսին գունդը իր ճամբան կորսնցուց ։ Կատուղոս և Սիղղա մինակ սկսան զարնուիլ անոնց հետ. իրենց քաջութեամբն ու ճարտարութեամբը բարբարոսաց կատաղի յարձակմանը յաղթեցին , զանոնքը ցրուեցին , ու ինչուան բանակնին փախուցին . հոն յաղթուողներուն կանանցը հետ սկսաւ պատերազմը . անպարտելի քաջութեամբ դէմ կեցան անոնք , ու բանակը պաշտպանեցին . բայց երբոր յոյսերնին կտրեցաւ , աւելի ուզելով

[1] Վերկելլէի պատերազմը ինչպէս եղաւ ։

մեռնիլ քան թէ գերի ըլլալ՝ տղաքնին մորթեցին, ետքն ալ իրենք զիրենք մեռուցին ։ Վաթսուն հազար գերի բռնեցին Հռովմայեցիք, հարիւր քսան հազարի չափ մարդ ալ պատերազմի մէջ մեռուցին (101) ։

[1] Այն ահաւոր պատերազմին ատենը երկրորդ անգամ գերիները ոտք ելան, բայց առջիններին պէս չկրցան բան մը ընել. քանի մը անգամ պատերազմելէն ետքը բոլորովին յաղթուեցան ։ Հռովմայեցիք զամէնքն ալ սպաննեցին, ու հազար մը միայն պահեցին որ ամֆիթէատրոնի մէջ գազաններուն առջեւ ձգեն ։ Այն երկու ապստամբութեան մէջ մէկ միլիոն մարդ ջարդուեցաւ կ'ըսեն ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Իտալացիք Հռովմայ քաղաքացի ըլլալու իրաւունքը կը խնդրեն. — Ընկերական պատերազմը. — Մարիոս և Սիւղղա. — Մեծն Միհրդատ. — Մարիոս Հռովմին կը տիրէ. — Սիւղղայի յաղթութիւնը. — Մարիոսի մահը. — Սիւղղային անգթութիւնները. — Սիւղղայի մշտնջենաւոր իշխանապետութիւնը. — Իր մահը (101-79) ։

[2] Մարիոս ան հիւսիսային հսկաններուն ձեռքէն Հռոմը ազատելուն համար երրորդ հիմնադիր Հռովմայ կոչուեցաւ, և աստուածոց կարգն ան-

---

1 Գերիները երկրորդ անգամ Ինչպէս ոտք ելան ու նուաճուեցան ։

2 Մարիոսի Ինչ պատիւ ըրին Հռովմայեցիք ։

ցաւ իր անունը։ Ինքը Մարիոս ալ աստանկ հպարտացած՝ վահանկին վրայ Գաղղիացի մը փորել տուաւ՝ ընդան դուրս ձգած, և "Անկէց ետքը ես ալ Բաքոսին Հնդկաստանի աշխարհէն ետքը խմած գաւաթովը գինի կը խմեմ" կ'ըսէր։

[1] Անկէց ետքը ամենևին աւել մը պատերազմի ձայն չկար, և ժողովուրդները այնչափ պատերազմներով յոգնած ձանձրացած սկսան հանգչիլ։ Բայց Հռովմայ մէջ դեռ խաղաղութիւն չկար։ Վասնզի Իտալացիք բարբարոսաց ձեռքէն ազատելէն ետքը եկան պահանջեցին որ իրենք ալ Հռովմայ քաղաքացի սեպուին․ և իրաւունք ունէին, որովհետև հայրենիքը ազատողը իրենք էին։

[2] Մարիոս վեցերորդ անգամ հիւպատոս ընտրուիլ ուզած ատենը՝ հարուստները դէմ կեցեր էին, և ինքը շատ բարեկամացեր էր Սատուռնինոս տրիբունին և Գղաւկիա պրետորին հետ, որ երկուքն ալ խռովարար ու չար մարդիկ էին։ Փոխանակ Իտալացւոց կողմը բռնելու՝ Սատուռնինոսի ձեռքովը օրէնք մը հրատարակել տուաւ Մարիոս որ Իտալիոյ հիւսիսակողմը որչափ որ երկիր առեր էին Կիմբրացիք և Տևտոնեանք՝ բոլորն ալ Հռովմայ ժողովրդեան և զօրաց բաժնուի։ Աս պատճառաւ մեծ կռիւ եղաւ․ Սատուռնինոս և Գղաւկիա իրենց նախանձորդները սպաննել տուին․ ասոր վրայ ծերակոյտն ու ժողովուրդը բարկացած՝ հիւպատոսաց հրամայեցին որ հասարակապետու-

---

1 Անկէց ետքը ինչ նոր պատերազմ բացուեցաւ։

2 Սատուռնինոս ու Գղաւկիա ինչ պատճառաւ ու ինչպէս սպաննուեցան։

1 Այն ատենը դաշնակից Իտալացիք բռնութեան ձեռք զարկին, ամենքն ալ զինուեցան․ Լատինք, Ումբրիացիք ու Էտրուրացիք միայն զէնք չառին։ Դաշնակցաց մէջ ամենէն աւելի Մարսիացիք ըսուածները բարկացեր էին, և կ'ուզէին որ շիտակ Հռոմին վրայ դիմեն։ Աս ժողովրդեան վախը ամենուն վրայ ինկեր էր․ ինչուան Հռովմայեցիք ալ կ'ըսէին․ «Ո՞վ կրնայ յաղթել Մարսիացւոց, և կամ առանց Մարսիացւոց»։

2 Իտալացիք հասարակապետութիւն հրատարակեցին՝ Հռովմայեցւոց կառավարութեանը նման․ Կորֆինիոնը իրենց մայրաքաղաք ըրին, ծերակոյտ մը ու երկու հիւպատոս դրին և բանակներ կազմեցին։ Պոմպեդիոս Սիլոն, Մարիոս Եգնատիոս, Պոնտիոս Տեղեսինոս իրենց գլխաւորները պիտի ըլլային․ Հռովմայեցւոց կողմէն պատերազմողներն ալ էին Մարիոս, Սիլլա, Սերտորիոս և Կրասոս։ Աս ընկերական պատերազմը երկու տարի քշեց (91–89)․ մէյմը մէկ կողմը կը յաղթէր՝ մէյմը մէկալը․ Մարիոս անդադար փախուստ կուտար, չէր ուզեր պատերազմիլ՝ նաև յաջող առիթներու մէջ․ Մարսիացիք ալ սկսան անոր վատութիւնը երեսին տալ․ ընդ հակառակն Սիլլա երիտասարդը քաջութեամբն ու գործունէութեամբը անուն կը հանէր․ այնչափ որ Մարիոս սկսաւ վրան նախանձիլ, և հիւանդ ձեւանալով զօրավարութիւնը թողուց։ Պիկենացւոց Ասկողոն մայ-

---

1 Իտալացիք ի՞նչ կերպով պատերազմի պատրաստուեցան Հռովմայեցւոց դէմ։

2 Ի՞նչպէս վերջացաւ Իտալացւոց կռիւը։

րաքաղաքին առնուելովը , Սիւղլային Սամնիտացւոց վրայ ըրած մեծ յաղթութեամբը , և Պոմպէդիոս Սիլոնի մահուամբը շատ տկարացաւ դաշնակցութիւնը . բայց թշնամութիւնը չդադրեցաւ , ինչուան որ ծերակոյտը Իտալացւոց խնդիրքը կատարեց ու ամէնուն ալ քաղաքակցութեան իրաւունք տուաւ :

1 Սիւղլա նախ դատաստանարանի մէջ անուանի եղեր էր իր ճարտասանութեամբը , ետքը սկսաւ զինուորութեան մէջ մտնել , և ինչպէս որ տեսանք , Նումիդիոյ ու Կերկելլէի պատերազմին մէջ մեծ անուն հանեց : Ընկերական պատերազմին ետքը երբոր Հռոմ եկաւ , ամէնքը զինքը իբրև ճարտար ու բախտաւոր զօրավար ընդունեցան , և մէկէն զինքը հիւպատոս անուանեցին : Հաւա-հմանները իրեն գուշակեր էին որ մեծ իշխանութեան պիտի հասնի , և հասարակապետութիւնը խռովութիւններէ պիտի ազատէ : Արտաքին սիրելի տեսք մը չունէր . մազերը խարտեաշ էին , աչուըները կապուտ ու կատաղի , երեսներն ալ կարմիր ու ճերմակ բիծերով պիսակոտ : Սակայն զօրքը անոր քաղցր բնաւորութեանն ու ընտանի կերպին շատ հաւնած էր , վասն զի ինքն ալ անոնց սիրտը վաստըկելու համար՝ անոնց շատ պակասութիւններուն աչք կը գոցէր :

2 Մեծին Միհրդատայ պատերազմովը Սիւղլային ու Մարիոսի իրարու դէմ թշնամութիւնն

---

1 Սիւղլա ի՞նչ բնաւորութեան տէր էր :
2 Ի՞նչ առթով աւելի իմացուեցաւ Սիւղլային ու Մարիոսին իրարու դէմ թշնամութիւնը :

ու նախանձը բոլորովին դուրս ելաւ ։ Միհրդատ՝ Մեծին Տիգրանայ քեռայրը՝ Պոնտոսի վրան թագաւոր դրուած ըլլալով, մեծամեծ աշխարհակալութիւններ ընելու ետևէ էր · և աս բանիս համար ոչ ստակ կը պակսէր իրեն և ոչ զօրք ։ Աննիբաղայ պէս Հռովմայեցիքը կ'ատէր, զօրավարութեան արուեստին մէջ ալ անկէց վար չէր մնար ։ Այն ատենները Հռովմայեցի սպասեանները Փոքր Ասիոյ քաղաքները ազատ համարձակ կը կողոպտէին · Միհրդատ անոնց առջին առնուլ ուզելով երկու հարիւր յիսուն հազար զօրքով գնաց Կապադովկիոյ ու Բիւթանիոյ տիրեց, շատ պատերազմներու մէջ Հռովմայեցւոց կուսակալներուն յաղթեց, Ակիւղաս զօրապետն ալ բռնեց ու իշու մը վրայ նստեցուցած՝ շղթայակապ Պերգամոն տարաւ, ու հոն բերնէն հալած ոսկի լեցնել տուաւ՝ Հռովմայեցւոց ագահութիւնը նախատելու համար ։

[1] Այն ատենէն բոլոր Ասիա Միհրդատայ ձեռքն անցաւ, ամեն տեղ դինքը իբրև ազատարար կ'ընդունէին ։ Ասանկով քսանըչորս ազգ Միհրդատայ հնազանդեցան, և ան քսանըչորսին հետ ալ իրենց լեզուովը կը խօսէր ։ Բայց դեռ Միհրդատայ վրէժխնդրութիւնը գոհ չէր · ծածուկ հրաման խրկեց որ ան տիրած քաղաքներուն մէջ որչափ որ Հռովմայեցի կան՝ մէկ օրուան մէջ, մի և նոյն ժամուան մէջ՝ ամէնքն ալ ինչուան կանայքն ու որդիքը մէկտեղ թրէ անցուէին · տէրը սպաննող գերին ազատ ըլլայ, և պարտատէրը մեռցընող

[1] Միհրդատ ի՞նչ ջարդ տուաւ Հռովմայեցւոց ։

պատրաստադամծին արարողները թողուցին ։ Միհրդատայ հրամանը ուղղածին պէս կատարուեցաւ, և մէկ օրուան մէջ հարիւր հազար Հռովմէացի սպաննուեցան, ոչ ազգականն նայեցան՝ ոչ բարեկամ և ոչ տաճար, զամէնքը ամէն տեղ զարկին կոտորեցին ։

1 Երբոր աս գոյժը Հռոմ հասաւ, պատերազմ ընելու պէտքին վրայ մէկը չէր տարակուսեր, միայն կը մտածէին թէ զօրավար ով պիտի ըլլայ ։ Ամէնուն յարմար Սիղղան երևցաւ, և ինքն ալ կ'ուզէր ։ Նոյն ատենը Մարիոս ալ իր գեղէն մէկէն ելաւ Հռոմ եկաւ, ու սկսաւ իր վաթսունութը տարեկան հասակովը Արեսեան դաշտին մէջ երիտասարդաց հետ պատերազմի կրթութիւն ընել ։ սակայն զինքը թողուցին՝ Սիղղան ընտրեցին ։ Մարիոս ալ Սուլպիկիոս տրիբունին հետ բարեկամացաւ, ու Սիղղան զօրավարութենէն հանելու համար սկսան ամէն տեսակ բռնութիւն բանեցընել ։ Սիղղան տեսնելով որ իր կեանքը վտանգի մէջ է՝ Հռոմէն ելաւ, գնաց Նոլա քաղաքին մէջ եղած զօրաց գլուխ կեցաւ, առանց ժամանակ կորսնցընելու շիտակ Հռոմին վրայ վազեց, և ձեռքը ջահ ներս մտնելով սպառնացաւ որ եթէ դէմ կենան՝ բոլոր քաղաքը պիտի այրէ ։

2 Ան ատեն փախչելու կարգը Մարիոսին եկաւ ։ անտառներու մէջ փախաւ ու խեղճ կեանք մը կ'անցընէր ։ սակայն իր ուղեկից բարեկամնե-

---

1 Հռովմէացիք Միհրդատայ ըրած կոտորածն որ լսեցին ի՞նչ որոշեցին ։
2 Մարիոս ի՞նչպէս փախաւ ։

րուն սիրտ տալու համար կ'ըսէր թէ նորէն հիւպատոս պիտի ընտրուիմ. զանոնք համոզելու համար աս պատմութիւնն ալ կը պատմէր՝ որ պզտիկութեան ատենը վերարկուին մէջ բոյն մը ընկեր է, և մէջը եօթը հատ արծուի ձագ կայ եղեր, հաւահմաներն իրեն ըսեր են որ եօթը անգամ հիւպատոս պիտի ընտրուի. ուստի հիմա անոնց մարգարէութիւնը կատարուելու համար մէկ հատ մը միայն կը պակսի կ'ըսէր: Քիչ մնաց որ Սիղղային ձիաւորները ձեռք պիտի ձգէին զինքը ու յոյսը պարապ պիտի հանէին՝ թէ որ Մարիոս շուտ մը ինքզինքը նաւակի մը մէջ չնետէր, որ տարաւ զինքը մէկալ ծովեզերքը հանեց: Մարիոս երկար ատեն ասդին անդին պտըտելէն ետքը, ձկնորսի մը տնակը մտաւ, ու անոր ոտքը ընկած շատ աղաչեց որ զինքը թշնամեաց ձեռքէն ազատէ: Ձկնորսը թափած արցունքը տեսնելով սիրտը շարժեցաւ, ճահիճի մը մէջ եղէգներով զանիկայ ծածկեց: Հազիւ թէ Մարիոս քիչ մը ապահովութեան վրայ կ'ուրախանար, մէյմըն ալ տնակին մէջէն աղաղակ մը փրթաւ. վասն զի Սիղղային ձիաւորներն եկեր Մարիոսը կ'ուզէին: Մարիոս փախչիլ ուզելով անոնց ձեռքն ընկաւ, բռնեցին զինքը Մինտուռնոն քաղաքը տարին բանտ դրին, և քաղաքապետը բանտը Գաղղիացի մը խրկեց որ Մարիոսը սպաննէ: Գաղղիացին բանտը մտնելուն պէս՝ ծեր զօրավարը ահեղ ձայնով ու սպառնալից նայուածքով մը պոռաց անոր դէմ. "Ա՜յ թշուառական, դո՞ւն Կայիոս Մարիոսը պիտի սպաննես": Այն ձայնէն բարբարոս Գաղղիացին սարսափած՝ թուրը ձգեց փախաւ, "Ես չեմ

կրնար Կայիոս Մարիոսը սպաննել,, ըսելով: Քաղաքապետն ալ չուզելով այնպիսի բազմարդիւն զօրավարին արիւնը մտնել, նաւ մը դրաւ զինքը՝ Ափրիկէ խրկեց: Երբոր Կարքեդոնի քով ցամաքը ելաւ Մարիոս, Սեքստիլիոս պրետորին սպասաւորը եկաւ իրեն հրամայեց որ շուտով Հռովմայեցւոց սահմանէն դուրս ելլէ: Քիչ մը լռու կեցաւ Մարիոս՝ մտածեց թէ աս ինչ բաներ են որ գլխէն կ'անցնին, ու սիրտը ելաւ: Երբոր սպասաւորը հարցուց թէ Սեքստիլիոսին ինչ պատասխան տանիմ, "գնա զրուցէ իրեն, ըսաւ Մարիոս, որ Մարիոսը Կարքեդոնի աւերակներուն վրայ նստած տեսար,,:

[1] Ան առենները Սիղղան Միհրդատայ վրայ երթալով՝ Հռոմը թշնամեաց ձեռքը թողեր էր: Յունաստան հասնելուն պէս՝ ամէն քաղաքները իրեն դեսպան խրկեցին. միայն Աթենացիք չուզեցին հնազանդիլ, և հպարտութեամբ իրենց պարիսպներուն ամրութեանը վրայ վստահացած՝ նախատինք չէր մնար որ պարսպին վրայէն հիւպատոսին չընէին: Բայց Միհրդատայ Արքեղայոս զօրավարին հնարքովը ու ջանքովը տասը ամիս դէմ կենալէն ետքը՝ Աթենացիք մեծ կարօտութեան մէջ ընկան և անօթութենէ կը մեռնէին: Իրենց ճարտասանները Սիղղայի խրկեցին որ հաշտութիւն ընեն. "Անուանի ճարտասաններ, ըսաւ Սիղղա, շատ գեղեցիկ կը խօսիք, բայց ես հոս ճարտասանութեան դաս առնելու համար չեմ եկած, հապա ապստամբները պատժելու,,: Առաւ քաղաքը,

---

[1] Սիղղա Աթէնքին ինչպէս առեց:

կողոպտեց, և բնակչաց մեծ մասը Թրքէ անցուց (87)։

[1] Պաշարման ատենը հիւպատոսը Արքեղայոս զօրավարին ճարտարութեամբ ելած ըլլալով, ուզեց անիկայ իր կողմը քաշել, և կամքը յաջողեցաւ։ Վասն զի Արքեղայոս կամաւ Քերոնէայի քով յաղթուեցաւ, ուր Հռոմայեցիներէ տասնուերեք հոգի միայն կորսուեցան։ Դորիղաւոս՝ Արքեղայոսին ետեւը անցնելով Որքոմենի քաղաքին քով քաջութեամբ Հռոմայեցւոց վրայ յարձակեցաւ ու զանոնքն ալ ցրուեց։ Երբոր տեսաւ Սիւղղա իր զօրքին փախչիլը, ձիէն դրօշ մը առաւ, ու փախչողներուն մէջէն դէպ 'ի թշնամին երթալով սկսաւ կանչել. " Զօրակա՛նք, ահա ես մեռնելու կ'երթամ. գնացէք ըսէք որ ձեր զօրավարը մատնեցիք Որքոմենի դաշտին մէջ,,։ Աս խօսքին վրայ ամէնուն քաջութիւնը վառուեցաւ, և դարձան Դորիղաւոսի զօրացը յաղթեցին։

[2] Հիւպատոսը Ասիա անցաւ, տեսաւ որ Մարիոսի կատաղի ու հնարագէտ կուսակիցը Փիմբրիա զօրքով հոն եկեր՝ Միհրդատայ հետ կը պատերազմի։ Ինքը աճապարեց Միհրդատայ հետ հաշտութիւն ըրաւ աս պայմաններով, որ Թագաւորը առած երկիրները ետ դարձընէ ու պատերազմին ծախքը վճարէ։ Երբոր դարձաւ ըսաւ իրեն Միհրդատ, " Հապա ինծի ի՞նչ կը

---

1 Սիւղղա ի՞նչ կերպով Արքեղայոսը իր կողմը քաշեց ու Դորիղաւոսի յաղթեց։

2 Ի՞նչ պայմաններով հաշտութիւն ըրաւ Միհրդատայ հետ։

Թողուս ։ — Այն ձեռքը՝ որով հարիւր հազար Հռովմայեցի ՚ի մահ դատապարտեցիր,, ըսաւ Սիղղա ։ Ետքը Սիղղա Փիլիփինայէն վրայ դնաց, ան ալ տեսնելով որ բոլոր զօրքը զինքը Թողուցին՝ ինքզինքը սպաննեց (84) ։

[1] Այն միջոցին Կիննա և Կարբոն՝ Մարիոսը Ափրիկէէն կը կանչէին ։ Այս անգութ զինուորը Հռոմին հետ անանկ կը վարուէր՝ ինչպէս որ կը վարուի զօրավար մը տիրած քաղաքին հետ ։ Քովը չորս հազար գերի առած՝ փողոցներուն մէջ կը պտըտէր ։ Եւ իրեն մէկ խօսքը, մէկ գլուխը շարժելը, մէկ աչքին նայուածքը բաւական էր մեծամեծ քաղաքացիներն ալ սպաննելու ։ Այս կերպով սպաննուողներուն մէջն էր նաև Մարկոս Անտոնիոս անուանի ճարտասանը, որուն գլուխը երբոր սեղանին վրայ բերին իրեն, դաղանական ուրախութեամբ մը վրան նայեցաւ Մարիոս, զուարճացաւ, և ելաւ սպաննողը գրկեց պագաւ, որուն վրայ դեռ կեցեր էին արեան կարմիր կաթիլները ։ Եւ նայելով կշտանալէն ետև հրամայեց որ ատենին հրապարակախօսութեան բեմին վրայ դնեն գլուխը, իսկ մարմինը փողոցի մը մէջ ձգեն անթաղ որ ագռաւներուն ու շներուն կերակուր ըլլայ, ինչպէս որ կ'ընէին ան օրերը ուրիշ սպաննուողներուն մարմինները ։ Եօթներորդ անգամ ալ Մարիոս հիւպատոսութեան հասաւ, բայց չկըցաւ երկար ատեն վայելել ։ Ուր որ երթար ետևէն կը հասնէր Սիղղային յաղթութեանց համբաւը, և Մարիոս

---

[1] Այն միջոցին Մարիոս ի՞նչ կ'ընէր ։ — Ի՞նչպէս մեռաւ Մարիոս ։

վախնալով որ Սիղլան ալ իր ետեւէն չհասնի, միշտ սիրտը ահուդողի մէջ էր, ու արբեցութեամբ կը ջանար վախը փարատել. բայց անով քիչ ատենէն մեռաւ՝ հետը տանելով աս երկու անունը, ողափ-արար և ստորահաս հայրէնեաց:

[1] Մարիոսէն ազատեցաւ Իտալիա, բայց իր խեղճութիւններէն ազատ չէր. վասն զի Մարիոսի կուսակիցները Սիղլան գալուն պէս՝ նոր քաղաքական պատերազմ մը բացին (84): Աս ճարտարամիտ զօրավարը զարմանալի գործունէութեամբ հիւպատոսաց ու դաշնակցաց զօրացը յաղթեց: Ան ատենը Տեղեսինոս քաջ Սամնիացին գիտնալով որ Հռոմին մէջ շատ զօրք չկայ, եօթանասուն հազար զօրքով վազեց անոր վրայ: Լուր մը հասաւ ետեւէն Սիղլա, և առանց թողլու զօրացը որ քիչ մը յոգնութիւն առնուն՝ պատերազմի նշան տուաւ: Հռովմայեցիք սաստիկ յոգնած ըլլալով Սամնիացւոց առջևը սկսան տկարանալ: Զօրացը սիրտ տալու համար ամէն բան ըրաւ Սիղլա. բայց թէ աղաչանքը, թէ սպառնալիքը, թէ իր օրինակը, ամէնն ալ անօգուտ եղան: Ան ատենը սկսաւ կանչել. "Ո՛վ անգութ բաղդ. այնչափ անգամ զիս յաղթող ընելէն ետև՝ հայրենեացս դրան առջևը զիս ամօթապարտ պիտի մեռցընես": Ինչուան գիշերը յաղթող էին Սամնիացիք. բայց երբոր Տեղեսինոս մահացու վէրք մը առաւ, փոխուեցաւ պատերազմը. բանակը առնուեցաւ, և զօրքը ջարդուեցան. վեց հազար Սամնիացիք անձնատուր

---

[1] Սիղլան ինչպէս յաղթեց Սամնիացւոց:

եղան, և Միզզա խօսք տուաւ որ կեանքերնուն խնայէ։

[1] Հազիւ մտաւ Միզզա և ծերակուտին առջևը ճառ մը խօսեցաւ, ան ճառին տանը դրսէն սկսան յանկարծ լալու ողբալու ձայներ լսուիլ. ամէնքը խռոված երբոր ասդին անդին սկսան նայիլ. "Բան չկայ, ըսաւ Միզզա պաղարիւնով, քանի մը խռովարարներն են որ ես պատժել տուեր եմ"։ Ան վեց հազար Սամնիտացիքն էին որ ձիարձակարանին մէջ կը սպաննուէին։ Ետքը իմացուց ժողովրդեան որ խռովութիւնները պիտի դադրեցընէ, բայց իր թշնամեացը ամենևին պիտի չխնայէ (81)։

[2] Իրաւցընէ կոտորածը սկսաւ, և Միզզա բերնէն աս սարսափելի խօսքը հանեց. "Դեռ չեմ գիտեր թէ զով կենդանի պիտի պահեմ"։ Եւ երբոր իրեն ըսին որ գէթ ան ըսէ թէ որո՞նք պիտի մեռցընես, "Զատոնք" ըսաւ, ու մէկէն նստաւ ցանկ մը շինեց, որուն մէջ երկու հազար վեց հարիւր ասպետի և ութսուն պատրիկներու անունը գրեց ու զամէնքն ալ սպաննել տուաւ։ Ետքը կարգը հարուստներուն եկաւ. որը իր պարտէզներուն համար, որը փառաւոր բաղնիքներուն համար, ուրիշը իր արձաններուն համար։ Անծանօթ մարդուն մէկը մահապարտաց ցանկին մէջ իր անունը տեսնելով կանչեց. "Վա՜յ ինծի, Ալբային մէջի գեղի տունս իմ գլուխս կերաւ"։ քանի մը

---

1 Ան պատերազմէն ետքը ի՞նչ անգթութիւն ըրաւ Սամնիտացւոց դէմ։

2 Հռոմին մէջ ի՞նչ անգթութիւններ ըրաւ։

քայլ հազիւ թէ առաջ գնացեր էր՝ մէկէն սպաննուեցաւ։ Մարդասպանութեան գինը որոշուած էր. մարդ գլուխ երկու տաղանդ։ Այս սպանութիւնները Իտալիոյ մէկալ կողմերն ալ կ'ըլլային. ամէն տեղ Սիլլայի թշնամիները կամ սպաննուեցան, կամ աքսորուեցան և կամ կողոպտուեցան. ինչուան ամբողջ քաղաքներ մարդկանց պէս կողոպտուեցան ու քանդուեցան. և մէկը չէր համարձակեր ձայն հանելու. խորագէտ Սիլլան բոլոր ան կողոպուտները հարիւր քսան հազար զօրաց բաժներ էր, որով իր անունը կը մեծնար և իշխանութիւնը ապահով կ'ըլլար։

¹ Սիլլա մշտնջենաւոր իշխանապետ ընտրուելով, երեք տարի անսահման իշխանութիւն բանեցընելէն ետև հրաժարեցաւ, գնաց Կումա քաղաքը քաշուեցաւ, և ինչուան մահը անկէց կառավարեց հասարակապետութիւնը (79)։ Մեռնելէն ետև յուղարկաւորութեան հանդէսը յաղթանակի կը նմանէր։ Մարմինը փառաւոր դագաղի մը մէջ դրած և ծերակուտէն չորս հոգի դագաղը ուսերնին առած՝ Կումայէն Հռոմ բերին։ Առջևէն ութսուն գաւազանաւոր դահիճներ կ'երթային՝ գերագոյն իշխանութեան նշան. ետևէն երկու հազար ոսկի պսակ կը բերէին, ամէնքն ալ քաղաքներէն, լէգէոններէն ու բարեկամներէն տրուած։ Ասոնց ետեւ անթիւ փողեր սգալից ձայնով կը հնչէին. բոլոր քուրմերը իրենց քղամիդաւորովը, ծերակոյտը, դատաւորներն ու ասպետները ետևէն կ'երթային։ Եւ հին թագաւորաց պէս

¹ Ինչպէս մեռաւ Սիլլա։

զինքն ալ բերին Մարսեան դաշտին մէջ թաղեցին, և գերեզմանին վրայ սաստիկ տապանագիր մը դրին. «Անհնարին է որ մարդ մը Սիլլային պէս բարեկամացը այնչափ բարիք, թշնամեացն ալ այնչափ չարիք կարենայ ընել»։

## ԳԼՈՒԽ Ի.

Պոմպէոս. — Լեպիդոսի հանած խռովութիւնները. — Սերտորիոս. — Միհրդատայ հաշտութիւնը. — Պոմպէոսի Սպանիա երթալը. — Սերտորիոսին սպանութիւնը. — Սպարտակոս. — Սիկղոսի պատերազմը. — Կրասոս. — Պոմպէոս Կրասոսի փառքը իրեն կը սեփականէ (79-71)։

1 Ընկերական պատերազմին ատենը Պոմպէոս անունով քսանուերեք տարեկան երիտասարդը իր ծախքովը Պիկենոնի մէջ երեք լեգէոն ժողվեր ու Սիլլայի օգնութեան հասնելու համար երեք զօրավարի յաղթեր էր։ Սիլլա թէպէտ և մեկէն ճանչցաւ անոր փառասիրութիւնը, բայց որովհետև ծառայութեանը կարօտ էր՝ մեկէն վար իջաւ ձիէն և անունը Իմփէրա́թօր կամ Հրամանատար կանչելով զինքը բարևեց. անկէ ետքն ալ միշտ զինքը տեսնելու ատեն ոտք կ'ելլէր։ Այս պարծենկոտ երիտասարդին վայելուչ կերպարանքն ու ազնուական կերպերը տեսնելով մէկը մէկալը զինքը Աղեքսանդրի կը նմանցընէին. ինքն ալ Մեծ

1 Ո՞վ էր Պոմպէոս, ու ինչ բնաւորութեան տէր էր։

ըսուելու չափ կը փափաքէր, և միշտ իր անունը անանկ կը ստորագրէր, թէպէտ և ամէնքը զինքը ծաղր կ՚ընէին: Յաղթութենէ մը ետքը ուզեց յաղթանակ ընել, և Սիղլան իշխանապետ ըլլալով իրեն թող չտուաւ: Պոմպէոս մէկդի քաշուեցաւ դժգոհութեամբ աս խօսքս ըսելով. " Նոր ծագող արևը աւելի պաշտողներ կ՚ունենայ քան թէ մտնողը,,: Աս խօսքին վրայ զարմացաւ Սիղլա ու ըսաւ. " Աղէկ ուրեմն, թող ընէ յաղթանակը,,:

Իրաւցընէ ինքզինքը մեծ կրնար սեպել Պոմպէոս այնպիսի հասարակապետութեան մէջ՝ ուր մեծ մարդ չէր մնացած. և ինքը Սիղլային յաջորդելու մեծ յոյս ունեցած ատենը՝ Եմիլիոս Լեպիդոս հիւպատոսը Մարիոսի կուսակիցները նորէն ոտք հանեց: Սիղլա մեռնելէն առաջ ըսեր էր Պոմպէոսին. " Ով պատանի, նայէ որ չքնանաս. զգոյշ կեցիր, վասն զի քեզմէ զօրաւոր ոսոխ մը ունիս,,: Ան ոսոխն էր Լեպիդոսը, որուն Պոմպէոս անխոհեմութեամբ քիչ մը առաջ հիւպատոս ըլլալուն ետևէ եղեր էր:

[1] Լեպիդոս կ՚ուզէր որ աքսորեալները ետ կանչուին ու ստացուածքնին նորէն տրուի անոնց. բայց այնպիսի ատեն աքսորեալները կանչելը նորէն պատերազմ բանալ էր: Լեպիդոսի հրապարակախօսութիւնները պատերազմական փողի պէս քաղաքին մէջ խռովութիւն ձգեցին, ամէնքը կը կարծէին թէ նորէն Սիղլայի ու Մարիոսի ժամանակը հասաւ. բայց աղէկ որ աս քաղաքական պատերազմը սկսելն ու մարիլը մէկ եղաւ: Լեպի-

---

[1] Լեպիդոս ի՞նչ խռովութիւն հանեց Հռոմին մէջ:

դոս Ետրուրիայէն զօրք առած՝ Հռոմին վրայ սկսաւ գալ. Կատուղոս՝ Պոմպէոսին օգնութեամբը զինքը փախուց, որ գնաց Սարդինիա քաշուեցաւ ու հոն սրտին ցաւէն մեռաւ։

1 Կարծեց Պոմպէոս որ ալ Մարիոսի կուսակիցները ջնջուեցան, և իրեն կը մնար միայն կառավարել. բայց խաբուեցաւ։ Ծեր Սերտորիոս Սպանիա կեցած՝ Հռոմին վրայ տիրելու կը մտածէր։ Աս բիրտ ու անխոնջ զինուորին քաջութեանը վրայ՝ դաշնակցաց պատերազմին մէջ ամէնքը զարմացեր էին։ Գիտնալով որ Իտալիոյ մէջ չկրնար Սիւլլայի դէմ կենալ՝ երկու հազար հոգւով Սպանիա անցեր էր. երբոր հոն ալ ետևէն հասեր էր Լիւիոս Սալինատոր՝ Թողեր Աֆրիկէ փախեր էր։ Հոն ասդին անդին քանի մը արշաւանքներ ընելով մեծ անուն հանեց. այնպէս որ Լուսիտանացիք իրենց գլուխ մը փնտռելով՝ զինքը կանչեցին։

2 Երկու հազար հոգւով Սպանիոյ վրայ երթալու համար մեծ յանդգնութիւն պէտք էր, ուր որ հռովմայեցի զօրավարները հարիւր քսան հազար զօրք ունէին. և սակայն Ճամբայ ելաւ Սերտորիոս, ու ցամաքը ոտք կոխելուն պէս՝ հինգ հազար Սպանիացիք եկան իրեն հետ միացան. զանոնք բաւական սեպելով պատերազմը սկսաւ (80)։

3 Աս քաջ, խորագէտ և իր խոստմանցը մէջ վեհանձն նոր Աննիբաղը (ինչպէս որ Սպանիացիք

---

1 Ո՞վ էր Սերտորիոս։
2 Ի՞նչ կերպով անցաւ Սպանիա։
3 Ի՞նչ հնարքով Սպանիացւոց սիրտը շահեցաւ։

զէնքը կը կանչէին) · անձնուէր անունը կը տրուի այսպա-
հովիւներու հանճար զարմանալի հնարք մը բանեցուց։
Գեղացիներէն մէկը իրեն ձերմակ եղնիկ մը ընծայ
տուեր էր. աս կենդանին հետը այնչափ ընտանե-
ցաւ որ ինչուան ձայնը լսելուն պէս կը վազէր կու-
գար, և ուր որ երթար՝ ետևէն չէր բաժնուէր. բա-
նակին շառաչմունքէն ու աղաղակներէն ալ ամենևին
չէր վախնար։ Սերտորիոս գիտնալով Սպանիացւոց
դիւրահաւանութիւնը, ձայն հանեց թէ աս կեն-
դանին Արտեմիս աստուածուհին իրեն պարգև
տուեր, և անկէ ծածուկ բաներ ալ կ՚իմա-
ցնէ։ Երբոր սուրհանդակ մը գար իրեն իմացընէր
թէ զօրավարներէն մէկը յաղթութիւն մը ըրաւ,
Սերտորիոս սուրհանդակը կը պահէր ու եղնիկը
ծաղիկներով պսակած՝ ժողովրդեան առջևը կը
հանէր, ու անոնց աւետիս կու տար որ քիչ ատե-
նէն յաղթութեան աւետիս մը պիտի առնունք։

[1] Աս հնարքները բանի չէին գար՝ թէ որ Սեր-
տորիոս զարմանալի զինուորական հանճար ալ
չունենար։ Հռովմայեցւոց երկու զօրավարները
իրմէ զարնուեցան, զօրքերնին կոտորուեցին և ի-
րենց ահաւոր ախոյեանին թողուցին ինչուան Ե-
բրոս գնաց։ Մետելլոսի յանձնուեցաւ ան պա-
տերազմը, որ ան ատենի անուանի զօրավարներէն
մէկն էր. բայց մեծ դժբաղդութիւն եղաւ իրեն
ան պաշտօնը, վասն զի անով ասոր հանճարը կոր-
սնցուց։ Աս զօրավարը՝ դանդաղ ու միակերպ ոճ
մը բանեցնելով ու կարգաւորեալ պատերազմնե-
րու վարժած ըլլալով՝ շատ կը շփոթէր երբոր գե-

---

[1] Մետելլոսին ինչպէս յաղթեց ։

մնացին Թշնամիին ոչ արեւ կը նայէր՝ ոչ ժամանակ, ու չկարծուած ատենները վրան կը յարձակէր, կը ջարդէր, յանկարծակի ալ ետ կը դառնար: Մարդ չէր համարձակեր ետեւէն երթալու. իրեն պէս ալ մէկը չկար որ լեռներուն նեղ անցուղիները աղէկ ճանչնար: Մետելլոս անոր յաղթելէն յոյսը կտրած՝ իրեն օգնութիւն կանչեց Նարբոնեան Գաղղիոյ կուսակալը. Սերտորիոս ալ ընելուն պէս՝ վարեց ան նոր Թշնամւոյն առջին ելաւ, բոլորովին յաղթեց անոր:

1 Նոյն միջոցին Սերտորիոս աւելի Սպանիացւոց սիրելի կ'ըլլար՝ Ոսկա քաղաքին մէջ դպրոցներ բանալով, ուր ազնուականաց տղաքը յունարէն եւ լատիններէն կը սորվէին: Սերտորիոս անոնց ծնողքը ինքը կը տեսնէր, անձամբ կ'երթար կը քննէր եւ յառաջադէմները կը վարձատրէր: Սերտորիոսի բանակը պզտիկ Հռոմի մը կը նմանէր. միայն բարուց խստութիւնը մեծ Հռոմին մեղկութեանը չէր նմաներ. մինչ ծերակոյտ մըն ալ կար իրեն հարիւր հոգւով:

2 Այն միջոցին յիսուներեք գունդ՝ Լեպիդոսի բանակէն մնացած՝ Պերպեննայի առաջնորդութեամբը վարեցին գնացին Սերտորիոսի հետ միանալու: Նոյն ատենները ալ Մեծն Պոմպէոս պատերազմը վերջացնելու համար Պիրենեան լեռներէն անցաւ, և ամէնքը մեծ յոյս ունէին վրան, վասն զի Իտալիոյ ամենէն ճարտար զօրավարը կը կարծուէր. ան ատենը Սերտորիոս Լաւրոնա

---

1 Սպանիացւոց ինչ սովորութեան բարիք ըրաւ:
2 Հռովմայեցիք զո՞վ խրկեցին Սերտորիոսի դէմ:

քաղաքը պաշարած էր. Պոմպէոս վրան գնաց որ քաղաքն ազատէ, և կը պարծէր թէ թշնամին այն-տեղ պաշարեմ. Սերտորիոս վրան խնդալով ըսաւ. "Ես պիտի սորվեցնեմ Սիլլայի աշակերտին որ հնարագէտ զօրավարը աւելի իր բանակին ետևի կողմին պիտի զգուշանայ քան թէ առջևին": Ի-րաւցընէ ան միջոցին որ Սերտորիոս քաղաքն ա-ռած կ'այրէր, ետևէն վեց հազար Սպանիացիք հասան ու մեծ ջարդ տուին Հռովմայեցւոց:

ա Պոմպէոս ան կոտորածին վրէժը հանել ուզե-լով՝ Սուկրոյ քաղաքին քով Սերտորիոսի դէմ ճակատեցաւ, ու նորէն յաղթուեցաւ: Երկրորդ օրը երբոր կը պատրաստուէր Սերտորիոս որ հռո-մայեցւոց բանակը բոլորովին կոտրէ, շատ զօրքով վրան հասաւ Մետեղլոս. ան ատեն ըսաւ Սպա-նիացի դիւցազնը. "Թէ որ սա պառաւը չգար, ես ան տղուն աղէկ ծեծ մը քաշելով Հռոմ կ'ուզէի խրկել զինքը":

բ Անկէց ետքը ան երկու հռովմայեցի զօրա-վարները իրարմէ չզատուեցան, և Սեգոնտիա քա-ղաքին քով Սերտորիոսին հետ պատերազմեցան. երկար ատեն քաջութեամբ դէմ կենալէն ետքը՝ Սերտորիոս զօրացը քիչութեանը համար ետ քաշուեցաւ: Ան յաջողութեամբ հպարտացած Մետեղլոս ինքզինքը հրամանատար անուանեց, ուր որ երթար՝ առջևէն տղաք ու աղջկունք կ'եր-

---

ա Պոմպէոս երկրորդ անգամ ի՞նչպէս յաղթուե-ցաւ Սերտորիոսէն:

բ Ի՞նչպէս յաղթեց Սերտորիոս Պոմպէոսի ու Մետեղլոսի միացած բանակներուն:

Թային՝ իր քաղցրութիւնները կ'երգէին : Հարիւր տաղանդ (հինգ հարիւր հազար ֆրանք) խոստացաւ Մետեղղոս ով որ Սերտորիոսի գլուխն իրեն բերէ . բայց չկարծած բանը հանդիպեցաւ . Սերտորիոս քաշուած տեղէն ելաւ, ու աներկիւղ իր ընկերներուն հետ Պոմպէոսի ու Մետեղղոսի ապշած զօրացը վրայ յարձակեցաւ, անոնց եկած պաշարներուն տիրեց, ու վերջապէս երկու զօրավարները իրարմէ բաժնեց . և աս ամէն գործողութիւնը այնպիսի արագութեամբ ըրաւ, որ Պոմպէոս սարսափած՝ գրեց ծերակուտին որ եթէ ինծի շուտով օգնութիւն չհասցընէք, քիչ ատենէն Սերտորիոս Իտալիա կը մտնէ :

[1] Արդէն Հռոմի մէջ ժամէ ժամ Սերտորիոսի գալուն կը սպասէին, երբոր աս գոյժն առին թէ արեւելքէն ալ Միհրդատ Սերտորիոսին հետ դաշնադրութիւն կ'ընէ՝ Հռովմայեցւոց սարսափը կատարեալ եղաւ : Այն դաշնադրութեան ատեն Միհրդատ ուզեց որ իր օգնութեանը փոխարէն բոլոր Փոքր Ասիան իր ձեռքը մնայ . Սերտորիոս անոր աս գեղեցիկ պատասխանը տուաւ . “Հռոմը մեծցընել կ'ուզեմ ես, և ոչ թէ խոնարհեցընել„ : Եւ սակայն Միհրդատ նոյնպէս խրկեց իրեն նաւեր և երեք հազար տաղանդ (տասնըհինգ միլիոն ֆրանք) :

[2] Անոր վրայ շատ չանցաւ, դարշելի մատնութեան մը զոհ եղաւ Սերտորիոս : Իր զօրավարնե-

---

[1] Միհրդատ ի՞նչ դաշնադրութիւն ըրաւ Սերտորիոսի հետ :

[2] Ի՞նչպէս մեռաւ Սերտորիոս :

րէն շատը սկսան փառացը վրայ նախանձիլ, և ի-րենց նախատինքը կը սկսէին այնպիսի անանշան ազգէ մարդու մը հնազանդիլ. ամենէն աւելի Պեր-պեննա զօրավարը չկարենալով ատոր նախանձը պարտակել, սկսաւ մէկուն մէկալին ալ գլուխը տաքցընել: Սերտորիոսը կոչունքի մը հրաւիրեցին ու սեղանէն, ելլելու ատենը զարկին սպաննեցին: Այն զարմանալի մարդուն մահուանը մէկէն 'ի մէկ Սպանիա Հռովմայեցւոց իշխանութեան տակը մտաւ, և Պոմպէոս ետ դառնալով սկսաւ պար-ծենալ թէ ինքը Սպանիա նուաճեց (72):

1 Այն ատենները Իտալիա մեծ չփոթութեան մէջ էր՝ սուսերամարտից պատերազմին պատճա-ռաւը, որուն պատմութիւնը աս է: Լենտուղոս Բատիատոս անունով մէկը Կապուա քաղաքին մէջ շատ մը գաղղիացի ու Թրակացի սուսերա-մարտներ կը պահէր, որ տօնի օրեր ժողովրդեան առջևը խաղեր կ'ընէին: Անոնցմէ երկու հարիւր հոգի խորհուրդ կ'ընեն որ փախչին. բայց խոր-հուրդնին դուրս ելլելով՝ եօթանասունըութը հատը միայն հազիւ կրցան իրենց տէրոջը ձեռքէն ազատիլ. փախչելու ատեննին ալ մսավաճառի մը խանութ մտան, որչափ շամփուրներ ու երկաթի կտորներ որ գտան յափշտակեցին, ու քաղաքէն դուրս ելան: Ճամբան զէնքով լեցուն կառքի մը հանդիպեցան, բռնեցին կողոպտեցին. անոնցմով զինեալ՝ գնացին ամուր բերդի մը տիրեցին, ու մէ-ջերնէն երեք հոգի գլխաւոր ընտրեցին, և անոնց

---

1 Այն ատենները Ի՞նչ նոր պատերազմ բացուեցաւ Իտալիոյ մէջ:

առջինն էր Սպարտակոս Թրակացին, որ կարգէ դուրս ուժին ու քաջասրտութեանը հետ զարմանալի խոհեմութիւն մ'ալ ունէր: Անոր վրայ այսպիսի պատմութիւն մըն ալ կը պատմեն թէ առջի անգամ որ Հռոմ ծախուելու տարուեր է, քնանալու ատենը տեսեր են որ օձ մը ելեր երեսին պլլուեր է. և կինը կախարդ ըլլալով գուշակեր է որ ատենով Սպարտակոս շատ զօրաւոր ու բարեբաղդ պիտի ըլլայ:

¹ Երբոր Կապուայէն վրանին խրկուած զօրքը քշեցին սուսերամարտիկները, Կղօդիոս իրեք հազար զօրքով Հռոմէն եկաւ, զանոնք իրենց բերդին մէջ պաշարեց: Աս բերդը լեռան մը վրայ շինուած էր, և չորս կողմէն սեպացեալ ժայռերով ու վայրի որթերու թուփերով պատած էր. մէկ կողմէն միայն նեղ մուտք մը ունէր, ան ալ Կղօդիոս գնաց բռնեց: Ամէնքը կարծէին որ ալ Սպարտակոսի և իրեններուն վերջը հասաւ. անոնք որթերու ճիւղերը կտրեցին, և երկայն ու հաստատուն սանդուխներ շինելով ամէնքն ալ բերդէն վար իջան և ազատեցան: Հռովմայեցիք ամենևին չիմացան, և յանկարծակի ետևի կողմէն թշնամիէն պաշարուելով կէս մը ջարդուեցան, մնացածներն ալ բանակնին թողուցին փախան: Աս յաղթութեան վրայ չորս կողմէն շատ հովիւներ ալ գնացին սուսերամարտից հետ միացան:

² Ետևէ ետև չորս մեծամեծ յաղթութիւննե-

---

¹ Առջի բերան սուսերամարտները ինչ յաղթութիւններ ըրին:

² Սպարտակոս ինչպէս Հռոմին վրայ գնաց:

րով Սպարտակոսին զօրքը եօթանասուն հազարի հասաւ, և բոլոր հարաւային Իտալիոյ տիրեց: Բայց Սպարտակոսին միտքը Հռովմայեցւոց հետ պատերազմիլ ու անոնց յաղթել չէր, հապա իր ընկերացը ազատութիւն տալ: Աս մտքով դէպ 'ի Ալպեան լեռները գնաց. բայց Պադոսին քովը որ հասաւ՝ կանկ առաւ, վասն զի գետը զայրացեր ու քովի երկիրները կոխեր էր. զօրքը Հռոմի վրայ կ'ուզէին երթալ, զօրավարին ալ ստիպուեցաւ անոնց փափաքը կատարելու:

1 Ծերակոյտը հարիւր քսան հազար նոր զօրք ժողվեր ու անոնց գլուխ դրեր էր Ճարտար Կրասսոս հիւպատոսը: Սպարտակոսի աչքը չկարեց մէկէն անոր դէմ ելլելու. ուզեց քանի մը հազար հոգի Սիկիլիա ձգել ու ստրկաց պատերազմը նորէն գրգռել. գնաց Հռեգիոնի ցամաքակղզին բանակը դրաւ: Ետևէն հասաւ Կրասոս, ու տասներհինգ մղոն պատով ու փոսով մը ցամաքակղզին փակեց: Այն աշխատութեան վրայ սուսերամարտները սկսան ծիծաղիլ. գիշերանց հողով ու ծառերով փոսը լեցուցին ու վրայէն անցան գնացին: Սակայն երկպառակութիւնը մէջերնին սկսաւ. Գաղղիացի գունդ մը բաժնուեցաւ մէջերնէն, ու հիւպատոսէն ջարդուեցաւ:

2 Սպարտակոս անկէց սկսաւ Հռոմին վրայ երթալ. երբոր Սիղարոս գետին քով հասան, զօրքը

---

1 Կրասոսի ձեռքէն ի՞նչպէս ազատեցան առաջ սուսերամարտները:

2 Ի՞նչպէս յաղթուեցան: — Սպարտակոս ի՞նչպէս մեռաւ:

անդադար Կրասոսէն նեղուելով զինքը ստիպեցին որ հետը պատերազմին ։ Սպարտակոս տեսնելով որ ամէնքն ալ մէկ բերան կ'ուզեն , իր ձին բերել_տուաւ ու սպաննեց ըսելով . “ Թէ որ յաղթելու ըլլամ՝ ինծի ձի չպակսիր , իսկ թէ որ յաղթուիմ՝ ինծի ալ ձի ի՞նչ պէտք է „ . աս ըսաւ ու մէկէն թշնամեաց մէջ նետուեցաւ՝ Կրասոսը փնտռելով որ սպաննէ . ազդրը վիրաւորուելով ծունկին վրայ կեցած կռուեցաւ , ու բիւրաւոր վէրքեր ըն_նելով ինկաւ մեռաւ , իրեններն ալ քաջութեամբ հետը մեռան , և Հռովմայեցիք յաղթող ելան ։

¹ Պոմպէոս ան ատենը Իտալիա հասնելով՝ Կրասոսին տեղը հիւպատոս դրուեցաւ , սուսե_րամարտից գունդերէն մէկուն հանդիպեցաւ , ա_ռանց աշխատանքի զանոնք ջարդեց , ու ծերակոյ_տին մէջ գնաց կանչեց թէ “ Պատերազմին արմատը կտրեցի ընջեցի „ . ասանկով Կրասոսին փառքը առանց ամչնալու իրեն առաւ (71) ։

---

¹ Ըն պատերազմին փառքը որո՞ւն տրուեցաւ ։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Կիկերոն. — Վերրեսի դատավարութիւնը. — Հէնք. — Պոմպէոս զանոնք կըջնջէ. — Միհրդատայ դէմ պատերազմը. — Տիգրան. — Ղուկուղղոսի յաղթութիւնը. — Պոմպէոս անոր տեղը կ'անցնի. — Միհրդատայ մահը ու Ասիոյ պատերազմին վերջը. — Պոմպէոսի յաղթանակը. — Գրագիտութիւն (71-63):

1 *Ժողովրդեան առջեւը Պոմպէոս հասարակապետութեան դիւցազն էր. ամէնքն ալ կ'ըսէին թէ Սերտորիոսին յաղթողը անիկայ է. բայց ինքը փառասիրութեանը հետ իր տկարամտութիւնն ալ գիտնալով՝ գերագոյն իշխանութեան հասնելուն պէս՝ ան մարդը իրեն փաստաբան ընտրեց՝ որուն համբաւը ամէն տեղ տարածուեր էր. և անիկայ էր Մարկոս Տուղղիոս Կիկերոն: Շատ հմուտ մարդ էր Կիկերոն, և Յունաստանի մէջ իր ուսմունքը սորված ըլլալով Յոյներն ալ շատ կը սիրէր: Որովհետև ինքն ալ Մարիոսին պէս Արպինոն քաղաքը ծնած էր, իր քաղաքակցին վրայ բանաստեղծութիւն մը շիներ էր, և անով սկսաւ անունը ելլել: Նրբամիտ ու սուր հանճարովը, գերագոյն ճարտասանութեամբն ու զարմանալի յաջողակութեամբն հանդերձ տարտամ ու վախկոտ բնութիւն մը ունէր: Իր տաղանդովը քիչ ատենի մէջ ամէն տեսակ պատուոյ հասաւ:*

---

1 *Պոմպէոսի անունը ի՞նչպէս մեծցաւ: — Ո՞վ էր Կիկերոն:*

1 Պոմպէոս շուտ կարող եղաւ Կիկերոնի : Սիցիլային դրած պրետորներին՝ ու Հիւպատոսի փոխանորդները սոսկալի հարկահանութիւններով ժողովուրդները կը չարչարէին , քաղաքները ան բռնաւորաց ընչասիրութիւնը կշտացնելու համար՝ իրենց մեհեաններուն զարդերն ու աստուածոց արձանները կը ծախէին : Հայրերը վրանին դրուած տուրքերը տալու համար՝ ինչուան զաւակնին կը ծախէին . շատ անգամ՝ անով ալ չկարենալով վճարել՝ իրենք ալ գերի կ'ըլլային . իսկ թէ որ չուզէին տալ՝ սոսկալի տանջանքներու տակ կը մեռնէին . վասն զի տէրութեան մարդիկը անոնց բերնէն հալած կապար կը լեցնէին , և կամ մերկ մերկ ձիւնի կամ սառի մէջ կը թաղէին զանոնք : Հռոմի մէջ աս անգթութիւնները լսուելով՝ քաղաքացւոց հաւատալը չէր գար , ինչուան որ Սիկիլիոյ պրետորին Վերրեսի դատաստանը բացուելով՝ ճշմարտութիւնը դուրս ելաւ :

2 Աս ախտամոլ մարդը գանձ դիզելով գոհ չէր , հարստութենէ կողոպտած մարդիկը խոնաւ ու մութ բանտերու մէջ կը փտեցնէր : Դրանը քով դահիճ կեցընել կուտար , ու երբոր մայրերը կ'երթային իրենց զաւկըները տեսնելու , անոնց խեղճութեանը վրայ լալու , դահիճը աս բարբարոսական խօսքերը կ'ըսէր . “Ներս մտնելու համար այսչափ սակ պիտի տաք , բանտարկելոյն կերա-

---

1 Սիցիլային դրած պրետորները ան ատեն ինչ բռնութիւններ կ'ընէին :

2 Վերրէս ինչ անգթութիւններ կ'ընէր Սիկիլիոյ մէջ :

կուր բերելու համար ալ այսչափ,,: Եւ թէ " Որպէս զի զաւակնիդ առանց երկար տանջանքներ քաշելու մէկէն 'ի մէկ մեռնին՝ այսչափ բան վճարեցէք,,: Աս բաւական չէր, նորէն սակ տալու էր որ մեռնողներուն մարմինները գազաններու դիմացը չնետուէին: Աս բաներս ալ ան ատենը իմացուեցան՝ երբոր պրետորը Հռովմայեցի մը ծեծեց ու խաչել տուաւ: Կիկերոն ազնուական անշահախնդրութեամբ մը ելաւ սկսաւ անոր դէմ բողոքել, և իր կեանքը վտանգի մէջ դնելով ճարտարմտութեամբը, գործունէութեամբն ու ճարտասանութեամբը Վերրեսին յաղթեց, ու մեծ փառքի արժանի եղաւ: Վերրէս իր դատապարտութիւնը գուշակելով՝ աքսորանաց վճիռը ելլելէն առաջ թողուց փախաւ, և ամէնքը Կիկերոնի Վերրեանք ըսուած ճառերը օրինակելով մեծ եռանդով կարդացին ու ասդին անդին սփռեցին. որով աղէկ իմացան Հռովմայեցիք ան ատենի մեծամեծաց բռնութիւնները:

1 Ան ատենները շատ մը ասիացի հէնք՝ այսինքն ծովու աւազակներ քաղաքական կռիւները իրենց առիթ առնելով ծովերուն վրայ ամենայն համարձակութեամբ սոսկալի անզգամութիւններ կ'ընէին, նաւերը կողոպտելը բաւական չսեպելով սկսան նաև կղզիներու և ծովեզերեայ քաղաքաց վրայ յարձակիլ: Ինչուան հարուստ մարդիկ ալ սկսան նաւերու մէջ մնած աւազակութիւն ընել. կարծես թէ աւազակութիւնը ազնուական ա-

1 Ծովու աւազակները Ի՞նչպէս զօրացեր էին ան ատենները:

լուսաւոր մը դարձեր էր։ Ասոնք շատ տեղ նաւահանգիստներ ու աղէկ ամրացուցած դիտարաններ ունէին։ Իրենց նաւերը բոլոր թեթեւ շինուած էին, և մէջի կարգին թիավարներն ու ճարտար ղեկավարները ուզածնուն պէս զանոնք կը շարժէին. բոլոր նաւերուն գլուխները ոսկեզօծ էին, թիերը արծաթազօծ և վրանին փառաւոր գործեր ձգած՝ իրենց աւազակութեանը յաղթանակ կ՚ընէին։ Ամէն տեղ ծովեզերքը երաժշտութեան ձայներ կը լսուէին, կ՚ուտէին կը խմէին. ամէն տեղ հռովմայեցի զօրականները կը բռնէին շղթայակապ գերի կ՚ընէին ու քաղաքները իրենց ազատութիւնը սակով կը գնէին։ Հազարէն աւելի աւազակի նաւ կար կ՚ըսեն՝ որ չորս հարիւր քաղաքի տէրեր էին։

¹ Ցամաք երկիրն ալ ազատ չէր անոնց բռնութիւններէն. վասն զի շատ անգամ հոն ալ կ՚իջնային։ Անգամ մը երկու պրետոր իրենց ծիրանի հագուստներովը ու դահիճներովը մէկտեղ բռնեցին՝ գերի տարին։ Այն աստիճանի յանդուգն համարձակութիւն առեր էին որ եթէ գերւոյն մէկը ըսեր թէ ես ալ հռովմայեցի եմ, մէկէն զարմանք ու վախ կը ձեւացընէին, ու անոր ոտքն ընկած կ՚աղաչէին որ իրենց ներէ. խեղճ գերին աս տեսնելով առջի բերան կարծէր թէ իրաւ է ըսածնին. վասն զի ոմանք ոտքը մուճակ կ՚անցընէին, ուրիշները հռովմայեցւոց հագած վերարկուն անոր կը հագցնէին, որպէս զի կ՚ըսէին՝ ասկէց ետքը ամէնքը հռովմայեցի ըլլալդ ճանչնան։

---

¹ Ի՞նչ մասնաւոր բռնութիւններ կ՚ընէին։

Ասանկ անոր վրայ զուարճանալէն ետև՝ ծովը սանդուխ մը կը նետէին, ու մարդուն կը հրամայէին որ ան սանդուխին վրայ ելլէ՝ Հռոմ երթայ: Թէ որ յանձն չառնէր, իրենք զինքը ծովը կը նետէին ու կը խղդէին: Ինչուան հռովմայեցի նաւատորմիղ մը Հռոմէն վեց միլոն հեռու Ոստիա նաւահանգստին մէջ ընկղմեցին:

[1] Այսպիսի յանդգնութեան վրայ շատ տագնապեցաւ Հռովմայ ժողովուրդը, ցորենն ալ սկըսաւ քաղաքին մէջ պակսիլ. պէտք էր որ ան աւազակները շուտով նուաճուէին: Ասպետաց ու մեծատուններուն Ասիոյ հետ ունեցած վաճառականութիւնը դադրելով՝ սկսան կանչել որ ատ աւազակներուն վրայ պէտք է Պոմպէոսը խրկել. ժողովուրդն ալ հաւանած էր, բայց ծերակոյտը դէմ կը կենար: Կիկերոն սկսաւ Պոմպէոսին կողմը բռնել ու զամէնքը համոզել. ուստի անսահման և առանց պատասխանատուութեան իշխանութիւն տուին Պոմպէոսի. ուզած ատենը մէկէն գանձապետները ստակ պիտի հասցընէին, հինգ հարիւր նաւ շինել պիտի տար, հարկաւոր սեպածին չափ զօրք պիտի ժողվէր, և ծերակուտէն քսանըհինգ հոգի իբրև իրեն տեղապահ հետը պիտի երթային:

[2] Այսպիսի ահեղ զօրութեամբ երթալէն առջը հարկաւ պէտք էր որ Պոմպէոս յաղթէր. ինքն ալ մեծ վստահութեամբ գնաց յարձակեցաւ ան ա-

---

1 Հռովմայեցիք զո՞վ խրկեցին ծովու աւազակներուն դէմ:

2 Պոմպէոս ի՞նչպէս ջնջեց աւազակները:

ւազակաց բազմութեանը վրայ, որ Կիպրոս կղզիէն ինչուան Հերակլեան արձանները տարածուեր էին։ Նաւերը տասնուիրէք խումբ բաժնեց, և Իտալիոյ՝ Սպանիոյ ու Ափրիկէի մէջ տեղը եղած աւազակները գրեթէ ծովակի մը մէջ փակեց։ Ինքը Կիլիկիոյ վրայ գնաց, որ անոնց կեդրոնն էր. Թշնամիք ուզեցին հետը պատերազմիլ, բայց երբոր չորս կողմէն պաշարուեցան, յուսահատած՝ մէկէն աղեղնին Թիերնին ծովը նետեցին ու սկսան աղաչել որ իրենց կենացը խնայէ։ Իրեք ամսուան մէջ աւազակները ջնջեց ու ծովեզերքը մաքրեց Պոմպէոս (66)։

1 Երբոր ժողովուրդը աս անկարծելի յաջողութիւնը տեսաւ, ուզեց որ Պոմպէոս ըլլընցընէ նաև Միհրդատայ պատերազմը։ Աս որոշմունքը երբոր լսեց Պոմպէոս, չուզել ձևացընելով սկսաւ կանչել. "Ինչուան երբ պիտի աշխատիմ. որչափ երջանիկ պիտի ըլլայի՝ թէ որ աննշան քաղաքացի մը ըլլայի"։ Իսկ սրտանց սաստիկ կ'ուրախանար աս ընտրութեան վրայ, վասն զի անով Ղուկուղղոսի ձեռքէն բոլոր Ասիոյ հրամանատարութիւնը ինքը կ'առնէր։

2 Լիկոս կամ Գայլ ըսուած գետին քով երբոր բանակեր կեցեր էին Հռովմայեցիք, յանկարծ վրանին յարձակեցաւ Միհրդատ, շատ մարդ ջարդեց, շատ ալ աւար ու գերի առաւ. ան գերիներուն մէջ էր նաև Պոմպոնիոս ազնուական Հռովմ-

---

1 Ի՞նչ կերպով Միհրդատայ դէմ խրկուեցաւ։

2 Գայլ գետին քովը Միհրդատ ի՞նչպէս յաղթեց Հռովմայեցւոց։

մայեցին, որ պատերազմին մէջ չարաչար վիրաւո-րուած էր: Միհրդատ առջեւը կանչեց Պոմպոնիոսն ու հարցուց անոր. «Թէ որ զքեզ անվնաս քովս պահելու ըլլամ, ինծի մտերիմ բարեկամ կ'ըլլաս: — Թէ որ հաշտուիս Հռովմայեցւոց հետ, ըսաւ Պոմպոնիոս, այո. ապա թէ ոչ՝ միշտ թշնամի»: Գովեց զինքը Միհրդատ իբրեւ հայրենասէր և հաւատարիմ մարդ, և ազատ պահեց քովը:

1 Երբոր նորէն կը պատրաստուէր Միհրդատ Հռովմայեցւոց վրայ դիմելու, զօրացը մէջ խռովութիւն ելնալով զօրավարներէն շատը Հռովմայեցւոց կողմն անցան. և երբոր Միհրդատ ճարը հատած փախչելու վրայ էր, տեսաւ որ Հռովմայեցիք ետեւէն կը հասնին՝ զինքը բռնելու, այսպիսի հնարքով մը ձեռքերնէն ազատեցաւ: Ետեւէն եկած ոսկեբարձ ջորիներուն վրայի տոպրակները շուտ մը բացաւ՝ ճամբուն վրայ թողուց, և Հռովմայեցիք անոր ոսկիները յափշտակելու ատեն ինքը ժամանակ գտնելով Տիգրանայ քովը փախաւ: Լուկուղղոս համարձակութիւն առած՝ գնաց շատ տեղերու տիրեց, ու եկաւ Տիգրանակերտն ալ պաշարեց. Տիգրան իրեք հարիւր հազար զօրքով վրան եկաւ, և տեսնելով Հռովմայեցւոց քիչուորութիւնը, արհամարհելով ըսաւ. «Թէ որ դեսպան են եկեր՝ շատ են, իսկ թէ որ թշնամի՝ քիչ»: Աս ըսելով անհոգ եղաւ պատերազմի պատրաստուելու. Հռովմայեցիք ալ սիրտ առին, ու յանկարծակի վազեցին Հայոց վրայ, մեծ ջարդ տուին

---

1 Ի՞նչպէս յաղթուեցաւ անոնցմէ:

անոնց, Տիգրանը փախուցին, Տիգրանակերտն ալ առին:

[1] Տիգրան Ղուկուղղոսին խրկած հեծելագունդը երբոր կոտրեց, և Հռովմայեցւոց զօրքը ապստամբած՝ չէին ուզեր որ ալ Ղուկուղղոս իրենց զօրավարութիւն ընէ՝ հասաւ Պոմպէոս. Ղուկուղղոս ալ չկարենալով սրտին բարկութիւնը պարտըկել՝ յայտնի ըսաւ որ "Պոմպէոս գիշատիչ վատ թռչունի մը պէս իր չյաղթածներուն վրայ կ՚իջնայ՝ որ յաղթութեան մնացած կտորը ինքը պատռէ": Եւ իրաւցընէ Պոմպէոսին զօրավարութիւնը ձեռք առած ատենը՝ Միհրդատայ առջի ահաւորութիւնը գնացեր էր, զօրքը պակսեր էր. և տեսնելով թէ այնչափ քիչուոր ու յոգնած զօրքով Պոմպէոսի անթիւ ու անխոնջ զօրացը դէմ չկրնար դնել՝ Կովկասու լեռները փախաւ: Հասկըցաւ Պոմպէոս որ վտանգաւոր է անոր ետևէն երթալը, Միջագետաց տիրեց ու Լիբանան անցաւ (64):

[2] Ան միջոցին ալեզարդ. Թագաւորն Միհրդատ կը ջանար Հռովմայեցւոց դէմ հանելու Սկիւթացիքը, Թրակացիքն ու Գաղղիացիքը: Զարմանալի գործունէութեամբ մը զօրք, ստակ ու նաւ կը ժողվէր, զէնքեր ու մեքենաներ կը շինէր, և իր ճարտար ասպետացը Իտալիոյ ճամբաներուն յատակագիծը հանել կուտար: Ան ատենը սկսան Հռովմայեցիք Պոմպէոսի բռնած ճամբան վար զարնել, և զօրքը անոր դէմ գանգատիլ. բայց

---

[1] Պոմպէոս երբ յաջորդեց Ղուկուղղոսի:
[2] Միհրդատ ինչպէս մեռաւ:

բաղդը դժուարութեան յաղթեց: Վասն զի սուրհանդակներ հասան, աւետիս տուին որ Միհրդատ մեռեր է՝ աս կերպով. իր փառնակ որդին ապստամբեցաւ, ու եկաւ զհայրը բերդին մէջ պաշարեց որ բռնէ Հռովմայեցւոց մատնէ: Շատ ջանաց Միհրդատ հայրատեաց որդւոյն գութը շարժելու. երբոր յուսահատեցաւ, բոլոր կանանցը ու հարճերուն թոյն խմցուց, ինքն ալ թունալից գաւաթը առաւ որ խմէ. ոտքն ընկան իր երկու աղջիկները (որոնց մէկը Կիպրոսի՝ մէկալն ալ Եգիպտոսի թագաւորին հետ նշանուած էին) ու աղաչեցին որ նախ իրենք խմեն թոյնը. խմեցին, ու հօրերնուն ոտքը ընկած մեռան: Մէկէն ինքը Միհրդատ ալ խմեց. բայց որովհետև ինքը միշտ իր կենսական ոյժը ազդու դեղերով զօրացընելու վարժած էր՝ թոյնը շուտով չազդեց իրեն: Տեսաւ որ զօրքը բերդին տիրելու վրայ է, և ինքը ոխերիմ թշնամեաց ձեռքը պիտի իյնայ. Գաղղիացի զինուորի մը օգնութեամբը զարկաւ ինքզինքը սպաննեց, քառասուն տարի Հռովմայեցւոց պէս տիեզերապատ տէրութեան մը դէմ կռուելէն ետև (63):

[1] Աս կերպով Ասիոյ տիրելէն ետքը՝ Պոմպէոս Հռոմ դարձաւ որ մեծ յաղթանակ ընէ: Երկու օր քշեց ան յաղթանակը և շատ փառաւոր եղաւ. հանդեսին առջևէն կը տանէին այլևայլ տախտակներ՝ որոնց վրայ գրուած էին նուաճուած ազգերուն անունները, այսինքն Պոնտոս, Հայաստան, Կապադովկիա, Պափղագոնիա, Մարաստան,

---

[1] Ի՞նչ յաղթանակ ըրաւ Պոմպէոս:

Կողքիս, Վիրք, Աղուանք, Ասորիք, Կիլիկիա, Միջագետք, Փիւնիկէ, Պաղեստին, Հրէաստան, Արաբիա և Ծովու աւազակները։ Աս ալ գրուած էր թէ յաղթանակած երկիրներուն մէջ հազար բերդ, երեք հարիւր քաղաք և ութը հարիւր նաւ առեր է. հասարակաց եկամուտը յիսուն միլիոն դրամակշիռէն * ութսունուերկու միլիոնի հասուցեր է, հասարակաց գանձին վրայ հարիւր միլիոն դրամակշիռ աւելցուցեր է, անկէց զատ՝ ամէն զինուորի ալ տասնըհինգ հազար դրամակշիռ բաժին ընկեր է։

¹ Աս ամէն պատերազմներու և դիպուածներու ատեն ալ Լատինացւոց գրագիտութիւնը կը կատարելագործուէր ։ Պակուվիոս Տարենտացին ողբերգութիւններ և երգիծաբանութիւններ կը շարադրէր. Ղուկուղիոս ասպետը երգիծաբանութեան մէջ մեծ անուն կը հանէր՝ իշխանաց մոլութիւններն ու ծաղրական բաները նշաւակելով։ Պատմագիրներ ալ կային որ գեղեցիկ կերպով չըլլայ նէ ալ՝ անցած գնացած բաները տեղն 'ի տեղը կը գրէին, ինչուան Սիղլան ալ իր գլխէն անցած բաները գիր կ'անցընէր. Պողիբիոս անունով մէկն ալ Մեծին Պոմպէոսի պատմութիւնը կը գրէր։ Ճարտասանութիւնը վերջի կատարելութեան հասած էր, և մեծ անուն հաներ էին

---

¹ Գրագիտութիւնը ի՛նչպէս էր ան ատենը Հռովմայեցւոց մէջ։

* Դրամակշիռը Յունաց հին արծըթէ ստակ մըն էր որ մէկ Փրանքէն քիչ մը պակաս կ'արժէր։

ան կողմանէ երկու Գրակքոսեանք, Մարկոս Անտոնիոս, Սուղպիկիոս Գաղլոս, Որտէնսիոս, և մանաւանդ Կիկերոն՝ Հռովմայեցւոց ճարտասանից պարագլուխն ու հին ատենի մեծահանճար մարդկանց մէկը։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Կեսարու երիտասարդութիւնը. — Կատիլինեայ դաւադրութիւնը. — Կիկերոնի հայր հայրենեաց ըլլալը. — Եռապետութիւն. — Գաղղիոյ աշխարհակալութիւնը. — Վերկինգեդորիքս. — Կրասոսի Պարթևաց վրայ արշաւանքը. — Կրասոսի մահը։ (63-50)։

[1] Պոմպէոս Հռոմէն ելած ատենը միտքը դրած էր որ քաղաքը խաղաղութեան մէջ է ու խաղաղ պիտի մնայ։ Կիկերոն և Կրասոս վնասակար մարդիկ չէին երևնար իրեն. վասն զի Կիկերոն մեծ համարում ունէր Պոմպէոսին վրայ. Կրասոս ալ անքաւ հարստութեամբը հանդերձ ամենևին իրեն վախ մը չէր ձգեր, որովհետև որչափ ալ անիկայ ասդին անդին տոմսակներ կպցնէր թէ սա քաղաքը պիտի գնեմ՝ ամէնքը իր ագահութիւնը կը ճանչնային։

[2] Այն ատենները քաղաքին մէջ ուրիշ երիտասարդ մը կար՝ ուսկից աւելի պէտք էր վախնալ, և էր Յուլիոս Կեսար։ Անիկայ կ'ըսէր թէ իմ մայրս

---

1 Պոմպէոսին Հռոմէն դուրս ելած ատենը քաղաքին վիճակը ի՞նչպէս էր։

2 Ո՞վ էր Յուլիոս Կեսար։

Աստղիկն է, և հայրս Անկոս Մարտիոս Թագաւորն է, որոյ ինքզինքը Թագաւորական փառաց և աստուածական պատուոյ արժանաւոր կը համարէր. բայց վարքով ըսածին հակառակը կը ցուցընէր. այնպիսի զեղխ, պարտքի տակ ընկած ու անուանարկ երիտասարդը տեսնողը չէր կրնար կարծել որ անիկայ օր մը մեծ մարդ ըլլայ: Միայն Սիղղան ճանչցեր էր զինքն ու տեսնով ինչ ըլլալիքը գուշակեր էր՝ Կեսարին տասնըեօթը տարեկան եղած ատենները: Վասն զի երբոր անգամ մը իրեն դէմ ըրած անհնազանդութեանը համար վճիռ. հանեց որ աքսորուի Կեսար, բոլոր ազնուականները գնացին աղաչեցին որ իրենց համար ներէ անոր. Սիղղան ալ շատ տարակուսելէն ետքը ըսաւ. "Որովհետև կ'ուզէք, կը շնորհեմ ձեզի. բայց գիտցած ըլլաք որ աս տղուն վրայ ես շատ Մարիոսներ կը տեսնեմ": Քիչ մը ետքը ուրիշ զարմանալի յանդըգնութիւն մըն ալ ցըցուց Կեսար. Փոքր Ասիոյ մէջ աւազակները զինքը բռնեցին, ու քսան տաղանդ ստակ ուզեցին որ արձըկեն. Կեսար վրանին ծիծաղելով ըսաւ. "Քիչ ուզեցիք, ես ձեզի յիսուն տաղանդ (երկու հարիւր յիսուն ֆրանք) կը վճարեմ. բայց մէյմը որ ազատիմ՝ ամէնքնիդ ալ կախել պիտի տամ": Իրաւցընէ ազատեցաւ, ու խօսքը կատարեց:

[1] Երբոր դեռ մէկ նշան մը չկար Սիղղային գուշակութեանը կատարուելուն՝ յանկարծ օր մը տեսան որ Մարիոսի Կիմբրացւոց վրայ ըրած յաղ-

---

[1] Կեսարին անունը ինչ առթով սկսաւ ճանչցուիլ:

Թուլթեան արձանները նորէն կապիտոլիոն բերուեր են՝ ուսկից որ հաներ էին։ Մէկը մեկալը կը հարցնէին թէ ով կրնայ ըրած ըլլալ աս յանդուգն գործողութիւնը. ամենուն կասկածը Կեսարին վրայ գնաց, ու կասկածնին շուտով հաստատուեցաւ։ Մարկոսի կուսակիցները նորէն դուրս ելան ու Կեսարը իրենց գլուխ գրին։ Կիկերոն չէր ուզեր աս բանիս հաւատալ. վասն Կեսար ալ քաղաքական բաներու մէջ խառնուելու ջանք չէր ցուցըներ. իր զուարճութեանցն ու ինքզինքը զարդարելու կը նայէր. “Երբոր անոր ոլորած շտկըտած մազերուն կը նայիմ, կ՚ըսէր Կիկերոն, և կը տեսնեմ որ հազիւ մատուըներուն ծայրովը կը քերէ գլուխը, չեմ կրնար կարծել որ այնպիսի մարդ մը կարենայ տէրութիւնը կործանելու հնարքներ մտմտալ„։ Բայց երբոր տեսաւ Կեսարին իրաւցընէ մեծութեան եւնէ ըլլալն ու քրմապետութեան, պրետորութեան ու հիւպատոսութեան հասնիլը, պէտք եղաւ որ կարծիքը փոխէ։

[1] Կեսար քաղաքական գործոց մէջ մտնելուն պէս տակնուվրայ եղաւ Հռոմ։ Սերգիոս Կատիլինա ազնուականը որ խելքին և ուժին կողմանէ անուանի, բայց բարուց անկարգութեամբը վատ ու արհամարհելի մարդ մըն էր, մէկ դաւակցութիւն մը ըրաւ՝ որուն մէջ շատ հռովմայեցի երիտասարդներ ալ մտան։ Որչափ որ ախտամոլ ու պարտքի տէր մարդիկ կային՝ քովը կը ժողվէր ու կը յորդորէր որ չվախնան՝ ամէն տեսակ յանցանք ընեն. և գլխաւոր ընելիքնին էր հիւպատոսներն

---

[1] Կատիլինայի դաւաճանութիւնը ինչ էր։

ու ծերակոյտը սպաննել, և քաղաքին կրակ տալ: Աս դաւաճանները գիշեր մը կերուխումի առեն մարդու արիւնով խառնած գինի խմելով երդում ալ ըրեր էին կ՚ըսեն, և Կատիլինա սպառնալից խօսքերով սկսեր էր դուրսն ալ իր միտքը յայտնել: Անկէ ետքը դուրս ելլելու առենը սկսաւ Կիկերոն միշտ վերարկուին տակէն զրահ հագնիլ, ու երբեմն կամաւ ալ կէս մը կը բանար վերարկուն որ ինչ մեծ վտանգի մէջ ըլլալնին հասկըցնէ իրեններուն:

1 Քիչ առենէն Կիկերոն իր հայրենեաց վտանգն ու կործանումը յայտնի տեսնելով՝ արիութեամբ ժողվեց ծերակոյտը և անոնց առջևը Կատիլինային դաւաճանութիւնը դուրս հանեց: Կատիլինա յանդգնեցաւ եկաւ որ ինքզինքը արդարացնէ. ամեններին մէկը բարև չտուաւ անոր. ծերակուտին անդամները քովէն հեռացան, ու իր նստարանը ամբողջ պարապ մնաց: Հոն Կիկերոն չկարենալով բարկութիւնը բռնել՝ կայծակնացայտ ճարտասանութեամբ մը դաւաճանին վրայ յարձակեցաւ ու հրամայեց որ շուտ Հռոմէն դուրս ելլէ: Կատիլինա ուզեց պատասխան տալ, բայց հանդիսականաց աղաղակէն իր ձայնը չլսուեցաւ, չորս կողմէն երեան 'ի վեր Թշնամի հասարակաց ու մարդասպան կանչեցին զինքը: Կատղեցաւ Կատիլինա ու ծերակուտէն դուրս ելաւ կանչելով. "Ինծի դէմ կրակ կը վառէք. վառեցէք, հոգ չէ, ես անիկայ աւերակներու տակ կը մարեմ,,. ու ինքը գնաց Ետրուրիա, հոն սկսաւ զօրք ժողվել:

---

1 Կիկերոն Լ՚ուչալէս փճացուց Կատիլինեանց դաւակցութիւնը:

1 Ծերակոյտը քաղաքին ապահովութիւնը Կիկերոնին յանձնեց: Ան ատեն աս հռչակաւոր ատենախօսը իր Կատիլինեանք ըսուած հռչակաւոր ատենաբանութիւններն ըրաւ, և յայտնի ցըցուց որ ան դաւակիցները մատնիչ են հայրենեաց. ուստի զամէնքն ալ բանտ դրին ու սաստիկ տանջանքներով մեռուցին: Կիկերոն անկէ ելաւ հրապարակը գնաց, տեսաւ որ Կատիլինայի համախոհներէն շատը հոն ժողվուեր, առանց գիտնալու թէ իրենց մեկալ դաւակիցները բանտին մէջ ինչ տանջանքներ կը քաշեն՝ գիշերուան կը սպասէին որ երթան բանտարկեալները ազատեն: Կիկերոն բարձր ձայնով ըսաւ անոնց. " Ազատեցան անոնք ": Ան ատեն ամէն կողմէն ժողովուրդը սկսաւ ծափ զարնել, և քովը եղող քաղաքացիները զինքը Ազատարար հայրենեաց ու Նոր հիմնադիր Հռոմայ կը կանչէին: Եւ որովհետև իրիկուն էր, ամէն փողոցներու մէջ կանթեղներ ու ջահեր վառեցին, կանայք ալ տանիքները կը լուսաւորէին որ Կիկերոն ճարտասան հիւպատոսը պատուեն ու կարենան տեսնել զինքը:

2 Կատիլինա երկու լէգէոն զօրք ժողվեր էր. բայց երբոր իր կուսակցաց մահը իմացուեցաւ, զօրայը շատը քովէն հեռացան. ինքն ալ յուսահատած՝ սկսաւ վրան խրկուած Անտոնիոս հիւպատոսին դէմ պատերազմիլ: Երբոր տեսաւ որ

---

1 Հռովմայեցւոց ապահովութեանը ինչ կերպով պատճառ եղաւ:

2 Կատիլինա ինչպէս մեռաւ: — Կիկերոնի ինչ պատիւ ըրին Հռովմայեցիք:

զօրացը շատը ջարդուեցան ու զօրապետները մեռան, պատերազմին սաստկացած տեղը նետուեցաւ ու վիրաւորուած ընկաւ մեռաւ: Կիկերոն Հռոմը ազատեր էր, և հիւպատոսութենէն ելլելու ատենը՝ տրիբուններուն անոր թշնամիներէն գրգռուած՝ ուզեցին որ ինքն ալ ան սովորական երդումն ընէ որ ամէն հիւպատոսները պաշտօնէ ելլելու ատեն կ'ընէին. Կիկերոն ան երդման ձևը փոխեց ու ըսաւ. “Կ'երդնում որ հասարակապետութիւնը ես ազատեցի”: Իրաւցընէ Հռոմ ալ զինքը հայր հայրենեաց անուանեց. և այս այնպիսի պատուանուն մըն էր որ ինչուան ան ատենը մէկու մըն ալ չէր տրուած:

[1] Ան միջոցին Պոմպէոս ալ իր արշաւանքներէն ետ դարձաւ: Ժողովուրդը սիրով ընդունեցաւ զինքը. վասն զի այնչափ ուշանալուն վրայ սրդողեր էր: Թէատրոնին մէջ երբոր դերասանին մէկը ձևացուցած խաղին մէջ աս խօսքս ըսաւ (որ ճիշդ Պոմպէոսի նկարագիրն էր). “Դուն մեր թշուառութեամբը մեծ եղար”, չորս կողմէն ծափ զարկին, գովեցին: Ծերակուտէն ալ աղէկ ընդունելութիւն մը չգտաւ Պոմպէոս, և Ասիոյ մէջ ըրած գործողութեանցը շատ դէմ խօսեցան Կիկերոն, Կատոն և Ղուկուղղոս: Ան ատենը ինքն ալ Կրասոսի ու Կեսարու հետ սկսաւ բարեկամանալ, և անոնց հետ եռապետութիւն մը կազմեցին, որուն առաջին գործն եղաւ Կիկերոնը աքսորել. ան ալ գնաց Դիւրրաքիոն (Տուրացցոյ) քաշուեցաւ, և

---

[1] Պոմպէոս Հռոմ որ դարձաւ՝ ինչպէս ընդունեցան զինքը:

իր ուսմանցն ու փիլիսոփայութեանը հետ ըլլալով կը մխիթարուէր։ Կիկերոնին Հռոմէն ելած օրը քանի հազար ասպետ սուգ բռնեցին։

[1] Եռապետները բոլոր հռոմէական տէրութիւնը մէջերնին բաժնեցին. Կեսար յայնկոյս Ալպեանց Գաղղիան առաւ. Պոմպէոս Իտալիան իրեն պահեց, Կրասոսին ալ բաժին ինկաւ որ Պարթեւաց դէմ պատերազմի երթայ (60)։

[2] Այն ատենը քառասունուհինգ տարեկան էր Կեսար. իր վատուժ ու հիւանդոտ մարմինը և ձերմակ ու տժգոյն մորթը՝ չինծու զարդարանքներով չէր կրնար պարտըկել. բայց ան մեղկութեանցը հետ ունէր նաև պատերազմական հոգի մը, ընդարձակ ու խորունկ մտածմունքներ, զարմանալի գործունէութիւն, հաստատուն կամք ու անկուշտ իշխանասիրութիւն։ Ոտքը Գաղղիա դնելուն պէս Կեսար բոլորովին նոր մարդ դարձաւ։ Իր տկար խառնուածքը պատերազմական կրթութեանց մէջ զօրացուց. բռնի կը քալէր, չարքաշ կեանք կ՚անցընէր, բացօթեայ տեղուանք կը պառկէր ու ամէն տեսակ աշխատութեանց իր մարմինը վարժեցընելով հիւանդութեանցը դէմ կը պատերազմէր, և միշտ զբաղած էր. ինչուան ճամբորդութեանը մէջ ալ շատ գրագիրներու միանգամայն տուն կուտար որ թուղթ գրեն։ Ձեռուըները ուսերուն վրայ դրած՝ ձին սանձարձակ կը վազցընէր. պատերազմի մէջ թէ արև ըլլար և թէ

---

1 Եռապետները ինչպէս բաժնեցին մէջերնին տէրութիւնը։

2 Կեսար ինչ բնաւորութեան տէր եղաւ։

անձրև՝ գլուխը բաց՝ ոտքի վրայ կեցած կը հրամայէր ու Թշնամւոյն վրայ կը յարձակէր ։ Կարգէ դուրս քաջութիւններովը քիչ ատենի մէջ աշխարհիս անուանի զօրավարաց կարգն անցաւ, և ան ատենի Գաղղիացւոց յաղթեց ։ Աս աշխարհակալութեան համար ինը տարի աշխատեցաւ, և ան միջոցին ութը հարիւր քաղաքէն աւելի առաւ, իրեք հարիւր այլևայլ մանր ազգեր նուաճեց, և կարգաւորեալ պատերազմով իրեք միլիոն Թշնամւոյ հետ կռուեցաւ, որուն երրորդ մասը միայն կրցաւ մահուընէ կամ գերութենէ ազատիլ ։

1 Գաղղիա յայնկոյս Ալպեանց ըսուած երկրին սահմանն էր հիւսիսէն Հռենոս ու Գերմանական ծովը, արևմուտքէն Ովկիանոսը, հարաւէն Իբերեանց երկիրը, այսինքն Սպանիան, ու Միջերկրական ծովը, արևելքէն Հռենոս և Իտալիան, և իրեք մաս կը բաժնուէր, մէկուն մէջ կը բնակէին Բելգիացիք կամ Պելճիացիք, մէկալին մէջ Ակուիտանացիք, երրորդին մէջ Կեղտք ։ Աս իրեք ազգերն ալ թէ լեզուով և թէ բնաւորութեամբ իրարմէ տարբեր՝ ուրիշ այլևայլ մանր ցեղեր ալ բաժնուած էին, ու իրարմէ անկախ՝ ամենքն ալ մէյմէկ գլուխ ունէին ։ Իրենց քուրմերը որ Դրուիդ կ'ըսուէին իրենց աստուածներուն մարդազոհեր կ'ընէին ։ Երևելի քաղաքներն էին, Բելգիացւոց երկրին մէջ Աւգուստա Տրեւիրեանց (Թրէվ), Գեսորիակոն (Պուլօնը), Դուրոկորտորոն (Ռէնս)․ Կեղտաց երկրին մէջ Բիբրակտոն (Օ-

---

1 Գաղղիա յայնկոյս Ալպեանց ըսուածը ի՞նչ երկիր էր ։

Թեօն), Սենոնք (Սանս), Լուտետիա (Փարիզ) որ պզտիկ գիւղաքաղաք մըն էր՝ ուր ձկնորսներ կը բնակէին. Աւտրիկոն (Շարթըր) ուր դրուիդները ժողով կ'ընէին, Գենաբոն (Օռլէան). Ակուիտանիոյ մէջ Աւարիկոն՝ (Պուրժ) Գաղղիոյ ամենէն մեծ ու գեղեցիկ քաղաքը. Լեմովիկէ (Լիմոժ), Տոլոզա (Թուլուզ՝) մեհեաններովը ու նուիրական լիճերովը անուանի. Բուրդիգալա (Պորտօ) որ Հռոմի պէս ծերակոյտ ու հիւպատոսներ ունէր։

1 Գաղղիացիք անդադար իրարու դէմ պատերազմելով տարիները օգնութեան կանչեցին։ Սեկուանք (Ֆրանշ-Քոնթէ գաւառին բնակիչները) Եդուեանցմէ նեղուելով Գերմանացիքը իրենց օգնութեան կանչեցին. Եդուեանք ալ երկու բաժնուեցան, կէսը Հելուետիացիներէն կամ Զուիցերացւոցմէ օգնութիւն խնդրեցին, կէսն ալ Հռովմայեցւոց ապաւինեցան։

2 Կեսար երբոր Գաղղիա մտաւ, հոն իրեք հարիւր վաթսունըութը հազար Հելուետիացի գտաւ՝ արք և կանայք ու տղաք, որ քաղաքնին ու աւաննին այրելէն ետքը եկեր էին որ Կեղտաց երկիրը բնակին. անոնց մէկ մասը կոտրեց, մէկալներն ալ ստիպեց որ երթան նորէն իրենց երկիրը քաղաքնին շինեն բնակին։ Կը մնային Գերմանացիք որ աւելի ուժաւոր ալ կ'երևնային։ Իրենց Արիովիստ Թագաւորը զուլցեր էր Կեսարին որ հանդարտ

---

1 Գաղղիոյ մէջ ուրիշ ի՞նչ ազգեր կային։
2 Կեսար ի՞նչպէս մտաւ Գաղղիա, ու առաջին յաղթութիւնը ո՞րն եղաւ։

կենայ՝ իրեն հետ չզարնուի. «Չես գիտեր դուն կ՚ըսէր, Գերմանացւոց ի՞նչ մարդիկ ըլլալը: Տասնըչորս տարի է որ ծածքի տակ չենք մտած. մարդ մը չկայ որ Արիովիստոսին վրայ յարձըկի ու չզղջայ»: Գաղղիացի վաճառականներն ալ նոյն բանը կը հաստատէին, ու անոնց հասակին, ուժին ու զազանութեանը վրայ զարմանալի բաներ կը պատմէին: Սարսափը տարածուեցաւ Հռովմայեցւոց բանակին մէջ. դեռահասակ տրիբունները, մանաւանդ մէջերնէն աւելի ազնուականները՝ սկսան լալ ու կականին ընել. ան որ տեսաւ զօրքը՝ անոնց սիրտն ալ վախը տիրեց, ու սկսան ոտք կոխել թէ մենք պատերազմի չենք երթար: Կեսար առանց այլայլելու «Հոգս չէ, ըսաւ, թէ որ ուրիշները հետս չգան նէ՝ տասներորդ լեգէոնը միայն հետս կ՚առնեմ, վասն զի անոնց վրայ վստահ եմ»: Իր խօսքին վրայ ամենուն միտքը փոխուեցաւ, ու քաջութեամբ թշնամեաց վրայ յարձակեցան, և անոնցմէ ութսուն հազար հոգի մեռուցին, մնացածներն ալ Հռենոսէն անդին անցան:

¹ Բեղգիացիք Հռովմայեցւոց անկարծելի յաջողութիւնը տեսնելով՝ մեծ դաշնակցութիւն մը ըրին մէջերնին: Կեսար անոնց առջեն առաւ, ու անտառներուն ու ճահիճներուն մէջը մտաւ՝ բոլոր անցած տեղերէն գեղերը այրելով: Հռենոս գետէն Լուար գետը անցաւ, Գերմանիայէն ալ Ալբիոն կղզին (որ է Անգղիա կամ Մեծ Բրիտա-

---

¹ Բեղգիացւոց ի՞նչպէս յաղթելը ու ի՞նչ կերպով Ալբիոն անցաւ:

նիա), Ժողովրդեան մէկ մասը ջարդեց, մնացածն ալ գերի ըրաւ:

1 Կեսար Բրիտանիա ըրած երկու արշաւանացը մէջ մեծամեծ վտանգներէ ազատեցաւ: Բրիտանիացիք իր զօրացը մեծ ջարդ տուին, և նաւերուն շատը փոթորիկով մը խորտակեցան: Անկէց զատ իր Գաղղիացի դաշնակիցներէն մարդ չէր ուզած հետը գալ. վասն զի իրենք Ալբիոնը սրբազան տեղ մը կը սեպէին, և կը կարծէին որ մարդուս հոգին մեռնելէն ետքը հոն կ'երթայ: Կեսար Գաղղիա դառնալու ատենը սովի պատճառաւ հարկադրուեցաւ զօրաց մեծ մասը ցրուելու: Հիւսիսակողմը բնակող Գաղղիացիք յարմար ատեն գտնելով Հռովմայեցւոց մէկ լեգէոնը բռնեցին ջարդեցին. հասաւ Կեսար, ու անոր կոտորածին համար չարաչար վրէժխնդրութիւն ըրաւ: Ասոր վրայ ամէնքն ալ տաք եղան. և ապստամբութեան առջի նշանը Գենաբոն քաղաքին բնակիչները տուին՝ մէջի Հռովմայեցի պահապան զօրքը ջարդելով, և իրենց գլուխ դրին Արուեռնացի քաջ ու ճարտար Վերկինգետորիքս երիտասարդը (52):

2 Աս ապստամբութեան լուրը Իտալիոյ մէջ եղած ատենը առաւ Կեսար, շուտ մը ձիւներու մէջէն Կեւեննեան լեռներէն անցաւ, ու սուրհանդակի արագութեամբ յանկարծ Արուեռնացւոց լեռնոտ երկիրը հասաւ: Առջին եղաւ Վերկինգետորիքս՝ իրենները պաշտպանելու համար, բայց

1 Ան միջոցին Ի՞նչպէս տաք եղան Գաղղիացիք:
2 Գաղղիացիք Ի՞նչ հնարքով ստիպեցին Կեսարը ետ քաշուելու:

չկրցաւ բոլորովին արգիլել. ան ատեն ըսաւ թէ Հռովմայեցիքը սովի բռնելով միայն կրնանք յաղթել անոնց, ուստի պէտք է մեր քաղաքները կործանենք ու արտերը ապականենք, և ան խորհուրդը կատարեցին: Կեսար սկսաւ դէպ 'ի Հռովմայ սահմանը քաշուիլ, բայց Գաղղիացիք անդադար ետևէն ընկած՝ զինքը կը նեղէին. ալ չկրցաւ համբերել, յանկարծ ետևը դարձաւ ու մեծ ջարդ մը տալով զամենքն ալ ցրուեց փախուց:

1 Ետքը գնաց Ալեսիա քաղաքը պաշարեց՝ ուր ութսուն հազար զօրքով քաշուեր էր Վերկինգետորիքս: Աս քաղաքը բարձր բլրի մը վրայ շինուած էր, և շրջապատն էր տասուերկու մղոն: Բոլոր Գաղղիա իր զօրավարին օգնութեան վազեց: Կեսար իր բանակովը երկու հարիւր յիսուն հազար բարբարոսներէ պաշարուեցաւ, և զարմանալի ճարտարութեամբ զամենքն ալ քշեց հալածեց: Վերկինգետորիքս տեսնելով որ անկէց ետքը ամէն ջանք անօգուտ է, գեղեցիկ զէնքերով զարդարուած՝ գնաց Կեսարին առջևն ելաւ, ու թուրը՝ նիզակն ու սաղաւարտը նետելէն ետքը՝ լուիկ գնաց Կեսարին ոտքին քովը նստաւ (80):

2 Անդին Կրասոսին բաները անբեր ու լեռնոտ Պարթևաստանին մէջ ձախորդ կ'երթար: Արաբացի զօրապետ մը եկաւ՝ ուզեց Հռովմայեցւոց զօրացը առաջնորդութիւն ընել. ընդունեցան զինքը

---

1 Ալեսիա քաղաքը պաշարած ատենը ի՞նչ վտանգէ ազատեցաւ Կեսար:

2 Կրասոսի Պարթևաց դէմ ըրած արշաւանքը ի՞նչպէս եղաւ:

Հռովմայեցիք. և երբոր Միջագետաց ընդարձակ դաշտերը մտան՝ ուր ոչ ծառ, ոչ կանաչեղէն և ոչ առուակ մը կար, մէյմէն ալ արևելքէն սկսան Թշնամւոյն անհամար գունդերը երևնալ. Հռովմայեցիք սկսան իրենց առաջնորդը փնտռել. բայց անիկայ աներևոյթ եղեր էր: Քանի որ Պարթևք մօտեցան՝ իրենց պղնձէ թմբուկներով զարդարուած Թմբուկներուն ձայնը սկսաւ լսուիլ. զէնքերնուն ալ ծայրը բացին ու սաղաւարտներն ու զրահները սկսան այնպէս փայլփլիլ որ հեռու կեցողներուն ալ աչքը կ'առնէր: Սարսափեցան Հըռովմայեցիք, ու չորս կողմէն պաշարուեցան. Պարթևք սոսկալի ջարդ մը տուին անոնց, և իրենց նետերը անձրևի պէս վրանին կը թափէին: Ան ատենը Կրասոսի որդին Պոպղիոս՝ գաղղիացի գունդ մը հետն առած՝ յարձակեցաւ քաջութեամբ Թշնամեաց վրայ. Պարթևք փախչիլ ձևացուցին, և յանկարծակի վրան վազելով զամէնքն ալ ջարդեցին. Պոպղիոսին ալ ձեռքը վիրաւորուեցաւ, և ինքզինքը մեռցնելու համար Թևը ոյժ չունենալուն կողը զինակիրին բացաւ որ զարկաւ զինքն ու սպաննեց:

¹ Որդւոյն մահուանը վրայ խեղճ Կրասոսին խելքը գլխէն գնացած՝ երբոր փախչիլ կը մտածէր, Պարթևաց առաջապահը Սուրէն՝ բարձր բլուր մը վրայ ելած կը կանչէր Կրասոսին. " Ինչու ան հիմա Պարթևաց զօրութիւնը հասկըցար, հիմա ալ եկուր անոնց մարդասիրութեանը համը առ " կ'ըսէր ու զինքը կը հրաւիրէր որ գայ հետը

¹ Կրասոս ի՞նչպէս մեռաւ :

հաշտութիւն ընել ։ Գիտէր Կրասոս որ հաշտութեան տեղ մահը կը սպասէր հոն իրեն , բայց զօրացը աղաչանքէն ու սպառնալիքներէն ստիպուած՝ ելաւ գնաց , ու բոլոր քովի մարդիկներովը սպաննուեցաւ ։ Այն արշաւանքին մէջ երեսուն հազար Հռովմայեցի ջարդուեցան (53) ։

## ԳԼՈՒԽ ԻԴ .

Պոմպէոսի անհոգութիւնը . — Կեսարու Ռուբիկոն գետէն անցնիլը . — Պոմպէոս ու ծերակոյտը Իտալիայէն կ'ելլեն . — Կեսար անոնց ետևէն կ'երթայ Եպիրոս . — Փարսաղիայ պատերազմը . — Պոմպէոսի մահը . — Կեսարի յաղթանակը . — Բրուտոսի ու Կասիոսի դաւակցութիւնը . — Կեսար ծերակոյտին մէջ կը սպաննուի ։ (58–44) ։

¹ Պոմպէոս անցած փառացը վրայ գոհ ըլլալով՝ ուրիշ նոր փառքեր ստանալու հոգ չէր կընար . ան միջոցին որ Կրասոս Պարթեւացներուն տակը մեռաւ , Կեսար՝ մեծամեծ յաղթութիւններով ժողովրդեան աչքը կը մտնէր . իսկ ինքը Պոմպէոս զուարճութեանց ետեւէ եղած՝ թէատրոն մը շինել տուաւ ու խաղերը շատցուց ։ Կը նզովէր ժողովուրդը անոր անգործութիւնը , ու չէր ուզեր զինքը հանգիստ թողուլ , բայց Պոմպէոսի հոգը չէր . Կիկերոն աքսորանքէն դարձած՝ Կեսարին վրայ տարբեր կերպով կը մտածէր , և ան երկու նախանձընդդէմ ոսոխներուն մէջ կեցած

---

¹ Պոմպէոս ան ատենները Հռոմ ինչ կ'ընէր ։

ոչ մեկուն հաճոյել կը ցուցնէր՝ ոչ մեկալը կը դա-
տապարտէր, Պոմպէոսին հետ ունեցած հին բա-
րեկամութեանը համար ։

1 Ցայնկայա Ալպեանց ըսուած Գաղղիոյ մէջ գտնուելով Կեսար հիւպատոսութեան ետեւէ էր․ բայց աս բանս օրինաց դէմ էր, վասն զի Հռոմէն դուրս եղած մարդը չէր կրնար հիւպատոս ընտրուիլ ։ Պոմպէոս չհամարձակեցաւ անձամբ Կեսարին դէմ խօսելու, բայց իր կուսակիցները գըրգռեց ։ Ան ատեն Կեսար ելաւ ըսաւ թէ ես զէնքերս կը թողում՝ թէ որ Պոմպէոսն ալ թողու ։ Երկու տրիբունները ան առաջարկութիւնը հաստատելնուն համար Հռոմէն վռընտուեցան ։ Մարկեղոս հիւպատոսը ծերակուտին հետ Պոմպէոսին գնաց ու ըսաւ․ "Ալ տես թուրը, հիւպատոսները կը հրամայեն որ երթաս առալ Կեսարին հետ պատերազմիս ու հայրենեաց օգնես․ քեզի կը յանձնենք Կապուայի ու Իտալիոյ զօրքը, և հրաման կուտանք որ ուզածիդ չափ ալ նոր զօրք ժողվես"։

2 Կեսար օրէնքը արհամարհեց, և պատերազմը հրատարակուեցաւ ։ Անցաւ Հռուբիկոն գետէն՝ որ իր գաւառին սահմանն էր՝ ու կանչեց․ "Վիճակն ելաւ"։ Տասը լեգէոն միայն ունէր հետը․ բայց Հռովմայեցիք անոր արագութեանը վրայ այնչափ մեծ համարում ունէին որ արդէն զինքը Հռոմին դռները հասած կը կարծէին ։ Պոմպէոս վախցած՝ ծերակուտին ու ժողովրդեան սիրտ

---

1 Կեսար ի՞նչ պատճառաւ Պոմպէոսի ու ծերակուտին հետ աւրուեցաւ ։

2 Ի՞նչպէս մտաւ Կեսար Իտալիա ։

տալ կը ջանար. "Հոգ մ՚ընէք, կ՚ըսէր, մինչև որ ոտքս գետինը զարնեմ, շատ լեգէոններ մէկէն դուրս կը հանեմ. — Զարկ ուրեմն, ատենն է ըսին, ահա Արիմինոնը առնուեր է": Շփոթութիւնը աւելի շատցաւ Հռոմին մէջ՝ երբոր իմացան թէ երկու լեգէոն միայն պատրաստ կայ եղեր, և Կեսար Գաղղիացի, Գերմանացի ու Սպանիացի զօրքերով կայծակի պէս առաջ կուգար: Պոմպէոս քաղաքէն ելաւ ու դէպ 'ի Կամպանիա սկսաւ երթալ՝ իր սոսխին Թողլով Հռոմն ու հարաւային Իտալիան: Բրունդիսիոն (Պրինտիզի) երբոր հասաւ՝ որ Ադրիական ծովուն բերանը նաւահանգիստ մըն է[1], լեգէոններով ծերակուտով ու ազնուականներով անկէց ելաւ նաւ մտաւ ան միջոցին որ քաղաքին մէկալ դռնէն ալ Կեսար կը մտնէր: Կեսար նաւ չունենալով չուզեց թշնամույն ետևէն իյնալ, ու գնաց Սպանիոյ մէջ Պոմպէոսի կողմը եղողներուն ոյժը կոտրելու: Ետքը եկաւ յաղթանակաւ Հռոմ մտաւ, և իշխանապետ ալ ընտրուելով տասնուերկու օրէն ետքը ան պաշտօնէն հրաժարեցաւ, ու Պոմպէոսին վրայ պատերազմի գնաց:

[1] Ցունուարի մէջ (48) Կեսարին նաւատորմիղը դէպ 'ի Դիւրրաքիոն ճամբայ ելաւ, զգուշանալով Պոմպէոսին Բիբուղոս ծովակալին վեց հարիւր նաւերէն որ բոլոր Ադրիական ծովը բռներ էին, և եօթը լեգէոն տարաւ հանեց Եպիրոս: Մնացած զօրքը Բրունդիսիոն կեցաւ, որոնց զօրավարն էր Մարկոս Անտոնիոս: Շատ ջանաց Կեսար զա-

---

[1] Ի՞նչ կերպով Պոմպէոսի վրայ գնաց:

նոնք խօսալու հետ միացընելու, բայց օդերուն դէ-
չաւթեանը պատճառաւ անկարելի կ՚ըլլար, ին-
չուան որ յուսահատած՝ գերիի հագուստով նա-
ւակ մը մտաւ ու Անիոն գետը իջաւ ։ Երբոր գե-
տին բերանը հասաւ՝ հովը անանկ սաստկացաւ որ
նաւավարը վախէն չէր ուզեր առաջ երթալ, ան
ատենը դարձաւ ըսաւ անոր Կեսար. "Ի՞նչ կը
վախնաս, Կեսարն ու իր բաղդը քու հետդ են,,։

¹ Պոմպէոս ան միջոցին մեծ պատրաստութիւն
տեսեր էր. վասն զի տարի մը ամբողջ ժամանակ
ունեցաւ ամէն կողմէն զօրք ժողվելու. Ասիայէն,
Յունաստանէն, կղզիներէն և Եգիպտոսէն հինգ
հարիւր պատերազմական նաւ բերել տուեր էր,
թող անթիւ մանր նաւերը ։ Բանակին թիւն էր
ինը լեգէոն, եօթը հազար հռովմայեցի ասպետ,
շատ հեռաւոր յոյն զօրք, իրեք հազար Կրետացի
աղեղնաւոր, և եօթը հարիւր ձիաւոր ամէն ազ-
գէ. ասոնց ամենուն ապրուստը՝ նաւատորմիղը
կը հոգար առատապէս ։ Պոմպէոսի բանակը կար-
ծես թէ բոլոր հասարակապետութիւնն էր. շատ
թագաւորներ ու իշխաններ կային մէջը, և ծե-
րակոյտը անոնց գլուխը կեցած էր ։ Երկրին դիրքն
ալ պատերազմի շատ յարմար էր ։ Կեսարու կող-
մինները անոր հակառակ՝ քիչուոր էին, նաւատոր-
միղ ալ չունենալով առանց պաշարի անօթու-
թենէն կը մեռնէին. և սակայն խոտի արմատնե-
րէ հաց շինելով կաթի մէջ թաթխած թշնամեաց
բանակը կը նետէին, ուզելով հասկըցընել թէ Կե-
սարին զօրքը այնպիսի կերակրով ալ գոհ կ՚ըլլայ ։

---

¹ Դիւրըմբռնելի պատերազմը ի՞նչպէս եղաւ ։

Երդում ըրեր էին միաբան որ Գոմիդէոսի յաղթելու համար ինչուան ծառի կեղև ալ թէ որ հարկ ըլլայ ուտեն . ամէն օր Թշնամեաց պատնէշներուն վրայ կը յարձըկէին , ու քաջութիւններովնին կը զարմացնէին . բայց Գոմիդէոսեանք որ մի՛ անոնց ետեւէն երթալով ինչուան բանակնին փախուցին զիրենք ու մեծ ջարդ տուին : Այն յաջողութենէն օգուտ քաղել չգիտցաւ Գոմիդէոս . “ Այսօր յաղթութիւնը Թշնամեաց ձեռքն էր , ըսաւ Կեսար , թէ որ զօրավարնին յաղթել գիտնար ” . ու նա քաշուելու փող զարկաւ , իր ոսոխին ձեռքը թողլով քառասունըութը դրօշակ :

1 Դիւրրաքիոնի պատերազմին յաղթութեամբը մեծ վստահութիւն առին Հռովմայեցի ազնուական երիտասարդները, կը կարծէին թէ ալ պատերազմը լմնցաւ , և միայն Թշնամւոյն ետեւէն պէտք է վազել . այնպէս վստահ էին յաղթութեան վրայ որ առաջուց սկսան ամէնքը՝ իրենց համար մէյմէկ պաշտօն ընտրել, և Հռոմ մարդ կը խրկէին որ մեծ հրապարակին մօտ տներ վարձեն , որպէս զի իշխանութիւններու հասնելու ատեն աւելի մօտ ըլլան բազմութեան : Գոմիդէոս ալ անոնց առիպելուն դէմ չկարենալով կենալ՝ իր զանդաղութիւնը թողուց , ու Կեսարին վրայ գնաց որ դէպ 'ի Մակեդոնիա կ'երթար : Երկու բանակները Թեսսաղիոյ Փարսաղիա ( Զաթալճա ) ըսուած դաշտին մէջ ճակատեցան ( յունիսի 20ին 48ին ) : Գոմիդէոս իրեններուն գլուխը կեցած՝ արտում

---

1 Փարսաղեայ պատերազմը ինչ պատրաստութեամբ սկսաւ :

տխուր կը մտածէր · վասն զի չէր ուզեր պատե-
րազմիլ անոնց հետ՝ որոնք սովի բռնելով կրնար
նուաճել · սակայն զինուորաց զուրցեր էր որ դեռ
պատերազմի չսկսած՝ Կեսարին պիտի յաղթեմ։

1 Պոմպէոսի զօրաց մէջ ամենէն աւելի պատե-
րազմի փափաքողները ասպետներն էին՝ իրենց
գեղեցկութեանը՝ փառաւոր զէնքերուն ու կոկիկ
ձիերուն վստահացած։ Կեսար անոնց դէմ դնելու
համար հազար ձիաւոր միայն ունէր, և վեց գունդ
հետևակ զօրք · բայց անդադար կ՚ապսպրէր անոնց
որ ասպետներուն երեսին զարնեն · "Վասն զի
ան գեղեցիկ կաքաւիկները չեն թողուր, կ՚ըսէր,
որ երեսնին վիրաւորուի"։ Իրաւցընէ՝ երբոր տե-
սան ասպետները որ անոնք կ՚ուզեն իրենց երես-
ները վիրաւորել՝ շուտ մը ձգեցին փախան։ Անոնց
փախուստը տեսնելով բոլոր զօրքն ալ շփոթեցաւ
ու փախչող փախչողի եղան, Կեսարին զօրքն ալ
զանոնք ջարդելէն յոգնեցաւ։ Պոմպէոսին բա-
նակը մնաց Կեսար, ու հոն գտաւ վրաններ մըր-
տենիներով զարդարած, կերպասէ անկողիններ,
պատրաստած սեղաններ, արծըթէ ամաններ, ու
գինիով լեցուն սափորներ։ Երկու հարիւր հոգի
միայն կորսնցուց Կեսար։

2 Պոմպէոս փախաւ, ու ձկնորսի նաւակով մը
Լեսբոս կղզին ելաւ · հոն միտքը դրաւ որ Եգիպ-
տոս երթայ՝ Պտղոմէոս ԺԲ Թագաւորին քովը,
և մարդ խրկեց որ գալը անոր իմացընէ · Պտղո-

---

1 Ի՞նչ կերպով լմընցաւ։
2 Պոմպէոս Կեսարէն յաղթուելէն ետքը ի՞նչ ըրաւ։ — Ի՞նչպէս մեռաւ Պոմպէոս։

մէջ խորհուրդ ըրաւ իր իշխանաց հետ որ զա-լուն պէս զինքը ապահովէին ։ Երբոր մօտեցաւ Պոմպէոս, Եգիպտոսի մեծամեծներէն իրեք չորս հոգի պզտիկ նաւակով մը իրեն ընդ առաջ եկան. Պոմպէոս սկսաւ տարակուսիլ՝ այնպէս մինակ առանց պատուոյ զինքը տանիլ ընդունելուն համար. բայց կասկածի նշան տալ չուզելով մտաւ նաւակը ։ Ճամբան ամէնքը լուռ կեցեր էին. երբոր ծովեզերքը մօտեցան, տեսաւ Պոմպէոս որ զօրքը շարուեր կեցեր են, կարծեց թէ իրեն պատիւ ընելու համար եկեր են, քիչ մը սիրտ առաւ. երբոր ծառայքին կռթընած կ'ուզէր դուրս ելլել, կռնըկէն զանակով զարկին սպաննեցին զինքը՝ կնկանն ու որդւոյն աչքին առջևը ։ Իսկ մարմինը իր հաւատարիմ Փիլիպպոս ծառան որ ինչուան ան ատենը քովէն չէր բաժնուած՝ առաւ, ծովուն ջրովը լուաց, հին նաւակի մը կտրակոտէն այրեց, ու աճիւնին վրայ գերեզման մը շինելով վրան ասանկ գրեց. “ Ի՛նչ խեղճ գերեզմանի մէջ է ան մարդուն աճիւնը՝ որուն համար աշխարհք տաճարներ կանգնեց ” ։

[1] Ուշ հասաւ Կեսար Եգիպտոս՝ Պոմպէոսն ազատելու համար. լացաւ անոր թշուառ բաղդին վրայ, ու իր կենացը վտանգովը անոր մահուան վրէժը հանեց ։ Անգամ մը Եգիպտացւոցմէ չպաշարուելու համար՝ նաւակով փախչելու ատենը երբոր տեսաւ որ մարդկանց շատութենէն նաւակը պիտի ընկղմի, մէկէն ծովը նետուեցաւ, ձախ

---

[1] Կեսար ի՞նչ երևելի գործ ըրաւ Եգիպտոս ու Փոքր Ասիա ։

ձեռքովն էր յիշատակարանը վեր բռնած՝ բերնովն ալ ծիրանին, ինչպէս երկու հայրերը գրկաչափ տեղ լողալով էր պալատին առջեւն ելաւ: Անկէ անցաւ Փոքր Ասիա, Մեծին Միհրդատայ փառնակ որդւոյն յաղթեց, և աս արշաւանացը արագութիւնն ու դիւրութիւնը հասկցնելու համար՝ Հռոմ էր բարեկամներէն մէկուն սանկ գրեց. " Եկի, տեսի, յաղթեցի ,, :

¹ Ետքը Աֆրիկէի վրայ պատերազմի գնաց, ուր Պոմպէոսեանք շատ զօրքով պատրաստուեր էին դէմ կենալու, և իրենց գլխաւոր զօրավարներն էին Մետեղղոս Սկիպիոն, Պետրէոս, Կատոն՝ հաշակաւոր Ստոյիկեան փիլիսոփան, և Նումիդիոյ Յուբաս թագաւորը: Կատոն Ուտիկէ քաղաքը քաշուեր էր, և իր վրան առեր էր անիկայ պաշտպանելը: Կեսար՝ Թափսոսի արիւնահեղ պատերազմին մէջ Թշնամեացը յաղթեց, և Ուտիկէի վրայ գնաց: Կատոն երկար ատեն դիմանալէն ետև՝ երբոր տեսաւ որ քաղաքացիք կ՚ուզեն անձնատուր ըլլալ, միտքը դրաւ որ ինքզինքը մեռցընէ: Իրիկուան կերակուրը ուտելէն ետքը Թուրը ուզեց, ելաւ անկողնին վրայ, Պղատոնին հոգւոյ անմահութեանը վրայ գրած տրամախօսութիւնը կարդաց, ու ինչուան կէս գիշեր խորունկ քնացաւ. արթնցաւ, զարկաւ Թուրը՝ ինքզինքը չարաչար վիրաւորեց ու գետին ինկաւ: Ընտանիքը մէկէն ներս վազեցին, տեսան որ արիւնի մէջ կը լողայ, շուտ մը վիրաւորուած հասուցին՝ վէրքը պատեցին:

---

¹ Աֆրիկէի մէջ ինչ յաղթութիւն ըրաւ: — Կատոն ինչպէս մեռաւ:

տուլթիւններ ընել տուաւ․ Հարիւրաւոր կատաղի գազաններ մէկզմէկ կրկէսին մէջ պատըռտեցին, և ամենէն զարմանալին նաւական պատերազմն էր, որ Արիսեան դաշտը մեծ լիճ մը դարձընելով հոն ձևացընել տուաւ։ Ժողովրդեան ուրախութեանը չափ չկար։ Այն զուարճութեանց վերջին օրը Կեսար ծաղկապսակ եկաւ հրապարակը, և ժողովուրդը՝ քառասուն փղի վրայ դրած փառաւոր ճրագարաններու լուսովը զինքը նորէն տունը տարաւ։

¹ Բայց շուտով պէտք եղաւ որ նորէն զէնք առնու Կեսար։ Վասն զի Պոմպէոսին երկու որդիքը Կնէոս և Սեքստոս Սպանիոյ մէջ իրենց հօրը կուսակիցները ոտք հաներ էին։ Կայծակի պէս հասաւ հոն Կեսար, և Մունդա քաղաքին քով երկու եղբարց բանակին դէմ ճակատեցաւ․ երկու կողմէն ալ կատաղաբար յարձակեցան, ու երկար ատեն անորոշ մնաց յաղթութիւնը, և Կեսարու բաղդը վտանգի մէջ էր։ Այն սոսկալի պատերազմին ատենը մէյմըն ալ յանկարծ երկու կողմի զօրքն ալ քաշուեցան՝ լուռ կեցան․ ետքը երբոր նորէն տաքցաւ պատերազմը՝ Հռովմայեցիք սկսան յաղթուիլ ու փախչիլ։ Այն որ տեսաւ Կեսար՝ ձիէն վար ցատքեց, վազեց փախչողները կեցուց, աչքով ձեռքով ու ձայնով անոնց սիրտ տուաւ քաջալերեց, ու թշնամւոյն վրայ յարձակեցաւ, երկու հարիւր նետ իր վահանին վրայ թափեցան ու ինքը չվիրաւորուեցաւ։ Զինուորները տեսնելով իրենց զօրավարին վտանգը, նորէն սկսան պատե-

¹ Անկէց ետքը ի՞նչ պատերազմներ ունեցաւ։

բռնելու։ Բոլոր օրը քաջութեամբ դէմ կեցան թշնամիք. բայց երիկուան դէմ սկսան փախչիլ, և իրենցմէ երեսուն հազար մարդ ջարդուեցաւ։ Կնէօսին գլուխը Կեսարու բերին. իսկ Սեքստոս փախչելով ազատեցաւ (46)։

[1] Երբոր Կեսար Իտալիա դարձաւ, դափնիէ պսակ տուին իրեն, ոսկիէ ու փղոսկրէ աթոռ՝ որ վրան նստի դատաստան կտրելու ատեն. իշխանութիւն ալ տուին որ ոսկիէ ականակուռ պսակով կարենայ թէատրոն երթալ։ Որոշեցին որ անկէց ետքը դրամներու վրայ անոր կերպարանքը տպուի, ու ամէն քաղաքաց և մեհեաններու մէջ իրեն արձաններ կանգնուին. մշտնջենաւոր իշխանապետ անուանեցին զինքը, Իմփէրաթօր կամ Հրամանատար, և Հայր հայրենեաց. Քուինթիլիոս ըսուած ամսոյն անունն ալ անոր անունովը Յուլիոս կամ Յուլիս դրին։ Իսկ ինքը Կեսար իր ժամանակը պարապ չէր անցըներ. տոմարը շտկեց, Վարրոն անունով գիտուն մարդուն յանձնեց որ մատենադարան մը շինէ, Կորնթոս ու Կարքեդոն քաղաքները նորէն շինցուց, Ոստիա նաւահանգիստը մեծցուց, ու Պարթեւացմէ Կրասոսի մահուան վրէժն առնել կը մտածէր։

[2] Նոյն միջոցին ձայն մըն ալ ելաւ թէ Կեսար կ'ուզէ թագաւոր ըսուիլ։ Օր մը քաղաքէն ներս

1 Պոմպէոսի որդւոցն ալ յաղթելէն ետքը ի՞նչ պատիւներ ունեցաւ Կեսար։ — Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ։

2 Թագաւորել ուզելուն վրայ ի՞նչ կասկածներ եղան։

մեռնելու ատենը ոմանք իրեն Թագաւոր կանչեցին . " Իմ անունս Թագաւոր չէ , ըսաւ Յուլիոս , Կեսար է ,, ։ Վասն զի գիտէր որ Թագաւոր անունը խիստ ատելի է Հռովմայեցւոց ։ Ուրիշ հանդիսի օր մըն ալ Մարկոս Անտոնիոս երկու անգամ ուզեց անոր գլուխը Թագաւորական Թագ դնել , բայց Կեսար կամացուկ մը անոր ձեռքը մէկդի հրեց ։ Երկրորդ օրը Կեսարու բոլոր արձանները Թագով պսակուած գտնուեցան . տրիբունները ան անկարգութիւնն ընողները բանտեցին պատժեցին , Կեսար ալ տրիբունները իշխանութենէ ձգեց ։ Քիչ մը ետքը Բրուտոսի արձանին վրայ ասանկ գրուածք մը տեսնուեցաւ . " Երանի՜ թէ կենդանանայիր ,, . Կեսարու արձանին տակն ալ այսպէս գրուած . " Բրուտոս Թագաւորները հալածելով հիւպատոս ընտրուեցաւ , աս ալ հիւպատոսները հալածելով Թագաւոր եղաւ ,, ։

¹ Ան ատենը քաղաքին մէջ երկու պրետոր կային , Կասիոս և Բրուտոս , որոնց ամէն տեսակ բարիք ըրած էր Կեսար , բայց քանի որ ինքը Թագաւորութեան մտնելու կերպեր կը ցուցնէր՝ այնչափ անոնց ատելի կ՚ըլլար ։ Շատ անգամ Բրուտոս իր նստարանին վրայ կպցուցած այսպիսի տոմսակներ կը գտնէր . " Կը քնանաս Բրուտոս . չէ , դուն Բրուտոս չես ,, ։ Օր մը Կասիոս եկաւ իրեն ըսաւ . " Ի՞նչ պիտի ընես եթէ Կեսարու շողոքորթները զինքը Թագաւորեցընել ուզեն ։ — Ծերակուտին մէջ չեմ մտներ , ըսաւ Բրուտոս ։ —

---

¹ Կեսարու Թշնամիներուն գլխաւորները որո՞նք էին ։

Թէ որ իրրև պրեստր հոն կանչուելու ըլլա՞նք ։ — Ան ատենը հայրենիքս կը պաշտպանեմ, ու թէ որ հարկ ալ ըլլայ կը մեռնիմ ,, ըսաւ Բրուտոս ։ — " Ո՛հ, մր խելացի մարդը կը թողու, որ դուն մեռնիս ,, , ըսաւ Կասիոս, և ան ատենը յայտնեց իրեն որ իշխանատապետութեն կեանքը վերցնելու դաւակցութիւն մը կայ ։

[1] Օր մը երբոր Կեսար ամէն եղաւ որ ծերակոյտը երթայ, Ճամբուն վրայ Սպուրինա կախարդին հանդիպեցաւ, որ զգուշացեր էր իրեն թէ մարտի իդուսին՝ որ ան օրն էր՝ աղէկ իր անձին զգուշութիւն ընէ ։ " Ահա մարտին իդուսը՝ ըսաւ իրեն Կեսար ։ — Այո ըսաւ կախարդը, բայց դեռ աս օրս չանցաւ ,, ։ Քիչ մը հեռու Արտեմիդոր հռետորը հանդիպեցաւ անոր, ու գրուած մը տուաւ. որուն մէջ դաւակցութիւնը իրեն կ՚իմացնէր. Կեսար առանց կարդալու առաւ թուղթը ծոցը դրաւ ։ Ներս մտնելուն պէս՝ բոլոր ծերակոյտը ոտք ելաւ. Տուղղիոս Կիմբեր գնաց առջևը՝ սկսաւ աղաչել որ իր աքսորուած եղբայրը ետ դարձընէ. զանիկայ մերժեց Կեսար. ետևէն ուրիշներն ալ գնացին Կեսարուն չորս դին պաշարեցին, ու սկըսան մէյմէկ բանի համար զինքը աղաչել, ինչպէս որ մէջերնին խօսք դրեր էին ։ Աս բանիս վրայ Կեսար բարկացած՝ կանչեց. " Աս ըրածնիդ աղաչանք չէ, բռնութիւն է ,, , և ուզեց ոտք ելլել ։ Ան է եղեր որոշած նշանին. մէկէն Կիմբեր անոր ուսէն վերարկուն մէկդի կ՚ընէ, դաւակիցները թուրերնին կը քաշեն, կատաղաբար սկսան զար-

---

[1] Ի՞նչ կերպով սպաննուեցաւ Կեսար ։

նել ։ Ան միջոցին Կեսար չորս կողմէն վիրաւո-րուած ինքզինքը պաշտպանել կը ջանար․ բայց երբոր տեսաւ որ Բրուտոս ալ Թուրը քաշած վրան կուգայ՝ զինքը զարնելու․ “Դո՛ւն ալ որ-դեակ իմ„ կանչեց հառաչելով, ու ծիրանիովը գլուխը գոցեց, Թողուց որ ուզածնուն չափ զար-նեն, ու ինչուան Պոմպէոսին արձանին տակը եր-թալով՝ քսանուերեք տեղէն վիրաւորուած ինկաւ մեռաւ յիսունըվեց տարեկան (44)։

## ԳԼՈՒԽ ԻԹ․

Կեսարին մահուընէն ետքը Հռոմին մէջ եղած շփոթու-թիւնը․ — Մարկոս Անտոնիոս․ — Ոկտաւիանոս․ — Աս երկուքին նախանձայուզութիւնը․ — Անտոնիոս Գալ-լիա կը փախչի․ — Երկրորդ եռապետութիւն․ — Կի-կերոնի մահը․ — Բրուտոսի և Կասիոսի եռապետաց դէմ կռիւը․ — Փիլիպպէի պատերազմը (44–42)։

[1] Կեսարու մահուան ձայնը տարածուելուն պէս բոլոր Հռովմայեցիք ահու դողու մէջ ինկան։ Ծերակուտին մէջի մարդիկը սարսափած՝ տուները թողեր փախեր էին, իսկ դաւակիցները Թուրը ձեռքերնին փողոցները պտըտելով՝ ամենուն աւե-տիս կը կանչէին որ բռնաւորը մեռուցին, ու բոլոր քաղաքացիքը կը յորդորէին որ հասարակապետու-թիւնը հաստատեն․ բայց մէկն ալ հետերնին չէր միանար։ Իրիկունը երբոր Թէատրոնի մէջ դերա

---

[1] Կեսարու մահը ի՞նչ ազդեցութիւն ըրաւ Հռովմայեցւոց վրայ։

սանին մէկը աս խօսքս ըսաւ . " Ես իրենց կեանք տուի , և իրենք ինծի մահ պատրաստեցին ", բոլոր հանդիսականք սկսան լալ , և ամէն կողմէն հառաչանաց ձայներ կը լսուէին ։ Այս ցաւը աւելի սաստկացաւ՝ երբոր Կեսարու կտակն ալ բերին կարդացին , որուն մէջ իր սպաննողներէն շատը իրեն ժառանգ կը թողուր , Բրուտոսն ալ իր Ոկտաւիանոս քեռորդւոյն խնամակալ կ'անուանէր ։ Տիբերիսին քով ունեցած պարտէզները ժողովրդեան կը թողուր , և մարդ գլուխ եօթանասունըհինգ դահեկան ։ Երբոր բազմութիւնը աս բաները լսեց՝ սկսաւ անոր սպաննողներուն վրայ բարկանալ , ու կանչել թէ ինչպէս այսպիսի բարերար մը կը յանդգնինք բռնաւոր անուանելու ։

[1] Այս բարկութիւնը աւելի սաստկացաւ անոր յուղարկաւորութեան հանդիսին ատենը ։ Փայտակոյտ մը պատրաստեր էին Արիսեան դաշտին մէջ . Կեսարու մարմինը փղոսկրէ դագաղով հրապարակը տարին , ու շատ զինեալ մարդիկ հոն ժողվուեր էին՝ անոր պահպանութիւն ընելու համար ։ Մարկոս Անտոնիոս գնաց մեռելին վրայ դամբանական ճառ մը խօսելու , և տեսնելով որ ճառովը ժողովրդեան սիրտը շատ շարժեցաւ , յանկարծ սկսաւ Կեսարու ներբողին մէջ ունկընդրացը բարկութիւնը բորբոքելու խօսքեր խառնել ։ Ձեռքը դէպ 'ի Կապիտոլիոնի վրայ երկընցընելով ու ծերակուտին դառնալով կը կանչէր . " Ես պատրաստ եմ Կեսարու վրէժն առնելու ,

---

[1] Ժողովուրդը ի՞նչ կերպով Կեսարու մահուանը պատճառ եղողներուն դէմ ելաւ ։

ինչպէս որ երդուընցեր եմ ալ․ բայց ձեր պաշտ-պանութիւնը կը խնդրեմ„ ։ Աս ըսելով բացաւ Կեսարու մարմինն ու անոր պատառուած ու ա-րիւնլուայ ծիրանին ժողովրդեան ցուցուց ։ Ժո-ղովուրդը ինչուան այն ատեն հազիւ ինքզինքը բռներ էր․ մէյմէն ալ երբոր մարդուն մէկը դա-դաղին վրայ հանեց Կեսարին արձանը մոմէ շի-նուած, որ քսանուերեք տեղէն վիրաւորուած էր՝ մանաւանդ երեսը, մէկէն սկսան նստարանները՝ սեղաններն կոտրտել, փայտերը իրարու վրայ դի-զել, ու ինչ որ ձեռքերնին եկաւ՝ ատին փայտա-կոյտ մը շինեցին, կանայք զարդերնին հանեցին անոր մէջը նետեցին, զօրքն ալ իրենց զէնքերն ու զինուորական ընծաները․ և այն աստիճան սաստ-կացաւ կատաղութիւննին, որ քաշեցին փայտա-կոյտէն մէյմէկ վառուած փայտի կտոր առին ու վա-զեցին որ Բրուտոսին ու Կասիոսին տունը այրեն ։ Դաւաճանները այն միջոցին շուտ մը ձգեցին փա-խան Հռոմէն ։

1 Մարկոս Անտոնիոս զինուորականաց մէջ ա-մենէն կտրիճն էր․ “ Հերակղէսին ցեղէն եկած եմ„ կ'ըսէր, և անոր դէմք հասակն ու ոյժը ունէր ։ Կերպարանքին վրայ ազնուականութիւնը կը փայ-լէր․ Թանձր մօրուքովը, լայն ճակատովը ու արծ-ւունգն քթովը հին ատենի դիւցազանց հետ նմա-նութիւն մը ունէր ։ Ամէն բանի մէջ ուժին ու քաջութեանը վրայ միայն կը պարծենար․ ամե-նուն հետ կ'ուտէր կը խմէր, և ընտանութեանը՝

---

1 Ո՞վ էր Մարկոս Անտոնիոս ։

լսելուն պէս՝ նաւ մտաւ ու Հռոմ հասաւ ։ Ոմանք իրեն խորհուրդ կուտային որ միտքը գրածէն ետ կենայ. «Աւելի կ'ուզեմ մեռնիլ, ըսաւ, քան թէ մօրեղբօրս մահուան վրէժը չառնուլ»։ Սկսաւ ամենուն իմացընել որ մօրեղբօրը ժառանգը ինքն է. անունը դրաւ Յուլիոս Կեսար Ոկտաւիանոս, և գանձերը սկսաւ պահանջել՝ որ իշխանապետին կտակը կատարէ ։ Անտոնիոս՝ որ բոլոր ան ստակները վատներ էր՝ սկսաւ ծիծաղիլ. ըսաւ ալ թէ Կեսար տէրութեան բոլոր գանձը հատցուց ։ Ոկտաւիանոս առանց այլայլելու ըսաւ ժողովրդեան որ կտակագրին խոստացածէն աւելի կուտամ ձեզի, ու մէկէն Կեսարին ունեցածը իր ունեցածներուն հետ ծախեց, Կեսարու յիշատակին համար խաղեր խաղցընել տուաւ, Աստղկան տաճարին մէջ անոր արձան մը կանգնեց ։

1 Ոկտաւիանոսի աս բռնած կերպին ամէնքը զարմացած՝ վրան մեծ սէր կապեցին. Անտոնիոս սկսաւ անոր նախանձիլ, և ամէն օր նոր նոր բռնութիւններ ընելէն ետքը՝ վերջապէս հարկադրեցաւ Հռոմէն ելլելու. Իտալիոյ հիւսիսային կողմերը գնաց, իր գործունէութեամբն ու քաջութեամբը զօրք ժողվեց, ու Բրուտոսն ու Կասիոսը Մոտենա քաղաքին մէջ պաշարեց ։ Ան ատենը Կիկերոն ելաւ անոր դէմ Փիլիպպեանք ըսուած հռչակաւոր ատենաբանութիւնները խօսեցաւ, և զանիկայ Թշնամի հասարակաց, սուսերամարտ ու Երկրորդ Կատիլինա անուանելով Ծերակոյտը վրէժխնդրութեան կը յորդորէր ։ Ծերակոյտն ալ Հիրտիոս և

1 Անտոնիոս ինչպէս ելաւ Հռոմէն ։

Գանոս հիւպատոսները Անտոնիոսին դէմ խրկեց։ Մոտենա քաղաքին քով երեք պատերազմ ըրին․ առջինին մէջ յաղթող եղաւ Անտոնիոս, մէկալ երկուքին մէջ ալ թէպէտ զարմանալի քաջութիւններ ըրաւ՝ բայց ետքը յաղթուեցաւ, ու Ալպեան լեռներէն անդին անցաւ (43)։

† Երկու հիւպատոսներն ալ մեռեր էին․ միայն Ոկտաւիանոս զօրաց գլուխ կեցած՝ մարդ խրկեց ծերակուտին ու խնդրեց որ հիւպատոսութիւնը իրեն տան։ Երբոր անխոհեմութեամբ եղան ըսին անոնք թէ բաւական տարիք չունի, "Աղէկ, ըսաւ հարիւրապետը․ թէ որ դուք չէք ուզեր մեր զօրավարին հիւպատոսութիւն տալ՝ ասիկայ կուտայ"․ ու ըսելով թուրը ցըցուց, և լեգէոնները սկսան Հռոմին վրայ վազել։ Ծերակոյտը շփոթած՝ աճապարեց, հիւպատոսութեան նշանները խրկեց Ոկտաւիանոսին․ բայց ատենը անցեր էր։ Ոկտաւիանոս Հռոմը պաշարեց առաւ, ու ամէնքը վազեցին որ նոր Կեսարը պատուով ընդունին։ Հիւպատոս ընտրուեցաւ Ոկտաւիանոս, և ծերակոյտը կարծելով թէ նոր հիւպատոսը ամէն բանի մէջ իր հրամանովը պիտի շարժի՝ պատուիրեց որ Անտոնիոսի ու Լեպիդոսի դէմ եղած պատերազմը առաջ տանի․ բայց Ոկտաւիանոս բոլորովին անոնց կարծեացը հակառակ՝ հաշտութիւն ըրաւ ան երկուքին հետ, ու երկրորդ եռապետութիւնը հաստատեց՝ ան պայմաններով որ իրենք հինգ տարի հիւպատոսութիւն ընեն․ Անտոնիոս և Ոկտա-

---

† Երկրորդ եռապետութիւնը ի՞նչ կերպով հաստատուեցաւ։

նէն լեզուն հանելով՝ ամէն գնդապետով մը ծակ-ծըկեց : Ետքը ձեռքին ալ գլուխն ալ տարին ատե-նաբանութեան բեմին վրայ դրին, ուսկից այնչափ անգամ հասարակապետութեան ազատութիւնը պաշտպաներ էր Կիկերոն :

[1] Ուրիշ շատ սարսափելի անգթութիւններ ալ ըրին եռապետները : Հարուստ պատանի մը հա-գուած կապուած՝ իր մօրը ընկերութեամբը մեհեան կ'եր-թար . ձայն եկելուն ըսեր թէ անիկայ դատապարտ-ուած է, ամէնքը քովէն ցրուեցան՝ անտերունջ ե-ղած . տղան ուզեց մօրը տունը փախչիլ, անիկայ դուռը վրան գոցեց . սպաննողներն ալ հասան ե-տեւէն ու մեռուցին զինքը : — Պրետորին մէկը ի-մացաւ որ իր անունը ցանկին մէջ է, բարեկամնե-րէն մէկուն տունը փախաւ . բայց իր որդին զհայրը փնտռողներուն ճամբայ ցուցուց, որ հետը գնացին ու պրետորը սպաննեցին : — Ուրիշ մը տեսաւ որ հարիւրապետ մը մէկուն ետեւէն կը վազէ . “ Աս ալ աքսորեալներէն է „ կանչելով չմնաց . “ Դուն ալ աքսորեալ ես „ ըսաւ հարիւրապետը, ու մէ-կէն զինքը սպաննեց : — Անգութ Փուլվիա ալ իրեն համար առանձին դատապարտեալ մարդ-կանց ցանկ մը շիներ էր : Երբոր Հռուփոս մեծատա-նին գլուխը Անտոնիոսի առջին, ուշադրու-թեամբ նայեցաւ ու ըսաւ . “ Աս մարդը ես չեմ ճանչնար . անշուշտ կնկանս գործածներէն է „ : Այն խեղճ Հռուփոսը չէ ուզած եղեր իր գեղի տունը Փուլվիային ծախել : Ոկտաւիանոս ալ իր ան-

---

[1] Ի՞նչ մասնաւոր անգթութիւններ եղան ան ա-տենը :

գթութիւններովը մեկալ երկուքէն վար չէր մնար ։

[1] Բայց ան միջոցին խրատ առնելու դիպուածներ ալ շատ եղան ։ Ղուկիոս Կեսար իր քրոջը տունը փախեր էր՝ որ Անտոնիոսի մայրն էր . պատժողները երբոր սկսան սենեակին դրան ուժ տալ որ ներս մտնեն, Ղուկիոսի քոյրը Յուլիա Թեւերը բացած դուրս ցատքեց՝ կանչելով . “Ինչուան որ նախ զիս չսպաննէք՝ Ղուկիոսը չէք կրնար մեռցընել,,։ Երբոր անոր քաջասրտութեանը վրայ զինուորները զարմացեր կեցեր էին, եղբայրը ժամանակ գտնելով փախաւ ։ — Ոպպիոս պատանին ալ իր պապը մահուընէ ազատելու համար՝ անիկայ ուսն առած՝ քաղաքին մէջէն անցուց, և ժողովուրդը անոր աս որդիական սիրոյն վրայ զարմացած՝ չթողուցին որ մեկը դպչի Ոպպիոսի ։

[2] Եռապետներուն ուզեցին Բրուտոսն ու Կասիոսն ալ ձեռք բերել ։ Աս երկու հասարակապետականները Ասիոյ քաղաքները պտըտելով՝ սաստիկ բռնութեամբ տուրքեր կը ժողվէին . և ժողովուրդը ան տուրքը վճարելու համար ոչ միայն ստացուածքնին կը ծախէին, հապա նաև իրենց կանայքն ու զաւկըները ։ Ինքն իսկ Բրուտոս ալ ըրած քաղաքական պատերազմին վրայ կ'ամըչնար և անդադար կը մտածէր, ճար մը կը փնտռէր որ անկէց ազատի ։ Մութ գիշեր մը նստած մինակ մտածելու ատենը՝ իրեն երևցաւ թէ մեկը իր վրանը

---

1 Ան միջոցին խրատ առնելու ի՞նչ դիպուածներ եղան ։

2 Բրուտոս ու Կասիոս ան միջոցին ի՞նչ բանի հետ էին ։

մտաւ. աչքը դրան դարձուց, ու կանթեղին աղօտ լուսովը՝ մանաւանդ թէ երեւակայութեանը տաքութեամբը այլանդակ դէմքով ահաւոր ճիւաղ մը տեսաւ որ իրեն կը մօտենար. “Ո՞վ ես դուն, ըսաւ Բրուտոս, ի՞նչ կ՚ուզես ինծմէ։ — Բրուտո՛ս, ըսաւ ճիւաղը, ես քու չար ոգիդ եմ. զիս պիտի տեսնես Փիլիպպէ քաղաքին քովի դաշտերուն մէջ։ — Աղէ՛կ, ըսաւ Բրուտոս, հոն տեսնուինք ,,. և տեսիլքը աներեւոյթ եղաւ։ Երկրորդ օրը Կասիոսին գնաց ու պատմեց տեսածը. Կասիոս չուզեց հաւտալ։

[1] Երկու զօրավարները Մակեդոնիա անցած, ու հոն եռապետաց զօրքը ինչուան Փիլիպպէ քաղաքը քշեցին։ Բրուտոս և Կասիոս հարիւր հազար մարդ ունէին, եռապետները հարիւր տասուիրեք հազար։ Բրուտոս և Կասիոս մէկտեղ եռապետաց վրայ յարձակեցան. Բրուտոս վանեց Ոկտաւիանոսին զօրքը, բայց Կասիոս յաղթուելով ու իր իշխանակցին յաջողութիւնն ալ չիմանալով՝ յուսահատած ինքզինքը սպաննեց։ Դեռ յաղթութիւնը Բրուտոսի կողմն էր, որուն ձեռքն էր նաև ծովը. և թշնամեաց պաշարը արգիլուելով՝ բանակը անօթութենէ կը ջարդուէր. բայց Բրուտոս չուզեց սպասել, յարձակեցաւ, ու իր կողմի թևը յաղթող ելաւ, բայց մէկալը յաղթուած երբոր սկսաւ փախչիլ՝ ինքն ալ պաշարուեցաւ, և թշնամեացը ձեռքը չիյնալու համար թրովը զար-

---

[1] Բրուտոս ու Կասիոս ինչպէս յաղթուեցան ու մեռան։

կաւ ինքզինքը սպաննելու ։ Բրուտոսին հետ վերջացաւ նաև հասարակապետութեան հոգին ։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Ոկտաւիանոս Իտալիան իր ձեռքը կը բռնէ. — Սեքստոս Պոմպէոս. — Ժողովրդեան տագնապմունքը. — Ագրիպպաս և Մեկենաս. — Սեքստոսի դէմ պատերազմը. — Անտոնիոս և Կղէոպատրա. — Վենտիդիոս Պարթևաց կը յաղթէ. — Անտոնիոսի արշաւանքը. — Կղէոպատրային հետ կարգուիլը. — Ակտիոնի պատերազմը. — Անտոնիոսի և Կղէոպատրայի մահը ։ (42-29) ։

[1] Անտոնիոս ինքը միայն յաղթեր էր Փիլիպպէին քով, իսկ Ոկտաւիանոս հիւանդութեան պատճառներով պատերազմի չէր գտնուած. “Աստուած մը երազիս մէջ ինծի զրուցեց, կ'ըսէր, որ այս օր ես ինծի զգուշանամ” ։ Ճահիճի մը մէջ իրեք օր պահուըտեր է կ'ըսեն ։ Սակայն յաղթուողներուն դէմ շատ անգութ եղաւ ։ Հայր ու որդի մը աղաչեցին որ իրենց խնայէ, խոստացաւ, ու ետքէ եւս անողորմաբար սպաննել տուաւ զանոնք ։ Ուրիշ մըն ալ երբոր կ'աղաչէր որ գէթ սպաննուելէն ետքը մարմինը թաղել տայ, “Անգղները պէտք է թաղեն զքեզ” ըսաւ ։

[2] Յաղթական եռապետները Հռովմայ տէրու-

---

1 Փիլիպպէի պատերազմէն ետքը Ոկտաւիանոս ի՞նչ ըրաւ ։

2 Եռապետները ի՞նչ բաժանմունք ըրին մէջերնին ։

Թիւնը մէջերնին բաժնեցին. բայց Լեպիդոսի բաժինն չընկաւ, վասն զի քրմապետ ընտրուեցաւ. Անտոնիոս առաւ յայնկոյս Ալպեանց Գաղղիան, Ափրիկէն և Ասիան. Ոկտաւիանոս՝ Սպանիան ու Նումիդիան. իսկ Իտալիան չբաժնեցին:

1 Ոկտաւիանոս Թողուց որ Անտոնիոս արևելք երթայ. ինքը Իտալիա մնաց, ու ջանաց որ հոն իր իշխանութիւնը հաստատէ: Աս միջոցով բոլոր երկիրները բնակչաց ձեռքէն առաւ, ու իր հարիւր վաթսուն հազար զօրացը բաժնեց: Կալուածի տէրերը բողոքեցին, մտիկ ընող չեղաւ: Վիրգիլիոս բանաստեղծ պատանին ալ իր հայրենիքը Մանտուա քաղաքին քով իր պապերէն մնացած ագարակը կը մշակէր. երբոր բարբարոս զինուորին մէկը եկաւ ձեռքէն առաւ անոր ագարակը, Վիրգիլիոս գեղեցիկ ոտանաւորով մը Ոկտաւիանոսի Մեկենաս բարեկամին գանգատեցաւ, ան ալ նորէն հայրենական ժառանգութիւնը իրեն դարձուց:

2 Ոկտաւիանոս ալ չէր կրնար զօրքը սանձել, և օրէ օր անոնց յանդգնութիւնը կ'աւելնար: Անոնց համար հասարակաց գանձը պարպեր էր, մեհեաններուն հարստութիւնները կողոպտեր էր, ու դեռ չէր կրցած զանոնք գոհ ընել: Օր մը հարիւրապետին մէկը իրենց ապերախտութիւնը երեսնին զարնելուն համար բզիկ բզիկ ըրին, մարմինն ալ Ոկտաւիանոսին անցնելու ճամբուն վրայ ձգեցին:

---

1 Ոկտաւիանոս զինուորաց ի՞նչ համարձակութիւն տուաւ:

2 Զինուորները ի՞նչ կերպով սկսան անկարգութիւններ ընել:

Թէատրոնի մէջ իրեն առջեւը զինուորին մէկը իր զինուորակցաց մէջը տեղ չգտնելով կ'երթայ ասպետներուն կարգը կը նստի . Ժողովուրդը կը գանգատի . Ոկտաւիանոս զինուորին կը հրամայէ որ ելլէ . զինուորականք հակառակը կը պնդեն որ չելլէ . տեսարանը լմննալէն ետքն ալ իրենց զօրավարին քովն եկած՝ կ'ուզէին որ ան իրենց ընկերը ցուցնէ , վասն զի մեռած կը կարծէին ։

1 Զինուորաց անսանձելի համարձակութեանը առեն սովն ալ վրայ եկաւ ։ Սեքստոս Պոմպէոս Մուտնայի պատերազմէն ազատած՝ ծովու վրայ տիրապետեր էր . "Պոսիդոնի որդին եմ ես ,, կ'ըսէր , ու գործքով ալ զամէնքը կը հաւտացնէր . վասն զի անհամար ծովային զօրք ու քաջահմուտ զօրավարներ ունէր , և չէր թողուր որ Հռոմ ցորեն տարուի ։ Ժողովուրդը սովին պատճառաւ ոտք ելաւ , և Ոկտաւիանոսի իշխանութիւնը մեծ վտանգի մէջ էր ։ Բայց երկու մեծանուն մարդիկ իրեն օգնութեան կանչեր էր , Ագրիպպասն ու Մեկենասը , երկուքն ալ ասպետ , մէկը զինուորական հանճարովն ու պատերազմական հմտութեամբը երևելի , մէկալն ալ խորագէտ ու պերճախօս խորհրդական ։

2 Ժողովուրդը խաղաղելու համար պէտք էր Պոմպէոսի նաւատորմիղները խորտակել՝ որ Հռոմը սովով կը նեղէին , բայց Հռոմ ոչ նաւեր ունէր և ոչ նաւահանգիստներ ։ Ագրիպպաս ասոր ճարը գտաւ . երկու լիճ իրարու հետ միացնելով Յու_

1 Սեքստոս Պոմպէոսի պատերազմը ինչպէս եղաւ ։

2 Ագրիպպաս ինչպէս յաղթեց Սեքստոս Պոմպէոսի ։

լեան ըսուած նաւահանգիստը բացաւ, և նաւարաններ ու նաւեր շինեց։ Առջի նաւատորմիղը հաշիւ թէ նաւահանգստէն ելեր էր, Պոմպէոսի Ճարտար նաւավարները վրան հասան՝ այրեցին. Ագրիպպաս քիչ ատենի մէջ ուրիշ նաւատորմիղ մըն ալ պատրաստեց. զօրքերը յաղթուելով պատերազմի վարժեցան, նաւերը գործածել սորվեցան, ու վերջապէս իրենց տերանցը յաղթեցին. Անտոնիոս ալ իշխանակցին խրկած քսան հազար զօրացը փոխարէն՝ հարիւր քսան նաւ խրկեց։ Ագրիպպաս Սիկիլիոյ Միղէ քաղաքին քով Պոմպէոսի նաւերուն վրայ յարձակեցաւ, յաղթեց, ու Սիկիլիա կղզին ելաւ, որ թշնամւոյն զօրութեանը կեդրոնն էր. բայց Սեքստոս իրենները նորէն ժողվեց ու յանկարծակի Հռովմայեցւոց վրայ հասաւ։ Ըն անգամ քիչ մնաց որ Ոկտաւիանոս ձեռք իյնար, ու մէկ զօրավարով մը միայն Իտալիա անցաւ. բայց ամենևին չվհատեցաւ. “Պոսիդոն չուզէ ալ նէ պիտի յաղթեմ„ կ'ըսէր։ Ուրիշ նոր նաւատորմիղ մըն ալ պատրաստեց Ագրիպպաս, Մեսսենայի մօտ Սեքստոսին վրայ հասաւ ու բոլորովին յաղթեց անոր. Սեքստոս՝ որ քիչ մը առաջ իրեք հարիւր յիսուն մեծամեծ նաւեր ունէր՝ եօթը ցուկանաւով Ասիա փախաւ, և հոն Անտոնիոսի կուսակալներէն մէկը բռնեց զինքը սպաննեց (36)։

[1] Պոմպէոսի ու Լեպիդոսի զօրքը առանց զօրավարի մնալով Ոկտաւիանոսին հետ միացան, որով եղաւ անոր զօրքը քառասունըհինգ լեգէոն

---

[1] Ոկտաւիանոս ի՞նչ կերպով հանդարտեցուց զօրքը։

և քսանըհինգ հազար ձիաւոր : Այնչափ բազմու-թենէն վախցաւ Ոկտաւիանոս , վասն զի գոռոզու-թեամբ կը պահանջէին որ քիչ մը ազատութեան ժամանակ ու վարձատրութիւններ տրուէին իրենց . անոնց մէկ մասը ճամբեց , մէկալներուն ալ պատիւներ ու իշխանութիւններ խոստացաւ : Ան ատեն տրիբուններէն մէկը ելաւ ըսաւ իրեն թէ " Պատիւնե-րով ու ծիրանիներով տղաքը կը խաբուին . մեզի ստակ ու երկիր պէտք է ": Հարկ եղաւ որ հա-ւանի Ոկտաւիանոս , և ամէն մէկուն հինգ հազարի դրամանկշիռ բաժնել տուաւ :

¹ Անկէց ետքը մէկ ոսոխ մը միայն կը մնար Ոկ-տաւիանոսին , այսինքն Անտոնիոս , բայց ամէնէն ահաւորն էր , և Ոկտաւիանոսին աչքը չէր կտրեր վրան պատերազմի երթալու . յարմար առիթի կը սպասէր : Իսկ Անտոնիոս անձամբ իր կործանման խորխորատը կը փորեր . վասն զի Ասիա հասնելուն պէս իր ախտերուն ու զուարճութեանցը եռանդ ըլլալով ամէն քաղաքներէն կրկին տուրք կը պա-հանջէր . այնպէս որ խեղճ քաղաքացիք ալ կ'ըսէին իրեն թէ " Ուրեմն մեզի ալ երկու ամառ ու եր-կու աշուն տուր . վրանիս ձգուած սարսափելի տուրքը դեռ նոր տուինք ": Բայց Անտոնիոս ա-նոնց գանգատին մտիկ չէր ըներ , երաժիշտներով ու կաքաւիչներով Եփեսոս մտաւ , ու առջևէն կ'երթային շատ մը կանայք ու երիտասարդներ՝ աստուածապարարկ ըսուած քուրմերուն ու այ-ծամարդներուն նման հագուստներ հագած : Քա-

---

¹ Անտոնիոս ան ատենները ի՛նչ կ'ըներ Փոքր Ա-սիոյ մէջ :

ղաքին ամէն կողմերը բազեգով զարդարած նիզակներ դրուած էին. ամէն տեղ սրինգներով ու ծնծղաներով ան նոր Բագոսին հանդէսը կը կատարէին: Եւ իբր թէ ատոնք Պարթեւաց դէմ ընելու պատերազմին պատրաստութիւններն էին:

1 Կիլիկիոյ Տարսոն քաղաքն որ գնաց՝ հոն Եգիպտոսի թագուհւոյն Կղէոպատրայի դատաստանը պիտի կտրէր, որովհետեւ անիկայ Բրուտոսի ու Կասիոսի կողմը բռներ էր: Շատ սպասելէն ետքը մէյմըն ալ օր մը տեսաւ Անտոնիոս որ Կիլիկիոյ Կիւդնոս գետէն ներս նաւ մը մտաւ, քիթը ոսկիէ, առագաստները ծիրանիէ, արծաթապատ թիերն ալ քանի որ ալիքները կը պատռէին՝ անոյշ սրինգի ու քնարի ձայներ կը լսուէին: Ան նաւուն մէջն էր Կղէոպատրա թագուհին՝ ոսկեթել վրանին տակը քօղնոտի պառկած, ինքն ալ աստուածուհւոյ մը պէս զարդարուած. չորս կողմը հոտաւէտ խունկեր կը ծխէին, որոնց հոտը գետին երկու եզերքը բռնած էր: Անտոնիոս դատաստանին բանը մոռցաւ, թագուհին հացկերութի հրաւիրեց. յանձն չառաւ Կղէոպատրա, հրաւիրեց որ նախ ինքը գայ, ու փառաւոր սեղանով մը զանիկայ զարմացուց: Անտոնիոս Կղէոպատրային հետ ուզեց Եգիպտոս երթալ, և Պարթեւաց պատերազմը Վենտիդիոսին յանձնեց:

2 Վենտիդիոս թէպէտ ազնուականի որդի չէր,

---

1 Ի՞նչ պատճառաւ ու ի՞նչ կերպով Եգիպտոս գնաց:

2 Վենտիդիոս ի՞նչպէս յաղթեց Պարթեւաց:

սակայն իր խելքովը մեծամեծ պատիւներու հասեր էր՝ հետզհետէ տրիբուն, օինկղիտոս, պրետոր ու հեծելազօրի սպարապետ ըլլալով։ Ինքը առաջին հռովմայեցի զօրավարն եղաւ որ Պարթեւաց յաղթեց։ Վենտիդիոսի փառացն ու յաղթութեանցը (40-38) վրայ Անտոնիոսին նախանձը շարժեցաւ, ուստի զան կանչեց զանիկայ ու անոր տեղը ինքը գնաց։ Բայց Պարթեւք զինքը դաշտերու մէջ ձգեցին, ու քիչ մնաց որ Կրասոսին պէս ալ սպաննէին. սակայն քաջութեամբ ու հնարքով ետ քաշուեցաւ ազատեցաւ. ան միջոցին խարդախութեամբ մեր Արտաւազդ թագաւորն ալ կանչեց, ու ոսկի շղթայի զարկաւ։ Անտոնիոս Կղէոպատրային քովը հասնելու համար՝ յաղթական կառքով Աղեքսանդրիա մտաւ. ետեւէն կուգային Արտաւազդ թագաւորն և ուրիշ գերիները, որ Կղէոպատրային առջեւէն անցնելու ատեննին (որ ոսկիէ աթոռի վրայ նստած էր) անոր երկրպագութիւն պիտի ընէին։ Անտոնիոս հռովմէական հագուստը թողած՝ արեւելեան ակնակուռ ծիրանին հագաւ, գլուխը թագ դրաւ, և ձեռքը ոսկի գաւազան բռնած՝ Ոսիրիս ըսուեցաւ։ Անկէց ետքը Կղէոպատրան ալ Իսիսին պէս հագուելով կը պարծենար թէ քիչ ատենէն Հռոմի ալ դշխոյ պիտի ըլլայ, ու Կապիտոլիոնի օրէնք պիտի տայ։

[1] Անտոնիոսի բռնած ամօթալի ճամբան՝ Ոկտաւիանոս զարդարելով ալ կը պատմէր. ուստի Հռոմի մէջ ամենուն արհամարհելի եղաւ Անտո-

---

[1] Հռովմայեցիք Անտոնիոսի ըրածներն որ լսեցին՝ ինչ ըրին։

Նիոս . երբոր աս ալ լսեցին թէ անիկայ Ոկտաւիանոսին քաղցրաբարոյ ու առաքինի Ոկտաւիա քոյրը ձգեր՝ Եգիպտոսի Թագուհին առեր է, ու Լիբիան՝ Կիպրոսը և Սուրին Ասորիքը տուեր է . և թէ Աղեքսանդրիան աշխարհքիս մայրաքաղաքը պիտի ընէ, ամէնքը սաստիկ բարկացան, ու մէկէն ծերակոյտը անոր դէմ պատերազմ հրատարակեց (22) :

1 Անտոնիոս փառաւոր հանդէսներով սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել : Բոլոր զօրքը դէպ 'ի Սամոս խրկեց, և ամէն թագաւորաց, իշխանաց ու չորրորդապետաց հրաման ըրաւ որ անոնց պաշար հասցընեն . հոն հրաւիրեց նաև բոլոր կատակերգակները, գուսաններն ու երաժիշտները : Պատերազմի պատրաստութիւնն որ սաստիկ մեծահանդէս էր՝ մարդ չէր գիտեր թէ յաղթութեան հանդէսը ինչ պիտի ըլլար :

2 Ընդհակառակն Ոկտաւիանոս շուտ մը զօրքերը ժողվեց, ծերակուտին հրովարտակներն ու իր ոսոխին բռնած ճամբան ամենուն հրատարակեց : Սակայն աս ալ գիտէր որ անիկայ երկու հարիւր հազար մարդ ունի ոտքի վրայ, տասուերկու հազար ձիաւոր և հինգ հարիւր նաւ, ուր ինքը հազիւ անոնց կէսն ունէր :

3 Սամոսէն ելաւ Անտոնիոս՝ Յունաստան եկաւ, ու դէպ 'ի Ակտիոնի հրուանդանը կ'երթար.

---

1 Անտոնիոս ի՞նչ պատրաստութիւն ըրաւ Ոկտաւիանոսի դէմ:
2 Ոկտաւիանոսի պատրաստութիւնը ի՞նչպէս էր :
3 Ի՞նչ կերպով սկսաւ Ակտիոնի պատերազմը :

հոն հասաւ ետեւէն Ոկտաւիանոս ։ Կը տարակուսէր Անտոնիոս թէ ո՛ւր պատերազմի, ծովո՞ւ թէ ցամաքի վրայ. վերջապէս որոշեց որ ծովու վրայ պատերազմի, վասն զի ան էր Կղէոպատրայի կամքը ։ Աս որոշման վրայ տժգոհ եղաւ զօրքը. ծեր հարիւրապետ մը ըսաւ իրեն թէ " Փոխանակ մեր թրերուն վրայ վստահանալու՝ ինչո՞ւ կ'երթաս փտտած տախտակներու կը վստահիս. Եգիպտացիքն ու Փիւնիկեցիքը թող որ ծովու վրայ պատերազմին. մեզի ցամաքը տուր, ոտքերնիս տեղ մը հաստատած՝ կամ յաղթենք և կամ մեռնինք " ։ Պատասխան չտուաւ անոր Անտոնիոս, ու միայն անցնելու ատենը գլուխը ծռելով ու ձեռքը շարժելով ուզեց ըսել անոր թէ մի՛ վախնար, ամէն բան աղէկ կ'երթայ ։

1 Չորս օր ծովը ալեկոծեալ ըլլալով երկու նաւատորմիղները չկրցան իրարու մօտենալ. բայց վերջապէս հովը դադրեցաւ՝ պատերազմը սկսաւ ։ Անտոնիոսի նաւերը ծանր էին. աղէկ թիավարներ ալ չունենալով տեղերնէն չէին կրնար շարժիլ. ընդհակառակն Ոկտաւիանոսի արագաշարժ նաւերը կրակի պէս չորս դին պտըտելով թշնամեաց վրայ բռնկած նետեր ու ածուխով ու ձիւթով լեցուն ամաններ կը նետէին. անանկով մէկ քանի նաւ այրեցին ։ Ան միջոցին Կղէոպատրա իր վաթսուն նաւերովը նաւատորմիղէն զատուելով առագաստները բացած սկսաւ դէպ 'ի Պեղոպոնես երթալ ։ Անտոնիոս խելքը կորսնցուցածի պէս ամէն բան մոռցաւ, ու ցռկանաւով մը Կղէոպատրային ե-

---

1 Ակտիոնի պատերազմը ի՞նչպէս վերջացաւ ։

տնէն գնաց։ Ոկտաւիանոս շուտ մը աս փախըստեան աւետիքը ամէն տեղ տարածեց. Թշնամւոյն նաւատորմիղն ալ անձնատուր եղաւ իրեն։ Յամաքի զօրքը եօթը օր իր զօրավարին սպասեց. երբոր տեսաւ որ անիկայ գալիք չունի՝ ինքն ալ յաղթականին առջևը զէնքերը ձգեց (31)։

1 Անտոնիոս Կղէոպատրային ետևէն Եգիպտոս գնացեր էր։ Երբոր յանկարծ Ոկտաւիանոս Աղեքսանդրիոյ մօտեցաւ, անխելք Թմրութենէն արթընցաւ Անտոնիոս, առջի քաջութիւնը ձեռք առած՝ ձիաւորներովը քաղաքէն ելաւ, փառաւոր յաղթութիւն մը ըրաւ, և պատրաստուեցաւ որ ծովէն ու ցամաքէն ընդհանուր պատերազմ ընէ։ Երկրորդ օրը տեսաւ որ Թագուհւոյն նաւերն ու զօրքը իր Թշնամւոյն կողմն անցեր են. և գիտնալով որ բանին մէջ մատնութիւն կայ, երբոր երդում կ՚ընէր որ վրէժն առնու՝ իմացուցին իրեն Թէ Կղէոպատրան ինքզինքը մեռուցեր է։ Ան որ լսեց՝ յուսահատած՝ Թուրը զարկաւ ինքզինքը մահացու վիրաւորեց։ Ան միջոցին իմացաւ որ Կղէոպատրան դեռ կենդանի է. և ուզելով վերջին շունչը անոր աչքին առջևը փչել, հրամայեց որ զինքը անոր պահուըտած շէրիմը հանեն. և երբոր չուանով զինքը վեր կը քաշէին՝ հոգին փչեց յիսունուիրեք տարեկան։

2 Կղէոպատրան ան մտքով մեռնելուն ձայնը հաներ էր՝ որպէս զի Անտոնիոսի կատաղութեանը չհանդիպի։ Անօգուտ տեղը անկէց ետքը ջանաց

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Անտոնիոս։

2 Կղէոպատրան ի՞նչպէս մեռաւ։

Ոկտաւիանոսին ալ աչքը մտնելու. Ոկտաւիանոս կը պատրաստուէր որ անիկայ իր յաղթական կառացը փառաւոր զարդ ընէ : Աս որ իմացաւ Կղէոպատրա, միտքը դրաւ որ մահուամբ ազատի ան խայտառակութենէն : Փառաւոր սեղան մը ընել տուաւ. սեղանէն ետքը գեղացի մը թզով լեցուն կողով մը առած ներս մտաւ. պահապանները առանց վրան կասկածի երթալու՝ թողուցին որ մտնէ : Սեղանէն ելլելէն ետքը թուղթ մը գրեց Կղէոպատրան Ոկտաւիանոսի՝ խնդրելով որ մեռնելէն ետքը զինքն ալ Անտոնիոսին քովը թաղեն : Մէկէն պալատը վազեցին որ չթողուն որ ինքզինքը սպաննէ. բայց անիկայ մեռեր էր հագուած կապուած ու փառաւոր անկողնի մը վրայ պառկած. մարմնոյն վրան ալ ամենեւին վէրքի նշան չէր երենար. միայն թեւին վրայ թեթեւ խածուածք մը կար. վասն զի ան թզի կողովին տակը պահել տուած իժի մը ինքզինքը խածնել տուեր է եղեր (30) :

# ԳԼՈՒԽ ԻԶ.

ԻՆՔՆԱԿԱԼՈՒԹԻՒՆ. — Կայսերք. — Օգոստոս. — Իր խորագէտ քաղաքականութիւնը. — Իրեն դէմ եղած դաւաճանութիւնը. — Կիննա. — Գրագիտութիւն. — Ծնունդ Քրիստոսի փրկչին մերոյ. — Ապստամբութիւն Գերմանիոյ. — Վարոս և Արմինիոս. — Վարոսի կոտորածը. — Տիբեր գահակից կ'ընտրուի Օգոստոսի. — Օգոստոսի մահը (22 Քրիստոսէ առաջ. — 14 Քրիստոսէ ետքը):

1 ՕԳՈՍՏՈՍ (29 Քրիստոսէ առաջ. — 14 ետքը): — Ոկտաւիանոս Ակտիոնի պատերազմովը բոլոր աշխարհիս տէր եղեր էր: Իր ծննդեանն ու յաղթութեանը օրը տօներու կարգը անցան. Հռովմայեցիք աստուածական պատիւ ընծայեցին իրեն, և իր բագնին դիմացը անդադար Արաբիոյ ազնիւ խունկերը կը ծխէին: Ժողովուրդը, ազնուականք, բանաստեղծք ամէնքը իրար անցնելու մոքով անոր յաղթութեանց փառքը հռչակելու կը ջանային. Հրամանատար կոչուեցաւ, իշխան ծերակուտի, և մշտնջենաւոր հիւպատոս:

2 Ոկտաւիանոս իր ճարտար քաղաքագիտութեամբը սկսաւ ձևացընել թէ այնպիսի պատիւներ չսիրեր ու չուզեր, ուստի դժկամակութեամբ մը կ'ընդունէր իրեն տուած գովեստները. Սիղ-

---

1 Ոկտաւիանոսի ի՞նչ պատիւ ըրին Հռովմայեցիք:

2 Ի՞նչպէս յանձն առաւ Օգոստոս իրեն տրուած պատիւները:

ղային պէս ինչուան իշխանութենէն հրաժարիլ ալ ձեւացուց, « Յոգնած եմ, կ'ըսէր, աս ծանր բեռը չեմ կրնար վերցընել »։ Երբոր ծերակոյտը շատ աղաչեց որ իշխանութիւնը չձգէ, « Ձեզի պէս երեւելի անձանց կամացը դէմ չգործելու համար միայն կ'ընդունիմ » ըսաւ։

[1] Նայեցաւ Ոկտաւիանոս որ մէկէն չվերցընէ հասարակապետութիւնը, ուստի կառավարութեան կերպը նոյն թողուց։ Նուապետութեան յիշատակն ալ ջնջելու համար՝ իր անունը փոխեց ու Օգոստոս դրաւ որ փառաւոր ըսել է, և ծերակուտին իրեն տուած պատուանուններուն մէջէն Իմփերաթոր անունը աւելի սիրով կը գործածէր, վասն զի ան բառը երկդիմի նշանակութեամբը իր հաստատելու իշխանութեանը շատ յարմար էր, որովհետեւ թէ Հրամանատար կը նշանակէ և թէ Ինքնակալ։

[2] Օգոստոսի բռնած աս կերպին վրայ ամէնքը գոհ էին. բոլոր աշխարհք խաղաղութիւնը տիրեր էր, ու եօթը հարիւր տարիէն ետքը ան երրորդ անգամն էր որ Յանոսի տաճարը գոցուեցաւ. Օգոստոս ալ սկսաւ արուեստները, վաճառականութիւնն ու գիտութիւնները ծաղկեցընել, ու Հռոմը գեղեցիկ շէնքերով զարդարել։ Ամէն կողմը մեհեաններ, գրատուններ, թէատրոններ, ու կամարակապ և սիւնազարդ սրահներ կանգնել տուաւ։ Կապիտոլեան Արամազդայ մեհեանը զարդարելու համար՝ տասնըվեց հազար լիտր ոսկի

---

1 Ի՞նչ մասնաւոր անուն տուին իրեն ։
2 Ի՞նչ շինութիւններ ըրաւ ։

ու յիսուն միլիոն սեստերտի մարգարիտ ու գոհարեղէն գնաց. «Քարէ գտայ այս քաղաքը, կ'ըսէր Օգոստոս, մարմարիոնէ պիտի թողում»: Այս շէնքերը շինել տալու ատեն մեծ օգնական էր իրեն Ագրիպպաս. ինքը Հռոմին մէջէն երկու առուակ քալեցուց, կործանած տասուիրեք ջըրմուղները նորոգեց, հարիւր յիսուն աղբիւր շինեց, հարիւր վաթսուն հասարակաց բաղնիքներ, հռչակաւոր Պանթէոն կամ Ամենադից ըսուած մեհեանը կանգնեց: Օգոստոս Հռոմի իւրաքանչիւր թաղին՝ նոյն թաղերէն ընտրուած մէյմէկ հոգի դատաւոր ու պատասխանատու դրաւ, և հրդեհի զգուշութիւն ընելու համար գիշերուան պահապաններ որոշեց: Տիբերիսը լայնցուց ու մաքրել տուաւ, և փողոցները շտկեց կարգաւորեց: Հռոմէն դուրս եղած տեղուանք ալ այսպիսի բարեկարգութիւններ եղան. Կորնթոս և Կարքեդոն քաղաքները նորէն կանգնուեցան. Գաղղիոյ մէջ քաղաքներ ու դպրոցներ շինուեցան. Գաղղիացիք ալ երախտագիտութեամբ Լուգդոնի այսինքն Լիոնի մէջ Օգոստոսի անունովը փառաւոր մեհեան մը կանգնեցին:

1 Ներքին կառավարութիւնը բարեկարգելու համար Օգոստոս տուրքերը թեթեւցուց, զօրքը կարգաւորեց, պրետորեան ըսուած գունդերը հաստատեց՝ որ ետքը շատ անուանի եղան, և ինքնակալութիւնը տասուիրեք դարու բանեց: Հռոմէական պետութեան սահմանները էին ան ատենը, հիւսիսէն Դանուբ և Հռենոս գետերը,

---

1 Ներքին կառավարութիւնը ինչպէս էր:

արևմուտքէն Ատլանտեան Ովկիանոսը, հարաւէն Ափրիկէն, արևելքէն Եփրատ գետը. բոլոր երկիրը 3600 հազարմեթր երկայնութիւն ունէր, և 2400 հազարմեթր լայնութիւն։ Այն ահագին ընդարձակութեան բնակիչներն էին հարիւր քսան միլիոն, որ չորս միլիոն հռովմայեցի քաղաքացւոց կառավարութեանը տակն էին։

[1] Այսպիսի մեծազօր տէրութեան մը գլխաւորը ամենևին արտաքին փառաւորութիւն կամ դիւցազնական տեսք մը չունէր. անպաճոյճ ու սակաւապէտ մարդ մըն էր։ Թէ որ օտարական մը Օգոստոսի փառաւորութիւնը լսելով Հռոմ երթար որ զինքը տեսնէ, շատ պիտի զարմանար. վասն զի ընդարձակ բնակարան մը կը մտնէր՝ որուն ոչ դրսի կողմը և ոչ ներսը զարդարանք կար. մէջն ալ պզտիկ մարդ մը կը տեսնէր՝ ձմեռը չորս հինգ վերարկու վրայէ վրայ հագած, ոտուըններն ու սրունքներն ալ լաթերու մէջ պատատած պլլուած. բայց քովը միշտ զանազան հագուստներ ունէր հագնելու ու դուրսը ելլելու համար. բարձր գարշապարով կօշիկներ ալ կը հագնէր՝ որպէս զի մեծ երևնայ։ Կերակուրը շատ անգամ պաղ ջրի մէջ թրջած հաց էր, վարունգ, հազար և խնձոր։ Շատ անգամ վեգ կը խաղար Ասիայէն բերուած ծառայածուներու հետ։ Ինքզինքը զարդարելու ամենևին հոգ չունենալը անկէց ալ յայտնի է որ մօրուքը սափրելու ու մազերը կտրելու համար այլևայլ վարսավիրաներ մէկէն կը կանչէր, և անոնց կտրելու ատենը ինքը կամ կը կարդար և կամ

[1] Օգոստոս ինչ բնաւորութեան տէր էր։

կը գրէր ։ Շատ կ'ախորժէր որ երբոր ինքը աչուը-ները անկած դիմացինին երեսը նայի՝ անիկայ մէ-կէն 'ի մէկ աչուըները վար առնէ ․ վասն զի միտքը դրած էր որ իր աչուըները արևու պէս ուրիշնե-րուն աչքը կ'առնեն ։ Սակայն ինքը արևուն և ոչ ձմեռուան ճառագայթներուն կրնար դիմանալ ․ վասն զի ցրտութեան պէս տաքութիւնն ալ իրեն անտանելի էր ։ Ամառուան գիշերներն ալ զինքը հո-վահրելու համար՝ անկողինը վազուկ ջրի մը քով սիւնազարդ պատշգամի մէջ կը դնէին ․ ուստի գի-շեր առեն միայն ճամբայ կ'ըներ , ան ալ պատգա-րակով ու քիչ տեղ ․ երեսունըվեց ժամուան մէջ հազիւ քանի մը մղոն ճամբայ կ'ըներ ։ Բայց աս մարմնոյն տկարութեանը պատճառաւ ամենևին գործողութիւնները ետ չէին մնար ․ ընթրելէն ետքը անկողին կը մտնէր , ասդին անդին հրաման-ներ կը խաւրէր ու իր պաշտօնէից ամէն շարժ-մունքները կը դիտէր ։

[1] Ահա աս վատառողջ ու խեղճ մարդը հռով-մէական ինքնակալութիւնը հաստատեց , որ ոչ Սիղղան կրցեր էր ընել , ոչ Պոմպէոս և ոչ Յուլիոս Կեսար ։ Այնպէս ճարտար էր կառավարութիւն ընելու՝ որ դրեթէ ամէնքն ալ վրան մեծ սէր ու-նէին , թէպէտ և անոր կառավարութիւնը բռնա-ւորութիւն համարողներ ալ պակաս չէին ։ Օգոս-տոսի դէմ վեց դաւակցութիւն եղաւ , վեցն ալ պարապ ելաւ ․ ամենէն հռչակաւորը ան է՝ որուն գլուխը Կիննան էր ։

---

[1] Ի՞նչ դաւակցութիւններ եղան Օգոստոսի դէմ ։

[1] Այս Կիննա ըսուածը Պոմպէոսի թոռն էր․ ինքիրմէ ամենևին արդիւնք մը չունէր ։ Օգոստոսը սպաննելու դաւակցութիւն մը ընելու ատենը դաւակիցներէն մէկը զինքը մատնեց, ու բռնեցին Կիննան բանտ դրին ։ Այն գիշերը որ երկրորդ օրը յանցաւորին գլուխը պիտի կտրէին, Օգոստոս սկսաւ մտածել ու ըսել ինքնիրեն․ “ Թէ որ իմ մահս այնչափ ցանկալի է քաղաքակցացս, միթէ ես ապրելու արժանի՞ եմ „ ։ Իր կինը Լիւիան աս լսելով, “ Բժիշկներուն պէս ըրէ, կ՚ըսէ իրեն, որ երբոր կը տեսնեն թէ դեղերը սովորական դարմանելով օգուտ մը չեն ըներ՝ հակառակ դեղեր կը սկսին տալ ։ Ինչուան հիմա խստութեամբ բան մը չվաստըկեցար, անկէց ետքն ալ քիչ մը գթութիւնը փորձէ „ ։ Ընկերոջը խմաստուն խրատին մտիկ ըրաւ Օգոստոս․ Կիննան առջևը բերել տուաւ, բոլոր անոր դաւակիցները դիմացը համրեց, և դաւաճանութիւնը տեղնիտեղը անոր պատմելէն ետև՝ վեհանձնութեամբ մը ըսաւ “ Լսէ հիմա քու վճիռդ, ըսաւ․ աս անգամ ալ քեզի կը ներեմ, ու զքեզ հիւպատոս ալ պիտի ընտրեմ․ Թող թշնամութիւնդ ու եկուր ինծի բարեկամ եղիր․ տեսնենք թէ անկէց ետքը մէ՛կ որուն պիտի յաղթէ, ե՞ս քեզի բարերարութեամբ, եթէ դուն ինծի երախտագիտութեամբ „ ։ Կիննան ալ անկէց ետքը հաւատարմութեամբն ու անձնանուէր սիրովը Օգոստոսի գթութեանը ինքզինքը արժանի ցուցուց ։

---

[1] Ո՞վ էր Կիննա, և Օգոստոս հետը ի՞նչպէս վարուեցաւ ։

[1] Անգամ մը մէկը դողդըղալով աղերսագիր մը տուաւ իրեն. Օգոստոս նեղանալով ըսաւ. «Բարեկամ, գրեթէ տեսնողը կարծէ թէ մարդու չէ, հապա փղի քով կը մօտենաս, քիչ մը համարձակ եղիր»։ — Զինուորներէն մէկը երբոր իր պաշտպանութիւնը խնդրեց, խրատ տուաւ անոր Օգոստոս որ փաստաբանի մը երթայ. «Ա՛հ, ըսաւ զինուորը, ես փաստաբանի ձեռքով չպատերազմեցայ քեզի համար Ակտիոնի քով»։ Աս պատասխանին շատ հաւնեցաւ Օգոստոս, ու անոր խնդիրքը կատարեց։ — Կը պատմեն թէ անգամ մըն ալ Աթենոդորոս փիլիսոփան տեսնելով որ Օգոստոս բարկացեր է, ըսեր է իրեն. «Երբոր բարկութիւնդ կ'ելլէ, հատիկ հատիկ այբուբենին գրերը մէյմէկ ըսէ ու ետքը խօսէ կամ գործէ»։ Կայսրը պատասխան տուեր է իրեն թէ «Միշտ քովս կեցիր դուն, քու խրատներդ ինծի հարկաւոր են»։

[2] Օգոստոս իր տէրութիւնը ապահով պահելու համար՝ քսանըհինգ լեգէոն զօրք այլեւայլ քաղաքներ ու սահմանագլուխները դրեր էր որ անոնց պահպանութիւն ընեն։ Երկու նաւատորմիղ, մէկը Ռաւեննա, մէկալն ալ Միկենք՝ Միջերկրական ծովուն վաճառականութիւնը կը պաշտպանէին. քառասուն նաւ Եւքսինեան Պոնտոս՝ այսինքն Սեւ ծովը կեցած պահպանութիւն

---

1 Ուրիշներու հետ վարուելուն վրայ ինչ բաներ կը պատմուին։

2 Ին տաննները տէրութեան ապահովութիւնը ինչպէս էր։

կ՚ընէին, շատ մը զինուած նաւակներ ալ Հռենոսի ու Դանուբի նաւարկութիւնը կ՚ապահովցընէին։ Կանտաբրացւոց ու Գերմանացւոց դէմ եղած արշաւանքներն ու Պարթեւաց նուաճումն ալ ան միջոցին Հռովմայ մեծութեան անունը շատ բարձրացուց։

[1] Բանաստեղծները իրաւամբ աւելի կը ջանային հռչակել Օգոստոսի սա փառքն ու բարեբաղդութիւնը. հռովմէական գրագիտութիւնն ալ այնպիսի փառաւոր ժամանակին համեմատ էր։ Որատիոս իր երգիծաբանութիւններն ու տաղերը կը հրատարակէր. Տիբուղղոս և Պրոպերտիոս գեղեցիկ ոտանաւորներով խաղաղութիւնն ու երջանկութիւնը կ՚երգէին. Տիտոս Լիւիոս, Սալլուստիոս, Տրոգոս Պոմպէոս, Հռովմայեցւոց պատմութիւնը կը գրէին, և Ովիդիոս դիցաբանութիւն կը շարադրէր։ Մեկենաս տաղեր կը շինէր, Ագրիպպաս՝ Օգոստոսի յիշատակարանները կարգի կը դնէր։ Ան ատենը ծաղկեցան նաև Կատուղղոս բանաստեղծը, Կոռնելիոս Նեպոս պատմագիրը, Վարրոն և Ատտիկոս գիտունները, Վիտրուվիոս ճարտարապետը։ Ասոնց ամենուն մէջ ալ աւելի կը փայլէր Վիրգիլիոս բանաստեղծը։

[2] Օգոստոս շատ կ՚ախորժէր գիտութեանց յառաջադիմութեանը պատճառ ըլլալ. սիրով մտիկ կ՚ընէր որ ան գրուածները առջևը կարդան, ինքն ալ իրենները կը կարդար։ Գրատան մէջ շատ

---

1 Գրականութիւնը մրշափ ծաղկեր էր։

2 Օգոստոս և Մեկենաս ի՛նչ կերպով կը քաջալերէին գիտունները։

մատենագիրներ ամենուն առջեւ մրցանք կ'ընէին իրենց ընտրած դատաւորաց դիմացը, և անոնց մէջ կը գտնուէր միշտ Օգոստոս, իր Մեկենաս բարեկամին ալ հետը։ Այսանկով անկէց ետքը Օ-գոստոսի անունը՝ փառաւոր պատուանուն դար-ձաւ Թագաւորաց, Մեկենասինն ալ՝ ան մեծա-մեծներուն որ գիտութեանց ու արուեստից պաշտ-պան կ'ըլլան։

1 Երբոր աս կերպով Իտալիա ու անով բոլոր աշխարհք կարգէ դուրս խաղաղութեան ու հան-դարտութեան մէջ էին, աստուածային կարգա-ւորութեամբ մեծ խորհուրդ մը կը կատարուէր հռովմէական տէրութեան ընդարձակ երկրին մէկ ծայրը։ Վասն զի Հռովմայ շինութեան 754 տարին, Ակտիոնի պատերազմէն քսանըվեց տարի ետքը, Օգոստոս կայսրը հրովարտակ մը հանեց որ բոլոր տէրութեանը մէջ եղած մարդիկը համրուէին. ուստի ամէն մարդ իր ծնած քաղաքը կ'երթար որ ինքզինքը գրել տայ. սուրբն Յովսէփ ալ սուրբ Աստուածածնայ հետ Բեթղեհէմ քաղաքը գնաց, և ախոռէ մը զատ ուրիշ բնակարան չգտնելով՝ հոն ծնաւ Փրկիչն մեր ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ՝ մարգարէ-ներուն գուշակած ժամանակը։

2 Օգոստոս քանի որ ծերացաւ՝ տեսաւ որ իր արքունեաց պայծառութիւնն ալ մթընցաւ, և իր հաւատարիմ խորհրդականներն ու բարեկամները պակսեցան, Ագրիպպաս և Մեկենաս ալ մեռան։

---

1 Օգոստոսի ատենը ի՞նչ մեծ գործ կատարուե-ցաւ։

2 Ի՞նչ տնական վիշտեր ունեցաւ Օգոստոս։

Անկէ զատ նաև իր ախորժը այլեայլ ցաւերով վիրաւորուեցաւ. վասն զի Մարկեղոս քեռորդին մեռաւ, որուն մահուանը վրայ այնչափ ցաւեցաւ քրոջը Ոկտաւիային հետ՝ որ երբոր Վիրգիլիոս բանաստեղծը իրենց առջևը վրան իր Ենէականին աս տողերը կարդաց,

« Ո՛վ հէք մանկիկ, դու զխիստ բաղդին թէ
զհարկաւ
Անցցես 'ի բաց, դու Մարկեղոս լիցիս ընաւ »:

երկուքն ալ մէկէն՝ Օգոստոս և Ոկտաւիա՝ ընկան մարեցան: Դրուսոս որդեգիրն ալ մեռաւ, որուն քաջութեանն ու առաքինութեանցը վրայ մեծ յոյս ունէին Հռովմայեցիք, նմանապէս իր Թոռները Կայիոս և Ղուկիոս Կեսար՝ ծաղկահասակ տարիքի մէջ մեռան:

[1] Օգոստոսի ինքնակալութեան վերջի տարիները Դանուբ ու Հռենոս գետերէն անդին ճախճախուտ ու անտառախիտ երկրի մը մէջ կը բնակէին Քերուսկեանք, Սիկամբրացիք, Կատտացիք, Բրուկտերացիք և ուրիշ ազգեր՝ որ ընդհանուր անուամբ Գերմանացիք կ'ըսուէին: Ասոնք քաղաք չունէին, վրաններու տակ կը բնակէին, ու իրենց ըրած որսովը կ'ապրէին: Ամէնքն ալ բարձրահասակ մարդիկ էին, սրտոտ, պատերազմասէր, ու բաղդ մը գտնելու համար ամէն տեղ կ'արշաւէին: Օգոստոս անոնց դէմ խրկեր էր Դրուսոսը, Գերմանիկոսը, ետքը Տիբերիոսը, որ գնացեր էր Հռենոսի

---

[1] Ի՞նչ ազգ էին Գերմանացիք ու ի՞նչպէս հնազանդեցան Հռովմայեցւոց:

մեկալ կողմը բերդեր չկներ, ու Իսլայա գետին քով բանակեր էին ։ Եւ Թէպէտ Գերմանացիք քիչ մը ատեն խոնարհեցան. բայց առիթ կը փնտռէին որ նորէն ոտք ելլեն ։ Կայսրը անոնց մտքէն ապստամբութեան խորհուրդն ալ հանելու համար՝ քառասուն հազար Սիկամբրացիք Գաղղիա փոխադրեր էր, և կը ջանար որ ան բարբարոսաց մէջ քաղաքականութիւն ու իրաւագիտութիւն մտցնէ ։ Վրանին օրէնսգէտներով նորէն զօրք խրկեց, որ եկան անոնց անտառներուն մէջ պատերազմեցան, ու զանոնք սորվեցին որ իրենց պապերէն մնացած հին սովորութիւնները թողուն ։ Անոնց բարկութիւնը կատարեալ եղաւ՝ երբոր Կուինտիլիոս Վարոս վրանին կուսակալ գնաց, որ Թէպէտ ազնուատոհմ՝ բայց միանգամայն մեղկ, կնատ ու սաստիկ արծաթասէր մարդ մըն էր ։ Առաջ Ասորւոց երկրին կուսակալ եղած էր, աղքատ մտեր էր ան հարուստ գաւառին մէջ ու զանիկայ աղքատ թողեր ու ինքը մէջէն հարուստ ելեր էր ։ Կարծելով որ Գերմանացւոց ալ նոյն բանը պիտի կարենայ ընել, սկսաւ ոմանց ձեռքէն հարստութիւնը՝ ոմանց ալ իշխանութիւնը առնել ։ Ան բարբարոսները իրենց մէկ առաջնորդ մըն ալ կը փնտռէին. վերջապէս գտան ։

։ Քերուսկեանց մէջ քաջասիրտ ու խորագէտ երիտասարդ մը կար որ Վարոսին հետ բարեկամացեր էր, Օգոստոսէն ալ ասպետութեան պատիւ առեր էր ։ Աս երիտասարդին անունն էր Արմինիոս, որ շատ ատենէ ՚ի վեր իր հայրենիքը ազա-

---

։ Ո՞վ էր Արմինիոս ։

տեղու կը մտածէր ։ Հռովմայեցւոց ամենէն աւելի ինքը բարեկամ կը ձեւանար, կը յորդորէր ալ զանոնք որ ներողամտութիւն չընեն, պզտիկ բաներու համար ալ դատաստանական խիստ քննութիւններ ընեն. ասով կ'ուզէր Հռովմայեցւոց իշխանութիւնը աւելի ատելի ընել իրեններուն ։ Երբոր ան խստութեանց վրայ քովի գաւառներուն մէջ խռովութիւն ելաւ, ինքը խորհուրդ տուաւ Վարոսին որ թեթեւ զօրք մը խրկէ ապստամբաց վրայ ։ Անխոհեմ կուսակալը հաւանեցաւ ան նենգաւոր խորհրդոյն, եւ բոլոր խրկած զօրքը անտառներուն մէջ ջարդուեցան ։

[1] Աս լուրը երբոր տարածուեցաւ, բոլոր Գերմանիա ոտք ելաւ ։ Վարոս ունեցած իրեք լեգէոն զօրքը ժողվեց որ անոնց վրայ երթայ. Արմինիոս գնաց առաջարկեց որ եթէ կ'ուզէ՝ ինքը առաջնորդէ իրեն. անոր ալ հաւնեցաւ Վարոս ։ Գերմանացին տարաւ զինքը Թայթպէրկ ըսուած անտառին քովերը ձգեց, եւ ինքը գնաց որ իր բարեկամները հետը առած գայ ։ Հռովմայեցիք անոր գալէն յուսահատած՝ մտան ան ահագին անտառին մէջ, ու հազիւ մէջէն ելլելով Էմս ու Լիփփէ գետերուն քովը որ հասան, տեսան որ քովի բլուրներուն վրայ բարբարոսները դիզուած՝ Արմինիոսին առաջնորդութեամբը վրանին կը վազեն ։ Փախչելու ճար չկար. մէկ կողմը թշնամիք պատեր էին, մէկալ կողմն ալ ճահիճները ։ Վարոսին երեք լեգէոնները մեծ քաջութեամբ պատերազմելով

---

[1] Ի՞նչպէս յաղթեցին Գերմանացիք Վարոսի զօրացը ։

Ջարդուեցան, ինքն ալ յուսահատած՝ ինքզինքը զարկաւ սպաննեց: Գերմանացիք մեծ ոխ ունէին Հռովմայեցի օրէնսգիրաց դէմ. ուստի մասնաւոր կերպով զանոնք փնտռեցին, ձեռուընին ոտուընին կտրեցին, աչքերնին ու լեզունին փրցուցին ըսելով. « Շչեցէք հիմա ալ ո՛վ իժեր »:

¹ Հռովմայեցիք աս Ջարդը լսելով սարսափեցան. կը վախնային որ ան բարբարոսները Ալպեան լեռներէն չանցնին ու Իտալիան ոտնակոխ չընեն: Ծերունի կայսրը հագուստները պատռըտեց, մօրուքն ու մազերը չածխլեց, ու սրտին ցաւէն գլուխը պատերուն զարնելով կը կանչէր. « Վարո՛ս Վարոս, իմ լեգէոններս քեզմէ կ'ուզեմ »: Հռոմի մէջ բնակող Գաղղիացիքն ու Գերմանացիքը վռնտեց. Իտալիան պաշտպանելու պատրաստութիւն տեսաւ, իր խորթ որդին Տիբերիոսն ու Դրուսոսի որդին Գերմանիկոսը Հռենոսի կողմերը խրկեց, անոնք ալ գնացին թշնամիքը հնազանդեցուցին. և երբոր Տիբերիոս Հռոմ դարձաւ, ծերակոյտը զինքը Օգոստոսի դահակից ընտրեց:

² Յաջորդ տարին (14) կայսրը դէպ 'ի Կամպանիա ճամբորդութիւն մը ըրած ատենը՝ ծանր կերպով հիւանդացաւ. կենացը վերջին օրը հարցուց քովիններուն թէ իր մեռնելու ձայնին վրայ խռովութիւն մը ելա՞ւ. և երբոր չէ ըսին, հայլին ուզեց, ու մազերը շտկըտել տալով հրամայեց որ բարեկամները ներս կանչեն, ու հարցուց անոնց.

---

¹ Հռովմայեցիք իրենց զօրացը Ջարդն որ լսեցին՝ ի՞նչ ըրին:

² Օգոստոս կայսրը ի՞նչպէս մեռաւ:

« Ի՞նչպէս, խաղս աղէկ խաղացի՞ թէ չէ. Թէ որ գոհ էք՝ ծափ զարկէք, գերասանն ու իր խաղը գովեցէք »: Ետքը զամէնքն ալ դուրս խրկեց, ու կինը միայն քովը բռնելով եօթանասունըվեց տարեկան մեռաւ հանդարտութեամբ՝ ինչպէս որ միշտ փափաքեր էր (18):

Թագաւորաց մէջ թէպէտ և ամենէն առաքինին չէ Օգոստոս, բայց ամենէն ճարտարը կրնայ համարուիլ, վասն զի գիտցաւ նախ իր թշնամեացը յաղթել՝ ետքն ալ իր անձին, աշխարհքս խաղաղել, ինքնակալութեան աթոռ մը հաստատել, քառասուն տարի թագաւորել և ինքզինքը ամենուն սիրելի ընել:

## ԳԼՈՒԽ ԻԷ.

Տիբերիոս. — Գերմանիկոսի պատերազմը Քերուսկեանց դէմ. — Գերմանիկոսի մահը. — Տիբերիոս Կապրէա կղզին կ'երթայ. — Իր Սեյանոս իշխանը. — Քրիստոսի փրկչին մերոյ խաչելութիւնը. — Կալիգուլա. — Կղօդիոս Ա: (14-54):

¹ ՏԻԲԵՐԻՈՍ (14-37): — Օգոստոսի հիւանդութիւնը լսելուն պէս Տիբերիոս վազեց Նոլա քաղաքը գնաց: Չէր գիտցուեր թէ կայսրը ողջ պիտի գտնէ թէ մեռած. Լիւիան պալատին դըռները առած՝ թող չէր տար որ դուրսը բան մը իմացուի, և ինքը հրատարակել տուաւ թէ կայսրը մեռաւ ու տեղը Տիբերիոս դրուեցաւ: Ան ատեն

¹ Օգոստոսի ո՞վ յաջորդեց:

հիւպատոսները, բոլոր ծերակոյտը, ասպետները և ամէն մեծամեծները վազեցին Նոլա՝ նորընտիր կայսրը ողջունելու, և մէջերնին խօսք դրին որ ոչ այնչափ Օգոստոսի մահուանը վրայ տրտմութիւն ցուցընեն և ոչ նոր կայսեր վրայ շատ ուրախութիւն. ուստի և արցունքը, ուրախութիւնը, դանգատանքն ու շողոքորթութիւնը մէկտեղ խառնեցին։ Ամենէն առաջ երկու հիւպատոսները երդում ըրին Տիբերիոսի. ետքը պրետորեան գունդերուն գլխաւորը, ծերակոյտը, զօրքն ու ժողովուրդը։

¹ Տիբերիոս բնութեամբ շատ կեղծաւոր ըլլալով՝ առջի բերան Օգոստոսին վրայ մեծ ցաւ ցըցուց, ծերակուտին առջևը հանեց անոր կտակը կարդաց, և լալէն ու խորունկ խորունկ հառաչանքներէն կարդացմունքն ալ չկրցաւ լմնցնել։ Ինչուան հրաժարել ալ ուզեց. “Օգոստոսի կարողութիւնը չունիմ, կ'ըսէր, և անոր թաղումը ընելէն զատ՝ ամենևին տէրութեան գործողութեանցը մէջ մտնել չեմ ուզեր,,։ Ծերակոյտը գնաց ոտքը ընկաւ, աղաչեց որ կայսերութիւնը յանձն առնու. Տիբերիոս անոնց աղաչանքը մտիկ ընելու ատեն կը նայէր որ մտքերնին հասկընայ, որպէս զի ետքը ըստ այնմ վրէժխնդրութիւն ընէ։ Երբոր անոնք նորէն սկսան աղաչել, Տիբերիոս ելաւ ըսաւ. “Որովհետև տէրութեան բոլոր ծանրութիւնը իմ վրաս առնելու կարողութիւն չունիմ, ան բանը միայն յանձն կ'առնում՝ որ դուք կ'ուզէք յանձնել ինծի։ — Դուն զուրցէ Կեսար,

---

¹ Տիբերիոս ի՞նչ կերպով յանձն առաւ կայսերութիւնը։

ըսաւ շուտ մը Ասինիոս Գաղղոս, ո՞ր բանը կ'ուզես որ քեզի յանձնեն ,,։ Այս խօսքին վրայ սաստիկ բարկացաւ Տիբեր, ու ոխ պահեց Գաղղոսին վրայ։ Վերջապէս առանց որոշ պատասխան մը տալու մէյմըն ալ հրաժարման խօսքը չըրաւ. մանաւանդ երբոր Պաննոնիոյ զօրացն ու Գերմանիոյ ապստամբութեան գոյժը հասաւ, ան խօսքը բոլորովին խափանեցաւ։

1 Պաննոնիոյ զօրքին զօրապետն էր Բղեսոս, և Գերմանիոյ զօրացը Գերմանիկոս. աս երկու բանակներն ալ նոյն ատենը ու նոյն բանի համար ոտք ելան։ Կը գանգատէին իրենց սաստիկ աշխատութեանցն ու երկարատև ծառայութեանը վրայ, ուստի կ'ուզէին որ կամ զիրենք արձկեն՝ կամ թոշակնին աւելցնեն. երբոր մտիկ ընող չեղաւ, սկսան ամէն տեսակ անկարգութիւն ընել։ Տիբերիոս երկու պրետորեան գնդով ու շատ մը ձիաւորով իր Դրուսոս որդին Պաննոնիա խրկեց. ան ալ գնաց կէս մը սպառնալիքով՝ կէս մըն ալ խոստմունքներով զօրքը հնազանդեցուց և ապստամբութեան գլխաւորները սպաննել տուաւ։ Գերմանիկոս ալ անդին իրեններուն սիրտը շահելով զանոնք հանդարտեցուց, ու ապստամբաց գլխաւորները սպաննել տուաւ։

2 Տիբերիոս ինքզինքը կայսր չէր անուաներ, հապա միշտ իշխան. “ Ես, կ'ըսէր, գերեաց տէրն եմ, զօրաց կայսրը ու ժողովրդոց իշխանը ,,։ Պա-

---

1 Պաննոնիոյ ու Գերմանիոյ բանակները ինչպէս նուաճուեցան։

2 Ի՞նչ վրէժխնդրութիւններ ըրաւ Տիբերիոս։

տխուր չուզել կը ձեւացնէր, ու իր պատկերներն ու արձանները իբրև չէնքերուն զարդ թող կուտար որ դրուին. ծերակոյտն ալ ցածութիւն ու շողոքորթութիւնը ձեռքէ չէր թողուր : Առաջարկեցին իրեն որ սեպտեմբեր ամսոյն վրայ իր անունը դնեն : Պատասխան տուաւ թէ "Հապա ի՞նչ պիտի ընէք թէ որ տասուերկու կեսար ունենաք" : Աս ձեւացուցած չափաւորութեանը հետ շուտով ալ սկսաւ իր վրէժխնդրութիւնները 'ի գործ դնել : Օգոստոսի աղջիկը Յուլիան երեսի վրայ թողուց, որ խեղճութենէ մեռաւ. Պոմպէոսի թոռը Դրուսոսը ստիպեց որ ինքզինքը սպաննէ. համբաւաւոր Ագրիպպասի որդին Ագրիպպաս Պոստումոսն ալ սպաննել տուաւ : Աս Ագրիպպաս երիտասարդը իրեն տարեկից ու կերպարանքովն ալ շատ նման գերի մը ունէր՝ Կղեմէս անունով, որ իր տէրը ազատելու համար շատ աշխատելէն ետև՝ միտքը դրաւ որ ինքը անոր անունովը մեռնի : Ասանկով երբոր գլուխը շատ ընկերներ ժողվեց, ձայն ելաւ թէ Ագրիպպաս սպաննողներուն ձեռքէն ազատեր է : Տիբերիոս մարդ խրկեց որ երթան գերին բռնեն իրեն բերեն. "Դուն ի՞նչպէս Ագրիպպաս եղար" հարցուց անոր Տիբեր : Պատասխան տուաւ գերին թէ "Ի՞նչպէս որ դուն կեսար եղար" : Տիբեր փոխանակ պատուելու տիրասէր Կղեմէսը, անողորմաբար պալատին մէջ ծածուկ տեղ մը սպաննել տուաւ զինքը :

[1] Բայց Տիբերիոսին աչքը վախցընողն ու նախանձը շարժողը աւելի իր եղբօրորդին Գերմա-

---

[1] Տիբերիոս ամենէն աւելի ասոնկից վախ ունէր :

նիկոսն էր, որ իր ազնիւ բնաւորութեամբը թէ՛ ժողովրդեան և թէ զօրաց սիրելի էր։ Գերմանիկոս ան ատենը Վարոսի կոտորածին վրէժը հանելու ետևէ էր, վասն զի կ'ըսէին թէ Թայթպերկ անտառին մէջ դեռ Վարոսին ու զօրացը դիակները անթաղ կեցած են։ Իրաւցընէ գնացին տեսան որ բոլոր դաշտին երեսը մարդու և ձիու ոսկորներով և կոտրտած զէնքերով ծածկուած էր. անտառին ծառերէն կախուած էին մարդու գլուխներ, ոսկեր, թևեր. սեղաններ կային՝ որոնց վրայ բարբարոսները տրիբուններն ու հարիւրապետները զոհեր էին։ Զօրքը ան քստմնելի բաներն որ տեսան, տրտմութեամբ ու վրէժխնդրութեամբ սրտերնին լեցուած՝ իրենց զինուորակցացը խեղճ ոսկորները ժողվեցին թաղեցին, ու ճամբանին առաջ տարին։

[1] Գերմանիկոսի առջևէն միշտ կը փախչէր Արմինիոս։ Անորոշ պատերազմ մը ըրին. Թշնամիք ցրուեցան, և Հռովմայեցիք աս յաջողութիւնը բաւական սեպելով՝ դէպ 'ի Գաղղիա դարձան շատ դժուարութիւններով ու գրեթէ անդադար բարբարոսաց հետ պատերազմելով։ Անգամ մը Արմինիոս բոլոր ձիաւորներովը Հռովմայեցւոց վրայ դիմեց, որոնց զօրավարն էր Կէկինա. Հռովմայեցիք թողուցին փախան, ու գնացին Գերմանիկոսի հետ միացան։ Արմինիոս նորէն անոնց ետևէն հասաւ, և ուզեց արգիլել որ Վիսուրգիս կամ Վեզէր գետէն չանցնին. բայց զօրացը մեծ մասը կորսնցուց, և քիչ մնաց որ ինքն ալ ձեռք պիտի իյնար (17)։

---

[1] Գերմանիկոս ճնշապէս յաղթեց Արմինիոսի։

1 Գերմանիկոս Հռովմայեցւոց եղած նախատինքը վերցընելէն ու Գերմանիան խաղաղելէն ետքը Իտալիա դարձաւ ։ Ժողովուրդը մեծ սիրով ու պատուով ընդունեցան զինքը, Հռոմէն ալ շատ մարդիկ իրեն ընդ առաջ գնացին ։ Աս հասարակաց ուրախութեանը չհաւնեցաւ Տիբերիոս. բանեց յաղթականը արեւելք խրկեց որ հոնտեղն ալ խաղաղէ ։ Գերմանիկոս ան արշաւանքը աքսորանքի տեղ սեպելով երթալու ատենը՝ բոլոր քաղաքացիք վրան լացին, վասն զի գիտէին որ անկէ դառնալիք չունի. իրաւցընէ ալ երկու տարի ետքը անոր մահուան լուրը առին. վասն զի Ասորւոց կուսակալը Պիսոն՝ Տիբերիոսին հրամանովը զանիկայ թունաւորեց (20) ։

2 Աս գործը Հռոմ հասնելուն պէս՝ ամենուն սիրտը ցաւով ու բարկութեամբ լեցուեցաւ ։ Վազեցին կայսեր արձանները քարկոծեցին, ու պալատին առջեւը դիզուած "Գերմանիկոսը կ'ուզենք" կը կանչէին ։ Ամենուն ցաւն ու բարկութիւնը աւելի զայրացաւ՝ երբոր Գերմանիկոսի կինը Ագրիպպինա (որ Հռոմ գալու համար ճամբայ ելեր էր) երկու զաւակովը Բրունդիսիոն քաղաքը հասնելով՝ Գերմանիկոսի ոսկորներուն մոխիրը սափորի մէջ դրած ու գիրկը բռնած, իր ամուսնոյն մահուանը համար վրէժխնդրութիւն կը բողոքէր ։ Բրունդիսիոնէն մինչեւ Հռոմ ան

---

1 Ի՞նչ կերպով Հռոմ դարձաւ ու ետքը ի՞նչպէս մեռաւ ։

2 Հռովմայեցիք ի՞նչ ցաւ ցըցուցին Գերմանիկոսի մահուանը վրայ ։

սափորը պրետորներ ու հարիւրապետներ վերցուցած կը բերէին. բոլոր ճամբուն վրայ ժողովուրդը սուգ մտած՝ ազնիւ գլխակներ կը փռէին ու անուշահոտ խունկեր կը ծխէին: Ան մոխիրը գիշեր ատեն հազարաւոր ջահերով տարին Օգոստոսի սափորին քովը զետեղեցին. դատաւորք, զինուորք և ժողովուրդը կ'ողբային ու միաբերան կը կանչէին թէ "Գերմանիկոսին հետ կորաւ հասարակապետութիւնը, կորաւ հայրենեաց զարդը, մեր բարեկամն ու մեր վերջին յոյսը": Թէ ցաւերնին իրաւացի էր և թէ վախերնին:

Տիբեր բռնադատեցաւ որ Պիսոնը դատաստանի կանչէ, և գիտնալով որ քննութեան ատեն իր խարդախութիւնը դուրս պիտի ելլէ՝ բանտին մէջ զանիկայ սպաննել տուաւ:

1 Անկէց ետքը Տիբերիոս ամէն արգելքէ ազատած ըլլալով՝ ինքզինքը իր ախտերուն տուաւ: Իրեն հազարապետ ընտրեց Եղիոս Սէյանոս անունով ցած ու փառասէր մարդը, և անոր չար խորհուրդներուն մտիկ ընելով Օգոստոսի ցեղին մարդիկը մէկիկ մէկիկ ջնջեց: Բայց ետքը երբոր անոր միտքն իմացաւ որ զինքն ալ սպաննել ու տեղն անցնիլ կ'ուզէր՝ մեռցընել տուաւ զանիկայ, մարմինն ալ բռնեց բզիկ բզիկ ըրաւ (31):

2 Այսչափ անզգամութեանցը համար Տիբերիոս Հռովմայ ժողովրդեան աչքէն ծածկուելու

---

1 Գերմանիկոսի մեռնելէն ետքը ի՞նչ անզգամութիւններ ըրաւ Տիբերիոս:

2 Կապրէա կղզւոյն մէջ ի՞նչ անգթութիւններ ըրաւ:

մօրքով գնաց Կապրէա կղզին քաշուեցաւ, հոն ինքզինքը ամէն տեսակ զեղխութեան տուաւ, ու քովը միայն իր մոլութեանցը ծառայողները կըրնային մնալ։ Որչափ որ Հռոմ մահապարտ մարդիկ գտնուէին՝ հոն կը տարուէին. կղզւոյն մէկ կողմն ալ տեղ մը կար, ուսկից զանոնք Տիբերիոսին առջևը ծովը կը նետէին, ու առըկով փարձուած նաւավարներ ան խեղճերուն մարմինները թիակներով կտոր կտոր կ'ընէին, որպէս զի աննեխին կենդանութեան նշան չմնայ վրանին։ Տիբերիոս իր պալատին քովերը կառքով քալելու ատեն՝ թէ որ յանկարծ ճամբուն վրայ արգելք մը ելլէր առջևը, իր կառավարին պատիժը մահ էր։

¹ Ան միջոցին էր որ հռոմէական կայսրութեան մէկ անկիւնը աշխարհքիս ամենամեծ գործողութիւնը կատարուեցաւ։ Պոնտացի Պիղատոսին Հրէաստանի դատաւոր եղած ատենը (33) Քրիստոս տէրն մեր Հրէից ձեռքովը շատ չարչարանք քաշելէն ետքը՝ խաչին վրայ մեռաւ։

² Իսկ Տիբերիոս սոսկալի նեղութեան ու հիւանդութեան մէջ ընկած՝ մէկ կողմանէ նոր նոր ապանութիւններ կ'ընէր, մէկալ կողմանէ կեանքը երկնցընելու համար ամէն տեսակ գուշակութիւններու ետևէ կ'ըլլար, և գիտնալով որ մահը մօտեցեր է՝ կը նայէր որ ուրիշները ամենևին չիմանան։ Օր մը երբոր կոչունքէ մը ելաւ, իր բժիշկը յայտնի ըսաւ քովիններուն թէ երկու օրէն աւելի

---

1 Ե՞րբ եղաւ Քրիստոսի տեառն մերոյ խաչելութիւնը։

2 Տիբերիոս ի՞նչպէս մեռաւ։

չտայրեր Տիբեր. ուստի շատ մը սուրհանդակներ խրկեցին զօրավարներուն, ու Կայիոս Կալիգո-ղա մէկէն 'ի մէկ կայսերութիւնը ձեռքը առաւ: Մէյմըն ալ յանկարծ Տիբերիոս առողջացաւ, խելքը գլուխն եկաւ ու լեզուն բացուեցաւ. քո-վինները սաստիկ շփոթեցան ու սկսան փախչող փախչողի ըլլալ. բայց Մակրոն անունով պրետորը Տիբերին վրայ բարձեր՝ վերմակներ դիզել տուաւ ու խղդեց ան եօթանասուն տարեկան ծերը (37):

1 ԿԱԼԻԳՈՂԱ (37-41): — Հռովմայեցիք մեծ ուրախութիւն ըրին բռնաւորին մահուանը վրայ, և նոր կայսրը ցնծութեամբ ընդունեցան: Կալի-գողա՝ Գերմանիկոսին որդին էր, որուն յիշատակը այնչափ սիրելի էր Հռովմայեցւոց: Առջի ատեն հասարակաց ցուցուցած համարմանը արժանի վարք ունեցաւ Կալիգողա. բայց ծանր հիւանդութիւն մը քաշելէն ետքը իր մոլութիւնները դուրս ելան, և ամէն տեսակ անկարգութիւն ըրաւ:

2 Որչափ խեղկատակ, մնջկատակ ու սուսերա-մարտներ որ կային՝ քովը ժողվեց, ինքն ալ անոնց հետ ուզեց ամենուն առջեւը խաղեր ձեւացընել: Ծերակոյտն ալ հոն հրաւիրեց. ով որ ծափ չզար-նէր ու չգովէր՝ պատիժը մահ էր. մէկը թէ որ ձայն մը հանէր՝ սաստիկ խարազանով ծեծ կ'ու-տէր: Օր մը երբոր թէատրոնի մէջ կեցեր՝ Յու-նաց խեղկատակներուն հետ ինքզինքը կը բաղդա-տէր, ժողովուրդը անոր անխելք փառասիրու-

1 Տիբերիոսի ո՞վ յաջորդեց:
2 Ի՞նչ անկարգութիւններ կ'ընէր Կալիգողա:

թեւանը չյիմանալով թողուցին գնացին. ան ատենը դարձաւ Կալիգուլա, “Ո՜ւր էր թէ, ըսաւ, Հռովմայեցիք մէկ գլուխ մը միայն ունենային որ մէկ զարնուածքով գետին ձգէի ”. վասն զի ո՛ր մէկը բռնէր սպաննել պիտի տար։ Երբեմն խաղի ժամանակ երբոր սուսերամարտները կամ մահապարտները քիչ մը ուշանային, գալուն պէս լեզունին կարել կուտար ու հանդիսատեսից մէջ կը նետէր որ սորվին իրեն դէմ չխօսիլ։

[1] Մէկ կողմանէ ալ Տիբերիոսին դրկած եօթը հարիւր միլիոն ստակը կը վատնէր անօգուտ ու անխելք ծախքերով։ Ծովու վրայ կամուրջներ շինել կուտար, ազնիւ քարերով զարդարած նաւակներ, անոնց մէջ ալ բաղնիքներ՝ սիւնազարդ պատշգամներ և պտղատու ծառեր։ Իր Ինկիտատոս կամ Ինչիթա՛տոս այսինքն Աշխոյժ ըսուած ձիուն մարմարիոնէ ախոռ մը շինել տուաւ՝ ծիրանիներով ու մարգարիտներով զարդարած, մսուրն ալ փղոսկրէ. ախոռին դուռը գիշերը պահապաններ կը կեցընէր որ ձիուն քունին արգելք մը չհանդիպի։ Շատ անգամ ան ձին իր սեղանը կը հրամցընէր, իր ձեռքովը անոր ոսկեղօծ գարի կը կերցընէր, ու ոսկի գաւաթով ջուր կը խմցընէր. երդումն ալ անոր գլխուն վրայ կ՚ընէր։ Կ՚ըսեն թէ Աշխոյժը հիւպատոս ընելու ալ միտք ունի եղեր Կալիգուլա, բայց իր մահը վրայ հասնելով չէ կըրցեր։ Հրամայեց որ ամէն դլխաւոր քաղաքաց կռատուններուն մէջ կեցող արձաններուն քովը իր արձանն ալ դնեն. իրեն համար մասնաւոր մեհեան

---

[1] Շռայլութիւնները ի՜նչ տեսակ էին։

մըն ալ չինել տուաւ և զատ քուրմեր դրաւ որ իր ոսկի արձանին դիմացը սիրամարգներ, փասիաններ և ուրիշ սակաւագիւտ թռչուններ կը զոհէին։

¹ Անգթութեան մէջ ալ իր անխելքութիւնը կ'երևնար։ Հայրերը պարտըկան էին իրենց զաւակաց սպանութեան առենը անոնց քովը գտնուելու։ Կերակրոյ առեն մէկը մէկալը չարչարել տալով կը զուարճանար, և դահճին կ'ըսէր անդադար. “Անանկ զարկ որ ծեծի առեն մեռնի”։ Անգամ մը կոչունքի մը առեն սկսաւ բարձր ձայնով ծիծաղել. քովի մեծամեծները երբոր պատճառը հարցուցին, “կը մտածէի, ըսաւ, որ մէկ նշան տալովս կրնամ զամենքնիդ ալ սպաննել տալ”։

² Աս սոսկալի բռնաւորը ամենևին քաջասրտութիւն չունէր. քիչ մը բանով կը վախնար. օդը բաց եղած առենը դէպ 'ի երկինք նետեր կը նետէր, բայց փայլակ մը տեսածին պէս՝ գլուխը կը ծածկէր ու անկողնոյն տակը կը մտնէր։ Գերմանիա ու Բրիտանիա ըրած արշաւանքոյն ալ իր վատութիւնը յայտնի եղաւ։ Հռոմէն ճամբայ ելաւ (39) դէպ 'ի Հռենոս գետը երթալու. ո՛ր ճամբէն որ պիտի անցնէր՝ նախ ան տեղը բնակիչներուն աւլել ու ջրել կու տար։ Ան երկու արշաւանքէն ալ ետ դարձաւ՝ առանց թշնամին տեսնելու. և սակայն առանց ամըչնալու ծերակուտին ասանկ կը գրէր. “Դուք հոն կեցած հանգիստ զուարճացած առեններդ՝ Կեսար ինքզինքը մեծամեծ վտանգներու մէջ կը ձգէ”։ Քերեաս տրիբունը

---

1 Ի՞նչ անգթութիւններ կ'ընէր։
2 Ի՞նչ արշաւանք ըրաւ ու ի՞նչ կերպով։

ան խենթին ձեռքէն աշխարհս ազատելու մտքով զարկաւ զինքը պալատին մէջ սպաննեց (41) :

1 ԿՂՕԴԻՈՍ Ա (41-54) : — Կալիգուլայի մեռնելէն ետև զօրքը պալատը կողոպտելու ատեն՝ մէջերնէն մէկը տեսաւ որ բարձրահասակ ու դեր մարդուն մէկը անկիւն մը քաշուած կը դողդըղայ․ իմացաւ որ անիկայ Գերմանիկոսին Կղօդիոս եղբայրն է, ու մէկէն Կեցցէ կայսր կանչեց : Ետքը կ՚առնեն զինքը գահաւորակի մը վրայ կը դնեն ու բանակը կը տանին : Հոն Կղօդիոսին վախը կ՚երթայ, խելքը վրան կուգայ, պրետորեան գնդէն երդում կ՚առնու, անոնց սիրտը շահելու համար մարդ գլուխ քսանըհինգ դահեկան կը բաժնէ, ու բոլոր զօրաց ալ ստակ կը խոստանայ :

2 Թէպէտ և բնութեամբ չար չէր Կղօդիոս, բայց անանկ ապուշ էր որ մինչուան իր մայրը Անտոնիա [illegible] ու [illegible] կ՚անուանէր զինքը : Տղայութեան ատենը շատ հիւանդութիւն քաշելով թէ՛ մարմինը և թէ միտքը տկարացեր էր, սակայն գրագիտութեան մէջ շատ հմտութիւն ունէր․ Ետրուրացւոց վրայ գիրք մը շիներ էր, և մէկ Հռովմայեցւոց պատմութիւն մը՝ որ Կեսարի մահուընէն կը սկսէր :

3 Կղօդիոս ինքը անկարող ըլլալով տէրութեան կառավարութիւնը վատանուն մարդկանց ձեռքը թողուց, որոնց մէջ աւելի զօրաւորներն էին Պալ-

---

1 Կալիգուլայի ո՞վ յաջորդեց :
2 Կղօդիոս ի՞նչ բնաւորութեան տէր էր :
3 Կառավարութիւնը ի՞նչպէս էր :

լաս և Նարկիս. ասոնց անօրէն խորհուրդներուն մասնակից ըլլալով ամէն տեսակ մոլութեանց մէջ ընկաւ, ու շատ երևելի մարդկանց արիւնը մտաւ: Իր փառասէր Մեսսալինա կինը քիչ մը զինքը թըմրութենէն արթընցուց, վասն զի կ'ուզէր զինքը աթոռէն ձգել ու տեղը երիտասարդ պատրիկ մը դնել. զանիկայ սպաննել տուաւ Կղօդիոս, ու տեղը Ագրիպպինան իրեն կին առաւ՝ որ անկէ վար չէր մնար: Աս կայսրուհին ուզելով Կղօդիոսի Բրիտաննիկոս որդւոյն տեղը իր Ներոն որդին թագաւորեցընել՝ միտքը դրաւ որ երկանը թոյն տայ, բայց այնպիսի նոր թոյն մը կը փնտռէր որ շուտով չմեռցընէ, հապա խելքը կորսնցընել տայ. անով յանկարծական մահուան չհանդիպի կայսրը, ու իր յանցանքը դուրս չելլէ: Վերջապէս գտաւ հռչակաւոր դեղատու Լոկուստա անունով կինը՝ որ թունաւորելուն ամէն կերպերը գիտէր, և իր ուզածին պէս թոյն մը պատրաստեց տուաւ իրեն, ինքն ալ Կղօդիոսին սիրած սունկէ շինած կերակրին մէջ խառնեց ան թոյնը: Բայց երբոր դեղին ազդեցութիւնը շատ կ'ուշանար, Ագրիպպինա չկարենալով համբերել՝ սիրտն ալ անդադար վախի մէջ ըլլալով կայսեր Քսենոփոն բժիշկն որսաց, որ Կղօդիոսին սիրտը ետ գալուն օգնեմ ըսելով կոկորդէն վար թունաւորած փետուր մը խոթեց, որով քիչ ատենի մէջ մեռաւ Կղօդիոս (54): Աս կայսեր ատենը Մաւրիտանիոյ ու Բրիտանիոյ մէկ մասին տիրեցին Հռովմայեցիք:

## ԳԼՈՒԽ ԻԸ.

Ներոն. — Բրիտաննիկոսի մահը. — Ներոնի անիրաւութիւնները. — Ագրիպպինայի սպանութիւնը. — Հռովմայ հրդեհը. — Քրիստոնեից դէմ հալածանքը. — Ներոն Յունաստան ճամբորդութիւն կ'ընէ. — Հռոմի մէջ ըրած յաղթանակը. — Ներոնի մահը. — Գալբա. — Իր ագահութիւնը. — Մահը. — Օթոն. — Բէտրիակոնի պատերազմը. — Վիտելլիոս. — Իր որկրամոլութիւնը. — Մահը: (54-68):

¹ ՆԵՐՈՆ (54-68) — Կղօդիոսին մեռնելու ատենը Ագրիպպինա մեծ ցաւ ու տրտմութիւն ձեւացընելով՝ իբրև մխիթարութեան կարօտ վազեց Բրիտաննիկոսին, դրկեց զանիկայ, հօրդ կենդանի պատկերը դուն ես ըսելով, և ուրիշ շատ կերպերով քովը բռնեց, չթողուց որ իրմէ զատուի ու ելլէ դուրսը երևնայ: Իր հրամանովը պահապանները պալատին դռները գոցեր էին, և ինքը ատեն ատեն կը հրատարակէր թէ կայսրը աղէկնալու վրայ է. միտքը ան էր որ զօրքը հանդարտ կենայ, մինչուան որ իր որդւոյն Ներոնի կայսրութիւնը ապահովցընէ: Վերջապէս ներսը ամէն բան շտկելէն ետքը՝ մէյմըն ալ յանկարծ պալատին դռները բացուեցան, և Ներոն իր Պուռոս անձնապահապետին հետ մէկտեղ դուրս ելաւ, զօրաց մէջ մտաւ, որ ուրախութեամբ զինքը ընդունեցան. ետքը բանակը գնաց Ներոն, զօրաց առջևը ճառ

¹ Կղօդիոսին ո՛վ յաջորդեց և ի՞նչ կերպով:

մը խօսեցաւ, ստակ բաժնեց, և ամէնքը Կեցցէ կայսր կանչեցին։ Կղօդիոսին ալ աստուածական պատիւ տրուեցաւ, և շատ փառաւոր եղաւ յուղարկաւորութիւնը։

1 Ներոն կայսր եղած ատենը տասնըհինգ տարեկան էր, և ամէնքը վրան մեծ յոյս ունէին. Բուռոս և Սենեկա իրեն դաստիարակ եղած էին. առջինը զինուորական հանճարովը ու ծանրութեամբը երևելի, երկրորդն ալ խելքովը, գիտութեամբն ու սիրելի կերպերովը։ Դեռահասակ կայսրը ծերակուտին առջևը Կղօդիոսին վրայ ներբող մը խօսեցաւ (որ իր վարպետը Սենեկան շարադրեր էր). անոր մէջ կը խոստանար որ ամենայն կերպով Օգոստոսի օրինակին հետևի, ու անոր պէս կառավարէ տէրութիւնը։ Իր զուրցած քանի մը խօսքերն ալ յոյս ու վստահութիւն կուտային լսողաց. օրինակի համար՝ օր մը երբոր թուղթ մը բերին իրեն որ գլուխը կտրուելու մարդու մը վճիռը ստորագրէ, "Երանի՜ թէ գիր չգիտնայի" ըսեր էր։ Ուրիշ անգամ մըն ալ երբոր ծերակոյտը սկսեր էր զինքը գովել, "Սպասեցէք, ըսեր է, որ նախ արժանի ըլլամ"։

2 Բայց քիչ ատենէն իր անգթութիւնը, ցածութիւնն ու անկարգութիւնները դուրս ելան։ Ագրիպպինա, որ կարծելով թէ որդւոյն անունովը ինքը պիտի թագաւորէ՝ փառաւորութիւնը կատարելու համար բանի մը չէր խնայած, տեսնելով որ Ներոն իրեն երես չտար՝ բոլորովին անոր

---

1 Ի՞նչ կերպով սկսաւ Ներոն կայսերութիւնը։

2 Բրիտանիկոսը ի՞նչպէս թունաւորեց։

դէմ ելաւ, ու Բրիտանիկոսը թագաւորեցնելու կը սպառնար ։ Օր մը պալատը նստած կերակուր ուտելու ատենը յանկարծ ընկաւ մեռաւ Բրիտանիկոս. վասն զի անոր խմելիքին մէջ թոյն խառներ էր Ներոն ։ Սեղանակիցներէն ոմը զարհուրած փախաւ, որն ալ սարսափած մնաց. իսկ ինքը Ներոն անհոգաբար իր անկողնին վրայ ոտուըներն երկընցուցած և չգիտնալ ձևացընելով “ Պզտիկուց 'ի վեր հիւանդութիւն ունէր, ըսաւ, ուստի երբ ըլլայ՝ օր մը՝ ասանկ պիտի մեռնէր „ ։ Ան գիշերը մէկէն անիկայ թաղել տուաւ, ու անոր ունեցածը բոլոր ան թոյնը պատրաստողներուն տուաւ ։

¹ Անկէց ետքը Ներոն բոլորովին ինքզինքը զեղխութեան տուած՝ գուսաններ, երաժիշտներ ու կաքաւիչներ բերել տուաւ քովը ։ Գիշերանց գերիի հագուստով փողոցներն ու գինետուները կը պտըտէր, քովի մարդիկն ալ բան ծախողներուն վաճառքները կը յափշտակէին, անցաւորները կը վիրաւորէին և կամ կը բռնէին՝ զանոնք լուալիքներուն մէջ կը նետէին ։ Ինքն ալ չէր ճանչցուեր, և ուրիշները քովիններուն հետ կռուըտելու ատեն շատ անգամ ինքն ալ ծեծ կ'ուտէր, ու նշանները երեսին վրայ կը մնային ։ Երբոր իմացուեցաւ թէ կայսրն է ան ասպատակութեանց առաջնորդը, շատ մարդիկ գնացին հետը միացան, և ամէն գիշեր Հռոմ թշնամեացմէ առնուած քաղաքի կը նմանէր ։ Անգամ մըն ալ սաստիկ վիրաւորուեցաւ

---

¹ Ուրիշ ինչ անկարգութիւններ սկսաւ ընել ։

Ներոն, և անկէց ետքը սկսաւ հետը ծպտեալ զինուորներ ու սուսերամարտներ տանել:

[1] Ագրիպպինա կը ջանար որ իր ձեռքէն իշխանութիւնը չհանէ, և բռնութիւնները կը շատցընէր: Բայց Ներոն օրէ օր աւելի համարձակ իր անկարգութիւնները կատարելով սաստիկ ատելութիւն մը ունեցաւ մօրը դէմ, և միտքը դրաւ որ զանիկայ մեռցընել տայ: Անիկետոս ծովապետը Ներոնի մարդասպանութեան գործի ըլլալ ուզելով եկաւ անանկ նաւ մը ցուցուց անոր որ ծովուն մէջ արուեստով մը մէկ մասը կը բացուէր կը զատուէր: Հաւնեցաւ Ներոն այն սոսկալի խորհուրդին, ու Կամպանիոյ մէջ Աթենասայ տօնը կատարելու որ գնաց՝ իր մայրն ալ հրաւիրեց որ հոն գայ ու հաշտուին իրարու հետ: Դիւրահաւան գտնուեցաւ Ագրիպպինա, վազեց գնաց. Ներոն անոր առջին ելաւ, պագտուեցան, ու օր մը ամբողջ ուրախանալէն ետև՝ նորէն ծովեզերքը բերաւ Ներոն զմայրը, ուր փառաւոր կերպով զարդարուն նաւ մը իրեն համար կը սպասէր, և շատ սիրով իրարմէ բաժնուեցան: Ցանկարծ նշան մը տրուելուն պէս՝ Ագրիպպինային հանգչած անկողնոյն տակի տախտակամածը փլաւ, ու նաւը կամաց կամաց ընկղմելով բոլոր վրայի բաները ծովը թափեց: Ագրիպպինայի աղախիններէն մէկը երբոր կանչեց թէ կայսեր մայրն է անիկայ, մէկէն թիակներով զինքը զարկին հոն մեռուցին: Ագրիպպինա թեթև կերպով մը վիրաւորուած՝ լողալով գնաց վաճառականաց նաւերուն քով, որ զինքը ցամաքը

---

[1] Ագրիպպինա մայրը Ինչպէս սպաննեց Ներոն:

հանեցին ։ Անկէ իր գեղի տունը գնաց, սկսաւ գլխուն եկածին վրայ մտածել, և բանը չհասկըցած ձևացընելով՝ որդւոյն թուղթ մը գրեց որ աստուածոց ողորմութեանը մեծ վտանգէ մը ազատեցայ ։ Աս որ լսեց Ներոն՝ հասկըցաւ որ մայրը կատղած՝ բոլոր զօրքն ու ժողովուրդը իրեն դէմ կրնայ հանել . սկսաւ մէկը փնտռել որ զինքը Ագրիպպինային ձեռքէն ազատէ ։ Մէկէն եկաւ Անիկետոս ու յանձն առաւ խնդիրքը կատարելու . “ Այսօր սկսայ ինքնակալութիւնս , կանչեց կայսրը, և աս երջանկութեանս պատճառ դուն ես ” ։ Նոյն գիշերը սպաննուեցաւ Ագրիպպինա, և ձայն ելաւ թէ ինքզինքը մեռցուցեր է (59) ։

[1] Անկէց ետքը չարիք չմնաց որ մայրասպան որդին չընէ ։ Այնպիսի անզգամութիւններու տուաւ ինքզինքը որ յաւիտենական նախատինք մը եղաւ իր անունը մարդկային ազգի ։ Նորէն Պոպպէային հաճոյանալու համար՝ առջի կնիկը Օկտաւիան սպաննել տուաւ, և ան միջոցին ժողովրդեան առջևը ձևացընելու խաղերուն փորձը կ'ընէր պալատին մէջ ։ Մասնաւոր տեղ մը շինած էր, ուր ուզածին պէս կ'երգէր, կը պարէր, ու կառք կը քշէր . իր գերիներն ու ծառաներն ալ կը կանչէր որ տեսնեն ու ծափ զարնեն ։ Ժողովուրդը զուարճացընելու համար ուղտեր կը վազցընէր, ծովային կենդանիներ կը կռուեցընէր, անդադար հանդէսներ կը կատարէր, ու ստակ և կերակուր բաժնել կուտար ամենուն . ան հին Հռովմայեցւոց աւ-

---

[1] Մայրը սպաննելէն ետքը ինչ անկարգութիւններ ըրաւ ։

բուած սերունդներն ալ գոհ որսով աս միայն կը կանչէին, “ Ուտենք ու խաղանք ,, ։ Ծառայական պերճութիւն մը ծախսել ուզելով Ներոն՝ Պոմպէոսի թէատրոնը բոլորովին ոսկեզօծել տուաւ, ոսկիէ ու ծիրանիէ հիւսուած ցանցով ձուկ կը բռնէր, ճամբան իր ետեւէն հազար կառք կը քալցնէր՝ արծըթէ ամբակով ջորիներ լծած. անոնցմէ զատ ալ պատուական գիսակներ հագած և ապարանջաններով ու վզնոցներով զարդարուած սուրհանդակներ ։ Իր կոշիկներէն մէկուն մէջ՝ միայն խնկեղէնի ու վարդի եղի համար չորս միլիոն սեստերտէն աւելի ծախք եղեր էր ։

[1] Այս խենթութեանց առենը սոսկալի հրդեհ մը ընկաւ Հռոմի մէջ, ու շուտ մը անանկ տարածուեցաւ որ բոլոր ժողովուրդը պարիսպներէն դուրս փախան. շատ մարդ կրակին մէջ մեռան, մէկը չէր համարձակեր մարելու. ամէն տեղէ ըսպառնալիքներ կ'որոտային, անծանօթ մարդիկ կրակին մէջ ջահեր կը նետէին, և Ասանկ է մեր հրամանը կ'ըսէին ։ Այն միջոցին կայսրը աշտարակի մը ծայրն ելած՝ այն սոսկալի տեսարանը կը դիտէր կը զուարճանար, ու դերասանի հագուստով կիթառովը Տրոյիոյ կործանումը կ'երգէր կ'ըսեն ։

[2] Կրակէն ետքը ժողովուրդը մխիթարելու համար՝ Ներոն Արիսեան դաշտը, Ագրիպպասի շէնքերն ու իր պարտէզները բանալ տուաւ, շուտ մը անոնց բնակարաններ շինեց, Ոստիայէն կահ կա-

---

1 Հռովմայ հրկիզութիւնն ի՞նչպէս եղաւ ։
2 Ներոն ի՞նչ պատճառաւ քրիստոնեաները չարչարեց ։

րասի բերել տուաւ, և ցորենին գինը ցածցուց: Բայց անով ալ չկրցաւ ժողովրդեան սիրտն առնուլ, մանաւանդ երբոր կը տեսնէին որ Ներոն հայրենիքը կը կործանէ ու իրեն ոսկիով ու գոհարներով զարդարած փառաւոր պալատ մը շինել կուտայ՝ այնպէս ընդարձակ որ մէջը մշակած դաշտեր՝ լիճեր ու անտառներ պիտի ըլլան՝ աւելի կը զայրանային: Տեսաւ Ներոն որ իրեն դէմ գանգատները օրէ օր կ'աւելնան, Հռոմի կրակին յանցանքը քրիստոնէից վրայ ձգեց՝ որ ան ատենը սկսեր էին շատնալ, և շատերուն սոսկալի տանջանքներ տուաւ: Ոմանց գազանի մորթեր հագցընելով շներու առջևը կը ձգէին՝ պատըռտել կուտային, ուրիշները խաչ կը հանէին, ինչպէս նաև Պետրոս առաքեալը գլխիվար խաչեցին. շատ մարդ գլխատեցին՝ որոնց մէջ էր նաև Պօղոս առաքեալը, շատերն ալ ձիւթի ու մոմի մէջ թաթխած՝ Ներոնի պարտէզներուն մէջ գիշեր ատեն ջահի տեղ կը վառէին, և ինքը անօրէն կայսրը անոնց լուսովը կրկէսին մէջ ամենուն առջևը խաղեր կը ձևացընէր, և կամ կառավարի հագուստով կառք կը քշէր:

[1] Ան միջոցին մեծ դաւակցութիւն մը եղաւ կրկեսին մէջ Ներոնին կեանքը վերջացընելու համար: Ան խորհրդին մէջ էին սինկղիտոսներ, ասպետներ, տրիբուններ, հարիւրապետներ, ինչուան կանայք ալ: Իսկ որոշուած օրուան նախընթաց իրիկունը մէկուն ձեռքովը դաւաճանութիւնը իմացուեցաւ, և ամէնքը բռնուեցան: Եպիքարիս անունով կինը բռնեցին, սոսկալի տան-

---

1 Ի՞նչ դաւակցութիւն եղաւ Ներոնի դէմ:

ջանքներ տուին անոր որ՝ խոստովանի․ բերնէն խօսք մը չհանեց ։ Սուբրիոս տրիբունն ալ քննուելու ատեն ըսաւ Ներոնին․ " Քանի որ դուն սիրելի էիր, ինծի պէս հաւատարիմ զինուոր մը չունէիր․ բայց երբոր մայրդ ու կինդ սպաննեցիր, կառավար, խեղկատակ, և կրակ ձգող եղար՝ սկսայ ատել զքեզ " ։ Լուկանոս բանաստեղծը և Սենեկա իմաստասէրը դաւակիցներուն մէջ կարծուելով անոնց ալ մահուան վճիռը հանեց Ներոն․ անոնք ալ երակ բացին ու անանկ արիւննին վազցընելով մեռան ։

[1] Ներոն միտքը դնելով որ ալ ամէն բան կրնայ համարձակ ընել, սկսաւ Թէատրոնի մէջ ալ խաղալ, ու ինքզինքը հասարակաց երգիչներուն կարգը գրել տուաւ ։ Առջի անգամ որ Թէատրոնը ելաւ, սկսաւ նախ ոտանաւորներ զուրցել․ ժողովուրդը ուզեց որ ան նոր դերասանը բոլոր իր հանճարը ցուցընէ․ ան ատեն ելաւ Ներոն, Թքաւ, քիթն ու ճակատը սրբեց (ինչպէս որ դերասանաց սովորութիւնն էր) ու սկսաւ խաղ ալ ձևացընել․ և ամէն մէկ ժողովրդեան ծափ զարնելուն ծունկի վրայ կուգար՝ անոնց շնորհակալ կ'ըլլար ։ Վեսպասիանոս, որ ետքը կայսր ալ եղաւ, անգամ մը խաղի ատեն քունը տանելուն համար սաստիկ յանդիմանուելով հազիւ իր զօրաւոր բարեկամացը միջնորդութեամբը մահուընէ ազատեցաւ ։ Պոպպէա՝ Ներոնին կինը՝ զինքը քիչ մը ծաղր ընելուն համար, Ներոն անանկ մէյմը ոտքովը անոր փորուն զարկաւ որ կինը մէկէն ինկաւ մեռաւ ։

---

[1] Ներոն ինչպէս դերասանութիւն կ'ընէր ։

1 Այն միջոցին որ ինքնակալը ժողովրդեան ծառայ եղած ու աս աստիճան անարգութեան հասուցեր էր կայսերութիւնը, դուրսը Հռովմայեցւոց զօրքերը քաջութիւններ կ'ընէին: Արևմուտքը՝ Սուետոնիոս պատերազմի մը մէջ յիսուն հազար Բրիտանացի սպաննեց՝ իրենց Բոլադիկէ թագուհին ալ մէկտեղ, և արևելք Կորբուղոն զօրավարը Հայոց ու Պարթևաց դէմ յաղթութիւններ կ'ընէր: Տիրիթ՝ Վերին Հայոց թագաւորը՝ բազմութեամբ ծառայից, երեք հազար սպառազէն ձիաւորով ու մոգերով Հռոմ երթալու ճամբայ ելաւ որ Ներոնէն թագաւոր պսակուի: Երբոր Նեապօլիս հասաւ, կայսրը առջևն ելաւ ու հետը Հռոմ տարաւ զինքը, ուր յաղթանակի ոսկեհուռ զգեստներ հագած՝ մեծ հանդիսով զինքը թագաւոր պսակեց, և անոր համար Պոմպէոսի թէատրոնին մէջ փառաւոր խաղեր ձևացընել տուաւ: Ետքը դառնալու ատենը Ներոն շատ ընծաներով հրաման տուաւ Տիրիթին որ Հռովմայեցւոց ծախքովը նորէն շինել տայ Արտաշատ քաղաքը՝ որ Կորբուղոն կործաներ էր, և հետը մասնաւոր ճարտարապետներ ու արուեստաւորներ խրկեց:

2 Կորբուղոն երբոր Հռոմ կը դառնար՝ նախանձեցաւ վրան Ներոն, Կորնթոսի մէջ զինքը սպաննել տուաւ, ու ինքն անձամբ գնաց որ իբր թէ Եթովպիոյ տիրէ. բայց ան արշաւանքը ծիծաղելի բան մը եղաւ. վասն զի զօրքը երաժիշտներ՝ դու-

---

1 Այն ատենները դուրսի երկիրները ի՞նչ վիճակի մէջ էին:

2 Ի՞նչ ճամբորդութիւն ըրաւ Ներոն:

սաններ ու երգիչներ էին, զէնքերնին ալ քնար, սրինգ, դիմակ, իլիկ։ Ասոնք Յունաստան որ հասան՝ կանուխ ատեն, այնպիսի զօրաց քաջութեան յարգն ալ Յոյնք միայն լաւ կը ճանչնային։ Պատերազմին տեղը Կորնթոս եղաւ. Ներոն բոլոր պատերազմներուն մէջ յաղթող ելլելով, հին ատենի ողիմպիական խաղերուն մէջ յաղթողներուն արձանները կործանել տուաւ. տեղացիք ալ ծափ զարկին, և անոնց շողոքորթութեանց փոխարէն՝ Ներոն երկրորդ անգամ ազատութիւն տուաւ Աքայիոյ (67)։

[1] Այսպիսի յաղթութիւններէ ետքը երբոր առանց ամըչնալու Հռոմին մօտեցաւ, պարսպէն կտոր մը տեղ փլուցին Հռովմայեցիք, և ճերմակ ձիեր լծած կառքի մը վրայ նստած՝ անկէ ներս մտաւ։ Ոսկեթել փառաւոր ծիրանի մը հագած էր, գլուխը ողիմպիական ձիթենիէ հիւսած պսակ, աջ ձեռքն ալ պիւթեան պսակ մը բռնած էր՝ դափնիի ճիւղէ։ Առջևէն կը տանէին հազար ութը հարիւր պսակ, ամենուն վրան ալ գրուած թէ որ խաղին համար անոնց արժանի եղեր է։ Ան բաւական չէր. կայսրը իր արձաններուն ու դրամներուն վրայ ինքզինքը երաժշտի ձեւով սկսաւ դրոշմել տալ, և անկէց ետքը կը վախնար ինչուան զօրացը հետ ալ խօսելու՝ որ յանկարծ չըլլայ թէ ձայնը աւրուի։

[2] Վերջապէս ըզզուեցաւ աշխարհք այնպիսի

---

[1] Յունաստանէն որ դարձաւ Ներոն ինչ յաղթանակ ըրաւ։

[2] Ներոն ինչպէս մեռաւ։

վտտանուն կայսեր մը հնազանդելէն ։ Վինդեքս անուանով Գաղղիոյ դատաւորը ( որ Ակուիտանիոյ Թագաւորաց ցեղէն էր ) Ներոնի դէմ պատերազմ բացաւ, ու կայսերութիւնը Գաղբային տուաւ՝ որ հիւսիսային Սպանիոյ կուսակալ էր (68) ։ Վիրգինիոս Գերմանիոյ զօրավարը Վինդեքսի վրայ քալեց, սպաննեց զանիկայ, և բռնաւորին օգնութիւն հասնելու պատրաստուած ատենը լսեց որ ծերակոյտը Գաղբան իբրև կայսր ընդունեցեր է ։ Սարսափեցաւ Ներոն, թողուց իր զուարճութիւնները, չորս ծառայով Հռոմէն փախաւ, ու քաղաքէն քանի մը մղոն հեռու գեղի տուն մը մտաւ ։ Հոն ամէնքը իրեն խորհուրդ կուտային որ ինքզինքը սպաննէ, ու գլխուն գալու նախատինքներէն ինքզինքը ազատէ ․ բայց Ներոն չկրցաւ սիրտ ընել ․ մէկ գիրէն ալ կուլար ու կ՚ըսէր ․ " Ափսոս չէ՞ որ ինծի պէս երաժիշտը մեռնի ,, ։ Վրան շատ չանցաւ, ձիերու ոտնաձայն սկսաւ լսուիլ, որ զինքը սպաննելու եկող ձիաւորներն էին ․ " Այսպիսի ատեն քաջութիւն պէտք է ,, ըսաւ, թուրը վիզը խօթեց, և իրեն պէս հրէշի մը ձեռքէն ինքը աշխարհքս ազատեց (68) ։ Իրեն հետ Օգոստոսի ցեղն ալ մարեցաւ ։

[1] ԳԱՂԲԱ (68–69) ։ — Սուլպիկիոս Գաղբա՝ Իտալիոյ անուանի ցեղերէն մէկէն իջած՝ եօթանասուներեք տարեկան ծեր մըն էր, հարուստ՝ բայց միանգամայն ագահ, բռնաւորութեամբ ալ խիստ ։ Զօրքը զինքը ընտրեցին՝ կարծելով թէ ի-

[1] Ո՞վ յաջորդեց Ներոնին ։

րենց տուատ պարգևներ կուտայ, ժողովուրդն ալ հանդէսներու և խաղերու կը սպասէր. բայց մէկն ալ չեղաւ։ Ասոր վրայ երբոր սկսան գանգատիլ, "Զօրքս կ'ընտրեմ ես, ըսաւ կայսրը, չեմ գներ"։ Ներոնի իշխանները մեռցնել տուաւ. քանի մը բաներու ալ ուզեց կարգ կանոն դնել։ Նորոգութեանց դէմ շատ մարդիկ բարկացան, զօրքն ալ ապահովութեանը վրայ տժգոհ ըլլալով սկսան յաջորդ մը փնտռել։ Քաղաքին մէջ ազնուական Մարկոս Ոթոն անունով մարդ մը կար, որ շռայլութեամբն ու պարտքերովը ամենուն ծանօթ էր, վասն զի յիսուն միլիոնի պարտք ունէր։ Գաղբան և իր իշխանակիցը Պիսոնը սպաննեցին զինուորներն ու Ոթոնը կայսր դրին (69)։ Անկէց ետքը զօրաց ձեռքն անցաւ կայսր դնելու ու վերցնելու իշխանութիւնը։

[1] ՕԹՈՆ (69)։ — Ատեն չեղաւ որ Ոթոնին աղէկ կամ գէշ կայսր ըլլալը իմացուէր։ Գերմանիոյ զօրքը կայսր անուանեցին Վիտելլիոս զօրավարը, որով քիչ մը ատեն քաղաքական պատերազմ բացուեցաւ. Կրեմոնայի ու Մանտուայի մէջտեղը զօրքերը ճակատեցան, երկու ինքնակալներն ալ պատերազմի մէջ չմտան. Վիտելլիոսին զօրքը յաղթեց, և Ոթոն զօրացը ջարդը լսելով ինքզինքը սպաննեց՝ երեք ամիս թագաւորելէն ետև։

[2] ՎԻՏԵԼԼԻՈՍ (69)։ — Պատերազմէն տասնը հինգ օր ետքը նորընտիր կայսրը մեռելներուն մէջ

---

1 Գաղբային ով յաջորդեց։
2 Ոթոնի յաջորդն ով եղաւ։

քալելու ատենը իր զօրավարներուն կ'ըսէր. “ Մեռած Թշնամւոյն մարմինը միշտ աղէկ կը հոտի ,, ։ Աս խօսքով ալ կ'իմացուէր կայսեր ցածութիւնը, բայց ամէն բանի մէջ ալ ստուգուեցաւ ։ Իր որկրամոլութեանը չափ չկար. օրուան մեծ մասը ճեղանի վրայ կ'անցընէր, այսինքն հինգ անգամ կարգաւորեալ կերակուր կ'ուտէր. և որպէս զի ստամոքսին մէջ տեղ բացուի՝ սովորութիւն ունէր կերակուրէն ետքը սիրտը ետ բերել տալու ։ Ութը ամիս թագաւորութեանը ատենը՝ սեղանի համար ինը հարիւր միլիոն սեստերտ վատնեց ( երկու հարիւր միլիոն ֆրանքէն աւելի ) ։ Բարեկամներն ալ կը ջանային իրարմէ աւելի իրեն փառաւոր սեղաններ տալով աչքը մտնելու, բայց իր եղբայրը Ղուկիոս ամենուն յաղթեց. վասն զի անանկ մեծահաց սեղան մը ըրաւ՝ որուն մէջ միայն ամէն աշխարհքէ բերուած երկու հազար ազնիւ ձկնեղէն կերակուր կար, և եօթը հազար թռչնեղէն ։

[1] Աս ապուշ թագաւորը որկրամոլութեան մէջ ընկղմած ատենը իմացաւ որ արևելքի զօրքերը՝ Վեսպասիանոս անունով զօրավարը կայսր գրեր են, և ամենևին տեղէն չշարժեցաւ. չուզեց իր հանգստութիւնը թողուլ, և իր բաղդը իր զօրավարացը յանձնեց՝ որ շուտով կորուսին ։ Անտոնիոս Պրիմոս՝ Վեսպասիանոսին զօրավարը՝ անոր զօրացը յաղթեց ու Հռոմը առաւ. Վիտելլիոսն ալ բռնեցին, ձեռուըները ետեւը կապեցին, ու վիզը չուան անցուցած՝ քաշկռտելով հրապարակը

[1] Վիտելլիոս ինչպէս մեռաւ ։

ունէր . իր պալատներէն մէկը մեծին Պոմպէոսի հարիւրապետ եղեր էր , իսկ ինքը քաղաքացիութեամբն ու զինուորական և քաղաքական հանճարովը մեծ անուն հաներ էր . բայց աս կատարելութիւնները կը մթընցնէր ատելի ագահութեամբը : Տօղերը եռապատիկ առնելով : Գաւառներուն վրայ ընչաքաղց ու յափշտակող մարդիկ կուսակալ դրաւ՝ որպէս զի ուզած ատենը անոնց դիզած հարստութիւնը գրաւէ . ուստի կ՚ըսէր թէ անոնք սպունգի նման են, պէտք է թողուլ որ լեցուին , ու ետքը ճզմել :

[1] Վաթսուն տարեկան էր Վեսպասիանոս երբ որ կայսր դրուեցաւ : Կարծեցին որ անկար կառավարութիւն մը պիտի ունենայ . բայց Օգոստոսէն ետքը դեռ անանկ զօրաւոր մարդ մը տէրութեան գլուխ չէր եկած : Օգտակար նորոգութիւններով տէրութիւնը կարգադրեց : Մեղկ և կանացի բաները ատելի կ՚անէր . Անգամ մը գեռահասակ զօրականի մը փառաւոր պաշտօն տուաւ . անիկայ երբոր վրան գլուխը հոտաւէտ եղեր ու ջղեր քսուած եկաւ որ իրեն շնորհակալութիւն ընէ , պաշտօնը ձեռքէն առաւ Վեսպասիանոս՝ ըսելով . “ Աւելի կ՚ուզէի որ վրայէդ սխտորի հոտ գար քան թէ անուշահոտ եղերու ,, : Վեսպասիանոս կայսր դրուած ատենը Երուսաղէմի պաշարեր էր . ան պաշարումը իր Տիտոս որդւոյն յանձնեց , ան ալ առաւ Երուսաղէմն ու կործանեց :

---

[1] Ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը Վեսպասիանոս:

1 Գաղղիոյ պատերազմին առենը դիպուած մը պատահեցաւ որ կ'արժէ երկու խօսքով հոս յիշելը։ Սաբինոս անունով իշխան մը Գաղղիացւոց ապըստամբութեանը գործակից ըլլալով՝ յաղթուեցաւ, ու գետնափոր տեղ մը քաշուեցաւ, ուր կնկանը հետ ինը տարի կեցաւ, բայց վերջապէս ձեռք իյնալով Հռոմ տարուեցաւ։ Կինը երկու որդիքը գիրկն առած կայսեր ոտքն ընկաւ, ու “ Ո՜վ կեսար, ըսաւ, նայէ մէյմը աս զաւկըներուս վրայ. ես անոր համար ծնայ զասոնք ու մեծցուցի՝ որպէս զի քեզի բազմութեամբ զամ՝ աղաչեմ որ իրենց հօրը կեանքը խնայես ,,։ Վեսպասիանոսին սիրտը շարժեցաւ կ'ըսեն, բայց չներեց. անողորմաբար 'ի մահ դատապարտեց ան արիասիրտ կինը՝ էրկանը հետ մէկտեղ։

2 Վաթսուներինը տարեկան էր Վեսպասիանոս երբոր ծանր հիւանդութեամբ մը անկողին ընկաւ. բայց ան սաստիկ ցաւերուն մէջ ալ իր զուարթամտութիւնը չկորսնցուց. գիտնալով որ Հռովմայեցիք մեռնելէն ետև զինքը աստուածոց կարգը պիտի անցընեն՝ կատակով կ'ըսէր. “ Աստուածանալս սկսայ հիմակուընէ իմանալ ,,։ Երբոր հասկըցաւ թէ մահը մօտեցեր է, թիկնապահայը թևերը բռնած՝ ոտքի վրայ ելաւ ըսելով. “ Պէտք է որ կայսր մը ոտքի վրայ մեռնի ,, (79)։

---

1 Գաղղիոյ պատերազմին առենը ինչ մասնաւոր դիպուած պատահեցաւ ։

2 Ի՞նչպէս մեռաւ ։

1 ՏԻՏՈՍ (79–81) : — *Վեսպասիանոսի որդին Տիտոսը ամէնքը զեղխ, անգութ ու չուայլ մարդու տեղ դրած էին, բայց անիկայ աթոռը նստելուն պէս՝ բոլորովին փոխուեցաւ : Միմոսները ու շողոքորթ մարդիկը ճամբեց, ու անոնց տեղը արժանաւոր մարդիկը քովը ժողվեց, և անանկ արդարութեամբ կառավարեց տէրութիւնը որ ինչուան Երջանկութիւն Մարդկային ազգի ըսողներ եղան իրեն : Անգամ մը մտածելով որ ան օրուան մէջ ամէնևին մէկու մը բարիք չէ ըրած՝ ըսաւ . « Բարեկամք, օրս կորսընցուցի » :*

2 *Իր թագաւորութեանը ատենը ահաւոր դիպուած մը պատահեցաւ : Քրիստոսի 79 թուականին Նոյեմբերի առաջին օրը Վեզուվ ըսուած հրաբուղխը բռնկելով՝ բոլոր Կամպանիա գաւառը տակնուվրայ ըրաւ, ու հրաբուղխին մոխիրներուն տակը թաղուեցան Երկուլանոն ու Պոմպէա քաղաքները : Պլինիոս Երէց բնագէտը իր ուսումնական հետաքրքրութեանը՝ զոհ եղաւ . վասն զի ուզելով մօտէն զննել ան հրաբուղխին ինչպէս ըլլալը՝ անոր բերնէն ելած մուխէն խեղդուեցաւ : Երկու տարի ետքը Տիտոս ջերմէ բռնուեցաւ, ու բաղնիք մտնելուն պէս մեռաւ (81) :*

3 ԴՈՄԵՏԻԱՆՈՍ (81–96) : — *Տիտոսին մեռ-*

---

1 *Վեսպասիանոսի ո՞վ յաջորդեց : — Տիտոսի բնաւորութիւնը ի՞նչպէս էր :*
2 *Տիտոսի ժամանակը ի՞նչ երևելի դիպուած եղաւ :*
3 *Ո՞վ յաջորդեց Տիտոսի :*

նիլը բնական մահուամբ եղած չէր երևնար. կաս-կած եղաւ որ Դոմետիանոս եղբայրը անոր թոյն տուած ըլլայ։ Եւ հաւանական է. վասն զի Տիտոս իր հանդարտ ու ծանրակաց բնաւորութեամբը Դո-մետիանոսի պէս մարդուն հարկաւ արհամարհելի ու ատելի պիտի ըլլար։

¹ Դոմետիանոս Ներոնի պէս՝ անասուններ, խաղեր, սուսերամարտութիւններ ու արիւն թա-փել շատ կը սիրէր. երբոր մարդ չէր գտներ սպաննել տալու՝ ճանճ կը բռնէր ու հերիւնով կը ծակծըկէր։ Ուստի անգամ մը երբոր իր սենե-կապետին հարցուցին թէ կայսեր քովը ո՞վ կայ, " Եւ ոչ ճանճ մը կայ » ըսաւ։ Բայց աս խօսքին համար Դոմետիանոս սպաննել տուաւ զինքը։ Աս բռնաւորը իր անգթութիւնները նաև չլսուած կերպով ու խարդախ ճամբաներով կը կատարէր։ Շատ անգամ՝ երկրորդ օրը սպաննել տալու մար-դիկը սեղանի կը հրաւիրէր, ու հետերնին սիրով կ՚ուտէր կը խմէր։ Նետած նետերուն նշան տա-նելու համար՝ մէյմէկ գերի կը կեցընէր թևերնին բացած։ Որչափ որ իմաստուն ու գիտուն մարդիկ կային՝ տէրութենէն դուրս վռնտեց։ Ծերակու-տին ալ սաստիկ թշնամի էր, և զանոնք սարսափե-ցընելու համար այսպիսի ահաւոր գիւտ մը հնա-րեց։ Օր մը զանոնք կոչունքի մը հրաւիրեց, ու մէկ մութ սրահի մը մէջ տարաւ որ բոլոր սևերով պատած էր. միայն մէկ քանի կանթեղ կը վառէր, մէջն ալ չորս դին նստարանի տեղ գերեզմանի սիւներ շարած, ու վրանին մեծամեծաց ա-

¹ Դոմետիանոս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։

նուններըը գրած, ասդին անդին ալ մահուան գործիքներ գրած : Վախերնէն ամէնքը լեզուներնին կապուած մնացին : Քիչ մը ատենէն զինուորներ ներս մտան սև երեսով, մէկ ձեռքերնին թուր՝ մէկալը ջահ բռնած, և հոն մեռել թաղելու համ-գէս ձևացուցին ու գնացին : Կերակրէն ետքը դռները բացուեցան, և կայսրը հրաման տուաւ որ երթան :

1 Ագրիկողա անունով զօրավարը, որ մեծամեծ քաջութիւններ ըրեր էր Անգլիոն կղզւոյն՝ այսինքն Մեծին Բրիտանիոյ տիրած ատենը՝ թունաւորելով սպաննեց, և թողուց որ անդին ալ զօրքը Դակիացւոց թագաւորէն յաղթուի : Այնչափ խայտառակութեան չգիմացան Հռովմայեցիք . Ստեփանոս անունով մէկը գրուածք մը տարաւ Դոմետիանոսին, և անոր կարդալու ատենը զարկաւ զինքը սպաննեց (96) :

2 ՆԵՐՈՒԱՍ (96-98) : — Դոմետիանոսի հետ Փլաւեանց ցեղը լմնցած ըլլալով, ծերակոյտը եօթանասուն տարեկան Ներուաս ծերունին ընտրեց, որ թէպէտ բարեսիրտ մարդ՝ բայց բնաւորութեամբ շատ տկար էր . ուստի Գերմանիոյ հրամանատար Տրայիանոսը իրեն գահակից ընտրեց . ան ալ գնաց գերմանացի ապստամբները ցրուեց, ու անոնց գլխաւորները բռնեց սպաննեց : Ասոր վրայ կայսրը իրեք ամիս միայն ապրեցաւ (98) :

---

1 Ի՞նչպէս մեռաւ :
2 Դոմետիանոսէն ո՞վ յաջորդեց :

1 Շատ ջանաց Ներուաս որ անիրաւութեանց ու արիւնհեղութեանց առջին առնէ. կայսր նստելուն պէս՝ ըսեր էր որ ամենեւին ծերակուտէն մարդ պիտի չսպաննէ. և աս խոստմունքը ինչուան իր կենացը վտանգովը ուզեց պահել։ Երբոր իմացաւ թէ ծերակուտին մէջէն երկու հոգի զինքը մեռցընելու խօսք դրեր են, զանոնք կանչեց ու միայն աս հասկըցուց անոնց որ մտքերնին իմացեր է. հետը թէատրոնը տարաւ ու քովը նստեցուց զանոնք. հոն սովորութիւն էր որ սուսերամարտները կռուի չսկսած՝ թուրերնին կայսեր կը բերէին որ զննէ. կայսրը առաւ թուրերը ան իր քովը նըստողներուն տուաւ։ Աս մեծանձնութեանը ու իրենց վրայ ունեցած վստահութեան վրայ զարմացած՝ երկուքն ալ Ներուասին մտերիմ բարեկամ եղան։

2 ՏՐԱՅԻԱՆՈՍ (98-117)։ — Ներուասայ մեռնելէն ետքը առանց ընդդիմութեան ամէնքը Տրայիանոսը դրին կայսր, որ Հռենոս գետին քովերն էր. Թէպէտ ինքը չարտորայց Հռոմ դառնալու, բայց իր անունը ամենուն սիրտը վախ ձգած ըլլալով՝ մէկը տեղէն չշարժեցաւ։

3 Երբոր Հռոմ դարձաւ Տրայիանոս, քաղաքէն ներս ոտքով մտաւ, ամենուն հետ սիրով վարուեցաւ, իրեն շնորհաւորելու եկողները կը բարեւէր

---

1 Ներուասայ վրայ ինչ մեծանձնութիւն կը պատմուի։

2 Ներուասին ով յաջորդեց։

3 Տրայիանոս ինչպէս ըրաւ կայսերութիւնը։

ու հետերնին կը պտտուէր. "Քանի որ կայսր չէի՝ կ'ուզէի որ կայսերը ասանկ ընտանութեամբ վարուէին անձնուս հետ, կ'ըսէր. հիմա որ ես կայսր եղայ՝ կ'ուզեմ նոյնպէս վարուիլ,,: Իր թիկնապահներուն գլխաւորին իշխանութեան թուր մը տալով ըսաւ. "Աս թուրը քեզի կը յանձնեմ, որպէս զի թէ որ տէրութիւնը աղէկ կառավարեմ՝ զիս պաշտպանելու գործածես, թէ որ գէշ կառավարեմ՝ ինծի դէմ բանեցընես,,: Ջանաց որ տէրութիւնը առջի պատուոյն հասցընէ, ծերակուտին ազատութիւն տուաւ, խափանուած օգտակար կարգերը նորոգեց, արգիլեց որ երբոր մէկը անձամբ դատաստանարանը չէ եղած՝ անոր դատաստան չըլլուի, "Վասն զի լաւ է, կ'ըսէր, որ անպատիժ մնայ մէկուն յանցանքը՝ քան թէ անմեղ մը դատապարտուի,,: Տուրքերը ջանաց թեթեւցընել, կամուրջներ շինեց, ճամբաներ ու նաւահանգիստներ բանալ տուաւ, կրկէս մը ու դրատուն մը կանգնեց սպիտակ մարմարիոնէ, և ան հռչակաւոր սիւնը՝ որուն վրայ Դակիոյ պատերազմին մէջ ըրած քաջութեան գործքերը փորուած էր, և ինչուան հիմա կեցած է իր անունովը: Շատ կը սիրէր իմաստուն ու անուանի մարդկանց հետ տեսնուիլ, և իր գլխաւոր բարեկամներէն մէկն էր Պլինիոս Կրտսեր ըսուած հռչակաւոր մատենագիրը՝ որ Տրայիանոսի ներբողն ալ գրեց:

[1] Ժողովուրդը կայսեր այնպիսի կատարելութիւնները տեսնելով՝ զինքը Ոպտիմօս անուանեցին՝

---

1 Ի՞նչ յաղթութիւններ ըրաւ Տրայիանոս, և ի՞նչպէս մեռաւ:

այսինքն Ամենապարի : Բայց պատմութեանէն յայտնի է նաև իր գինեմոլութիւնը և քրիստոնէից դէմ հանած անգութ հալածանքները : Դակիացւոց հետ ըրած պատերազմին մէջ քաջութեան կողմանէ մեծ անուն հանեց. անոնց Դեկեբալոս թագաւորը յաղթուեցաւ ու ինքզինքը սպաննեց, և Դակիա ըսուած երկիրը, որ հիմակուան Մոլտավիա ու Վալաքիա կամ Ուլահ Պուղտան ըսուածն է, Հռովմայեցւոց ձեռքն անցաւ : Ան արիւնահեղ պատերազմին մէջ երբոր վիրաւորելոց վէրքը պատելու լաթ չմնաց, հանեց Տրայիանոս իր թագաւորական հագուստները տուաւ : Հայաստանի վրայ ալ սկսաւ երթալ, որովհետև մեր Արտաշէս Բ թագաւորը չէր ուզած Հռովմայեցւոց սովորական հարկը տալ, բայց Արտաշէս խոնարհեցաւ, ընդառաջ ելաւ, ու շատ ընծաներու հետ սովորական հարկը վճարելով՝ զինքը ետ դարձուց : Անկէց ետ աշխարհակալութիւնները տարածեց Տրայիանոս դէպ 'ի արևելք ինչուան Հնդկաստան. և 'ի դարձին Փոքր Ասիոյ Սելինոս քաղաքին մէջ մեռաւ 117ին, քաղաքն ալ ըսուեցաւ Տրայիանուպոլիս, որ հիմա աւերակ է : Ոսկորներուն մոխիրը Հռոմ տարին, ու իր կանգնած սեանը տակ թաղեցին :

[1] ԱԴՐԻԱՆՈՍ (117-138) : — Տրայիանոս զաւակ չթողուց. զօրքը կայսր անուանեց անոր եղբօրորդին Ադրիանոսը, որ Ասորւոց բանակին զօրապետն էր. ծերակոյտն ալ ան ընտրութիւնը հաստատեց :

---

[1] Տրայիանոսի ո՞վ յաջորդեց :

[1] Ադրիանոս անհաստատ մարդ մըն էր. երբեմն գթած կ'ըլլար՝ երբեմն անգութ, երբեմն մեծախոհ երբեմն ալ նուաստախոհ: Կայսր ըլլալուն պէս բոլոր իր թշնամեացը ներեց. օր մը անոնց մէկուն հանդիպելով, "Բարեկամ, ըսաւ, ազատեցար ձեռքէս, վասն զի կայսր եղայ": Թագաւորութեան ժամանակին մեծ մասը տէրութեան մէկ ծայրէն միւսը պտըտելով անցուց, վասն զի "Կայսրը արեւու պէս պէտք ըլլայ, կ'ըսէր, որ ամէն տեղ իր տաքութիւնը հասցնէ". ուստի ամէն տեղ գրուած կարգէ դուրս տուրքերը կը թեթեցնէր, խստութեամբ կը քննէր թէ կուսակալները ինչպէս կը կառավարեն, ու քաղաքները կը զարդարէր: Իրեն պէս թագաւոր մը չեղաւ որ այնչափ հասարակաց շէնքեր շինել տայ. հին շինուածքները կը նորոգէր, բաղնիքներ՝ ջրանցներ՝ կամուրջներ շինել կու տար: Յունաց մայրին մէջ նորոգեց Եպամինոնդայ յիշատակը՝ Մանտինեայի մէջ անոր համար սիւն մը կանգնել տալով: Աթենքի մէջ Ողիմպեան Արամազդայ մեհեանը լմընցուց, որ հին ատենի հրաշակերտ շէնքերէն մէկն էր. Հռոմ Վատիկանին ծայրը իրեն համար հոյակապ շիրիմ մը շինել տուաւ, և Տիբերիսին վրայ կամուրջ մը՝ որպէս զի շիրիմը քաղաքին հետ միացընէ, հիմա ան շիրիմը Սանթ-Անճելօ կամ Հրեշտակապետի բերդ կ'ըսուի:

[2] Ադրիանոս իր ճամբորդութիւնը ընելու ա-

---

1 Ադրիանոս ինչպէս ըրաւ կայսերութիւնը: — Ի՞նչ շէնքեր շինեց:

2 Ադրիանոսի մտաւոր կատարելութիւնը ինչպէս էր:

տեն մէկ դիտմունքն ալ ան էր որ ինքզինքը կրթէ, նոր բան սորվի. ուր որ համնէր՝ հոն տեղի դիտութիւններուն կ՚ուզէր տեղեկանալ. ուստի բանաստեղծութիւն, ճարտասանութիւն, փիլիսոփայութիւն, աստեղաբաշխութիւն, մոգութիւն, չափաբանութիւն, բժշկութիւն, քանդակագործութիւն, երաժշտութիւն, ամէնն ալ իրեն ծանօթ բաներ էին: Այսչափ բան սորվելու համար ալ զարմանալի յիշողութիւն մը ունէր. բոլոր լսած ազգաց, քաղաքներու և մարդկանց անունները միտքն էին. իր ամէն զինուորներուն անուններն ալ գիտէր, և մէկ անգամ մը կարդացած գիրքը՝ մէկէն բերնուց կը զուրցէր կ՚ըսեն:

[1] Բայց իր պալատին մէջ շատ անկարգ կեանք կ՚անցընէր: Խելքն ալ քիչ մը կորսնցուցած կ՚երևնար, որ ելաւ իրեն կայսերակից ընտրեց Կոմոդոս Վարոս վատանուն մարդը. ասիկայ տեսակ մը կարկանդակ հնարած էր, նոր տեսակ մըն ալ վարդէ անկողին, անով Հռովմայեցւոց մէջ անուանի էր: Քիչ ատենէն ան կիսամարդի Վարոսը մեռաւ, և Ադրիանոս իր մեռնելէն առաջ Տիտոս Անտոնինոսն իրեն յաջորդ ընտրեց (138):

[2] ԱՆՏՈՆԻՆՈՍ (138-161): — Անտոնինոս մեծանձն, գիտուն ու առատաձեռն մարդ ըլլալով, շատ ջանաց ներքին խաղաղութիւնը պահելու, և վաճառականութիւնն ու արուեստները ծաղկեցը-

---

1 Ադրիանոսին վարքը ինչպէս էր:

2 Ադրիանոսի ով յաջորդեց: — Անտոնինոս ինչպէս ըրաւ կայսերութիւնը:

նելու ։ Մէկ առեն մը չէր եղած որ անանկ աղէկ գործածուէլին ուրութեան գանձերը՝ ինչպէս իր առենը ։ Իր անպաճոյճ կենացն ու խնայութեանը վրայ կը ծիծաղէին ոմանք, հոգը չէր ըլլար, և ժողովրդեան առատ պարգևներ կը բաժնէր, գալու թշուառութեանց առջևը կ'առնէր ու օգտակար շէնքերը կը շատցընէր ։ Իր հայրենիքը Գաղղիոյ Նիմ քաղաքն էր. հոն ալ շատ գեղեցիկ շէնքեր շինել տուաւ, որոնց մնացորդները ինչուան հիմա կան ։

[1] Աս Անտոնինոսը Պիոս այսինքն Հայրասէր ըսուեցաւ՝ իր հայրը շատ սիրելուն համար, վարուցը ազնուութեան համար հայր Տարքուինեանց, Երկրորդ Նումա. հայրական կառավարութեանը համար ալ հայր հայրենեաց ։ Պլուտարքոս կ'ըսէ թէ "Ամէն լեզու զանիկայ կը գովէր, և ամէն սիրտ զանիկայ կը սիրէր"։ Առակ ըրած էր որ կ'ըսէր. "Լաւ է քաղաքացի մը ազատել՝ քան թէ հազար թշնամի սպաննել"։ Անզգամ մարդիկ դաւաճանութիւն մը ըրին աս բարեբարոյ կայսրը մեռցընելու. ծերակոյտն իմացաւ, դաւակիցներէն շատը բռնեց աքսորեց, շատն ալ գտնելու ետևէ էր, բայց Անտոնինոս արգիլեց ըսելով. "Ալ մի փընտռէք դաւակիցները. մեծ թշուառութիւն է ինծի որ բոլոր աշխարհք իմանայ թէ այսչափ քաղաքակցաց ատելի եմ եղեր"։ — Չէր թողուր որ մահապարտաց տանջանք տրուի. "Մահը, կ'ըսէր, յանցանքը կը քաւէ, ուրիշներուն օրինակ կ'ըլլայ. իսկ տանջանքը՝ մահապարտաց վրայ անս-

---

[1] Ի՞նչ պատուանուններ ունեցաւ Անտոնինոս ։

նողներուն կարեկցութիւնը միայն կը շարժէ ,,: Անտոնինոսի մահուանը վրայ ամէնքը լացին, և երբ Պիոս անունը ինչուան հարիւր տարիէն աւելի կայսերը իրենց պատիւ կը սեպէին Օգոստոս ա-նուանը հետ բանեցնել (161)։

1 ՄԱՐԿՈՍ ԱՒՐԵԼԻՈՍ (161–181)։ — Աս կայսրը Անտոնինոսի փեսան էր, ստոյիկեան Զենոն իմաստասիրին վարդապետութեանցը աշակերտ և հետեւող. ուստի պզտիկուց ՚ի վեր չարքաշ կեանք մը կ'անցընէր, գետնի վրայ կը պառկէր, ու ան-դադար մարմինն ու միտքը կրթելու եռանդ էր. իմաստասիրութեան մէջ այդ մեծ անուն հանեց, ու կայսերութեան աթոռը նստելու ատենը Պղատոնին այն հռչակաւոր խօսքը գործեց. “Ե-րանի՜ այն ժողովրդոց՝ որ իմաստասէրները թա-գաւոր են, թագաւորներն ալ իմաստասէր,,: Սիրոյ կամ ակնածութեան համար ոչ երբեք ար-դարութիւնը ոտքի տակ կ'առնէր. զեղխութեանց չափ դրաւ, տուրքերը թեթեւցուց, ամենևին մե-կուն ծառայութիւնը անվարձ չէր թողուր, ին-չուան մանր բաներուն վրայ ալ հոգ կը տանէր՝ կը քննէր։ Շողոքորթ մարդոց հնարած պատուա-նունները կը մերժէր, ու միայն զանոնք կ'ընդունէր որ երախտագիտութենէ տուած կու գային։

2 Բայց իր օրերը մեծ թշուառութիւն եղաւ

---

1 Անտոնինոսի յաջորդն ով եղաւ: — Ի՞նչ բնաւո-րութեան տէր էր Մարկոս Աւրելիոս։

2 Աւրելիոսի ատենը ի՞նչ թշուառութիւն պա-տահեցաւ Հռովմայեցւոց։

հռովմէական պետութեան տակաւին ժամանակները՝ որով ժողովրդեան մեծ մասը ջարդուեցաւ. Տիբերիոս գետն ալ չափէն դուրս բարձրանալով ու չորս դին կոխելով՝ քաղքի միջին տեղերն մեծ վնաս մէջ ձգեց ։ Այնուհետեւ վտանգաւոր ժամանակ Մարկոս Աւրելիոս ալ անխոհեմութիւն ըրաւ որ իրեն կայսերակից ընտրեց Ղուկիոս Վերոսը՝ Ադրիանոսի ամենէն եղած վարժածին որդին ։ Աս մարդը կեանքը զուարճութիւններու մէջ նորա խաղալով անցուցեր էր. և սակայն անոր յանձնուեցաւ որ Պարթեւաց դէմ պատերազմի երթայ, և իրեն օգնական տրուեցաւ Աւիդիոս Կասսիոսը, որ ամէն փառքի արժանի եղաւ. իսկ Վերոս էր խեղկատակներուն հետ Յունաստան մնաց ։

[1] Աս Աւիդիոս Կասսիոսը ճարտար զօրավար մըն էր՝ սաստիկ խստութեանը համար անուանի. ան խստութիւնն ալ հարկաւոր էր, վասն զի անսանձ համարձակութիւն ու թուլութիւն մը տիրեր էր զօրաց մէջ ։ Մէջերնին մէկը յանցանք մը որ ընէր՝ Աւիդիոս այնպիսի պատիժ մը կուտար անոր որ ամենուն օրինակ ըլլայ ։ Մէկ պզտիկ գունդ մը առանց սպարապետներուն հրամանին թշնամեաց վրայ յարձակելով՝ անոնցմէ երեք հազար հոգւոյ յաղթեր էին. հրամայեց Կասսիոս որ հարիւրապետները մեռցընեն. երբոր զօրքը սկսան զանգատիլ, Աւիդիոս կուրծքը բացաւ ու "Զարկէք, ըսաւ, և ձեր անհնազանդութեան վրայ ապստամբութիւնն ալ աւելցուցէք" ։ Ամէնքը ձայներնին քաշեցին. Պարթեւները տեսան

---

[1] Աւիդիոս ի՞նչ մարդ էր ։

որ կարելի չէ ինչուան եօթը այնպիսի մարդուն դէմ կենալ, ուզեցին հաշտութիւն ընել (164)։

[1] Աւրեղիոս կայսրը իր վրան առեր էր Հիւսիսային բարբարոսաց արշաւանքը զսպելը. վասն զի Մարկոմանները Ալպեան լեռներէն անցնելով՝ Ակուիլէա քաղաքը առնելու վրայ էին. հասաւ Աւրեղիոս ու քշեց զանոնք (167)։ Իրեք տարի ետքը Գերմանացիք, Վանդալք, Սուեւիացիք և Ալանք միաբանած՝ վազեցին եկան, Հռոմայեցւոց զօրքը ջարդեցին ու բոլոր Իտալիան սարսափեցուցին։ Կայսրը գերիներն ու սուսերամարտանները ժողվեց, և որպէս զի ժողովրդեան վրայ տուրքը չաւելցընէ՝ բոլոր իր պալատին կահ կարասիքը ծախեց, ինչուան նաև կայսրուհւոյն զարդեղէնները։ Շուտ մը Դանուբէն անցաւ ու Գերմանացւոց անհամար զօրքերը հալածեց. բայց Մաճառաստանի մէջ յանկարծ թշնամեացմէ պաշարուեցաւ, ու բանակին ջուրը հատաւ, և զօրքը ծարաւէն կը ջարդուէին։ Երբոր Աւրեղիոս յուսահատած՝ չէր գիտեր ընելիքը, բանակին մէջի Մելիտինեցի քրիստոնեայ գնդին աղօթքովը այնպէս յորդ անձրև մը եկաւ որ բոլոր զօրքերը սաղաւարտներին ջրով լեցուցին. նոյն ատեն թշնամեաց վրայ կայծակներ ու կարկուտներ ալ թափելով ցիրուցան փախուց զանոնք։ Աս գունդին անունը Շանթաձիգ ըսուեցաւ, և Աւրեղիոս անձամբ ծերակուտին գրեց աս հրաշալի յաղթութիւնը, ու քրիստոնէից դէմ եղած հալածանքը դադրեցուց։

---

[1] Հիւսիսային ազգաց դէմ ինչ յաղթութիւններ ըրաւ Մարկոս Աւրեղիոս։

[1] Երկրորդ անգամ ալ ուզեց Աւրելիոս Մարկոմաններուն վրայ արշաւել, ու գնաց Աւստրիոյ Վեննա քաղաքը մեռաւ (180)։ Գեղեցիկ առած մը ունէր որ ստէպ կ'ըսէր. «Ինչ որ կ'ընես անանկ ըրէ՝ որպէս թէ վերջին գործքդ ըլլար»։

[2] ԿՈՄՈԴՈՍ (180–193)։ — Աւրելիոսի որդին Կոմոդոս ամենևին հօրը հետ նմանութիւն չունէր. տասուերկու տարեկան եղած ատենը անգթութիւնը յայտնի եղած էր. օրինակի համար, իր բաղանեպանը բաղնիքը քիչ մը աղէկ չտաքցնելուն համար բռներ փուռը նետեր էր։ Երբոր հայրը Վեննա մեռաւ, Կոմոդոս քովը էր. վրան կասկածի գնացին թէ ինքը թոյն տուած ըլլայ հօրը։ Կայսր ըլլալուն պէս Հռոմ դարձաւ՝ իր գեղեցկութիւնն ու զինուորական հանճարը ցուցընելու փափաքով։

[3] Ժողովրդեան անոր վրայ ցուցուցած սէրին ու համարմունքը շատ չտևեց։ Կոմոդոս սաստիկ ուժեղ ու բարձրահասակ ըլլալով մեծ ջանք ունէր ըմբշամարտութեան քաջութիւններ երևցընելու։ Մէկ զարնելով փիղ մը գետին կը փռէր. օր մը հինգ ձիագետի մէկէն սպաննեց, հարիւր հատ ալ առիւծ հարիւր նետով ետևէ ետև մեռուց։ Այս քաջութիւններուն վրայ պարծենալով՝ ինքզինքը Հռովմայեցի Հերակլէս կ'անուանէր, և ուսը առիւծենի մը ձգած ու ձեռքը լախտ մը բռնած՝

---

1 Մարկոս Աւրելիոս ինչպէս մեռաւ։
2 Աւրելիոսին յաջորդը ո՞վ եղաւ։
3 Կոմոդոս ինչպէս ըրաւ կայսերութիւնը։

ամբարտաւանութեամբ կը պարծէր։ Հասարա-կաց գործողութեանցը վրայ ամենևին հոգ չունէր. բոլոր օրը սուսերամարտներուն հետ կ՚անցընէր, ա-նոնց ձեռքը կապարէ թուր կու տայր, ու ինքն եր-կաթէ թուր առած՝ մէջերնին կը մտնէր, զամենքը կը ջարդէր ու ժողովրդենէն ծափահարութիւն կը մուրար։ Այնպիսի անխոհական յաղթութիւն-ներուն համար ինչուան Արեգական հսկայաձև արձանին գլուխը կտրեց ու տեղն իր կերպարանքը դրաւ, տակն ալ գրած, “Կոմոդոս յաղթող հա-զար սուսերամարտներէ”։

¹ Այս եղեռնագործ հրէշը Ներոնին ու Կալի-գուլային ուզեց նմանիլ, ու զանոնք ալ անցուց։ Երբոր սուսերամարտներէն կը հեռանար, կը դառ-նար իր պալատը, մարդկանց արիւնը թափելով կը զուարճանար. խելքը փչած անտեղը, մանաւանդ երբոր ուրիշներուն ստակին աչք ձգած ըլլար, այնչափ մարդկանց արիւնը կը մտնէր որ աւելի ա-պահով էր աւազակաց անտառներուն պտտիլ քան թէ Հռոմ քաղաքին։ Իր մեծ զուարճութիւններէն մէկն էր ամէն օր նոր նոր տանջանքներ հնարել մա-հապարտներուն համար։ Վերջապէս Հռովմայե-ցիք ալ չդիմացան ասոր եղածն ու թոյն տուին այս կատաղի գազանին. երբոր թոյնը չազդեց, զօրա-ւոր ըմբիշ մը ցատքեց վրան, կռուըտեցաւ հետը ու խեղդեց սպաննեց։ Կոմոդոսի հետ վերջացաւ նաև Անտոնինեանց ցեղը (192)։

---

¹ Ի՞նչպէս մեռաւ Կոմոդոս։

## ԳԼՈՒԽ Լ.

Պերտինաքս. — Կայսերութիւնը աճուրդով կը ծախուի. — Դիդիոս Յուլիանոս. — Սեպտիմիոս Սեւերոս. — Նիգերի ու Ալբինոսի պարտութիւնը. — Բասիանոս Կարակալլա. — Մակրինոս. — Բասիանոս Եղիագաբաղոս. — Աղեքսանդր Սեւերոս. — Զօրաց դէմ պայքարը (193-235):

1 ՊԵՐՏԻՆԱՔՍ (193): — Կոմոդոսը սպաննող դաւակիցները Պերտինաքս անունով վաթսուն տարեկան ծերը իրենց կայսր ընտրեցին՝ որ ածխավաճառի մը որդի էր: Հօրը արուեստը ընել չուզելուն համար հայրը անոր անունը Պերտինաքս այսինքն Յամառ դրեր էր. և համարձակ, յանդուգն էր իր աշխատասիրութեամբն ու քաջութեամբն ալ ինչուան Հռոմայ քաղաքապետ եղեր էր: Գործունեայ էր Պերտինաքս, ծանրաբարոյ՝ առանց հպարտութեան, քաղցրաբարոյ առանց ցածութեան, խելացի առանց նենգութեան, ու սակաւապէտ առանց ագահութեան: Իր հայրենիքը Ալբա փառաւոր պալատներով ու շէնքերով զարդարելէն ետքն ալ՝ շատ անգամ հոն որ երթար՝ ածխավաճառ հօրը աղքատ տունը կը պտտէր:

2 Բայց այնպիսի իշխան մը այնպիսի ժամանակ չէր կրնար երկար թագաւորութիւն ընել: Զօրքը զեղխութեան ու շռայլութեան վարժած՝

1 Կոմոդոսին մէկ յաջորդեց:
2 Պերտինաքս ինչպէս մեռաւ:

Պերտինաքսին բերնէն կրթութեան ու խնայութեան անուններն որ լսեց՝ մէկէն միաբան (միտքը) դրաւ որ անիկայ մէջտեղէն վերցընէ։ Մէջերնէն երեք հոգւոյ չափ վազեցին պալատին դռներն առին ու Պերտինաքսին սենեակը մտած զարկին զինքը սպաննեցին՝ երեք ամիս թագաւորելէն ետքը։

1 ԴԻԴԻՈՍ ՅՈՒԼԻԱՆՈՍ (193)։ — Զօրքը կայսերութեան աթոռը ձեռք առած՝ ուզեցին վաճառքի հանել, և ով որ շատ ստակ խոստանայ՝ անոր տալ. ուստի սկսան փողոցներու մէջ վեր վար քալելով, "կայսերութիւնը ո՞վ կը գնէ,, կանչել։ Երկու գնող ելան, մէկը Սուլպիկիանոս՝ մեռնող կայսեր փեսան, ու մէկալը Դիդիոս Յուլիանոս ծեր իրաւագէտը. մէկը զօրաց խոստացաւ մարդ գլուխ հինգ հազար դրամանկշիռ, մէկալը վեց հազար. զօրքը մէկէն Դիդիոսը կայսր հրատարակեցին ու ժողովրդեան նախատանացը՝ անէծքին ու նետած քարերուն մէջէն անցնելով առին զինքը պալատը տարին։ Բայց երկու ամիս միայն իշխանութիւնը վայելեց Դիդիոս. վասն զի Մարկոս Աւրելիոսի ճարտար զօրավարը Սեպտիմիոս Սեւերոս սպաննեց զինքը։

2 ՍԵՊՏԻՄԻՈՍ ՍԵՒԵՐՈՍ (193-211)։ — Սեպտիմիոս Ափրիկեցի էր, ու անոր պէս տիրապետելու սէր ունեցող կայսր չէր եղած։ Պզտիկութենէ ատենը իրեն հասակակից տղաքը կը ժողվէր, անոնց դատա-

---

1 Պերտինաքսէն ետքը ո՞վ ընտրուեցաւ կայսր։
2 Ո՞վ էր Սեպտիմիոս Սեւերոս։

զաններ՝ կայծիններ կուտար, ինքն ալ բարձր տեղ մը ելած՝ հանդիսաւոր կերպով դատաստան կը կտրէր։ Իշխանութիւնը ձեռք առնելուն պէս՝ Պերտինաքսը սպաննող ու կայսերութիւնը աճուրդի հանող պրետորեան գունդը ցրուեց, ետքը սկսաւ բարեկարգութիւններ ընել ու զօրքը կրթել։

1 Դրսի զօրաց գլուխը երկու վաստակաւոր ու քաջ զինուորներ կային, մէկը Նիգեր՝ արեւելքի կողմերը, միւսը Ալբինոս՝ Բրիտանիոյ մէջ, և երկուքն ալ կայսերութեան ետեւէ էին. Սեպտիմիոս երկուքին ալ առջեւն առաւ։ Նիգեր իր անօգուշելի խստութեամբն ալ զօրաց սիրելի էր. Սեպտիմիոս յանկարծ վրան հասաւ, երեք տեղ պատերազմեցան. երեքին մէջ ալ ցրցուց Նիգեր իր ճարտարութիւնը ու քաջասրտութիւնը. բայց ահագին փոթորկի մը պատճառաւ Խասոսի յաղթութիւնը կորսնցուց, և Պարթեւաց երկիրը փախչելով հոն բռնուեցաւ ու սպաննուեցաւ (193)։

2 Կը մնար Ալբինոս, որուն ձեռքի տակէ կուսակից էր նաև ծերակոյտը։ Թէ ինքը և թէ իր զօրքը մեծ անուն ունէին քաջութեան կողմանէ. բայց ամէնն ալ կը պարսաւէին Ալբինոսի անկշտանալի շատակերութիւնը. մէկ նախաճաշիկին հինգ հարիւր թուզ կ'ուտէր՝ կ'ըսեն, հարիւր դեղձ, տասը սեխ, քսան լիտր խաղող, հարիւր հատ թզակեր բռնուած մանրիկ թռչուններէն, ու չորս հարիւր ոստրէ։ Լիոնի քով երկու բանակները զար-

---

1 Նիգեր ո՞վ էր ու ինչպէս նուաճուեցաւ։
2 Ալբինոս ինչպէս նուաճուեցաւ։

նուէրցան. Սեպտիմիոս Ալբինոսին գլուխը կտրեց ու սա Թղթով ծերակուտին խրկեց. «Ձեզի կը խրկեմ սա գլուխը՝ որ գիտնաք թէ սրդողած եմ ձեզի»։ Ետքը Հռոմ մտաւ, դրեթէ արիւնով լուաց քաղաքը, և Հռոմի ու գաւառներուն մէջ շատ երևելի մարդիկ գլխատել տուաւ (197)։

1 Անկէց ետքը իր Թագաւորութեան օրերը Պարթեւներուն ու Բրիտանացիները նուաճելու անցուց։ Կալէդոնացիք (Սկովտիացիք) երբոր իր զօրավարները յաղթեցին, Սեպտիմիոս յանկարծ անոնց ճահիճներուն մէջը հասաւ, ու երկու անգամ պատերազմելէն և յիսուն հազար մարդ կորսնցնելէն ետքը՝ զօրացը մէջ խռովութիւն ելաւ, որդին Կարակալլա իրեն վրայ Թուր քաշեց. սրտին ցաւէն սաստիկ հիւանդացաւ Սեպտիմիոս. իր ոսկորներուն մոխիրը մէջը դրուելու սափորը բերել տալով վրան նայեցաւ ու անձին ամբարտաւանութեամբ մը «Դուն զանիկայ պիտի ամփոփես որուն երկիրս պզտիկ կուգար» ըսաւ ու մեռաւ (211)։

2 ԲԱՍԻԱՆՈՍ ԿԱՐԱԿԱԼԼԱ (211-217)։ — Սեպտիմիոս երկու որդի թողուց մէկուն անունը Բասսիանոս Կարակալլա, մէկալինը Գետաս. երկուքն ալ կայսր դրուեցան։ Կարակալլան քաղցրաբարոյ կ'երևնար. պզտիկութեան ատենը երբոր տեսնէր մահապարտի մը գազանաց առջև ձգուիլը՝ կը սկսէր լալ։ Բայց աս զգայուն բնաւորութիւնը

---

1 Ի՞նչպէս մեռաւ Սեպտիմիոս։

2 Սեպտիմիոսի ով յաջորդեց։

հօրը տապականեալ արքունեացը մէջ վրայէն գնաց , ու իր բնական ցածութիւնը շուտով դուրս ելաւ ։ Նախ կայսերութիւնը եղբայրասպանութեամբ մը սկսաւ , խեղճ Գետասը մօրը գիրկը սպաննել տուաւ . իսկ ինքը պալատին մէջէն մեծ վտանգէ մը ազատածի պէս՝ բանակը փախաւ ու եղբօրը մահը հրատարակեց . տեսնելով որ զինուորները կը մռմռան , մարդ գլուխ երկու հազար հինգ հարիւր դենար պարգեւ տուաւ ու անոնց սիրտն առաւ ։ Ոմանք ըսին թէ ժողովուրդը հանդարտեցընելու համար պէտք է որ Գետասը աստուածացընես . “ կենդանի թող չըլլայ ու թող աստուած ըլլայ ” ըսաւ ։ Ետքը ուզեց որ իր հօրը խորհրդակից իշխաններէն մէկը իրեն ջատագովութեան ճառ մը գրէ որ ամենուն առջեւը ելլէ կարդայ . իշխանը պատասխան տուաւ թէ “ Եղբայրասպան մը ջատագովելը՝ եղբայրասպանութիւն մը ընելուն պէս դիւրին բան չէ ” ։ Բայց աս աներկիւղ պատասխանին համար կեանքը կորսնցուց ։

¹ Պատգամ մը ելած էր որ ան ատենները Գազան Աւսոնիոյ ( այսինքն Իտալիոյ ) ըսուած մէկը պիտի ելլէ . Կարակալլան աս գուշակութիւնը իր վրայ ստուգելով՝ ամէն տեսակ անգթութեանց ետեւէ եղաւ ։ Շատ անուանի մարդիկ տանջանքներով սպաննեց , այնպէս որ քսան հազար հոգիէ աւելի՝ ամենայն կարգէ ու հասակէ՝ անոր կատաղութեանը զոհ եղան ։ Խղճմտանքէն տանջուած՝ անդադար երազին մէջ կը տեսնէր Գետասն ու Սեւերոսը որ թուրը ձեռքերնին կը հալածէին

---

¹ Ինչ անգթութիւններ ըրաւ Կարակալլա ։

զէնքը · բայց սիրտը ամենևին չէր կակղընար · հանդէսներով ու խաղերով կը ջանար խռոված միտքը հանդարտեցընել · առանց ամըչնալու կառավարի հագուստով ձեռքի խարազանը հնչեցընելով ժողովրդեան մէջէն կ'անցնէր ու մրցանակները բաժնողին կուգար որ յաղթութեանը մրցանակն առնէ:

1 Ցանկարծ խելքին փչեց որ Մեծին Աղեքսանդրի նմանի · սկսաւ անոր ճամբան բռնել, անոր պէս հագնիլ, անոր սիրած բաները սիրել: Տասնըվեց հազար հոգւով փաղանգ մը կազմեց՝ ամէնն ալ Մակեդոնացի : Հրապարակներ ու մեհեաններ Աղեքսանդրի արձաններով լեցուեցան : Մէկուն անունը Աղեքսանդր ըլլալուն պէս՝ ամէն պատուոյ կրնար հասնիլ ու ամէն տեսակ ամբաստանութիւններէ ազատ կ'ըլլար :

2 Աս վատ նախանձաւորութիւնը կատարեալ ընելու համար աշխարհակալութիւններ ալ հարկաւոր էին : Ան ալ փորձեց կայսրը ու ամենուն ծաղր եղաւ : Սկսաւ զօրքով ասդին անդին պտըտիլ · նախ գնաց Գաղղիան անապատ դարձուց, ետքը գնաց Գերմանիան զարկաւ, բայց չկրցաւ յաղթել Ալամանաց (որ են Գերմանացիք): Անկէ անցաւ Դակիա ու հոն զարնուեցաւ Գոթացւոց հետ՝ որ ետքը այնչափ անուանի եղան : Շատ կը փափաքէր Կարակալլա որ Աղեքսանդրի քաջութեանցը տեղուանքը հասնի ու ինքն ալ նոյն քա-

---

1 Մեծին Աղեքսանդրի նմանելու համար ի՞նչ բաներ ըրաւ :

2 Ի՞նչ աշխարհակալութիւններ ուզեց ընել : — Ի՞նչպէս մեռաւ :

ջալթիւններն ընէ․ և անոր հաւատարած կարծեց ինքզինքը երկու պզտիկ Թագաւորներ նուաճելով՝ ան ալ մատնութեամբ, Պարթեւաց երկրին սահմանները ոտնակոխ ընելով ու Աղեքսանդրիա քաղաքին բնակչաց մէկ մասը ջարդելով։ Պարթեւք խրենց վրէժը առնելու վրայ էին, մէյմըն ալ Թիկնապահներէն մէկը զարկաւ սպաննեց ան խեղկատակ Թագաւորը Եդեսիոյ Ճամբուն վրայ՝ քսանուինը տարեկան եղած ատենը (217)։

1 ՄԱԿՐԻՆՈՍ (217-218)։ — Ոպեղիոս Մակրինոս անձնապահապետը, որ Կարակալլային սպաննողը կը սեպուէր, զօրաց առատ վարձք խոստանալով բանակին մէջ կայսր ընտրուեցաւ։ Ինքը Ափրիկէ ծնած Մաւրիտանացի էր, աղքատ ու աննշան ծնողաց զաւակ․ բայց քիչ ատենի մէջ ետևէ ետև հռետոր, փաստաբան, օրէնսգէտ եղեր էր։ Կարակալլան զինքը ասպետաց կարգն անցուց․ իր պալատն առաւ ու քիչ ատենէն Թիկնապահացը գլուխ դրաւ։

2 Մակրինոս Պարթեւաց պատերազմը առաջ տանիլ ուզելով երկու անգամ յաղթուեցաւ, ու ստիպուեցաւ ութսուն միլիոն դրամակշիռ տալով հաշտութիւնը գնելու անոնցմէ։ Զօրքը աս բանին վրայ շատ բարկացան․ մանաւանդ երբոր սկսաւ խստութիւններ ընել՝ առթի կը սպասէին որ վրէժնին հանեն։

---

1 Ո՞վ յաջորդեց Կարակալլայի։
2 Ի՞նչ պատերազմներ ըրաւ Մակրինոս։

[1] Ան տաճարը լեռէն մը կար բանակած Ասորւոց Եմեսա քաղաքին քով, ուր մանաւոր կերպով տեղացիք արեգակը կը պաշտէին։ Քուրմերուն մէջ տասնուերեք տարեկան պատանի մը կար, որ երբոր մարգարտազարդ զգեստները կը հագնէր՝ ամենուն աչքը վրան կը մնար տեսքին համար, ու զինքը Բագոս կուռքին կը նմանցընէին։ Ասոր զոհ ըրած ու սրինգ փչելով պարած ատենը բոլոր զինուորները կը վազէին զինքը տեսնելու կ՚երթային։ Ձայն մըն ալ կար որ Կարակալլայի որդին է անիկայ. ուստի հօրը պէս երբեմն Եղիոգաբալ այսինքն Արեգակին կը կոչուէր։ Ասոր մեծ մայրը օր մը հետը առաւ իր Թոռը՝ բանակը տարաւ, ուր զօրքը մէկէն Կեցցէ Օգոստոս կանչելով կայսր անուանեցին զինքը։ Մակրինոս ժամանակ չկորսնցուց, կուսակիցները ժողվեց ու Անտիոք քաղաքին քով իր ոսոխին հետ պատերազմեցաւ. բայց դեռ յաղթութիւնը չորոշուած՝ Մակրինոս փախաւ, ու Կապադովկիոյ Արքելայիս քաղաքին բնակիչները բռնեցին զինքը սպաննեցին (218)։

[2] ԲԱՍԻԱՆՈՍ ԵՂԻՈԳԱԲԱՂ (218-222)։ Այս Արեգական քրմապետը վեց ամիս հանդէսներ կատարելէն ետև Հռոմ եկաւ՝ իր աստուածը հետը առած՝ որ սև ու անձև քար մըն էր, և անոր համար Պալատինեան լեռան վրայ փառաւոր մեհեան մը շինեց. բոլոր մեկալ հռովմայեցի աստուածները ան այլանդակ աստուածոյն գերի ու

---

1 Մակրինոսի տեղը ո՞վ անցաւ ու ինչ կերպով։
2 Եղիոգաբաղ ինչպէս սկսաւ կայսերութիւնը։

սենեկապան սպասուհեան․ Աֆրիկէին ալ Կարքեդոնացւոց Ուրանիա (Լուսին) աստուածուհին բերել տալով անոր հետ կարգեց իր աստուածը։ Այն հարսանեաց ծախքին բոլոր տէրութիւնը օգնեց, և հանդէսը անպատմելի փառաւորութեամբ կատարուեցաւ։

* Տասնըեօթը տարեկան դեռահասակ կայսրը քրմապետական ոսկեթել պատմուճանը հագած, ապարանջաններով ու մանեակներով զարդարուած, ունքերին ու երեսն ալ սև ու ճերմակ ներկած էր, ու ամենևին հռովմէական նշան մը չունէր վրան։ Երբեմն Կիւբելէի կերպարանքը կը մտնէր և երբեմն Բագոսի։ Բոլոր պալատը ոսկեթել դիպակներով, վարդերով ու շուշաններով զարդարուած էր։ Իր ետևէն միշտ վաթսուն կառք կուգար․ իրենը բոլոր ոսկիով ու ազնիւ քարերով պատուած էր, և մէջը մտնելու համար ամենևին գետինը ոտքով չկոխէր, հապա միշտ ոսկւոյ ու արծաթի փոշւոյն վրայէն քալելով կառքը կ՚ելլէր։ Գործածած ամանները ոսկիէ էին, և օրուան մէջ գործածածները՝ իրիկունը սեղանակիցացը կը բաժնէր․ մէյմը հագած զգեստն ու մատանին մէյմըն ալ չէր դներ։ Ձկնարանները վարդի ջրով լեցնել կուտար, նաւամարտութեան ջրանցներուն մէջ ալ գինի կը վազցնէր։ Ըրած կոչունքներուն մէջ պիտի ըլլային սիրամարգի ու սոխակի լեզուներ, վահանաձկան հաւկիթ, թութակի ու փասիանի ուղեղ։ Ասոնցմէ զատ միշտ կը բերէին ոսկի հատիկներով խառնած, ոսպն ու բակլան

---

* Ի՞նչ գեղխութիւններ կ՚ընէր։

յամպարով, բոցերձն ալ մարգարտով խառնուած : Իր շները կը կերակրէր սագի լերդով, ձիերը խաղողով: Համեղ կերակուր մը հնարողին երկիր մը կը պարգեւէր :

1 Աս հնամարգի կայսրը, որ այսպիսի ցածութեանց կողմանէ իր նախորդները ամէնքն ալ անցուց, երբեմն նոր նոր կերակրով ալ կը զուարճանար. սեղանի կը կանչէր ութը միականի, ութը ցաւագար, ութը խուլ ու անոնցմով կը զուարճանար: Երբեմն ալ սեղանի առեն առխծներ ու վագրեր ներս վազցնել կուտար ու սեղանակիցքը կը սարսափեցընէր. և ան խեղճերը չէին գիտեր որ անոնց ճիրաններն ու ակռաները հանուած են. երբեմն ալ իր բարեկամացը կարիճներով ու օձերով լեցուն տուփեր կը խաւրէր: Կոչունքի հրաւիրած անձինքն ալ շատ անգամ՝ քամիով ուռեցուցած աթոռներու վրայ կը նստեցնէր, և կամաց կամաց քամին պարպուելով՝ ամէնքը գետին նստած կը մնային: Փողոտկզեան խաղի ժողված ատենը շատ անգամ մէջերնին օձեր արձըկել կուտար որ սոսկալի վնասներ կ՚ընէին: Կանանց համար ալ խորհրդարան մը շինեց, ու իր Մեսա մայրը գլուխ դրաւ անոնց, որ Հռովմայեցւոց նորելուք հագուստներուն, կառքերուն, այցելութեանց և ուրիշ ասանց նման բաներու վրայ խորհուրդ կ՚ընէին:

2 Արդէն աս քրմապետ կայսեր կառավարութեանը վրայ ամէնքը աժգոհ էին. երբոր իմացան

---

1 Ի՞նչ այլանդակ զուարճութիւններ կ՚ընէր:
2 Ի՞նչպէս մեռաւ:

որ Ալեքսիոս հօրեղբայրն ալ (որ տասնըհինգ տարեկան իրեն յաջորդեց Աղեքսանդր Սեւերոս անուամբ) կը մտածէ զինքը մեռցնելու՝ բանակին մէջ զարկին զինքը սպաննեցին, ու վիզը քար մը կապած՝ մարմինը Տիբեր գետը նետեցին (222)։

1 ԱՂԵՔՍԱՆԴՐ ՍԵՒԵՐՈՍ Բ (222-235). — Թէ որ ինքնակալ մը կրնար ան կիսակործան կայսերութիւնը քիչ մը ատեն ալ բռնել կեցնել՝ Սեւերոսը պիտի ըլլար։ Իր մայրը Մամէա քրիստոնեայ էր. անոր իմաստուն խորհրդովը իր նախորդին բոլոր գործքերը ջնջեց։ Եղիոգաբաղ կուռքը նորէն իր քաղաքը Եմեսա դարձուց. նոյնպէս նաև բոլոր մէկալ օտար կուռքերը։ Անոնց տեղը Քրիստոսի տեառն մերոյ պատկերը ներս առաւ, և ինչուան կ'ուզէր Կապիտոլիոնի աստուածոց կարգն անցընել. բայց քուրմերը թող չտուին. “ Թէ որ անանկ բան մը ընելու ըլլաս, ըսին, բոլոր աշխարհք քրիստոնեայ կ'ըլլայ, ու մէկալ մեհեանները անապատ կը դառնան ”։

2 Սեւերոս շատ բարեկարգութիւններ ըրաւ տէրութեան մէջ. ինքն ալ անձամբ բարեկարգ կենաց օրինակ կուտար. Թագաւորական պալատէն բոլոր խեղկատակները, Թզուկներն ու երգիչները դուրս հանեց, մանաւանդ շողոքորթները՝ որոնք տէրութեան ամէն Թշնամիներէն վնասակար կը սեպէր. “ Թշնամիք, կ'ըսէր, ինծմէ քանի մը եր-

1 Եղիոգաբաղին ո՞վ յաջորդեց։
2 Ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը Աղեքսանդր Սեւերոս։

կեր միայն կրնան առնուլ. իսկ շողոքորթները կրնան զիս առաքինութիւններէս զրկել ու անուանս աւրել ,, : Ճերմակ պատմուճան մը հագած՝ առանց ոսկւոյ և գոհարներու, առանց զօրքի Հռոմի մէջ կը քալէր, քաղաքացւոց մէջ կը մտնէր, անոնց հետ կը խօսէր և կ'ուզէր որ քուրմերը զինքը իրենց եղբայր անուանեն, ծերակոյտը որդի, զինուորականք զինուորակից, և քաղաքացիք բարեկամ:

[1] Բոլոր օրուան ընելիքը կարգի վրայ առած էր Սեւերոս. առաւօտը տէրութեան գործողութիւնները հոգալու կ'անցընէր. ետքը Յունաց և Լատինացւոց ընտիր մատենագիրները կը կարդար, մանաւանդ Վիրգիլիոսը՝ որ Պղատոն քերթողաց կ'անուանէր: Ետքը մարմինը զօրացընելու համար Արիսեան դաշտին մէջ զինուորական կրթութիւններ կ'ընէր. անկէց պալատը կը դառնար՝ նկարչութիւն կ'ընէր ու քնար կը զարնէր: Իմաստուն, գրագէտ ու արուեստագէտ մարդիկը իր սեղանը կը հրաւիրէր, և անոնց խօսակցութեամբը նոր բաներ սորվելով կը զուարճանար:

[2] Աղեքսանդր Թէպէտ քրիստոնեայ չէր, բայց շատ կը սիրէր քրիստոնէութեան բարոյականը, ու պալատին մէջ շատ տեղ ոսկի գրերով գրել տուաւ Աւետարանին ան առածը. “ Ինչ որ չես ուզեր որ մարդիկ քեզի ընեն՝ դուն ալ ուրիշի մ'ընէր ,, : Ամէն տեղ քրիստոնէից հալածանքը դադրեցուց, և յայտնի պաշտպանեց զանոնք:

---

1 Իր օրական գործողութեանցը ինչ կարգ դրեր էր:

2 Քրիստոնէից հետ ինչպէս վարուեցաւ:

Մեծամեծաց ու դատաւորաց մէկ բանի մը մէջ անիրաւութիւն ընելը իմանալուն պէս՝ սաստիկ կը պատժէր զանոնք։

1 Միանգամայն զօրաց վրայ ալ ամէն հոգ կ'ընէր. Թոշակնին ճիշդ կը վճարէր ու կերակուրնին կը շտկէր, հիւանդներուն կ'երթար այցելութիւն կ'ընէր։ Բայց պզտիկ յանցանք մըն որ ընէին՝ չարաչար կը պատժէր։

2 Սեւերոսին աս կենցաղօգուտ բարեկարգութիւններն ըրած ատենը (226) արեւելք Արտաշիր Սասանեան Պարսիկը Արշակունեաց թագաւորութիւնը կործանեց ու տեղը անցաւ՝ [illegible] [illegible] բռնելով։ Մէկէն Ասիա վազեց Աղեքսանդրը, որ ան նոր Թշնամւոյն առջին առնէ. Թուղթ մըն ալ գրեց անոր՝ յորդորելով որ Հռովմայեցւոց սահմաններուն չդպչի ու խաղաղութեամբ Պարսկաստանի վրայ թագաւորէ։ Արտաշիր ան Թուղթը կարդաց ու շատ երկայն գտնելով ըսաւ. "Քաջ թագաւորները կարճ կը խօսին ու զօրաւոր կերպով կը գործեն,,։ Եւ դեսպանները ճամբելու ատենը ըսաւ անոնց. "Օրէնքները ուժկին համար են. թագաւորաց իրաւունքը իրենց Թրին ծայրն է. ձեր տիրոջը փիլիսոփայական նամակին աս է իմ պատասխանս. իր Թղթին դէմ պիտի գնեմ բանակս, գրչին դէմ նիզակս, թանաքին արիւնս, և խօսակցութեանը գործքերս,,։ Եւ կը պահանջէր որ իրեն դարձընէ Կիւրոսի տէրութիւնը՝ որ ինչուան Եգէան ծովը կը տարածուէր։ Կայսրը ծի-

1 Զօրացը հետ ինչպէս կը վարուէր։
2 Ինչ պատերազմ ունեցաւ։

ծաղկեցաւ ան պատասխանին ու պահանջմունքին վրայ, և Ճամբան առաջ տարաւ :

1 Քանի մը զինուոր իրեն խիստ կրթութեանը վրայ գանգատ ըրած ըլլալով դատաստանի նստաւ Սեւերոս. յանցաւորները շղթայակապ առջևը բերել տուաւ, ու երբոր անոնք սկսան պոռալ կանչել, "Ան պղպղակը պահեցէք որ Թշնամեաց վրայ ընէք, ըսաւ, և ոչ թէ ձեր կայսեր վրայ: Կըրնաք դուք կեանքս վերցընել, բայց զիս վախցընել չէք կրնար": Զօրաց գլուխն աւելի տաքցաւ, ու Թրերը իրեն դէմ բարձրացուցին. "Վար առէք սա Թրերը, կանչեց Աղեքսանդր ահաւոր ձայնով մը. չէք կրնար զիս վախցընել, ձգեցէք զէնքերնիդ. ասկէց ետքը զինուոր չէք": Աս աներկիւղ հաստատութիւնը տեսնելով ամէնքը խոնարհեցան, Թողութիւն խնդրեցին. կայսրն ալ ներեց, ու գնաց Պարսից վրայ: Երկու կողմէն ալ կատաղաբար պատերազմեցան, և Արտաշիր յաղթուեցաւ ու փախաւ :

2 Աղեքսանդր Հռոմ դարձաւ յաղթանակով, և ժողովուրդը մեծ ուրախութեամբ զինքն ընդունեցաւ : Քիչ ատենէն Գերմանացւոց վրայ գնաց՝ որ սկսեր էին նորէն խլրտիլ: Հռոմէն ելած ատենը բոլոր ժողովուրդը վրան լացաւ՝ իբր թէ մեռնելու երթար. և իրաւցընէ ան արշաւանքը իրեն մահաբեր եղաւ : Քուրմերէն մէկը մօտեցաւ իրեն ու ըսաւ կ'ըսեն. "Մի՛ յուսար որ յաղթես, մի՛ վըստահիր զօրացդ վրայ, բարբարոսի մը ձեռքէն պիտի

---

1 Զինուորաց ըմբոստութիւնը ի՞նչպէս նուաճեց:
2 Ի՞նչպէս մեռաւ Սեւերոս:

մեռնիս: — Այդէկ, պատասխանեց հանդարտութեամբ Աղեքսանդր. ըսել է թէ ես ալ մեծամեծ մարդկանց բաղդին պիտի հասնիմ. անոնցմէ մէկն ալ բնական մահուամբ չէ մեռած,,:

Գերմանիոյ Մոգունտիա կամ Մակոնցա քաղաքը հասնելուն պէս՝ զօրքը Մաքսիմիանոս զօրավարին գրգռութեամբը բանակին մէջ խռովութիւն մը հանեցին, ու յանկարծակի կայսեր վրանը վազեցին: Աղեքսանդր անօգնական ու անզէն մնացած՝ պատմուճանովը գլուխը գոցեց, և չորս դիէն զարնուեցաւ մեռաւ քսանըեօթը տարեկան, ու հետը տարաւ Հռովմայ հանգստութիւնն ու փառքը (235):

## ԳԼՈՒԽ ԼԱ.

Մաքսիմիանոս Ա. — Իր կարգէ դուրս ոյժը. — Գորդիանոսք. — Մաքսիմոս ու Բալբինոս. — Գորդիանոս Գ. — Փիլիպպոս. — Դեկոս. — Գաղղոս. — Եմիլիանոս. — Վաղերիանոս. — Շապհոյ դէմ պատերազմը. — Գաղիանոս. — Կղօդիոս Բ. — Աւրելիանոս. — Զենոբիայի դէմ պատերազմը. — Տակիտոս. — Պրոբոս. — Կարոս. — Կարինոս ու Նումերիանոս: (235–285):

[1] ՄԱՔՍԻՄԻԱՆՈՍ Ա (235–238): Աղեքսանդր Սեւերոս յաջորդ չունենալով՝ քանի մը օր կռուըտելէն ետքը զօրքը կայսր ընտրեցին Մաքսիմիանոս

---

[1] Սեւերոսին ով յաջորդեց: — Ո՞վ էր Մաքսիմիանոս:

զօրավարը ։ Ափիկայ սոսկալի հսկայ մըն էր՝ զարմանալի ուժով և ութը ոտնաչափ հասակաւ ։ Կընկանը ապարանջանները իրեն մատանիի տեղ կը գործածէր · մէկ զարնելով ձիու մը ակռաները կը կոտրտէր · խճաքարերը ձեռքին մէջ կ'առնէր փոշի կը դարձընէր, ու պզտիկ ծառերը կը բռնէր երկուք կը ճղքէր · սաստիկ բեռնաւորած սայլը՝ որ զոյգ մը եզ հազիւ կրնային տեղէն շարժել՝ մինակ կը քաշէր ։ Մէկ օրուան մէջ քառասուն լիտր միս կ'ուտէր և քսանըութը սափորեան գինի կը խմէր ։ Ինքը Գոթացի էր հօր կողմանէ, ու մօր կողմանէ Ալան · և զարմանալի կերպով բաղդի հանդիպեր է կ'ըսէին ։ Սեպտիմիոս կայսրը Դանուբին քով իր Գետաս որդւոյն ծննդեան օրը հանդէս ընելու ատեն, Մաքսիմիանոս պատանին հոն ոչխար արածող հովիւ ըլլալով բանակը կ'երթայ, կ'աղաչէ որ ինքն ալ խաղին մէջ մտնէ ։ Կը զարմանայ կայսրը անոր կարգէ դուրս հասակին ու զինուորական կերպին վրայ, և հրաման կուտայ որ իր կարգէ զինուորացը հետ կռուի ։ Հովիւը մէկ շունչով անոնցմէ ետեւէ ետեւ տասնըվեց հատը գետինը փռեց ։ Սեպտիմիոս զինքը իրեն զինուոր ըրաւ · քանի մը օրէն ուզելով փորձել նաև անոր վազուածքը, իր ձին աղէկ մը վազցուց, Մաքսիմիանոս ալ հետը գնաց՝ առանց մէկ քայլ մը ետ մնալու ։ Սեպտիմիոս յոգնած՝ կեցուց ձին ու ըսաւ անոր · "Պատանի, կրնաս այդչափ վազելէդ ետքը մէկու մը հետ ալ կռուիլ ։ — Որչափ հոգւոյդ հետ կամենաս կը կռուիմ„ ըսաւ Մաքսիմիանոս ։ Եօթը կորովի զինուորներ առջևն եկան · զամենքն ալ գետինը պառկեցուց ։ Քիչ ատենէն անոր քաջասըր-

տութիւնն ալ առնելով Սեպտիմիոս՝ ձեռքը զօրք տուաւ որ զանոնք կոտրէ :

1 Ահա աս մարդն էր որ Հռենոս գետին քով զօրքը կայսր անուանեցին : Գետէն անդին անցաւ Մաքսիմիանոս, յիսունըեօթը բերդամեթր տեղ այրեց ու գնաց Պաննոնիոյ դիմացը բանակը դրաւ : Անկէց մահուան վճիռներ խրկեց Իտալիոյ մեծատանցն ու ազնուականացը, և սայլերու մէջ լեցուցած կը բերէին զանոնք առջևը՝ որ կամ խաչել կուտար և կամ գազաններու դիմաց կը նետէր : Հռոմի մէջ իր հրամանովը գետի պէս արիւն կը թափուէր, և արհաւիրքը ամենուն վրայ տիրեր էր : Աս վայրենաբարոյ բռնաւորը անանկ արհամարհութիւն մը ունէր մարդկանց վրայ որ յանդգնաբար կ'ըսէր. «Գերիներու վրայ միայն կ'ուզեմ իշխել» : Ամէնքը ապստամբեցան, և աս կամքը կատարելու առեն չթողուցին իրեն : Վասն զի Ակուիլէիի մէջ ալ իր անգթութիւններն ընել ուզելով Մաքսիմիանոս, զօրքը ապստամբեցան, և ութսունամեայ Գորդիանոս հիւպատոսը կայսր դրին :

2 ԵՐԿՈՒ ԳՈՐԴԻԱՆՈՍՔ (238) : — Գորդիանոս յայտարարութիւն մը հանեց Հռոմէացւոց մէջ թէ անոր համար միայն զօրաց խնդիրքը յանձն առաւ որ Հռոմը Մաքսիմիանոսի պէս հրէշի մը ձեռքէն ազատեմ : Ծերակոյտը սարսափած՝ մէկէն անոր

---

1 Մաքսիմիանոս ինչպէս ըրաւ կայսրութիւնը :
2 Երկու Գորդիանոսները ո՞վք էին ու ինչպէս մեռան :

ընտրութիւնը հաստատեց: Գահակից տուաւ անոր իր համանուն Գորդիանոս որդին, և Մաքսիմիանոսը իշխանութենէն ձգելով մահուչ հայրենեաց հրատարակեց: Բայց Մաւրիտանիոյ կուսակալը Կապելլիանոս, Մաքսիմիանոսին հաւատարիմ մնալով՝ վազեց Գորդիանոսեանց վրայ, Կարքեդոնի քով զարնուեցաւ. Գորդիանոս որդին յաղթուեցաւ մեռաւ, հայրն ալ չկարենալով որդւոյն մահուանը վրէժը հանել, չուզելով ալ անոր վրայ ապրիլ, գօտիովը ինքզինքը խեղդեց:

Անոնց մահուան գործն որ տուաւ ծերակոյտը՝ կայսր անուանեց Մաքսիմոս Պուպիենոսն ու Կղոդիոս Բալբինոսը: Մաքսիմիանոս ասոր լսելով վրայի հագուստը պատռեց ու գետինն ընկած տապլտկելով վայրենի գազանի մը պէս պոռչտալէն ետև, ելաւ իր սոսխացը դէմ գնաց: Ան միջոցին զօրացը մէջ խռովութիւն մը ելաւ, ու երբոր կ'ուզէր Մաքսիմիանոս զանոնք հանդարտեցնել, վրան վազեցին, սպաննեցին զինքը (238), գլուխն ալ կտրեցին Հռոմ տարին և Արիսեան դաշտին մէջ մեծ ուրախութեամբ այրեցին:

[1] ՄԱՔՍԻՄԻԱՆՈՍ ԵՒ ԲԱԼԲԻՆՈՍ (238). — Երկրորդ անգամն էր որ երկու կայսր մէկտեղ թագաւորեցին: Մաքսիմոս թէպէտ գարմի մը որդի էր, իր քաջութեամբը տէրութեան մեծամեծ պաշտօններուն հասեր ու հետզհետէ կուսակալ Բիւթանիոյ, Յունաստանի, Գաղղիոյ, քաղաքապետ Հռոմայ և հիւպատոս եղեր էր. պատկառելի և

[1] Գորդիանոսեանց յաջորդ ով եղաւ :

քաղցր բնաւորութեամբը ամենուն սիրելի էր ։ Իսկ Բալբինոս ազնուազգի, երկու անգամ հիւպատոս ընտրուած, պերճախօս ու բանաստեղծ, աւելի տէրութիւնը կառավարելու յարմար էր քան թէ պատերազմի ։ Բայց այսպիսի ազնիւ անձինքը զօրաց ընտրութեամբը կայսր եղած չըլլալնուն համար՝ անոնք գոհ չէին ։ Վերջապէս օր մը մեծ խռովութիւն մը հանեցին ու վազեցին պալատը երկուքն ալ սպաննեցին (238) ։

1 ԳՈՐԴԻԱՆՈՍ Գ (238-244) ։ — Ապստամբները կայսր դրին տղէն Գորդիանոս ծերոյն տասնըհինգտարեկան համանուն Գորդիանոս թոռը, որ տեսքովն ու զուարթութեամբը սիրելի կերպ մը ունէր ։ Իրեն համար գրատուն մը շինել տուաւ, ու վաթսունուերկու հազար հատոր գիրք դրաւ մէջը. "Ամէն բան կ'ուզեմ սորվիլ, կ'ըսէր, որպէս զի բանէ մը չխաբուիմ,, ։ Քիչ ատենի մէջ ամենուն սիրելի եղաւ. սենեկապետները զինքը իրենց որդի կը կանչէին, զօրքը՝ սան, որովհետեւ իրենք ընտրեր էին, ժողովուրդն ալ իրենց ուրախութիւն ու երջանկութիւն կ'անուանէին զինքը ։

2 Պալատականներէն ոմանք կը ջանային զինքը լաւութեան ճամբէն դուրս հանելու. բայց Գորդիանոս Միսիթէոս անունով իմաստուն սենեկապետին փեսայանալով՝ անոր օգտակար խորհուրդ-

---

1 Մաքսիմոսին ու Բալբինոսի տեղը ո՞վ ընտրուեցաւ կայսր ։
2 Գորդիանոս ի՞նչ բնաւորութեան տէր էր ։

ներսիդը շարժեցաւ, և զինքը գլխէ հանողները քովէն հեռացուց։

[1] Ան միջոցին Ղապուհ Պարսից Թագաւորը Հռովմայեցւոց վրայ յարձակեցաւ, մտաւ Ասորւոց երկիրն ու Անտիոք քաղաքը առաւ։ Աս գործը Հռոմ հասնելուն պէս ծերակոյտը Յանոսի տաճարը բանալ տուաւ, որ տոհմական արարողութեամբ ան վերջին անգամ բացուիլը եղաւ։ Գորդիանոս կայսրը զօրաց գլուխը կեցած՝ Միսիթէոսին հետ արևելք գնաց. մտաւ Ասորիք, Ղապհոյ յաղթեց, Անտիոք քաղաքը նորէն առաւ, ու Մծբնայ ալ տիրեց։ Ան ատենը Փիլիպպոս անուանով արաբացի մը կեղծաւորական կերպերովը ու քաղցրութեամբը Միսիթէոսին աչքը մտաւ, ու խնչուան կայսեր թիկնապահաց կարգը անցաւ։ Անկէց ետքը առջի ջանքը ան եղաւ որ իր բարերար Միսիթէոս իշխանը թունաւորէ. կայսրն ալ մեռցնել կ'ուզէր, բայց անձամբ չկարենալով զօրքը անոր դէմ գրգռեց, ու քանի մը հոգւոյ գլուխը ան աստիճանի տաքցուց՝ որ Թրերով վրան վազեցին սպաննեցին (244)։ Քսան տարեկան մեռաւ Գորդիանոս վեց տարի թագաւորելէն ետև, ու բոլոր կայսերութիւնը վրան լացաւ. Նոյն իսկ զօրքը իրենց ըրածին զղջացած՝ կայսեր գերեզմանին վրայ այլևայլ լեզուներով աս արձանագիրը դրին. “Աստուածոյն Գորդիանոսի, յաղթականին Պարսից, Գոթացւոց և Սարմատացւոց. որ տէրութիւնը խաղաղեց և բոլոր մեր թշնամեացը յաղթեց՝ բաց 'ի Փիլիպպոսէն”։

[1] Ի՞նչ պատերազմ ըրաւ, ու ի՞նչպէս մեռաւ։

1 ՓԻԼԻՊՊՈՍ ԱՐԱԲԱՑԻՆ (244–249)։ — Փիլիպպոս իր փափաքին հասնելով՝ զօրքէն կայսր ընտրուեցաւ, և ծերակոյտը որովհետև հակառակ կենալու բաւական ոյժ չունէր՝ անծանօթ Արաբացւոյն ընտրութիւնը հաստատեց։ Պարսից հետ հաշտութիւն ըրաւ Փիլիպպոս՝ Միջագետքը և Ասորւոց երկրին մէկ մասը անոնց տալով. անկէ հայրենիքը Արաբիա անցաւ որ ձեռք ձգած անկարծելի պատիւը հայրենակցացը ցուցընէ. հոն Փիլիպպուպօլիս քաղաքը հիմնեց, ու Իտալիա դառնալու համար Ճամբայ ելաւ։

2 Հռովմայեցիք չկրցան ձայն հանել, բայց իրենց բարկութիւնին լռութեամբ յայտնեցին։ Փիլիպպոս նայեցաւ որ առատաձեռնութեամբ ու հրապարակական հանդէսներով Հռովմայեցւոց սիրտն առնէ, բայց անոնց ատելութիւնը վրան օրէ օր կ'աւելնար։

3 Քիչ ատեն կրցաւ Փիլիպպոս իշխանութիւնը վայելել. վասն զի իմանալով որ Գոթացիք Թրակիան ոտնակոխ կ'ընեն՝ վրանին Մարինոս զօրավարը ղրկեց։ Անիկայ թշնամիները հալածելէն ետև զօրքը ոտք հանեց ու ինքզինքը կայսր անուանել տուաւ։ Փիլիպպոս սարսափած՝ ծերակոյտը ժողվեց և սկսաւ Մարինոսին վրայ գանգատիլ անոնց, որ այսչափ պատուոյ իր ձեռքովը հասնելէն ետքը ինքն դէմ այսպիսի ապերախտութիւն

---

1 Փիլիպպոս ի՞նչպէս սկսաւ կայսրութիւնը։
2 Հռովմայեցիք զինքը ի՞նչպէս ընդունեցին։
3 Մարինոսի ապստամբութիւնը ի՞նչպէս եղաւ։

ըրաւ ։ Սինկղիտոսները ամենևին պատասխան չտուին , և իրենց լռութեամբն ու նայուածքովը կ՚ուզէին իմացընել թէ ըրածդ դատար , և թէ Մարինոսին ըրածը քուկինիդ չհաւնիր ։ Միայն մէջերնէն Դեկոս զինքը քիչ մը քաջալերեց ու ըսաւ որ Մարինոս իշխանութեանը մէջ շատ չդիմանար . և իրաւցընէ Նիւրիկէի զօրքը կատղած՝ սպաննեցին զինքը ։

¹ Աս դիպուածով մեծ վստահութիւն առաւ Փիլիպպոս Դեկոսին վրայ , զինքը սպարապետ դրաւ , ու բազմագունդ բանակով թշնամեաց վրայ խրկեց ։ Միսիա գաւառը հասնելուն պէս՝ զօրքը Դեկոսը կայսր դրին ։ Փիլիպպոս մէկէն զօրքը ժողվեց ու վրան պատերազմի ելաւ . և որովհետև զինուորները սաստիկ քշելով չէր թողուր որ քիչ մը հանգիստ առնուն , ու թեթև յանցանքներին ալ մահուամբ կը պատժէր , Վերոնա քաղաքը հասնելուն պէս զօրքը գլուխ քաշեցին ու Դեկոսի կայսերութիւնը ընդունեցան . զինուորին մէկն ալ թրով վազեց Փիլիպպոսի վրայ , ու մէկ զարնելով գլուխը երկու ճղքեց (249) ։

² ԴԵԿՈՍ (249–251) ։ — Դեկոս կամ Դեկիոս կայսրը աթոռը նստած ժամանակը՝ Գոթացիք , Հերուլք՝ և ուրիշ ազգեր Դանուբէն անցեր՝ Թրակիան ասպակոխ կ՚ընէին . Դեկոս անոնց դէմ գնաց , ու առջի բերան յաջողեցաւ Հռովմայեցւոց բանը . բայց երբոր անոնք հաշտութիւն խնդրեցին

---

¹ Ի՞նչպէս մեռաւ Փիլիպպոս ։

² Դեկոս ի՞նչ պատերազմ ըրաւ ։ — Ի՞նչ կողմանէ անուանի է ։

ու Հռովմէյեցիք յանձն չառին, անանկ յուսահատ կատաղութեան մէջ ընկան Թշնամիք որ չարաչար յաղթեցին Հռովմայեցւոց, Դեկոսն ալ պատերազմին մէջ մեռաւ (251)։ Կայսերաց մէջ Դեկոսին պէս քրիստոնէից դէմ սաստիկ հալածանք հանող չեղաւ։

[1] ԳԱՂՂՈՍ (251-253)։ — Դեկոսին մնացած զօրքը իրենց կայսր դրին Գաղղոս զօրավարը, և ծերակոյտը հաստատեց զինքը. Գաղղոս մէկէն Գոթացւոց տուրք տալով հետերնին հաշտութիւն ըրաւ, Հռոմ դարձաւ, ու քիչ ատենի մէջ անկարգութիւններովը ամենուն ատելի եղաւ։ Բարբարոսները խոստմունքնին չպահեցին, նորէն Միսիոյ վրայ յարձակեցան, ու սկսան երկիրը աւըրշտըկել. դիմացնելու եղաւ Եմիլիանոս հոն տեղի կուսակալը, ու անոնց յաղթելով զօրացմէ կայսր ընտրուեցաւ։ Անոր դէմ ելաւ Գաղղոս, յաղթուեցաւ ու սպաննուեցաւ (253)։

[2] ԵՄԻԼԻԱՆՈՍ (253)։ — Աս կայսրը աԹոռը նստելուն պէս՝ Գաղղիոյ զօրքը իրենց Վալերիանոս զօրապետին առաջնորդութեամբը վրան ելան ու պատերազմի մէջ զինքը սպաննեցին։ Եմիլիանոսին կայսերութիւնը չորս ամիս միայն քշեց։

[3] ՎԱՂԵՐԻԱՆՈՍ (253-260)։ — Ինչուան ան ատեն զօրաց ընտրութիւնը այնպէս սիրով ու ա-

---

1 Դեկոսին ո՞վ յաջորդեց։
2 Եմիլիանոս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։
3 Վալերիանոս ի՞նչ բնաւորութեան տէր էր։

մնում հաւանութեամբը ընդունելի չէր եղած · կը կարծէին որ Վաղերիանոսի հետ բոլոր հին կայսերաց աղէկութիւնները Հռոմ՝ պիտոր մեռնին ։ Եօթանասուն տարեկան էր աս նոր կայսրը, և ամենեւին իր հաճոյքը չէր առած · այնպիսի տապականեալ դարու մէջ արդարասէր, զգուշաւոր և աներկիւղ բարքովը բարեբարոյ մարդկանց սիրելի ու չարերուն ահարկու եղեր էր ։ Կայսրութիւնը ձեռքն առնելուն պէս նայեցաւ որ ժողովրդեան հանդարտութիւն ըլլայ · բայց ան հանդարտութիւնը երկայն չտեւեց ։

[1] Ղապուհ Պարսից Թագաւորը հռովմէական տէրութեան խռովութիւններէն օգուտ քաղել ուզելով՝ արձակ համարձակ Փոքր Ասիան տանակոխ կ'ընէր · Անտիոքը կործանեց, Եդեսիան ալ կործանելու պատրաստուած ատենը՝ վազեց Վաղերիանոս անոր դէմ ։ Պարսիկք դժուար տեղ մը ձգեցին անոր բանակը, զօրքը ջարդեցին, զինքն ալ մատնութեամբ գերի բռնեցին ։ Ղապուհ ամէն տեղ հետը կը պտըտցընէր իր գերին՝ կայսերական ծիրանիովը · երբոր կ'ուզէր ձի կամ կառք հեծնալ, ան ծեր կայսրը կռնըկին վրայ կը պառկեցընէր ու պատուանդանի պէս վրան կոխելով վեր կ'ելլէր ։ Ասանկ խեղճ գերութեան մէջ քանի մը տարիէն մեռաւ Վաղերիանոս (260) ։ Պարսիկք կաշին հանեցին, մէջը յարդ լեցուցին ու կայսերական հագուստներովը զարդարած՝ յաղթութեան նշանի պէս կռատան մը մէջ պահեցին ։

---

[1] Ի՞նչպէս գերի ընկաւ ։ — Ղապուհ հետը ի՞նչպէս կը վարուէր ։

1 ԳԱՂԻԱՆՈՍ (260–268)։ — Այն ատեն որ Վաղերիանոս Պարսկաստանի շղթաներու մէջ կը չարչարուէր, ծերակոյտը ժողովուրդն ու զօրքը կայսր գրին անոր Գաղիանոս որդին։ Ամէնքը վրան մեծ յոյս ունէին, վասն զի երեւելի վարժապետաց ու զօրավարաց ձեռքը մեծցած էր. հօրը վրէժը առնելու համար կը կարծուէր թէ մեծամեծ քաջութիւններ պիտի ընէ Պարսից դէմ. բայց Գաղիանոս ամենուն յոյսը պարապ հանեց. վասն զի բնաւորութեամբ տկարամիտ էր, անհաստատ և ախտամոլ։ Սրտին մէջ ամենեւին հայրենասիրութիւն չունենալով, կայսրութիւնը անոր համար միայն կ'ուզէր որ ինքնիշխան ազատութեամբ կարենայ ուզած անկարգութիւններն ընել. բոլոր օրը խաղերով ու կերուխումով կ'անցընէր, ծաղիկներով ու պտուղներով բերդեր կը շինէր, երեք տարի խաղող պահելով ու ձմեռը սեխ բուսցընելով կը զուարճանար։

2 Իր հօրը Վաղերիանոսին գերութեանը վրայ ցաւելու ու վրէժխնդրութեան յորդորուելու տեղը՝ անխիղճ որդին հօրը գերութեանը վրայ կ'ուրախանար, որովհետեւ անով ինքը կայսրութեան հասեր էր, և լրբաբար ծերակուտին առջեւն ըսաւ. "Արդէն գիտէի որ հայրս ամէն մարդկանց պէս մարդկային փոփոխութեանց տակն է"։

---

1 Վաղերիանոսի տեղը ո՞վ դրուեցաւ կայսր։
2 Գաղիանոսի ցածութիւնը ինչո՞վ աւելի յայտնի եղաւ։

[1] Հռովմայեցւոց ուրիշ հին թշնամիներն ալ տեսնելով Շապհոյ յաղթութիւնը, կայսեր գերի բռնուիլն ու Գաղիանոսի անհոգութիւնը, ամէնքն ալ սիրտ ըրին անոնց վրայ յարձակելու։ Գերմանացիք Ալպեան լեռներէն անցան ու ինչուան Հռաւեննա արշաւեցին, փռանկները Գաղղիան ոտնակոխ ըրին, Գոթացիք ու Սկիւթացիք փոքր Ասիան ու Մակեդոնիան քանդեցին. Մարկոմանները Դակիոյ ու Պաննոնիոյ տիրեցին, Պարսիկներն ալ Ասորւոց երկիրն առին. ան միջոցին ժանտախտ մըն ալ ընկաւ ու սոսկալի ջարդ ըրաւ Իտալիոյ մէջ։ Իսկ կայսրը ինքզինքը կոչունքներու ու զուարճութիւններու տուած, ասիական զարդարուն վերարկուով Հռովմայեցւոց կ'երեւնար, մազերն ալ ոսկիէ աւազով կը զարդարէր՝ որպէս զի Ապողոնի մազերուն գոյնը առնեն։ Շատ մը անամօթ անձանց հետ հասարակաց բաղնիքները կ'երթար ու գիշերները մեծամեծ կոչունքներով կ'անցընէր. տէրութեան մեծամեծ թշուառութիւնները տեսնելով ամենեւին հոգ չէր ըներ։ Երբոր իրեն իմացուցին թէ Եգիպտացիք ապստամբեր են, ծիծաղելով պատասխան տուաւ. “Միթէ առանց եգիպտական կտաւի չե՞նք կրնար ապրիլ”։ Երբոր լսեց թէ Ասիան ձեռքերնէս կրնայ ելլել, պատասխան տուաւ. “Չեն չտար, անկէց ետքը մետաքս չենք հագնիր”։ Հռովմայեցիք այսպիսի վատ անհոգութիւնը տեսնելով, և յոյս մը չունե-

---

1 Ան ատենները ի՞նչ թշնամիներ ելան Հռովմայեցւոց դէմ։ — Գաղիանոս ի՞նչպէս մեռաւ։

նալով՝ ոչ անարգուած ծերակուտէն, ոչ գերի եղած ժողովրդեան, և ոչ ապականեալ կայսեր վրայ, սկսան Հռոմէն դուրս մէկը փնտռել որ կարող ըլլայ տէրութիւնը կործանմանէն ազատել: Վերջապէս զօրքը ամչնալով իրենց այնպիսի կայսր ունենալուն վրայ, օր մը զարկին զինքը սպաննեցին՝ յիսունըհինգ տարեկան եղած ատենը (268):

[1] ԿՂՕԴԻՈՍ Բ (268-270): — Բանակին քաջ զօրավարներէն մէկն էր Կղօդիոս Իլիւրիկեցին. Օգոստոսի պէս արդարասէր, աշխատասէր, անկեղծ, մեծանձն, և Տրայիանոսի պէս պատերազմասէր. ասիկայ Գօթացւոց դէմ ցուցուցած քաջութեամբը կայսերութեան արժանի եղաւ, ծերակոյտն ալ ուրախութեամբ ընդունեցաւ զօրաց ընտրութիւնը:

[2] Գաղիանոսի ատենը շատ մարդկանց երկիրները անիրաւութեամբ յափշտակուեր էին. օրէնք հանեց Կղօդիոս որ նորէն ան երկիրները իրենց տէրերուն դարձուին: Օր մը կնկան մէկը եկաւ կայսեր դիմացը, "Երկիր մը ունէի, ձեռքէս առին, ըսաւ, ու Կղօդիոս անունով զօրավարի մը քաջութեանը վարձ տուին. հիմայ աս օրէնքին զօրութեամբը իմ երկիրս կ՚ուզեմ ես: — Իրաւունք ունիս, ըսաւ կայսրը, պէտք է որ Կղօդիոս կայսրը Կղօդիոս զօրավարին առածը ետ դարձընէ". և մէկէն կնկան կալուածը անոր տուաւ:

---

1 Գաղիանոսի ո՞վ յաջորդեց: — Ի՞նչ բնաւորութեան տէր էր Կղօդիոս:

2 Արդարասիրութեանը վրայ ի՞նչ կը պատմուի:

1 Իրէքհարիւր հազար Գոթացիք Տնեսթեր գետին քովերը ժողվուած սկսան քաղաքները կողոպտելով Յունաստանի վրայ երթալու սպառնալ: Կայսրը անոնց վրայ գնաց ու Նայիսոսի քով յաղթեց անոնց, յիսուն հազար հոգի սպաննեց, անթիւ գերի ու աւար առաւ, և բոլոր նաւերնին այրեց, որով Գոթացի ջնջուեցաւ: Մեռելներուն հոտէն փոխադրական հիւանդութիւն մը ընկաւ հոն. այն հիւանդութենէն Կղօդիոս ալ բռնուելով Պաննոնիոյ Սիրմիոն քաղաքին մէջ մեռաւ (270):

2 Կղօդիոս կայսրն ալ աստուածոց կարգը անցուցին Հռովմայեցիք. բայց աս պատիւը անանկ սովորական բան մը եղած էր որ ծերակոյտը նոր պատիւ ուզելով տալ անոր՝ իր ժողովարանին մէջ անոր ոսկիէ կիսարձանը կանգնեց. ժողովուրդն ալ Կապիտոլիոնի մէջ նոյնպէս ոսկիէ արձան մը կանգնել տուաւ անոր, և հրապարակին մէջ արծըթէ արձան մը. անոր պատուանդանը ձևացուցած էր Կղօդիոսին բարբարոսներէն առած ցուցակներովը: Ամէնքը լացին Կղօդիոսին վրայ, վասն զի քաջութեան ու խելքի կողմանէ ուրիշ մեծամեծ կայսերաց հաւասար ըլլալէն զատ՝ քաղցրութեամբը անոնց շատէն ալ վեր էր:

3 ԱՒՐԵՂԻԱՆՈՍ (270–274): — Սիրմիոնի զօրքը կայսր անուանեցին ձիաւորաց սպարապետը

---

1 Ի՞նչ պատերազմ ըրաւ, ու ի՞նչպէս մեռաւ:
2 Կղօդիոսի մեռնելէն ետև ի՞նչ պատիւներ ըրին իրեն Հռովմայեցիք:
3 Կղօդիոսի տեղը ո՞վ եղաւ կայսր:

Աւրեղիանոս, որ ան ատենի անուանի զօրավարներէն մէկն էր. ծերակոյտն ու ժողովուրդն ալ իր ընտրութիւնը հաստատեցին։ Դակիոյ մէջ երկրագործի մը որդի էր Աւրեղիանոս. պզտիկուց Հռովմայեցւոց զօրացը մէջ մտած՝ քաջութեամբ սկսաւ յառաջանալ, ու ճարտարութեամբ կայսերութեան հասաւ։ Իր քաջութիւնը ամենուն բերանը առակ եղած էր, օր մը իր ձեռքովը քառասունըութը Սարմատացի մեռուցեր էր։ Զօրքը սաստիկ կը վախնային իր խստութենէն. "Չըլլայ թէ, կ'ըսէր անոնց, ձեզմէ մէկը գեղացւոյ մը հաւը գողնայ, և կամ ճամբէն անցնելու ատեն ողկոյզ մը փրցընէ. զինուորը թշնամւոյն աւարովը պիտի հարստանայ, ոչ թէ իր քաղաքակցաց արցունքովը"։

1 Աւրեղիանոս կայսր ըլլալուն պէս՝ Ալամանք Իտալիա վազեցին, Հռովմայեցւոց զօրքը ջարդեցին, և սկսան քաղաքները կողոպտել։ Անանկ ցրուած ատեննին վրանին յարձակեցաւ Աւրեղիանոս, և Դանուբէն անդին քշեց զանոնք (271)։

2 Ան ատենները նոր տէրութիւն մը սկսեր էր մեծնալ արևելքի կողմերը։ Ասորւոց աւազուտ երկրին մէջ Պալմիրա քաղաքը իր իշխանութիւնը Փիւնիկիոյ ծովէն մինչուան Եփրատ տարածեր էր։ Աւրեղիանոսի ատեն Պալմիրայի վրայ տիրողը Զենոբիա թագուհին էր որ Պտղոմեանց ցեղէն եմ

---

1 Ալամանաց դէմ ի՞նչ յաղթութիւն ըրաւ Աւրեղիանոս։

2 Արևելքի կողմերը ի՞նչ պատերազմ ունեցաւ։ — Զենոբիա թագուհւոյն վրայ ի՞նչ կը պատմուի։

կ'ըսէր, ու սաստիկ պատերազմասէր ըլլալով գլուխը սաղաւարտ, թեւերը բաց, ու թուրը ձեռքը զօրաց գլուխ կեցած՝ երբեմն ձիով, երբեմն կառքի վրայ նստած՝ երբեմն ոտքով երկար ճամբաներ կ'ընէր, ու զօրացը սիրտ տալով կը պատերազմէր: Յոյս ունէր որ օր մը Իտալիոյ վրայ ալ թագաւորէ, և յաղթանակաւ Հռոմ մտնելու համար ալ կառք մը պատրաստել տուեր էր: Ոդենատոս էրկանէն իրեք որդի ունեցեր էր. մէկուն անունը դրեր էր Լատին, մէկալին Յոյն, երրորդին Ասորի. վասն զի մէկը Հռոմմայ թագաւոր պիտի դնէր, մէկալը Յունաստանի, և երրորդը Ասիոյ: Հպատակներն ալ վրան մեծ համարմունք ունենալով՝ արդէն զինքը աշխարհատիկին կամ բոլոր աշխարհիս դշխոյ կը կանչէին:

1 Աւրելիանոս վազեց Ասորւոց երկիրը, ու Եմեսա քաղաքին քով արիւնահեղ պատերազմով մը յաղթեց Զենոբիային զօրացը: Թագուհին փախաւ՝ Պալմիրա քաղաքին մէջ ամրացաւ. կայսրը հոն զինքը երկար ատեն պաշարելէն ետև՝ ուզեց հետը պատուով դաշնադրութիւն ընել: Անիկայ աս խրոխտ պատասխանը տուաւ. "Զենոբիա դշխոյ արևելից առ Աւրելիանոս Օգոստոս: Զէնքով կը վերջանան պատերազմները: Կ'ուզես որ քեզի անձնատուր ըլլամ, չես յիշեր որ Կղէոպատրա աւելի յանձն առաւ մեռնիլ՝ քան թէ գերի ըլլալ": Բայց երբոր Պալմիրային մէջ սովը սաստկացաւ, թագուհին ուզեց անկեց ելլել՝ ուրիշ տեղ մը ամրանալ. Ճամբան Հռովմայեցւոց

---

1 Աւրելիանոս ի՞նչպէս յաղթեց Զենոբիային:

Ձիաւորները վրան հասան, բռնեցին զինքը բերին Աւրելիանոսի, որուն ըսաւ Զենոբիա. “Աս յաղթութեամբդ զքեզ կայսր կը ճանչնամ. քու նախորդներդ կայսր չէին„։ Զօրքը ուզեց որ սպաննուի Զենոբիան. բայց Աւրելիանոս զանիկայ իր յաղթանակին համար պահեց։

[1] Իտալիա դարձաւ Աւրելիանոս, ու յաղթանակաւ Հռոմ մտաւ։ Այն յաղթանակը շատ փառաւոր եղաւ. առջևէն կ'երթային քսան փիղ, չորս վագր ու երկու հարիւր ուրիշ սակաւադիւտ կենդանիներ՝ արևելքէն ու հարաւային կողմերէն բերուած. ետքէն ալ հազար վեց հարիւր սուսերամարտ՝ ամփիթէատրոնին համար։ Անոնց ետևէն կուգային Ասիոյ հարստութիւններն ու Պալմիրայի թագուհւոյն գանձերն գեղեցիկ կարգով, անոնց ալ ետևէն անթիւ կառքերով դրօշներ, սաղաւարտներ, վահաններ ու զրահներ։ Հեռաւոր ազգաց դեսպանները թէ իրենց կերպարանքովը և թէ հագուստներնուն հարստութեամբը ամենուն աչքը իրենց կը դարձնէին. նմանապէս ամէն երկրի բերքերը ու այլևայլ թագաւորներու կայսեր ընծայած ոսկիէ պսակները կը ցուցընէին թէ որչափ համարում կար ան ատենը հռովմէական կայսերութեան վրայ, որուն կործանումը մօտեցեր էր։ Յաղթանակին մէջ շատ ալ գերիներ կային Բակտրիացի, Սարակինոս, Գոթացի, Ալան, Փրանկ, Վանդալ ու Պարսիկ. նմանապէս Շապհոյ կառքերը, Ոդենատոսի ու Գոթացւոց թագաւորին կառքերը. իսկ Աւրելիանոսի կառքը

---

[1] Աւրելիանոսի յաղթանակը ինչպէս եղաւ։

քաշողները չորս հատ եղնիկ էին ։ Բայց ամենուն աչքը Զենոբիայի վրայ էր, որ գլուխը թագ դրած ու ձեռուըները ոսկի շղթայով կապած ետևէն կ'երթար, և տեսնողներուն՝ մէկ կողմանէ գութը կը շարժէր, մէկալ կողմանէ կը զարմացընէր զանոնք իր վրայ ։ Հագած ծիրանին այնչափ պատուական քարերով զարդարած էր որ հազիւ կրնար վերցընել, թէպէտ և շատ մը գերիներ վերարկուին ծայրէն վեր բռնած էին ։ Զենոբիա աս պատիժը քաշելէն ետքը՝ Իտալիոյ մէկ կողմը քաշուեցաւ, ուր որ կայսրը իրեն կալուած մը տուեր էր․ ետքերը Հռոմ եկաւ ու հոն բնակեցաւ, և ինչուան չորրորդ դարուն վերջերը իր ցեղը կար ։

[1] Շատ տարի ետքը երբոր Աւրելիանոս Պարսից վրայ գնաց, Մնիսթէոս ատենադպիրը իմանալով որ կայսրը իրեն դէմ սրդողեր է ու զինքը պիտի պատժել տայ, զօրավարաց անուններուն ցանկը շինեց, տակն ալ Աւրելիանոսին ստորագրութիւնը յարմարցուց․ տարաւ ցըցուց անոնց՝ ըսելով թէ կայսրը ձեր վրայ բարկացեր է ու զձեզ 'ի մահ պիտի դատապարտէ, ձեր գլխուն ճարը տեսէք․ անոնք ալ գնացին Աւրելիանոսը սպաննեցին, որ վաթսուներեք տարեկան էր (274) ։ Բոլոր ժողովուրդը լացաւ Աւրելիանոսի վրայ՝ որ այնչափ զինքը փառաւորեր էր, ու անոր սպաննողները գազանաց առջևը ձգեցին ։

[2] Ան առաջին անգամն էր որ մէկը չհամարձակեցաւ կայսերութեան ետևէ ըլլալու, որով և

---

1 Ի՞նչպէս մեռաւ Աւրելիանոս ։

2 Աւրելիանոսի ո՞վ յաջորդեց ։

ութը ամիս պարապ մնաց աթոռը (274-275)։ Բայց երբոր Փռանկները Հռենոսէն անցած՝ սկըսան առաջ գալ, ծերակոյտը զօրաց հետ միաբանեցաւ, ու մէջերնէն Տակիտոսը կայսր ընտրեցին (275)։

[1] ՏԱԿԻՏՈՍ (275-276)։ — Իմաստուն ու բարեմիտ Տակիտոս՝ իր անուանակից հռչակաւոր պատմագրին ցեղէն ըլլալուն համար կը պարծենար։ Ծերակուտին յոյսը պարապ չհանեց. օրէնքները կարգաւորեց, առանց խստութեան ու թուլութեան արդարութիւնը պահպանելու ըրաւ, զեղխութիւնները վերուց, և իր ազգատոհմը հարստացընելու տեղ՝ ինքը իր ստըկէն հինգ միլիոն տէրութեան գանձը դրաւ. Բայց զօրքը վրան գոհ չէին։ Երբոր տեսան որ ան եօթանասունըեօթը տարեկան ծերը պատերազմական բաներու տեղեկութիւն չունի ու գիտութեանց վրայ է միայն սէրը, սկսան գանգատիլ։ Ծերակոյտը ջանաց զանոնք հանդարտեցընել՝ ըսելով թէ ձեր ուզելովը զինքն ընտրեցինք. Տակիտոս ալ իր կողմանէ առատ ստակ խոստացաւ և թշնամեաց վրայ տարաւ զիրենք. անով ալ գոհ չեղան, Կապադովկիոյ մէջ զարկին զինքը սպաննեցին (276)։

[2] ՊՌՈԲՈՍ (276-282)։ — Տակիտոսի մահուընէն ետքը Կապադովկիոյ մէջ եղած զօրավարները ժողվեցին զօրքը, անոնց առաջարկեցին անանկ

1 Տակիտոս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։
2 Տակիտոսէն յաջորդ ո՞վ եղաւ։

մարդ մը ընտրել՝ որ քաջութեամբ, արդարութեամբ, փորձառութեամբ ու խոհականութեամբ անուն հանած ըլլայ։ Զօրքը խոհականութեան անունը լսելուն պէս միաբերան կանչեցին. “Կ'ուզենք որ Պռոբոսը կայսր ըլլայ,,. և մէկէն ընտրուեցաւ. վասն զի Պռոբոս խոհեմ ըսել է։ Պռոբոս՝ որ ան ատենը քառասունչորս տարեկան էր՝ Պաննոնիոյ երկրէն պարտիզպանի մը որդի էր. զինուորագրութեան ատենը գալով բանակը մտեր ու իր քաջութեամբը առաջ եկած էր։ Պաշարուած քաղաքաց պարիսպներուն վրայ ամենէն առաջ ինքը կը վազէր կ'ելլէր. յաղթանդամ բարբարոսները մէկ հարուածով գետին կը փռէր. իր Վալերիոս զօրավարը անոնց ձեռքէն ազատեց, ու Հռոմմայեցւոց ամենէն քաջը սեպուեցաւ։ Վալերիանոս կայսրը Պռոբոսը տրիբուն ըրեր, և աս պատուաւոր թուղթը գրեր էր իրեն. “Թէպէտ և քու զանազան ծառայութեանցդ ու փառաւոր քաջութիւններուդ վարձքը շուտով կ'ուզեմ տալ, բայց դու արդիւնքդ այնպէս շուտ շուտ կ'աւելցընես որ ես օրէ օր դանդաղ կ'երևնամ զքեզ վարձատրելու,,։

[1] Երբոր կայսերական ծիրանին իրեն բերին՝ առջի բերան չուզեց ընդունիլ. բայց երբոր տեսաւ որ շատ կը ստիպեն առաւ՝ ու ըսաւ անոնց. “Թերևս աղէկ չէք մտածած. ձեր ըրած ընտրութեանը վրայ պիտի զղջաք, վասն զի ես ամենևին շողոքորթել չեմ գիտեր,,։ Այսպիսի խօսքերով

---

[1] Ի՞նչ կերպով յանձն առաւ Պռոբոս կայսերութիւնը։

չկրցաւ զօրաց միտքը փոխել ու ծիրանին հագաւ։

¹ Մէկէն սկսաւ տէրութեան սահմանները խաղաղել. Գոթացւոց, Սարմատացւոց, Փռանկաց, Ալամանաց յաղթեց, ու Հռենոսէն անդին շատ տեղ գաղթականներ բնակեցուց։ Անկէց Պարսից վրայ գնաց. Արտաշիր Թագաւորը դեսպաններ խրկեց անոր, ու սիրտը առնելու համար շատ ընծաներ։ Ան դեսպանները գնացին տեսան որ Պռոբոս խոտին վրայ նստեր էր հասարակ զինուորական վերարկուով ու գլուխը բրդէ գտակով, կերակուրն ալ ոլոռէ ապուր ու աղած միս էր։ Պռոբոս հրաւիրեց Պարսիկ դեսպաններն որ իր կերակրին մասնակից ըլլան. ետքը գտակը հանեց ու կոնտ գլուխը բացած ըսաւ անոնց ահեղ ձայնով. “ Գնացէք ըսէք ձեր Թագաւորին որ եթէ մեզմէ առած տեղուանքը շուտ մը ետ չդարձընէ, մէկ ամսուան մէջ իր Թագաւորութեանը բոլոր դաշտերը աս գլխուս պէս լերկ կը տեսնէ ,,։ Թագաւորը դեսպաններուն պատմածէն վախնալով գնաց անձամբ կայսեր հետ տեսնուեցաւ, ու ամէն պայման յանձն առնելով հաշտութիւն ըրաւ։

² Այնչափ յաջողութիւններէն ու յաղթութիւններէն ետքը Հռոմ դարձաւ Պռոբոս որ քիչ մը հանգչի։ Իր մուտքը շատ հանդիսաւոր եղաւ. կառքին առջեւէն կ'երթային ամէն յաղթած ազգերէն գերիներ։ Յաղթանակէն ետեւ կրկեսին մէջ անտառ մը տնկեցին, ու մէջը հազար ջայլամ,

---

¹ Ի՞նչ քաջութիւններ ըրաւ։

² Յաղթանակը ի՞նչպէս եղաւ։

հազար փարազ, հազար եղջերու, հազար այծեամ, ու հազարաւոր ալ ընտանի կենդանիներ արձըկեցին։ Հրաման տրուեցաւ ժողովրդեան որ երթան անոնց մէջէն ուզածնին բռնեն տանին։ Ամֆիթէատրոնին մէջ ալ կռուեցան երկու հարիւր առիւծ, երկու հարիւր ընձառիւծ, երեք հարիւր արջ, և վեց հարիւր սուսերամարտ։

[1] Բոլոր տէրութիւնը մեծ խաղաղութեան մէջ էր։ Պռոբոս Ճարտարութիւնն ու երկրագործութիւնը ծաղկեցուց. Գաղղիոյ, Գերմանիոյ ու Սպանիոյ մէջ այգիներ տնկել տուաւ. զօրքն ալ պարապ չթողլու համար՝ հասարակաց շէնքերու կ'աշխատցընէր զանոնք. Ճահիճներ ցամքեցընել, կամուրջներ շինել, գետեր բանալ կուտար։ Զինուորները աս իրենց գործունեայ վիճակին վրայ գոհ չեղան, Սիրմիոնի Ճահիճներուն մէջ զարկին զինքը սպաննեցին (282)։ Շուտ զղջացան ըրածներնուն վրայ, ու Պռոբոսին անուանը արժանի շիրիմ կանգնեցին՝ վրան այսպիսի տապանագրով. "Այս է հանգիստ Պռոբոսի, որ յափշտակիչները կործանեց, բարբարոսաց յաղթեց և խոհականութեամբ ինքզինքը իր անուանը արժանի ցըցուց"։

[2] ԿԱՐՈՍ (282–283)։ — Պռոբոսին տեղը բըռնող մարդ մը չէր գտնուեր։ Կարոս՝ պրետորաց զօրապետը ուզեց կայսր ըլլալ. ամէնքը զինքն ընդունեցան։ Պատերազմները սկսաւ առաջ տանիլ

---

1 Պռոբոս ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ, ու ի՞նչպէս մեռաւ։

2 Պռոբոսին ո՞վ յաջորդեց։

Կարոս, Սարմատացւոց յաղթեց, բայց Պարսից Արտաշիր թագաւորէն յաղթուելով պատերազմի մէջ սպաննուեցաւ, ինչպէս որ կ'ըսէ մեր Խորենացին՝ ժամանակակից պատմիչներէ առնելով։ Կամ թէ ինչպէս որ լատին պատմաբանները կը զրուցեն՝ Պարսից յաղթեց, Սելեւկիա ու Տիզբոն քաղաքներն առաւ, ու սաստիկ փոթորկի մը ատեն իրենները զարկին զինքը սպաննեցին՝ մէկուկէս տարի թագաւորելէն ետքը, ու ձայն հանեցին թէ կայծակէ զարնուեցաւ (283)։

1 ԿԱՐԻՆՈՍ ԵՒ ՆՈՒՄԵՐԻԱՆՈՍ (283–285)։ — Ասոնք Կարոսի որդիքն էին. Նումերիանոս քաղցրաբարոյ էր, և այնպէս սերտմախօս որ ծերակոյտը զինքը իր դարուն առաջին Ճարտասանը անուանեց. ասիկայ Պարսից դէմ երթալու ատենը՝ Քաղկեդոնի մէջ սպաննուեցաւ։ Դիոկղետիանոս անունով պալատականը մէկէն ինքզինքը Օգոստոս անուանեց, թուրը հանեց ու Նումերիանոսն սպաննողը մեռուց. անով կատարած սեպուեցաւ Դիոկղետիանոս ան գուշակութիւնն որ ատենով Գաղղիացի քրմուհի մը ըրեր է եղեր իրեն թէ երբոր վարազ մը սպաննես՝ կայսր կ'ըլլաս. վասն զի Նումերիանոսը սպաննողին անունն էր Ապեր, որ լատիններէն վարազ կը նշանակէ։

2 Իսկ Կարինոս Հռոմ կեցած ու իր զուարճութեանցը մէջ ընկղմած էր չորս կողմը խեղկատակներ, երգիչներ ու զեղխ մարդիկ առած, մարդա-

1 Կարոսի յաջորդ ո՞վ եղաւ։
2 Կարինոս ի՞նչ բանի հետ էր։

*ըմպաններով ու գոհարներով զարդարուած, վարդէ անկողնի վրայ կը պառկէր. ժողովուրդն ալ ընել տուած փառաւոր խաղերուն համար՝ անոր թուլամորթութեանը աչք կը գոցէր։ Բայց երբոր Դիոկղետիանոս եկաւ մօտեցաւ, Կարինոս թմրութենէն արթնցաւ. քաջութեամբ վազեց անոր դիմացն ելաւ, ու շատ պատերազմներէ ետքը՝ Բուկտողիոյ Մարգոս գետին քովը յաղթեց Դիոկղետիանոսի. բայց իրեններուն ատելի եղած ըլլալով՝ անոնցմէ սպաննուեցաւ (285)։*

## ԳԼՈՒԽ ԼԲ.

Դիոկղետիանոս. — Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս Հերակլէս. — Գաղերիոս և Կոստանդին Քլոր. — Համաշխարհային հարկը. — Մաքսիմիանոս կամ Մաքսիմինոս Բ. — Կոստանդիանոս, Մաքսենտիոս, Լիկիանոս. — Մեծն Կոստանդիանոս. — Կոստանդիանոսի դարը. — Կոստանդին, Կոստանդ Ա, Կոստաս. — Ուրացողն Յուլիանոս. — Յովիանոս. — Վաղենտիանոս Ա, Վաղէս. — Գրատիանոս, Վաղենտինիանոս Բ, Մաքսիմոս. — Մեծն Թէոդոս. — Հեթանոսութեան իյնալը. — Գրագիտութիւն։ (285–395)։

[1] ԴԻՈԿՂԵՏԻԱՆՈՍ ԵՒ ՄԱՔՍԻՄԻԱՆՈՍ ՀԵՐԱԿՂԷՍ (285–303)։ — *Դիոկղետիանոս Դաղմատացի ազատագրի կամ քարտուղարի մը որդի էր։ Պզտիկուց զինուորութեան մէջ մտաւ, ու*

---

[1] *Ո՞վ էր Դիոկղետիանոս և ի՞նչ կերպով սկսաւ կայսերութիւնը։*

քիչ ատենի մէջ քաջութենէն աւելի իր ճարտարութեամբն առաջ եկաւ ։ Օգոստոսին պէս բարեկարգութիւն կը սիրէր, և բնութեամբ խոհեմ ու նախատես էր․ կառավարութեան ալ այնպիսի յարմարութիւն մը ունէր որ նմանը հարիւրաւոր տարիներէ 'ի վեր տէրութեան մէջ չէր տեսնուած ։

[1] Դիոկղետիանոս կայսր ըլլալուն պէս՝ Գոթացւոց թագաւորը Հաչէ վրան պատերազմի ելաւ, ու հրաւիրեց զանիկայ որ գան հետը մենամարտութեամբ պատերազմը լմնցընեն ։ Ինքը Դիոկղետիանոս չէր կրնար ան հսկայազօր Գոթացի թագաւորին առջևն ելլելու, ու զօրացը մէջէն ալ սիրտ ընող ախոյեան մը չգտնելով երկար տարակուսած կը կենար՝ Լիկինիանոս զօրավարը մեր քաջաբազուկ Տրդատը առաջարկեց անոր, թագաւորին ալ ուրախութեամբ հաւանեցաւ ։ Վազեց վրան Տրդատ, բռնեց Հաչէն ու Դիոկղետիանոսին առջևը բերաւ ։ Զարմացաւ կայսրը Տրդատին քաջութեանը վրայ․ ուզեց զինքը վարձատրել, և իմանալով որ Հայոց Խոսրով թագաւորին որդին է՝ գլուխը թագ դրաւ, ծիրանի հագցուց ու զօրք տուաւ որ երթայ հայրենական թագաւորութիւնը ժառանգէ (286) ։

[2] Անկէց ետքը հարկ համարեցաւ Դիոկղետիանոս զօրաւոր մարդ մը կանչել որ կայսերութեան ծանր բեռը վերցընելու օգնէ իրեն․ ուստի կանչեց իր հայրենակիցներէն Մաքսիմիանոս Հերակղէսը, որ հովուի մը որդի էր և բանակին մէջ քաջ զի-

---

1 Մեր Տրդատը յի՞նչ պատճառաւ թագաւորեցուց։
2 Իրեն գահակից զո՞վ ըրաւ ։

նուոր , ու զանիկայ իրեն գահակից ըրաւ : Անոր կայսրը արեւմուտքի վրայ Թագաւորեց ու աթոռը Միլան դրաւ . Դիոկղետիանոս ալ արեւելքն ու տէրութեան մեծամեծ գործողութիւնները իրեն պահելով՝ գնաց Նիկոմիդիա նստաւ : Ասանկով կամաց կամաց Հռոմ աշխարհիս մայրաքաղաքն ըլլալէն սկսաւ դադրիլ :

1 Երկու կայսերքը միաբան հաւանութեամբ սկսան մէկտեղ Թագաւորել : Մաքսիմիանոս Գաղղիացւոց ապստամբութիւնը նուաճեց , բայց չկրցաւ Կարաւսիոս աւազակն ալ հնազանդեցընել՝ որ Մեծին Բրիտանիոյ մէջ գլուխ վերուցեր էր : Դիոկղետիանոս միտքը դրաւ որ ուրիշ երկու հոգի ալ իրեն իշխանութեանը մասնակից ընէ , և ընտրեց Լիւրիկեցի Կոստանդին Քլորոս ազնուազգին ու Գաղերիոս հովիւը , ծիրանի հագցուց անոնց , ու կեսար անուանեց զիրենք . Կոստանդին Մաքսիմիանոսի ժառանգ պիտի ըլլար , Գաղերիոս ալ Դիոկղետիանոսին (292) :

2 Աս նորընտիր կեսարներուն օգնութեամբը խաղաղացաւ տէրութիւնը . Կոստանդին Փռանկաց ու Կարաւսիոսին յաղթեց , Գաղերիոս ալ Պարսից : Նոյն միջոցին Դիոկղետիանոս ամէն հոգէ ազատած՝ տէրութիւնը բարեկարգելու կը նայէր , նոր նոր օրէնքներ կը դնէր , Նիկոմիդիա , Անտիոք , Եդեսիա , Կարքեդոն քաղաքները կը զարդարէր ,

---

1 Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս ի՞նչպէս ըրին կայսերութիւնը :

2 Կոստանդին Քլորոս և Գաղերիոս ի՞նչ յաղթութիւններ ըրին :

ու պալատին մէջ արևելեան սովորութիւններն ու պերճութիւնը կը մտցընէր ։

1 Բայց Գաղերիոս, որ հսկայաձև հասակովն ու ահաւոր ձայնովը վախկոտ Դիոկղետիանոսը կը սարսափեցընէր, Օգոստոս ըսուելու ետևէ էր. և ինքն էր որ քրիստոնէից դէմ ան հռչակաւոր հալածանքները հանել տուաւ. Երկու անգամ պալատին կրակ տուեր ու յանցանքը քրիստոնէից վրայ ձգեր էր որ զանոնք ամենուն ատելի ընէ ։ Դիոկղետիանոս ծերացած՝ չկրցաւ դէմ կենալ անոր յորդորանացը. կամայ և ակամայ կայսերութենէն հրաժարեցաւ 303ին, ու գնաց իր գեղը տունը քաշուեցաւ. հոն ինը տարին չափ հանդիստ ապրեցաւ, և ստէպ կ՚ըսէր. “Հիմա կ՚ապրիմ, հիմա սկսայ արևուն գեղեցկութիւնը տեսնել„ ։ Նոյնպէս հրաժարեցաւ նաև Մաքսիմիանոս ։

2 ԳԱՂԵՐԻՈՍ ԵՒ ԿՈՍՏԱՆԴԻՆ ՔԼՈՐՈՍ (303-311) ։ — Գաղերիոս ակամայ կամօք իրեն իշխանակից առաւ Կոստանդին Քլորոսը՝ որ Գաղղիոյ զօրացը սպարապետ էր, իսկ Կեսար՝ այսինքն կայսերութեան յաջորդ՝ իր ուզածները ընտրեց, որ էին Սեւերոս վատանուն մարդը, որ գիշերը ցորեկ կ՚ընէր ցորեկն ալ գիշեր, և Դայիա կամ Դաժ Մաքսիմինոս հովիւը՝ որ դեռ նոր իր հօտն ու անտառները թողեր զինուոր եղեր էր ։

---

1 Դիոկղետիանոս ինչ պատճառաւ հրաժարեցաւ կայսերութենէն ։
2 Գաղերիոս ինչպէս սկսաւ կայսերութիւնը ։

1 Ասանկ էր փափաքին հասնելուն պէս Գաղերիոս համաշխարհական տուրք մը ձգեց, որ իրաւցընէ պատիժ մը եղաւ ամենուն: Հարկահանները ամէն տեղ ցրուած՝ ամէն բան կը կողոպտէին, զամէնքը գերի կ'ընէին. գետինները կը չափէին, այգիներուն որթերը, գեղացւոց կենդանիները կը համրէին ու գիր կ'անցընէին: Հրապարակներուն մէջ ոչխարի պէս կը լեցընէին ժողովուրդն որ ամէն մարդ ըսէ թէ քանի՛ զաւակ ունի և որչափ գերի: Տղայ, ծառայ, կնիկ մարդ, զամէնքը կը տանջէին որ ամէն մէկը իրենց հայրը՝ տէրը կամ էրիկը բան մը ծածկեր է նէ զուրցեն: Ամէն մարդու տարիքին համեմատ ալ տուրք կ'առնէին. ոմանց տղոց տարիքը կը մեծցընէին, ծերերուն ալ կը պզտիկցընէին: Թէ որ մէկը ան միջոցին մեռնէր, թէ մարդ ըլլայ՝ թէ անասուն, անոր տուրքը կենդանի մնացողները կը վճարէին. ինչուան մուրացկաններն ալ ան պատիժներէն ազատ չէին. Նաւերը կը լեցընէին զանոնք ու կը տանէին ծովը կը նետէին՝ որպէս զի ուրիշներն ալ հարկահանաց ձեռքէն ազատելու համար մուրացկանութիւն չընեն:

2 Այն ատենները Կոստանդին Քլորոս գովելի կեանք մը անցընելէն ետքը՝ Անգղիոյ Եորք քաղաքին մէջ մեռաւ, իրեն ժառանգ թողլով Կոստանդիանոս որդին որ Մեծ ըսուեցաւ, և Քլորոսին մահուանը վրայ մեծ ու պզտիկ ամէնքը լացին:

---

1 Ի՞նչ բռնութիւններ ըրաւ: — Համաշխարհական հարկահանութիւնն ի՞նչ էր:

2 Կոստանդին Քլորոս ի՞նչպէս մեռաւ:

1 Այն միջոցին Իտալիա ոտք ելաւ․ Սեւերոս սպաննուեցաւ, և Մաքսիմիանոսի որդին Մաքսենտիոս անոր տեղն անցաւ։ Գաղերիոս կատղած շփոթած իրեն օգնութիւն կանչեց Դիոկղետիանոսը․ իսկ ան ծերը աս պատասխանս տուաւ անոր․ «Թէ որ դաս տնկած գեղեցիկ բանջարներս տեսնես, կայսերութեան վրայ ինծի խօսք չես բանար»։ Այն ատենը Գաղերիոս գահակից ընտրեց Լիկինիանոսը, և ան եղաւ իր գործածած վերջի իշխանութիւնը։ Յանկարծակի սաստիկ հիւանդութիւն մը եկաւ վրան․ ոտքէն ինչուան գլուխը ոսկորը վէրք բացուեցաւ, ինչուան ներսը փորոտիքը հասաւ, ուսկից գարշահոտ որդեր կ'ելլէին անհամար բազմութեամբ․ որով և քիչ ատենէն սաստիկ ցաւերու մէջ հոգին փչեց (311)։

2 ՄԱՔՍԻՄԻԱՆՈՍ Բ, ՄԵԾՆ ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ, ՄԱՔՍԵՆՏԻՈՍ, ԼԻԿԻԱՆՈՍ (311-323)։ — Այն ատենը չորս կայսր կար, ու չորսն ալ կառավարել կ'ուզէին․ հարկաւ մէջերնին կռիւ մը պիտի բացուէր։ Կոստանդիանոս՝ Լիկինիանոսին հետ միաբանեցաւ, Մաքսենտիոս ալ Մաքսիմիանոսին հետ։ Իտալացիք Մաքսենտիոսի բռնութիւններէն ձանձրացած՝ Կոստանդիանոսը կանչեցին որ գայ զիրենք ազատէ։

3 Աս քաղցրաբարոյ՝ քաջասիրտ ու քրիստոնէից պաշտպան կայսրը հազիւ քառասուն հազար

---

1 Գաղերիոսի վերջը ինչպէս եղաւ։
2 Գաղերիոսի մեռնելէն ետև քանի՞ կայսերք կային։
3 Կոստանդիանոսի դարձը ինչպէս եղաւ։

զօրք ունէր . անդին Մաքսենտիոս հարիւր եօթանասունըութը հազարէն աւելի ։ Ուստի երբոր յաղթութեան վրայ տարակուսած կը մտածէր Կոստանդիանոս , կէսօրին հրաշքով մը տեսաւ . երկինքին երեսը լուսաւոր խաչ մը երեւցաւ իրեն ու բոլոր զօրացը՝ վրան գրուած , Այսու յաղթեա . ետքը տեսիլք մըն ալ տեսաւ որ իրեն կը հրամայէին՝ որ նոյն նշանով դրօշ մը շինել տայ ։ Անկէց ետքը յաղթութեանը վրայ չտարակուսեցաւ Կոստանդիանոս . խաչի ձեւով դրօշ մը շինել տուաւ՝ ոսկիով ու ազնիւ քարերով զարդարուած , և վրան ոսկի պսակ մը մէջ Քրիստոսի անուանը գրուած . զօրքին ալ վահաններուն ու զրահներուն վրայ խաչեր քաշած՝ ուրախութեամբ Ալպեան լեռներէն անցաւ ։ Դիմացնին երկու բանակ ելաւ , երկուքն ալ կոտրեցին անցան ու Հռոմին քով հասան ։ Մաքսենտիոս իր բոլոր զօրութիւնը հոն ժողվեր էր . առջի զարնուածքին յաղթուեցան Իտալացիք ու փախան ։ Երկրորդ օրը Մաքսենտիոսի մարմինը Տիբերիս գետին մէջ գտնուեցաւ . վասն զի վրայէն փախչելու ատենը կամուրջը փլեր և ինքը մէջն ընկեր խղդուեր էր (312) ։

[1] Յաջորդ տարին Լիկինիոս ալ Մաքսիմիանոսին յաղթեց , ու անանկ ըրաւ որ անիկայ յուսահատած՝ ինքզինքը սպաննեց ։ Բայց ինքն ալ քիչ ատենէն Կոստանդիանոսի մեծնալուն վրայ նախանձելով վրան պատերազմի ելաւ , յաղթուե-

---

[1] Կոստանդիանոս ինչ կերպով մինակ թագաւորեց ։

ցաւ ու մեռաւ (323)։ Եւ կայսերութիւնը բոլորովին Կոստանդիանոսի ձեռքն անցաւ։

1 ՄԵԾՆ ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ (323-337)։—Հռովմայեցիք շատ պաղ կերպով ընդունեցան իրենց յաղթական կայսրը, և երգիծանքներով սիրտն ալ դառնացուցին։ Կոստանդիանոս ժողովրդեան յանդգնութեանն ու կռապաշտութեանը վրայ նեղացած՝ միտքը դրաւ որ ուրիշ մայրաքաղաք մը շինէ։ Աչքը Բիւզանդիոնի վրայ ձգեց, որ գիւղաքաղաքի պէս տեղ մըն էր, բայց սքանչելի դիրքովը Եւրոպայի ու Ասիոյ մէջ տեղը կեցած՝ իրեք ծովու վրայ կ՚իշխէր։ Քիչ ատենի մէջ պարիսպներ, եկեղեցիներ, պալատներ, բաղնիքներ, հրապարակներ, աղբիւրներ շինեց մէջը, և քաղաքը շուտ մը բնակիչներով լեցուեցաւ, ու ըսուեցաւ Նոր Հռոմ և Կոստանդնուպօլիս այսինքն Կոստանդիանոսի քաղաք (330)։

2 Կոստանդիանոսի դարձը լսելով մեր Տրդատ Թագաւորը, սրբոյն Գրիգորի Լուսաւորչին հետ շատ իշխաններ հետը առած Հռոմ գնաց՝ կայսեր ուրախակից ըլլալու։ Կոստանդիանոս և սուրբ Սեղբեստրոս պապը շատ պատիւ ըրին Տրդատայ և սրբոյն Գրիգորի. ու ամիս մը զանոնք Հռովմայ մէջ մեծարելէն ետև՝ հետերնին սիրոյ և միաբանութեան դաշինք դրին ու իրենց երկիրը յուղարկեցին։

---

1 Ի՞նչ պատճառաւ Կոստանդնուպօլիս քաղաքը շինեց։

2 Մեր Տրդատ Թագաւորը ի՞նչ պատճառաւ և ի՞նչպէս Հռոմ գնաց։

1 Տասնըչորս տարուան Թագաւորութեանը մէջ ջանաց Կոստանդիանոս որ Դիոկղետիանոսին միտքը գործը կատարէ, որ էր կայսերութիւնը ընդարձակ միապետութիւն մը ընել։ Մի և նոյն օրինաց տակը ձգեց ամէնքը, ծերակուտական իշխանութիւն չմնաց, և անոր տեղը դքսեր ու կոմսեր դրաւ՝ որոնց ինքը ուզած իշխանութիւնը կուտար։ Տէրութեան կառավարութիւնը իրեք որդւոցը մէջ բաժնեց, որ էին Կոստանդին, Կոստաս ու Կոստանդ, և զանոնք Կեսար կամ Փոխարքայ անուանեց՝ իր հրամանին տակը։ Անկէց զատ զօրաց մէջ ալ կարգ կանոն դրաւ։

2 Աս բարեպաշտ կայսրը տեսնելով որ Արիոս Աղեքսանդրացւոյն հնարած աղանդին պատճառաւ Եկեղեցւոյ մէջ շատ մոլորութիւններ կան, մեծ ժողով մը ընել տուաւ Նիկիա կամ Իզնիկ քաղաքին մէջ, ուր իրեք հարիւր տասնըութը հայրապետ ժողվուած ըլլալով Արիոսի մոլորութիւնը դատապարտեցին (325)։

3 Թագաւորութեանը վերջի տարիները Պարսից դէմ պատերազմ բացաւ. ան միջոցին հիւանդացաւ, Նիկոմիդիա քաղաքին մէջ մկրտուեցաւ, ու քիչ ատենէն սրբութեամբ վախճանեցաւ։ Կոստանդիանոսի վրայ ամէնքը ցաւեցան, ու փառաւոր թաղում ըրին իրեն։ Հեթանոսները աստուածոց կարգը դրին զինքը, քրիստոնեայք Մեծ ա-

---

1 Տէրութեան մէջ ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ Կոստանդիանոս։

2 Ի՞նչ ժողով ընել տուաւ։

3 Ի՞նչպէս վախճանեցաւ Կոստանդիանոս։

նուաճեցին, Եկեղեցին ալ սրբոց կարգն անցուց (337)։

1 ԿՈՍՏԱՆԴԻՆ, ԿՈՍՏԱՆԴ Ա, ԿՈՍՏԱՍ (337-361)։ — Մեծին Կոստանդիանոսի որդիքը կայսերութիւնը մէջերնին բաժնեցին. Կոստանդ արեւմուտքն առաւ, Կոստաս արեւելքը, Կոստանդին ալ բոլոր տէրութեան վրայ խնամք պիտի ունենար։ Ասոնք իրենց ցեղին մէջէն բոլոր արու տղաքը մեռուցին բաց 'ի Գաղղոսէն ու Յուլիանոսէն՝ որ Մարկոս Արեթուսայ եպիսկոպոսը խորանին տակը պահելով ազատեց։ Բայց իրենց մէջ ալ շուտով երկպառակութիւն ընկաւ. Կոստանդին իր բաժնին վրայ գոհ չըլլալով Կոստանդ եղբօրը վրայ պատերազմի ելաւ, ու դարանի մը մէջ զարնուեցաւ մեռաւ (340)։

2 Արեւմուտքի կողմերն ալ Մագնենտիոս անուն Գերմանացի գերին՝ իր քաջութեամբը զօրավարութեան աստիճանի հասնելով կայսր եղաւ։ Կոստանդ վրան գնաց ու սպաննուեցաւ (350). եղբայրը անոր վրէժը հանեց, ու Մագնենտիոսը բռնեց մեռուց։

3 Կոստաս մինակ ինքնիշխան մնալով իրեն կայսերակից ընտրեց Գաղղոս ազգականը, ու արեւելքը անոր յանձնեց։ Գաղղոս չկարծած բաղդին հանդիպելով՝ իր ախտերն ու փառասիրութիւնը

---

1 Կոստանդիանոսի որդիքը ինչպէս բաժնեցին մէջերնին տէրութիւնը։
2 Մագնենտիոս ինչպէս նուաճուեցաւ։
3 Գաղղոս ինչպէս գահակից եղաւ Կոստասին։

յայտնի ըրաւ . Կոստաս ալ աճապարեց զանիկայ գլխատել տուաւ (354) :

[1] Ան տարիները Փռանկ ըսուած ազգը մէկ կողմէն , Պարսիկք ալ մէկալ կողմէն տէրութեան վրայ անդադար յարձակմունքներ ընելով՝ հարկ եղաւ որ ուրիշ կեսար մըն ալ ընտրուի : Կայսրը Նիկոմիդիոյ դպրոցներէն հանեց Գաղղոսի Յուլիանոս եղբայրը, որ գիտութեամբն ու իմաստասիրական հանճարովը մեծ անուն հաներ էր : Փռանկաց հետ գնաց պատերազմեցաւ Յուլիանոս և յաղթեց անոնց . կայսրը սկսաւ վրան նախանձիլ ու զօրքին կէսը ետ կանչեց . անոնք չհնազանդեցան հրամանին ու իրենց զօրավարին չորս կողմը շարուած զինքը կայսր անուանեցին : Յուլիանոս լացաւ , չուզեց կայսերութիւնը յանձն առնուլ . բայց երբոր զօրաց աղաչանքն ու սպառնալիքը սաստկացաւ , Յուլիանոս խնդիրքնին ընդունեցաւ , շուտ մը արևելքի տիրեց , և երկու կեսարներուն պատերազմի պատրաստուած ատենը Կիլիկիոյ մէջ Կոստաս մեռաւ (361) :

[2] ՅՈՒԼԻԱՆՈՍ ՈՒՐԱՑՈՂ (361-363) : — Յուլիանոսի կայսերութեանը վրայ բոլոր իմաստասէրք ուրախացան . խեղկատակները , սափրիչները , ներքինիք ու շողոքորթները պալատէն գնացին , և անոնց տեղը ճարտասաններն ու իմաստասէրները բազմութեամբ կ'երթային կայսեր հետ

---

1 Կոստաս իրեն յաջորդ զո՞վ ընտրեց ու ի՞նչպէս մեռաւ :

2 Յուլիանոս ի՞նչպէս սկսաւ կայսերութիւնը :

կը խօսակցէին. անիկայ ալ անհոգ կերպով հագուած, թանաքով սեւցած երկայն ըղունգներուն ու թաւ և աղտոտ մօրուքին վրայ կը պարծէր։

1 Քիչ ատենէն իմացուեցաւ Յուլիանոսին ինչ բարքի տէր ըլլալը։ Մոռցաւ Յուլիանոս որ քրիստոնեայ ծնած մեծցած՝ ու քրիստոնեայ եպիսկոպոսի մը ձեռքով մահուընէ ազատեր էր, ու քրիստոնէութեան տեղ կռապաշտութիւնը հաստատեց, անոր համար Ուրացող ըսուեցաւ։ Մոգեր, աստեղագէտներ, կախարդներ, քուրմեր գնացին պալատը լեցուեցան, և ամէն տեղ կռոց՝ կախարդութեանց ու գուշակութեանց վրայ կը խօսուէր։ Յուլիանոս ալ աւելի քրմապետ ըսուելուն վրայ կ'ուրախանար ու կը պարծէր քան թէ կայսերութեանը վրայ, և չարչարելով հալածելով ամենայն կերպով կը ջանար որ քրիստոնեաները կռապաշտութեան դարձընէ. բայց քրիստոնէութիւնը օրէ օր կ'աճէր, ու մարտիրոսաց թափած արեամբը եկեղեցւոյ գեղեցիկ բոյսերը աւելի պտղաբեր կ'ըլլային։

2 Պարսից տէրութենէն երբոր վրէժ առնելու համար անոնց դէմ կ'երթար, Կապադովկիոյ Կեսարիա քաղաքին մէջ Բաղդի կռատունը կործանած գտաւ։ Անտիոքի մէջ ալ տեսաւ որ աստուածները անարգուած են, շատ ցաւեցաւ, ու աս բաներուս պատճառ քրիստոնեայք են ըսելով անոնց հալածանքը սաստկացուց։ Ընդհակառակն Հրէից պաշտպան եղաւ. շատ ջանաց որ Երուսաղէմի

1 Ինչո՞ւ համար Ուրացող ըսուեցաւ։
2 Ի՞նչպէս մեռաւ Յուլիանոս։

կործանուած տաճարը նորէն կանգնէ, բայց միշտ գետնէն կրակ ելլելով գործաւորները կ'այրէր, որով անկարելի եղաւ շէնքը առաջ տանիլ։ Ասկէ անցաւ Հայաստան, Տիրան Թագաւորէն զօրք օգնութիւն առած՝ գնաց Պարսկաստանի ներսերը Պարսից հետ զարնուեցաւ։ Նոյն գիշերը սոսկալի տեսիլք մը տեսած ըլլալով, որով իբր թէ կայսերութեան ոգին տրտում տխուր երևցեր էր իրեն, երկրորդ օրը հաւահմաններուն խորհուրդ հարցուց. անոնք ալ ըսին թէ աստուածները չեն ուզեր որ պատերազմիս, բայց կայսրը մտիկ չըրաւ, ու Թշնամեաց վրայ վազեց։ Իմացուցին իրեն որ վերջապահ զօրքը Թշնամիներէն պաշարուեր է. մէկէն 'ի մէկ վահանը ձեռք առաւ, բայց զրահը հագնելու մոռնալով պատերազմին մէջ նետուեցաւ, Պարսիկներէն շատ մարդ ջարդեց, ու մեծ մասն ալ հալածեց։ Այն միջոցին մէկ նետ մը եկաւ կողը մտաւ, Յուլիանոս ալ Քրիստոսի անունը հայհոյելով (ինչպէս որ կ'ըսեն) կիսամեռ ընկաւ, ու վահանին վրայ դրած՝ պատերազմին տեղէն զինքը վերուցին։ Հազիւ թէ վէրքը քիչ մը պատեր էին, երբոր լսեց թէ Թշնամիները յաղթելու յոյս ունին՝ նորէն ձի հեծաւ որ երթայ պատերազմի. բայց տեսնելով որ արիւնը սաստիկ դուրս կը վազէ վէրքէն, ձեռքով արիւնը դէպ 'ի երկինք նետելով “ Կշտացիր ո՛վ Գալիլիացի ,, կանչեց, ու նորէն գետին ընկաւ։ Հրամայեց որ իր մարմինը Տարսոն տանին, գանձերը իր բարեկամներուն բաժնեց, ու մեռաւ երեսունուերկու տարեկան՝ երկու տարի Թագաւորելէն ետքը (363)։

1 ՅՈՎԻԱՆՈՍ (363-364)։ — Յուլիանոս իրեն ժառանգ չթողուց. զօրքը անոր Յովիանոս անձնապահապետը կայսր անուանեց, ու ամէնքը հաւնեցան ընտրութեանը։

2 Սիրելի կերպ մը ունէր Յովիանոս, քաջ՝ անփառասէր և հաւատարիմ քրիստոնեայ էր։ Պարսից վրայ գնաց, ու Շապհոյ հետ հաշտութիւն ըրաւ. և երբոր Կոստանդնուպօլիս կը դառնար կայսր պսակուելու՝ ճամբան անկողնին մէջ մեռած գտնուեցաւ ութը ամիս թագաւորելէն ետև։ Մեռնելուն ստոյգ պատճառը չիմացուեցաւ, գլխաւոր կարծիքն ան է թէ վառած ածուխի հոտէն և կամ կաթուածով մեռած ըլլայ (364)։

3 ՎԱՂԵՆՏԻԱՆՈՍ Ա, ՎԱՂԷՍ (364-378)։ — Գլխաւոր ազնուականները Նիկիա ժողվուեցան ու իրենց կայսր ընտրեցին Վաղենտիանոս հսկայ ու քաջ զօրավարը։ Անիկայ իրեն գահակից առաւ Վաղէս եղբայրը, անոր յանձնեց արևելքը, արևմուտքն իրեն պահեց, ու գնաց բնակեցաւ Լուտետիա կամ Փարիզ քաղաքին մէջ՝ որ Յուլիանոս քիչ մը զարդարեր էր։ Անկէ կը խրկէր իր զօրավարները՝ Փռանկաց, Անգղիացւոց ու Մաւրիտանացւոց յարձակմունքներէն տէրութեան սահմանները պաշտպանելու. և ան արշաւանաց մէջ մեծ անուն հանեց Թէոդոս կոմսը։ Անկէ նաև

---

1 Յուլիանոսի ով յաջորդեց։

2 Ի՞նչ բնաւորութեան տէր էր Յովիանոս ու ի՞նչպէս մեռաւ։

3 Յովիանոսի յաջորդ ով եղաւ։

սաստիկ հրամաններ կը հանէր մոգերուն դէմ ու սոսկալի տանջանքներով զանոնք չարչարել կու տար. իր քովն ալ կայսրը միշտ երկրթէ վանդակներու մէջ երկու արջ կը պահէր որ մէկէն յանցաւորները անոնց առջևը ձգէ։ Անգամ մը Թշնամեաց դեսպաններուն վրայ սաստիկ բարկանալով Վաղենտիանոս՝ կուրծքին երակներէն մէկը ճաթեցաւ ու քիչ ատենէն մեռաւ, և իրեն յաջորդ Թողուց Գրատիանոս որդին (375)։

[1] Ան միջոցին Վաղէս աղէկ կառավարութեամբը ամենուն սիրելի կ'ըլլար. վասն զի տուրքերն ալ Թեթևցուց. բայց արիոսական հերետիկոսաց կողմը բռնելով շատ նեղութիւն տուաւ ուղղափառաց։ Աս Թագաւորը սոսկալի դիպուածով մը մեռաւ. Հոնք (որ Մեծ Թաթարստանէն եկած ու շատ ցեղեր բաժնուած ազգ մըն էին) Գոթացիքը իրենց առջևէն հալածելով Դանուբ գետէն անդին քշեցին. Գոթացիք ալ Հռովմայեցւոցմէ երկիր ուզեցին. երբոր անոնք չտուին՝ հարկ եղաւ որ հետերնին պատերազմին, և Ադրիանուպոլիս քաղաքին քով եկան կայսեր դէմ ճակատեցան։ Հռովմայեցւոց բանակը ջարդուեցաւ, Վաղէս ալ վիրաւորուած՝ գեղացիի մը խրճիթը փախաւ. ետևէն հասան Թշնամիք, կրակ տուին խրճիթին ու կայսրը մէջը այրեցին (378)։

[2] ԳՐԱՏԻԱՆՈՍ, ՎԱՂԵՆՏԻԱՆՈՍ Բ, ՄԱՔՍԻՄՈՍ, ՄԵԾՆ ԹԷՈԴՈՍ (378–395)։ — Գրատիանոս

---

[1] Վաղէս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։
[2] Գրատիանոս ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ։

տասնըհօթը տարեկան էր երբոր կայսր եղաւ, Իտալիան ու Լիւրիկէն իր պզտիկ եղբօրը Վաղենտիանոսին տուաւ. և տեսնելով որ Գոթացւոց սիրտը չկարենայ մինակ դէմ կենալ, հռչակաւոր Թէոդոս կոմսին համանուն որդին արևելքի վրայ օգոստոս դրաւ, և անկէց աղէկ մարդ չէր կրնար գտնել, վասն զի Թէոդոս հօրը քաջութեանն ու ճարտարութեանը հետ՝ կարգէ դուրս ալ հաստատութիւն մտաց ու վեհանձնութիւն ունէր. անով բարբարոսաց ալ յաղթեց. անոնք ալ իրենց Թըշնամւոյն մեծանձնութեանը վրայ զարմացած՝ Հռովմայեցւոց բարեկամութիւնը խնդրեցին։

1 Աս բաները տեսնելով Մաքսիմոս, որ Բրիտանիոյ զօրաց հրամանատարն էր, կայսերական ծիրանի հագաւ ու Լիոն քաղաքին մէջ Գրատիանոսը սպաննել տուաւ (383)։ Բայց հինգ տարի ետքը երբոր սկսաւ Վաղենտիանոսի երկրին ալ տիրել, Թէոդոս վրան պատերազմի ելաւ, յաղթեց ու սպաննեց զինքը (388)։ Երբոր բոլոր արևմուտքը Վաղենտիանոսի ձեռքը մնաց, Արբոգաստ Փռանկը զինքը սպաննեց ու տեղը անոր Եւգինէոս ատենադպիրը կայսր նստեցուց (390)։

2 Թէոդոս խոհեմութեամբ վարուելով՝ մէկէն վրէժխնդրութիւն չըրաւ. առաջ աղէկ մը իր ուժը ժողվեց, ու ետքը Ակուիլէայ քաղաքին մօտ յարձըկեցաւ վրան, գերի բռնեց զինքն ու անի յաղթութեամբը բոլոր կայսերութեան տէր եղաւ (394)։ Հռովմայեցւոց խոնարհած պատիւը

1 Գրատիանոս և Վաղենտիանոս ի՞նչպէս մեռան։
2 Մեծն Թէոդոս ի՞նչպէս սկսաւ կայսերութիւնը։

Նորէն բարձրացուց Թէոդոս, զօրաց մէջ կրթութիւն խոթեց, մոլորութիւնները սանձեց, ու չարագործութիւնները իր արդար կառավարութեամբը դադրեցուց:

¹ Այն գովելի բարեկարգութիւններուն մէջ մեծ օգնութիւն էր Թէոդոսի իր Փլակիլլա թագուհին, որ ամենայն բարեպաշտութեան, պարկեշտութեան, գթութեան ու բարեգործութեան օրինակ էր: Բնութեամբ շատ բարկացող էր Թէոդոս, և Թագուհին միշտ աս խօսքով անոր բարկութիւնը կ'իջեցնէր. “ Ինչ ըլլալդ մտածէ միշտ, և առաջ ինչ եղածդ մի մոռնար ”:

² Իր գթութիւնը շատ անգամ ցուցուցեր էր Թէոդոս, անգամ մըն ալ ասով յայտնի ըրաւ: Քանի մը մարդիկ զինքը սպաննելու միաբաններ էին. իմացաւ, և ուրիշներուն օրինակ տալու համար զանոնք 'ի մահ դատապարտեց. բայց ուզելով որ անոնց կարգէ դուրս ողորմութիւն մը պատճառէ՝ գլխատուելու ատեննին անոնց ետեւէն մարդ հասուց ու կեանքերնին շնորհեց: Անտիոքացւոց վրայ ալ ցուցուցած սիրոյն ու առատաձեռնութեանը չափ չկար. բայց անոնք վրանին քիչ մը տուրք դրուելուն համար բարկացած՝ վազեցին հրապարակը, ու Թէոդոսի և բոլոր ընտանեացը արձանները ջարդուփշուր ըրին: Աս նախատինքն որ լսեց Թէոդոս՝ սաստիկ բարկացաւ, ու մէկէն զօրք խրկեց որ երթան յանցաւորները թրէ անցընեն, քաղաքն ալ կործանեն՝ գեղ մը դարձընեն:

---

¹ Ի՞նչ բնաւորութեան տէր էր:
² Անտիոքացւոց վրայ ի՞նչ պատճառաւ բարկացաւ:

¹ Անտիոքին մէջ սարսափն ու յուսահատութիւնը տիրեց. ամէնքը ահով դողով զօրաց կը սպասէին, ու մահը աչքերնուն առջևը կը տեսնէին, և հարուստները քաղաքը կը թողուին կը փախչէին. “Այս ծաղկած քաղաքը, կ՚ըսէ Ոսկեբերան, յանկարծակի անապատ դարձաւ. մահադուշակ արհաւիրքը ամէն կը հալածէ կը հեռացնէ, ինչպէս որ մուխը մեղուները կը հալածէ. քաղաքնիս արևաթափ ծառի մը նմանեցաւ, և պարտէզի մը՝ որուն մէջ կենդանատու ջրերը պակսելով ծառերը չորնան, ոչ ծաղիկ մնայ ոչ պտուղ”:

² Այս վախը անհիմն չէր. զօրքերը մօտեցան, դատաւորները հասան, քննութեան ատեանները բացուեցան, աղաչանք ու պաղատանք բանի չեկան: Խեղճ ամբաստանեալներոց աղաղակովը ու ողբովը օդը կը թնդար, բայց անօգուտ: Գիշեր ատեն մը երբոր բանտարկեալները գունդ գունդ տանջելու ու գլխատելու կը տանէին, յանկարծ խեղճ հագուստով մարդ մը առաջ վազեց՝ դատաւորաց գլխաւորին վերարկուէն քաշեց ու իշխանական կերպով մը հրամայեց անոր որ բածին մօտիկ ընէ: Այս համարձակութեան վրայ դատաւորները զայրացան. բայց երբոր լսեցին թէ անիկայ սուրբ Մակեդոնիոս Ճգնաւորն է, և անոր ետևէն եկած սրբակրօն միայնակեցաց բազմութիւնը տեսան, բարկութիւննին իջաւ, սկսան պաղատիլ. “Գնա-

---

¹ Անտիոքացիք երբոր լսեցին Թէոդոսի բարկութիւնը՝ ի՞նչ ըրին:

² Ի՞նչ կերպով ազատեցան Անտիոքացիք իրենց սպառնացուած պատիժներէն:

„ցէք իմ կողմանէս զուրցեցէք կայսեր, ըստ ա-
„ռիւծիրտ ճգնաւորը. մարդիկ էք դուք ու մարդ-
„կանց կը հրամայէք. մարդիկ Աստուծոյ պատ-
„կերն են, Աստուած չուզեր որ անոնց վնաս ընէք:
„Ի՞նչ է ասոնց յանցանքը. անկենդան արձաններ
„նախատեր են. անով կ'արդարանայ ձեր աս կա-
„տաղութիւնը: Մէկ կործանուած արձանի տեղ՝
„ձեզի քսան կը հաստատենք. բայց աղէկ գիտ-
„ցէք որ դուք կտրելու գլուխներնուդ մէկ մազը
„չէք կրնար բուսցնել„: Այն աստուածարեալ
մարդուն խօսքերէն իշխանաց սիրտը շարժեցաւ,
տանջանքները դադրեցուցին, ու խոստացան ժո-
ղովրդեան որ իրենց համար երթան կայսեր գթու-
թեանը ապաւինին:

¹ Անոնց գլուխ կեցաւ Փլաբիանոս Անտիոքայ
եպիսկոպոսը, և իր խորին ծերութիւնը մոռցած՝
գնաց Կոստանդնուպօլիս՝ Թէոդոսի առջեն ելաւ,
ու Անտիոքացիքը արդարացընելու տեղ՝ ճարտա-
րութեամբը անոնց յանցանքը մեծցընելով պատմե-
լէն ետքը, և թէ ըստ մարդկային արդարութեան
ամէն պատժոյ արժանի են անոնք, վրայ բերաւ.
“Աստուած քեզի պէս մարդկանցմէ նախատուե-
„ցաւ, և անոնց դիմացը երկինքը բացաւ. դուն
„ալ իրեն նմանէ: Թէ որ քու գթութեամբդ
„մենք փրկուինք, դուն մեր սխալմունքովը նոր
„փառք կը վաստըկիս: Գրատիանոս քեզի վաղան-
„ցուկ թագ մը տուաւ, դուն առաքինութեամբդ
„կրնաս անմահական պսակի արժանի ըլլալ: Ան-
„խօս արձանները միայն կորսնցուցիր, անոր տեղ

¹ Փլաբիանոս Ի՞նչպէս համոզեց Թէոդոսը:

„մեր սիրտը քեզի մշտախօս արձաններ կանգնէ։
„Յիշէ այն խօսքը որ զատկին օրը բանտերը բանալով
„մահապարտները ազատելու ատեննդ ըսիր. Երա-
„նի՜ թէ գերեզմաններն ալ կարենայի բանալ ու
„մեռելոց ալ կենդանութիւն տալ։ Մէկ խօսքով
„մը միայն կարող ես, ո՛վ կայսր, գեղեցիկ աշխարհի
„մը տիրել, որ է բոլոր հպատակացդ սէրը։ Դա-
„տաւորացդ ու զօրավարներուդ աղաչանքին մտիկ
„ըրիր. լսէ գէթ ծերունւոյս աղաչանացը՝ որ
„աւետարանը ձեռքս՝ կը յիշեցընեմ քեզի թէ
„Աստուած մեղացդ թողութիւն չտար՝ մինչուան
„որ դուն ալ քու պարտապանացդ չներես։ Ան-
„տիոքը կործանելուդ տեղը՝ ընդէ՛ անոր յանցա-
„նացը յիշատակը, որպէս զի երթամ հոն ազա-
„տած ժողովրդեանդ մէջ քու անունդ օրհնեմ„։
Սրբակաց ծերունւոյն աս սրտաշարժ խօսքերուն
չկրցաւ Թէոդոս դէմ կենալ, սիրտը եկաւ, լացաւ,
թողութիւն տուաւ, և իր բարկութեանը վրայ ը-
րած աս յաղթանակը՝ մէկալ ըրած յաղթու-
թեանցը մէջ ամենէն գեղեցիկն ու փառաւորն
եղաւ։

[1] Վրան շատ չանցաւ, Մակեդոնիոյ Թեսաղո-
նիկէ (Սելանիկ) քաղաքին մէջ ալ խռովութիւն
մը եղաւ, ու ժողովուրդը կատղած՝ զօրապետն ու
քանի մը զինուոր սպաննեցին։ Նորէն սաստիկ
բարկացաւ Թէոդոս, հրամայեց որ բոլոր քաղա-
քացիքը թրէ անցընեն. հրամանը կատարուեցաւ,
կրկէսին մէջ ժողովրդեան ժողվուած ատենը՝ զօր-

---

[1] Թեսաղոնիկեցւոց կոտորածը ի՞նչպէս եղաւ։

քը չորս կողմէն զանոնք պաշարեցին ու անխնայ ջարդեցին :

¹ Այս անգթութեանը վրայ Թէոդոս սարսափած ու խղճմտանքէն տանջուած, սրբոյն Ամբրոսիոսի՝ որ Միլանի եպիսկոպոսն էր՝ թուղթ մը գրեց, աղաչելով որ իրեն համար աղօթք ընէ, որպէս զի Աստուած իր մեղացը թողութիւն տայ. անոր ալ սիրտը առնելու յուսով ելաւ անձամբ Միլան գնաց, ու բոլոր մեծամեծներովը եկեղեցին կ'ուզէր մտնել. բայց մեծն Ամբրոսիոս դրան առջևը կեցած՝ չթողուց որ ներս մտնէ. "Դուն թէ մեղացը հետևեցար, կանչեց սուրբ հայրապետը, անոր զղջմանն ալ հետևէ": Վրան ութը ամիս անցաւ, դեռ կայսրը եկեղեցի մտնելու հրաման չունէր. ուստի հառաչելով կ'ըսէր բարեպաշտ կայսրը. "Աստուծոյ տաճարը մուրացկաններուն բաց է ու ինծի գոց": Վերջապէս սուրբն Ամբրոսիոս կայսեր սրտանց ըրած զղջումը տեսնելով հրապարակաւ անոր մեղացը արձակում տուաւ. Եւ Թէոդոս բոլոր թագաւորական զարդերէն մերկացած, խորանին առջևն ընկած՝ ժողովրդեան դիմացը Աստուծմէ թողութիւն խնդրեց :

² Յիսուն տարեկան էր ան ատենը Թէոդոս, եւ իր մեծազօր իշխանութիւնը, փառքը, առաքինութիւնները, ամենուն յոյս կուտային որ երկարատև ու հանգիստ թագաւորութիւն մը պիտի ունենայ. բայց մարմինը տկարացած էր: Իր մա-

---

¹ Թէոդոս ի՞նչպէս ապաշխարեց ան անգթութիւնը :

² Ի՞նչպէս վախճանեցաւ Մեծն Թէոդոս :

հուան մեռնելը իմանալով՝ տէրութիւնը երկու որդւոցը բաժնեց, Ոնորիոսի ու Արկադէոսի, և սրբոյն Ամբրոսիոսի գիրկը աւանդեց հոգին սըրբութեամբ։ Բոլոր հպատակները ցաւեցան ու լացին իր մահուանը վրայ. քաղաքացիք արդարութիւնը գովեցին, զօրքը քաջութիւնը, և Եկեղեցին բարեպաշտութիւնը։ Մեծամեծ յաղթութիւններովը ու իմաստուն օրէնքներովը կործանման անդունդէն բերանը հասած հռովմէական պետութիւնը բռնեց կայնեցուց. բայց իրեն հետ տէրութիւնն ալ իր մեծութիւնն ու փառքը կորսընցուց (395)։

1 Օգոստոսէն ետքը բանաստեղծութիւնն ու ճարտասանութիւնը ընկան, թէպէտ և շատ ջանաց Կուինտիլիանոս անուանի ճարտասանը որ Օգոստոսի դարուն գրագիտութիւնը նորէն ծաղկեցընէ։ Ստատիոս և Սիլիոս Իտալիկոս ձանձրալի ոտանաւորներ կը հրատարակէին. Յոբնալ բանաստեղծը բարկութեամբ աշխոյժը վառած՝ գեղեցիկ ոտանաւորներ կը գրէր. իրմէ առաջ ալ Պերսիոս ճարտար երգիծաբանութիւններ գրած էր։ Ան ատենի մարդկանց գրաւորական ախորժակը այնչափ խանգարեր էր որ Կուռնելիոս Փրոնտոն ճարտասանը Կիկերոնի հաւասար կը սեպէին։ Պատմութիւնը աւելի լաւ վիճակի մէջ էր. Տակիտոս զարմանալի Տարեգրութիւնը հրատարակեց։

---

1 Օգոստոսէն ետքը հռովմայեցւոց դպրագիտութիւնը ինչ վիճակի մէջ էր։

Իրմէ ետքը Դիոդորոս Սիկիլիացին * Դիոնեսիոս Ալիկառնացին, Պլուտարքոս, Յովսեպոս, Ապպիանոս իրենց հմտութեամբը անուանի եղեր էին. Ստրաբոն, Պոմպոնիոս Մելա ու Պտղոմէոս աշխարհագրութեան ու աստեղաբաշխութեան մէջ մեծ համբաւ հաներ էին։ Մէկալ մատենագրաց մէջ յիշատակի արժանի են Պլինիոս Երէց ըսուած բնագէտը՝ որ Վեսպասիանոսին ատենն էր. անոր եղբօրորդին Պլինիոս Կրտսեր, Սենեկա իմաստասէրը ընտիր բարոյական ճառերովը անուանի, և Կուինտոս Կուրտիոս՝ որ Մեծին Աղեքսանդրի պատմութիւնը շարադրեց։

* Դիոդորոս Սիկիլիացին, Դիոնեսիոս Ալիկառնացին, Պլուտարքոս, Յովսեպոս և Ստրաբոն իրենց պատմութիւնները յունարէն գրեցին։



# ՑԱՆԿ

## ԳԼՈՒԽ Գ.



## ԳԼՈՒԽ Դ.



## ԳԼՈՒԽ Ե.

## ԳԼՈՒԽ Զ.



## ԳԼՈՒԽ Է.



## ԳԼՈՒԽ Ը.

## ԳԼՈՒԽ Թ.



## ԳԼՈՒԽ Ժ.

## ԳԼՈՒԽ ԺԱ.



## ԳԼՈՒԽ ԺԲ.



## ԳԼՈՒԽ ԺԳ.

## ԳԼՈՒԽ ԺԴ.



## ԳԼՈՒԽ ԺԵ.



## ԳԼՈՒԽ ԺԶ.

ԳԼՈՒԽ ԺԷ.



ԳԼՈՒԽ ԺԸ.



ԳԼՈՒԽ ԺԹ.

## ԳԼՈՒԽ Ի.



## ԳԼՈՒԽ ԻԱ.



## ԳԼՈՒԽ ԻԲ.

## ԳԼՈՒԽ ԻԳ.



## ԳԼՈՒԽ ԻԴ.



## ԳԼՈՒԽ ԻԵ.

## ԳԼՈՒԽ ԻԶ·



## ԳԼՈՒԽ ԻԷ·



## ԳԼՈՒԽ ԻԸ·

## ԳԼՈՒԽ ԻԹ․



## ԳԼՈՒԽ Լ․



## ԳԼՈՒԽ ԼԱ․

## ԳԼՈՒԽ ԼԲ.





